ИНСТИТУТ ИСТОРИИ АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР

МАТЕРИАЛЫ ПО ИСТОРИИ АРМЯНСКОГО НАРОДА
КНИГА ТРЕТЬЯ

# МЕЛКИЕ ХРОНИКИ

## XIII—XVIII вв.

## ТОМ I

*Составил В. А. АКОПЯН*

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1951

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ՆՅՈՒԹԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ
ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ



# ՄԱՆՐ
# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
## XIII—XVIII դդ.

ՀԱՏՈՐ I

Կազմեց՝ Վ. Ա. ՀԱԿՈԲՅԱՆ



ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1951

*Մանր ժամանակագրությունները մեծ մասամբ, հիշատակարանների նման, ականատես և ժամանակակից անձնավորությունների կողմից են կազմված, որոնք մեծ չափով լրացնում են հատկապես XIV—XVI դարերի հայ ժողովրդի պատմության քիչ լուսաբանված էջերը։*

*Սույն հավաքածում նախատեսվում է հրատարակել երկու հատորով, որոնց բովանդակած նյութերը վերաբերում են ոչ միայն հայ, այլև հարևան ժողովուրդների ու հայ գաղութների պատմությանը։*

*Առաջարկվող հատորի ընդգրկած նյութերը, բացառությամբ 5 ընագրի, լույս են տեսնում առաջին անգամ։*

**ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ**

# ԵՐԿՈՒ ԽՈՍՔ

Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի Պատմության ինստիտուտի հանձնարարությամբ զբաղվում ենք միջնադարյան հայ ժամանակագրությունների հավաքման և հրատարակման պատրաստելու գործով: Այդ աշխատանքները տարվում են Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Ձեռագրատանը— Մատենադարանում: Մեր աշխատանքի ընթացքում միշտ զգացել ենք Մատենադարանի դիրեկցիայի— հանձին պրոֆ. Գ. Աբովի, գիտական աշխատակիցներ— Լ. Խաչիկյանի, Վ. Խեչումյանի, Շ. Նազարյանի, աշխատակիցներ— Շ. Շահնազարյանի, Լ. Մկրաչյանի և մյուսների ամենօրյա սիրալիր օժանդակությունը, որի համար հայտնում ենք մեր խորին շնորհակալությունը:

Վ. Հ.

*1950 թ. փետրվար*

# ԱՌԱՋԱԲԱՆ

«․․․ ոչ է պատմութիւն ճշմարիտ
առանց ժամանակագրութեան»։
Մ. ԽՈՐԵՆԱՑԻ

*Հայ գրականությունն ավելի քան մեկ և կես հազարամյա պատմություն ունի։ Պատմագրական աշխատությունները հանդես եկան դեռևս հայ գրականության արշալույսին, երբ վերջինս ավելի լայն հասկացողություն էր և ընդգրկում էր նույնիսկ գեղարվեստական գրականության շատ տարրերը։*

*Մոտ 14 դար (V—XVIII) անցյալ ունեցող միջնադարյան հայ պատմագրությունը, մեծ մասամբ փոթորկահույզ ժամանակների արտահայտություն լինելով, միշտ չէ, որ վերելք է ապրել։ Պատմագրությունը բացառիկ թափ է ստացել V, XIII և մասամբ XVII դարերում և դրան հակառակ անկում ապրել երկրի քաղաքական պատմության ամենամռայլ ժամանակներում՝ ինչպիսիք էին VIII և հատկապես XIV—XVI դարերը։*

*Եթե բացառենք Մ. Խորենացու «Հայոց պատմությունը», որն առաջին փորձն էր հայոց պատմության սիստեմատիկ շարադրության, ապա հայ պատմագրությունն ընդգրկել է նշանավոր եղելությունների, ժամանակի որոշ սահմաններում տեղի ունեցած անցուդարձերի և կամ առավել խոշոր ֆեոդալական տների պատմությունը (Եղիշե, Ղ. Փարպեցի, Սեբեոս, Ղևոնդ, Թ. Արծրունի, Կ. Գանձակեցի, Ստ. Օրբելյան և այլն)։*

*Պատմագրության մի տեսակն է ժամանակագրությունը, տարեգրությունը, որոնք նույնքան հին են, ինչպես և պատմիչների աշխատությունները։ Ժամանակագրությունը, ինչպես և տարեգրությունը պատմական առանձին եղելությունների հաջորդաբար շարադրելու մի ձևն է, առանց կապակցության, քննության և նյութն ամբողջականացնելու դիտավորության։ Ի տարբերություն պատմիչների երկերի, ժամանակագրության մեջ քննության ենթակա նյութը չի տրված իր ներքին պատճառական կապի մեջ, կուռ ամբողջականությամբ, ինչպես և այստեղ չենք գտնում, ընդհանուր առմամբ, հեղինակի վերաբերմունքը տեղի ունեցած երևույթների և նրանց մեկնաբանման նկատմամբ։ Ժամանակագրությունը դեպքերի հիշատակությունից այն կողմ չի անցնում։ Սակայն միշտ չէ, որ ժամանակագրությունը պատմական իրականությունն է արտահայտել, ժամանակի հետ փոխվել է նաև նրա բովանդակությունը։*

*Հնում, և այնուհետև երկար ժամանակ, ժամանակագրությունները վերաբերում էին գերազանցապես Ադամին և նրա հաջորդներին, դարագլուխ կազմող դեպքերին, նահապետներից մինչև հեղինակին հայտնի որևէ դեպքի միջև ընկած տարիների քանակին և այլն։*

*Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետական Ձեռագրատանը*

(Մատենադարան) հիմա էլ գտնվում են մի քանի տասնյակի հասնող նման ժամանակագրություններ, որոնց երբեմն կցված են հայ, պարսից և այլ թագավորների ժամանակագրական սահմաններին վերաբերող տեղեկություններ, իսկ հետագայում կազմած ժամանակագրությունները, նախքան պատմական տեղեկություններին անցնելը, հաճախ տալիս են նաև այդ մասը։ Մեզ հասած ամենահին ժամանակագրության միակ օրինակը մնացել է VII դարից։[1] V—XI դարերում հայ պատմագրության մեջ գերազանցապես գերիշխում են պատմիչները՝ իրենց ամբողջական երկերով։ XI դարից հետո է, որ հաճախանում են ժամանակագրությունները և տարեգրությունները (Մ. Ուռհայեցի, Ս. Անեցի, Ս. Գունդստաբլ, Հեթում Բ. և այլն)։ Ավելին, XIII դարում հանդես են գալիս հեղինակներ (Վ. Արևելցի, Մխ. Այրիվանեցի, Մխ. Անեցի և այլն), որոնց աշխատությունները չնայած կրում են պատմություն անունը, սակայն ըստ էության դրանք պատմություններ չեն։ XIV դարից մինչև XVI դարը մեր պատմագրության մեջ հանդես չեկան պատմական լուրջ աշխատություններ։ 300 տարվա ընթացքում հայ պատմագրության մեջ կարելի է նշել միայն Թովմա Մեծոփեցու անունը, որի երկը նույնպես ավելի մոտ է ժամանակագրության, քան թե կուռ պատմության։ Հակառակ այս բանին, այդ նույն դարերում պատմագրության մեջ գերիշխող էին հայտնի և անհայտ հեղինակների բազմաթիվ ժամանակագրությունները, որոնց մեջ գրի են առնվել անցյալ կամ գերազանցորեն ժամանակակից դեպքերը, մեծ մասամբ տվյալ գավառի, քաղաքի, գյուղի, վանքի շրջակայքում տեղի ունեցած եղելությունները, որոնցից առավել տպավորիչները ենթարկվել են նաև գրական մշակման։ XVII դարում թեև հայ պատմագրությունը նույնպես վերելք ապրեց և թողեց զգալի չափով պատմական աշխատություններ՝ Առ. Դավրիժեցի և այլն, սակայն սրանց կողքին ժամանակագրությունները դարձյալ զգալի քանակություն էին կազմում, լրացնում նրանց պակասը։

Այն հարցը, թե ինչո՞ւ հատկապես XIV—XVI դարերում հայ պատմագրությունը հանդես եկավ գլխավորապես ժամանակագրությունների կերպարանքով, անհիմն չէ։ Այդ երևույթը ուներ սոցիալական և քաղաքական խոր պատճառներ։ Դրա գլխավոր պատճառը պետք է փնտրել հենց ֆեոդալական կարգերի մասնատվածության մեջ, որը սովորական երևույթ էր ընդհանրապես, իսկ առավելապես հայկական իրականության համար, մանավանդ, երբ խոսքը վերաբերում է XIV—XVI և հետագա երկու դարերին, երբ Հայաստանում կենտրոնաձիգ պետական տևական և ուժեղ իշխանության փոխարեն իրար ետևից հանդես էին գալիս մանր, անկայուն, այն էլ օտար նվաճողների իշխանություններ։

Ինչպես հայտնի է, մեր պատմիչներն իրենց աշխատություններում տվել են գերազանցապես թագավորների և նախարարական առանձին տների քաղաքական պատմությունները, ելնելով իրենց ժամանակի իշխող այն մտայնությունից, թե պատմությունը կերտում են թագավորները և իշխանները, որոնց գործունեությունն արտահայտում էր լոկ աստծու կամքը։ Հենց այս մտայնությունն է արտահայտել Կ. Գանձակեցին. վերջինս անդրադառնալով իրենից առաջ ապրած պատմիչներին, գրում է. «Բայց իւրաքանչիւր ոք յառաջին աշխատասիրացն եդին տեղի ինչ բուռն հարկանելոյ, կամ թագաւոր երևելի և

[1] «Անանուն ժամանակագրութիւն յօրինեալ յէ դարու» Վենետիկ, 1904։

*կամ նահապետութիւնք ազգաց յայտնի: Իսկ մեր յայսմ յամենայնէ թափուր եղեալ. զի թագաւորութիւնն վաղ ուրեմն բարձեալ, Արշակունին և Բագրատունին, և իշխանքն ոչ ուրեք երևեալ Հայկազնի, բայց թէ ուրեք ուրեք ցօղեալք և թաքուցեալք յօտար աշխարհի... վասն որոյ աղաչեմք զկնի եկեալսդ ոչ աղարտել աշխատութիւնս մեր, որպէս անուսմունք...»:*[1]

*XIV—XVIII դարերում Արշակունիների, Բագրատունիների, Ռուբինյանների շրջանից ինչպես և ֆեոդալական խոշոր տներից մնացել էին սոսկ հիշողություններ: Հայ ժողովրդի բախտը այս դարերում գտնվում էր թաթար էմիրների, թուրքմեն միրզաների, օսմանյան փաշաների, պարսիկ խաների և նրանց կամակատարների ձեռքին, որոնց պատճառած քմահաճ ասպատակություններ, կամայականությունների, բռնությունների, ավերի ու թալանի պայմաններում ոտնահարվում էին նաև հայ ժողովրդի հոգևոր կյանքը, նրա էթնիկական, կրոնական զգացմունքները և բնակչությունը հալածվում էր դարավոր հայրենիքից:*

*XIV—XVIII դարերի ժամանակագրություններն ու հիշատակարանները արտահայտում են այդ շրջանի տխուր և դառնագին ոգին:*

*Հայ ժողովրդի այդ դառն անցյալի մասին այսպես է գրել «Պրավդա» թերթը.*

*«Հայաստան... ով չգիտե այդ ժողովրդի ողբերգական և կոշմարային անցյալը: Գտնվելով երկու աշխարհների և երկու աշխարհամասերի՝ Եվրոպայի և Ասիայի սահմանի վրա, լինելով Հին Արևելքի երբեմնի հզորագույն երկրներից մեկը, Հայաստանը եղել է անվերջ ճակատամարտերի և ասպատակությունների թատերաբեմ: Մի նվաճողին փոխարինում էին մյուսները: Սրով ու մորիկով սլանում էին երկրի վրայով հոները, պարսիկները, հռոմեացիները, արաբները, բյուզանդացիները, սելջուկները, մոնղոլները և օսմանցիները: Հազիվ էր ժողովուրդը ուշքի գալիս մի ավերիչ փոթորիկից, երբ վրա էր հասնում նորը: Եվ նորից կործանվում էին գյուղերը, քաղաքները, կործանվում էր կուլտուրան, ոչնչանում էին աշխատավոր հայերը:* **XIV դարի վերջին Հայաստանը վերջնականապես բաժանվեց Միջին Ասիայի տերիտորիայի վրա պայքարող պետությունների միջև: Հայ ժողովրդի պատմության մեջ վրա հասան ամենից ավելի մռայլ ժամանակները»:**[2] *(Ընդգծումը մերն է— Վ. Հ.):*

*Հինգ հարյուր տարի, անընդհատ ընդմիջումներով Հայաստանը ամեն կողմից ոտնատակ էր տրվում թուրք-թաթարական և պարսկական՝ սուլթանների, շահերի, էմիրների, փաշաների ու խաների կողմից: Այս դժոխային վիճակում մարդիկ կորցրել էին ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական, կուլտուրական զարգացման նվազագույն պայմանները, պահպանելով միայն վաղվա նկատմամբ իրենց հույսերը, ճիգեր թափելով ազատության համար:*

*Հենց այդ վիճակը շատ բնորոշ ձևով արտահայտվել է Առ. Դավրիժեցու տրտունջի մեջ.*

*«...ազգս մեր յաւարառուաց և ի գերչաց և ի հարկապահանջողաց ցիր և ցան եղեալ են, կոշկոճեալ և կաշկանդեալ, տառապեալ և կապեալ յաղքատութեան...* **և հազիւ ամենայն ոք զպարուստ իւրոցն կենաց հայթայթէր, ոչ գտաք**

---

1 «Պատմութիւն Հայոց. արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ» Թիֆլիս, 1909, հեղինակի առաջաբանը, էջ VIII—IX: Հմմտ. Խաչատուր Կեչառեցի—«Ողբ վասն իշխանաց» Ձեռ. № 425, էջ 345ա—346ա:

2 1935 թ. նոյեմբերի 28-ի, № 327 (6573) առաջնորդողը:

գիտող այր այնպիսի, որ զի ընդ պատմութեան և թուականն ևս ծանուցեալ էր»:[1] *(Ընդգծումը մերն է— Վ. Հ.)*:

*Ավելին, նույն Առ. Դավրիժեցին ոչ միայն պատմությամբ հետաքրքրվող մարդ չի գտել, այլև «տգիտութեամբ խոպանացեալ և կորդացեալ էր ազգս Հայոց, և ոչ միայն ոչ ընթեռնուին, այլև ոչ զգիրս գիտէին, և ոչ զզօրութիւնս գրոց. վասն զի անպիտանացեալ էր դիրքն յաչս մարդկան, և իբրև զկոճղես փայտից անկեալ յանկեան ուրեք՝ լցեալ հողով և մոխրով»։*[2]

*Քաղաքական այդպիսի երերուն և հարափոփոխ պայմաններում չէր կարող հանդես գալ որևէ պատմիչ, որ կարողանար այդ ընդհանուր վայրիվերումների մեջ գտներ տեղի ունեցող դեպքերի պատճառական կապը և պատմական օրինաչափությունը, վեր բարձրանար իրեն ժամանակից և պատմական եղելությունները շարադրեր որպես մի ամբողջական երկ։ Այս դարերի ժամանակագիրներն իրենք արտահայտությունն էին իրենց ժամանակի հասարակական-քաղաքական իրականության։ Հենց այդ պատճառով էլ մեզ հետաքրքրող դարերում պատմագրությունը ժամանակագրությունների բնույթ ստացավ, որոնք մեծ մասամբ լրացնում են այդ շրջանի պատմության վերաբերյալ մեր գիտելիքները։*

*Ի միջի այլոց դրանով պետք է բացատրել, թե ինչո՞ւ XI—XIII դարերի ժամանակագրություններն ավելի հարուստ բովանդակություն ունեն, քան հաջորդ դարերի ժամանակագրությունները, որոնք երբեմն իրենցից ներկայացնում են ժամանակագրական առանձին հատվածներ միայն։*

* * *

*Հայ ժամանակագիրների երկերը հրատարակելու գործում քիչ աշխատանք չի տարված։ Պատմիչների երկերին զուգընթաց հրատարակվել են ինչպես ժամանակագրությունների և տարեգրությունների ընդարձակ (Մ. Ուռհայեցի, Ս. Անեցի, Ս. Գունդստաբլ և այլն), այնպես էլ համեմատաբար մանր բնագրեր (Ստեփաննոս Օրբելյանին և Հակոբ Հիսուսիին վերագրված, Անանուն, Անդրեաս Եվդոկեցի և այլն)։ Վերջիններս հրատարակված են առանձին, մամուլում կամ այլ նյութերի հետ միասին։*

*Մանր ժամանակագրությունները ի մի հավաքելու և որպես ամբողջական հավաքածու հրատարակելու ուղղությամբ շատ քիչ աշխատանք է տարված։ Մեզ հայտնի է, որ դեռ ոչ շատ հեռու անցյալում, առանձին հեղինակներ ժամանակագրական մանր հատվածները կորուստից փրկելու նկատառումով հավաքել են և կցել իրենց աշխատություններին։ Այդպես վարվել են մասամբ Գր. Կամախեցին*[3] *և մեծ չափով Առ. Դավրիժեցին։*[4]

*Ավելի ուշ, XIX դարի երկրորդ կեսին, Ղ. Փիրղալեմյանն իր շրջագայությունների ժամանակ ձեռագրերից հավաքել է նրանց հիշատակարանները և մասամբ մանր ժամանակագրությունները, որոնք, սակայն, ձեռագիր վիճա-*

[1] «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ» Վաղարշապատ, 1896, հեղինակի առաջաբանը, էջ 3։

[2] Նույն տեղում, էջ 255։

[3] «Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղեցւոյ», հրատ. Մ. վ. Նշանեան, Երուսաղէմ, 1915, էջ 3—13։

[4] «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 620—650։

կում գտնվում են Մատենադարանում և որոնց աննշան մասն է հրատարակվել Գ. Աղանյանցի կողմից։

Իսկ Ղ. Ալիշանի «Հայապատում»-ը և Սամ. Անեցու ժամանակագրության տարբերակներ հավելվածը[1] չի կարելի այդ տիպի հավաքածուների շարքը դասել, որովհետև վերջիններս ոչ այնքան ժամանակագրական, որքան պատմական նյութերի հավաքածու են։

Ժամանակագրական նյութերի հավաքածու հրատարակելու առաջին փորձը կատարել է Գ. Աղանյանցը։ «Դիւան Հայոց պատմութեան» շարքի Ժ հատորը[2] այդպիսի նյութերի հավաքածու է։ Սակայն չի կարելի չնկատել, որ Աղանյանցը ոչ թե ուսական աշխատանք է կատարել բնագրերը հավաքելու, մշակելու և հրատարակելու ուղղությամբ, այլ Փիրղալեմյանի և ուրիշների հավաքած նյութերից ինչ որ ձեռքի տակ ունեցել է՝ այն էլ հրատարակել է։ Այդ պատճառով էլ նրա կողմից կատարված աշխատանքը հայագիտության մեջ դրական երևույթ լինելով հանդերձ, այնուամենայնիվ ամբողջական հավաքածու չէ։

Մեր նպատակը եղել է ժամանակագրական մանր բնագրերը ի մի հավաքելով հրատարակել, որպես ամբողջական հավաքածու, որի առաջին հատորը կազմում են առաջարկվող նյութերը։ Թե ինչքանով է այդ մեզ հաջողվել, ցույց կտա քննադատությունը։ Սույն հավաքածուի նյութերը հավաքել ենք Հայկական ՍՍՌ-ի Մինիստրների Սովետին կից Ձեռագրատան (Մատենադարան) հարուստ ֆոնդերից։ Այդ բանի համար օգտվել ենք Մատենադարանի աշխատակիցների կողմից կազմած բիբլիոգրաֆիկ մատյանից։ Սակայն եղան առանձին նյութեր, որոնք մեզ հանդիպեցին մեր որոնումների ժամանակ, պատահական կերպով (օրինակ՝ Բարսեղ Արճիշեցու, Մովսես Արծկեցու և այլոց ժամանակագրությունները)։

Առաջարկվող ժողովածուի համար նյութեր հավաքելու նպատակով 1949 թվի ամռանը ստուգեցինք Մոսկվայի Լենինի անվան Պետ. Հանրային գրադարանի, Լենինգրադի Ս. Շչեդրինի անվան Պետ. հանրային գրադարանի, ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի Արևելագիտական ինստիտուտի, հայկական ձեռագրերի ֆոնդերը, դժբախտաբար մեր որոնումներն իզուր անցան։ Ընկ. Լ. Խաչիկյանի միջոցով իմացանք նաև, որ Վրացական ՍՍՌ-ի Ջանաշիայի անվան Պետական թանգարանի ձեռագրերի բաժնի հայկական ֆոնդում սույն թեմային վերաբերող նյութեր նույնպես գոյություն չունեն։

Առաջարկվող ժողովածուն, որը կազմում է առաջին հատորը, ընդգրկում է XIII—XVIII դարերի հայտնի և անհայտ հեղինակների գործերը, որոնք հրատարակվում են գերազանցապես առաջին անգամ։ Զուտ կաթողիկոսներին վերաբերող ժամանակագրական տեղեկությունները չեն մտնում սույն ժողովածուի մեջ, բացառությամբ մի փոքրիկ հատվածի, որը Կիլիկիայի մի քանի կաթողիկոսների ինքնագիր տեղեկություններ են։ Մանր ժամանակագրությունները ի մի հավաքելու նկատառումով սույն ժողովածուի մեջ ընդգրկել ենք մամուլում, առանձին և այլուր լույս տեսած բնագրերը (Անդրեաս Եվդոկեցու, Հակոբ Հիսուսիին և Ստ. Օրբելյանին վերագրված ժամանակագրությունները և այլն)։

---

[1] «Սամուէլի քահանայի Անեցւոյ հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ, 1893, էջ 185—243։

[2] Թիֆլիս, 1912 թ.։

Ներկա հատորը հավակնություն չունի վերոհիշյալ դարերի ժամանակագրությունների հավաքման աշխատանքները սպառել։ Ընդհակառակը, երկրորդ հատորի համար շարունակվում է աշխատանքը, որտեղ ընդգրկվելու են թեև միևնույն ժամանակաշրջանի, սակայն ավելի ընդարձակ ժամանակագրության բնագրերը (Անանուն, Դ. Բաղիշեցի և այլն), ինչպես գրական մշակման ենթարկված ժամանակագրությունները (Մովսես Արծկեցի և այլն), այնպես էլ միջնադարյան հայ ուղեգրությունները (Մարտիրոս Երզնկացի, Մինաս երեց և այլն)։

Եթե XIV—XVI դարերին վերաբերող պատմական աշխատություններ չկան, բացառությամբ Թովմա Մեծոփեցու, ապա հասկանալի է վերոհիշյալ ժամանակաշրջանի ժամանակագրությունների և հիշատակարանների հրատարակման գիտական նշանակությունն ու կարևորությունը։

Առաջին հատորում տեղ գտած նյութերը վերաբերում են ոչ միայն հայ ժողովրդի պատմությանը բուն Հայաստանում, այլև հայկական գաղութներում, ինչպես նաև Անդրկովկասյան ժողովուրդների պատմությանը։

Ուսումնասիրողները այստեղ կգտնեն Հայաստանի, հայ ժողովրդի քաղաքական պատմությանը վերաբերող այնպիսի տեղեկություններ, որոնք մինչև հիմա այդպիսի մանրամասնություններով մեզ հայտնի չէին, ասենք Կարա-Կոյունլու և Ակ-Կոյունլու թուրքմեն ցեղերի պայքարը XV դարի 60-ական թվականներին (XI ժամանակագրություն), Ակ-Կոյունլուների պայքարի որոշ մանրամասնությունները Ուզուն Հասանից հետո (XIII ժամանակագրություն), XVI դարի սկզբին Շահ-Իսմայիլի և Ակ-Կոյունլու Ալվանդի պայքարը Հայաստանում և քաղաքական այլ դեպքեր Տուրուբերանում (Բարսեղ Արճիշեցու տարեգրություն) և այլն, և այլն։

Սակայն քաղաքական անցուդարձերին վերաբերող տեղեկություններն այսքանով չեն վերջանում, ընդհակառակը, այդպիսիք շատ են, որոնք վերաբերում են Հայաստանի զանազան վայրերում և հայկական գաղութներում հանդես եկած տեղական իշխանների, բեկերի, փաշաների և այլոց անլուր կամայականություններին, բռնություններին, սպանություններին, ասպատակություններին, ավերածություններին...։

Հայկական երկու գաղութներում՝ Վալախիայում XVI դարի կեսին (VIII ժամանակագրություն) և Նոր Ջուղայում XVII դարի 40-ական թվականներին (Իսահակ վարդապետի ժամանակագրություն), տեղի ունեցած սոցիալական և դասակարգային պայքարին վերաբերող հետաքրքիր տեղեկություններ կան։ Այդ տեղեկությունները ոչ միայն որոշ մանրամասնություններ են ավելացնում մեզ արդեն հայտնի դեպքերին, այլև հիմքեր տալիս այդ հարցերը քննել նոր լույսի տակ։ Խիստ կարևոր տեղեկություններ են պահված Խաչատուր Կաֆայեցու տարեգրության մեջ Ղրիմի պատմության վերաբերյալ։

Հետաքրքիր տեղեկություններ կան Հայաստանի պատմական աշխարհագրության, բարբառագիտության և այլ հարցերի վերաբերյալ։ Քիչ չեն բնական երևույթներին, պատահարներին վերաբերող վկայությունները (արևի խավարում, երկրաշարժներ և այլն)։

Բնագրերում հանդես են գալիս պատմական նոր անձնավորություններ, նոր հեղինակներ և այլն և այլն։

Առաջարկվող ժողովածուն գիտական նշանակություն ունենալուց բացի, ունի նաև դաստիարակչական նշանակություն։ Ինչպես ասել ենք, ժողովածուի

*նյութերն ընդգրկում են քաղաքական անկայուն և երերուն ժամանակաշրջանի զանազան եղելություններ, մի ժամանակ, երբ թվում էր թե հայ ժողովրդի կյանքը երեկոյանում էր։ Ընթերցողը ծանոթանալով այդպիսի բնագրերի հետ, երախտապարտ շնորհակալության առաջին խոսքն ուղղում է բոլշևիկների պարտիային, Սովետական պետությանը, մեծ առաջնորդներ Լենինին և Ստալինին, հայ ժողովրդի դարավոր տառապանքներին վերջ տալու և նրան զարգանալու, ստեղծագործելու, վերամիավորելու պայմաններ ստեղծելու համար։*

* * *

*Առաջարկվող ժողովածուի բնագրերի օգտագործումը հեշտացնելու նկատառումով, յուրաքանչյուրի ներածական մասը և ծանոթագրությունները տրըված են բնագրերին կից։ Բնագրերի ներածական մասում համառոտաբար տրված են յուրաքանչյուրի ժամանակագրական սահմանները։ Անհրաժեշտ փաստեր լինելու դեպքում որոշված են յուրաքանչյուր բնագրի հեղինակը, ժամանակագրությունները կազմելու ժամանակը, օգտագործված աղբյուրները և այլն։*

*Իսկ ծանոթագրություններում տրված է բնագրերի հավաստի լինելը, առանձին եղելությունների պատմական ֆոնը և այլն։ Ծանոթագրություններում օգտագործված է Մատենադարանի ձեռագրերի ֆոնդի անտիպ բազմաթիվ հիշատակարաններ և այլ տեղեկություններ։*

*Սույն հրատարակության մեջ բնագրերը բերված են հարազատությամբ, բացառեալ ակնհայտ սխալների։ Փակագրերը, համառոտումները, նշանագրերը բաց ենք արել։ Ծածկագրերի բացատրությունը տրված է ծանոթագրություններում։ Ուղղել ենք կետադրությունը։ Բնագրերի ուղղագրությունը փոփոխված չէ՝ օրինակ «օ» փոխանակ «աւ» և ընդհակառակը։*

*Հայկական տարեթվերի և քանակ արտահայտող հասկացությունների մոտ, որոնք արտահայտված են հայկական տառերով, կլոր փակագծերում ավելացրել ենք մեր կողմից գործածվող համապատասխան թվականները և արաբական թվանշանները։ Անկյունավոր փակագծերում ավելացրել ենք հեղինակի կողմից վրիպած կամ բնագրի վնասվելու պատճառով եղծված տառերը և բառերը։ Բնագրերի այն բառերը, որոնք չենք հասկացել, մոտը դրել ենք հարցական նշան։*

*Ուղղահայաց երեք գծերը ցույց են տալիս բնագրի վնասված լինելը։*

*Բացի Հեթում Բ.-ի տարեգրությունից մնացած բնագրերի՝ տարբերակների տարընթերցվածքներն ամենայն մանրամասնությամբ բերված են տողատակ։*

*Ժողովածուին առընթեր գտնվում է օգտագործված ձեռագրերի համառոտ բիբլիոգրաֆիան, օտար բառերի ցանկը, անվանական և տեղագրական ինդեքսները։*

*Առաջարկվող աշխատության հետ կապված մի շարք հարցեր քննության են ենթարկվել Հայկական ՍՍՌ-ի Գիտությունների Ակադեմիայի Պատմության Ինստիտուտի Հին և Միջին դարերի պատմության սեկտորի մի քանի նիստերում, որտեղ սեկտորի աշխատակիցների կողմից կատարված շահեկան դիտողությունները, ինչպես նաև ընկ. Մ. Հասրաթյանի խմբագրական աշխատանքը ընդունել ենք խորին շնորհակալությամբ։*

Վ. Հ.

*1950 թ., փետրվար*

I.

## ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ (XIII դ.)

*Միջնադարյան Հայաստանի մեծանուն գիտնական Հովհաննես Սարկավագի գիտական վաստակի գլխավոր գործերից մեկը՝ տոմարագիտական աշխատությունը, դժբախտաբար մեզ հասել է անդամահատված, ոչ սկզբնական վիճակով։ Մեր նպատակից շատ հեռու է Հ. Սարկավագի տոմարագիտական աշխատության քննությունը, սակայն նրա միայն մեկ հատվածին պետք է անդրադառնանք այն չափով, ինչքանով վերջինիս առնթեր գտնվում է մեզ հետաքրքրող ժամանակագրությունը։ Ավելի ճիշտ՝ ցանկանում ենք պարզել այն հարցը, թե արդյո՞ք քննության ենթակա ժամանակագրությունը Հ. Սարկավագի գրչին է պատկանում, թե հետագայի մի հավելում է նրա տոմարագիտական ուսումնասիրության այս հատվածին։ Վերջինս և սրան առնթեր ժամանակագրությունը գտնվում է Մատենադարանի № 1973 ձեռագրի 195ա—199բ էջերում, որն ունի «Յոհաննու քահանայի» խորագիրը (և որը այսուհետև կանվանենք A)։*

*Սույն հատվածի սկզբում Սարկավագն այն միտքն է հայտնում, որ մարդը իրավասու չէ որոշելու տիեզերքի արարչության ժամանակը և ով ուզում է այդ բանը փորձել, Սարկավագի գնահատմամբ «... մեծապէս փրթեն յաւելլով զտգիտութեանն կարծիս առանց ճշմարտութեան...» (էջ 23)։*

*Հ.Սարկավագի հավաստիացման համաձայն, մարդը լավագույն դեպքում, կարող է իմանալ, թե Ադամը դրախտից ե՞րբ է արտաքսվել. «... վասնզի յարարչութենէն զժամանակսն ոչ ոք կարասցէ գիտել ի մարդկանէ, բայց յարտաքսելոյն Ադամա[յ] ի դրախտէն» (էջ 23)։*

*Այնուհետև նա թվում է դարագլուխ կազմող, Ծննդոց գրքի զանազան դեպքերը, որոշում վերոհիշյալ եղելությունների և Հայոց թվականի միջև ընկած տարիների քանակը, ապա թվում տիեզերական ժողովների միջև ընկած տարիները, որոնց հաջորդում է պատմական մասը՝ ժամանակագրությունը։ Վերջինս սկսվում է Հայոց թվականության հաստատումից՝ վեցերորդ դարի կեսից և հասնում մինչև 1236 թվականը՝ մոնղոլների կողմից Անիի գրավումը։*

*Մեզ հետաքրքրող ժամանակագրությունը՝ A բնագրում, չնայած գտնվում է Հ. Սարկավագի տոմարագիտական աշխատության մի հատվածին առնթեր և հայտնի է «Յոհաննու քահանայի» անունով (նույն ինքը Հ. Սարկավագ), սակայն ուշադիր քննությունը ցույց է տալիս, որ Հ. Սարկավագին պատկանում է քննության ենթակա հատվածի միայն առաջին մասը, իսկ մնացած մասը՝ ժամանակագրությունը, ավելացվել է ուրիշների կողմից՝ հետագայում։ Հենց այն փաստը, որ այստեղ տեղ են գտել իրեն՝ Սարկավագի մահվան տարեթիվը և սրան հաջորդող այլ դեպքեր՝ մինչև 1236 թվականը, [illegible] որ այդ բոլորի մասին Հ. Սարկավագը գրել չէր կարող։*



Որպեսզի կարողանանք ցույց տալ թե սույն հատվածի ո՞ր մասն է Սարկավագինը և ո՞ր մասը հետագայի հավելում, անհրաժեշտ է դիմել այլ բնագրերի և նրանց համեմատություններին։

Մատենադարանի № 1495 ժողովածուի 162ա—163ա էջերում պահվել է «Ի բանից Սարկաւագ վարդապետին յաղագս ժամանակաց և թուականաց» խորագիրը կրող աշխատանքը։[1]

Վերջինիս և ժամանակագրության A բնագրի համեմատությունից երևում է, որ № 1495 ժողովածուի բնագիրը չունի ժամանակագրական այն վկայությունները, որոնք գտնում ենք A բնագրում, իսկ երկու բնագրերի տոմարագիտական հատվածի համեմատությունը ցույց տվեց, որ չնայած նրանց առանձին աննշան շեղումներին, այնուամենայնիվ հայտնի սահմանում վերոհիշյալ երկու բնագրերի տոմարական հատվածները համապատասխանում են իրար և պետք է որ առաջ եկած լինեն միևնույն բնագրից։

№ 1495 բնագրում բացակայում է A բնագրի սկզբի՝ «Ու՞չ է մեզ գիտել զժամս և զժամանակս, զոր հայր եգ յիւրում իշխանութեան...» հատվածից մինչև «իսկ անուանիք և բազմահմուտք, որ եաք և աշխատասէր հարցն ժողովեցին զկայանի ժամանակագրութիւնն այսպէս...» հատվածը։ Վերջինիս շարունակությունը՝ «... ՅԱդամա[յ] մինչև ի փոխիլն Ենովքա[յ] ամք ՌՆՁԷ...» հատվածից կազմում է 1495 բնագրի սկիզբը։ Երկու բնագրերն էլ, սույն հատվածից սկսած մինչև «ի ԺԱ թվականին Իւոն պատառեաց զկանոն զատկին» հատվածը, իրար ծածկում են։ Վերջինիս շարունակությունն A բնագրում հանդիսանում է ժամանակագրությունը, իսկ № 1495 բնագրում՝ տոմարական հաշվումներ հատվածը։

Այն հանգամանքը, որ Հ. Սարկավագի տոմարագիտական աշխատության քննության ենթակա հատվածը մեզ հայտնի երեք (№№ 1973, 1495 և 3260) բնագրերում էլ «ի ԺԱ թվականին Իւոն պատառեաց զկանոն զատկին» հատվածից հետո սկսվում է իրարից տարբերվել, ենթադրել է տալիս, որ քննության ենթակա հատվածի վերջին եզրն ամենայն հավանականությամբ վերոհիշյալ

[1] Վերջինիս մի այլ տարբերակը պահվել է Մատենադարանի № 3260 ժողովածուի 426բ—432ա էջերում, որն ունի «Ի բանից Սարկաւագ վարդապետի» խորագիրը։ Վերոհիշյալ երկու տարբերակների համեմատությունը ցույց տվեց, որ նրանք երկուսն էլ սկզբից մինչև «ի ԺԱ թվականին Իւոն պատառեաց զկանոն զատկին» (№ 3260, էջ 428բ, № 1495, էջ 162բ) հատվածը քերականական աննշան տարբերություններով պատկանում են միևնույն բնագրին։ Վերոհիշյալ հատվածից հետո, № 3200 տարբերակի 428բ—430ա էջերի նյութը բոլորովին այլ բան է՝ պատմական մի քանի տեղեկությունների և զարգացում կազմող դեպքերի թվարկում, որոնք բացակայում են № 1495 բնագրում։ Դրանից հետո № 3260 ժողովածուի 430ա էջից «Այլ ցեղք թվականք» խորագրի տակ շարադրված է այն, ինչ կազմում է № 1495 բնագրի շարունակությունը (ընդհատումից հետո)։ Այնուհետև երկու տարբերակները դարձյալ ծածկում են իրար և զուգահեռ գնում մինչև «եւ տարեմուտն տանկաց մարտի Ժ. ան է...» (№ 3260, էջ 430բ, № 1495, էջ 162բ) հատվածը։ Սույն հատվածից հետո վերոհիշյալ երկու տարբերակների շարունակությունը մինչև վերջ դարձյալ տարբերվում են իրարից։ Այս բնագրերի տարբերությունները և հարակից հարցերը քննության չենք առնի, որովհետև մեզ հետաքրքրող հարցի լուսաբանման համար առանձին կարևորություն չունեն։ Այստեղ ցանկացանք միայն նշել, որ վերոհիշյալ բնագրերի իրար համապատասխանող հատվածները՝ սկզբից մինչև «ի ԺԱ թվականին Իւոն պատառեաց զկանոն զատկին» հատվածը պատկանում են միևնույն բնագրին, և անշուշտ Հ. Սարկավագի գրչին են պատկանում, իսկ նրանց շարունակությունների տարբերությունները՝ տարբեր անձնավորությունների։

մեջբերումն է։[1] Մատենացույց արված երեք բնագրերում էլ վերոբերյալ հատվածին հաջորդող շարադրությունները զանազանվում են միմյանցից, և կարող են տարբեր անձնավորությունների կողմից կատարված հավելումներ լինել։ Հենց այդպիսի մի հավելում է A բնագրի տոմարական հատվածի շարունակությունը հանդիսացող ժամանակագրությունը։ Այդ երևում է նաև նրանից, որ վերոհիշյալ ժամանակագրության մի ուրիշ տարբերակը, առանց տոմարագիտական հատվածի, գտնում ենք Մատենադարանի № 8100 ժողովածուի 244բ—246ա էջերում։ Սույն բնագիրը այսուհետև կանվանենք Б։ Վերջինս սկսվում է «Յառաջին (SIC) թվականին սրբոյն Յեզտիբուզտ վկայեաց, Հռոմայեցոց Յուստիանոս, Պարսից Խոսրով...» հատվածով և վերջանում՝ 1475 թվականի Ահմատ փաշայի կողմից Կաֆայի գրավման վկայությամբ։

Մոնղոլների կողմից 1236 թվականին Անիի գրավման վկայությունից հետո ժամանակագրության Б տարբերակը շարունակվում է XV դարին վերաբերող մի քանի վկայություններով։ Վերջինս սկսվում է 1451 թվականի ումն Մուրատ բեկի մահվամբ և վերջանում 1475 թ. Ահմատ փաշայի կողմից Կաֆայի գրավման վկայությամբ։ Այսպիսով, ժամանակագրության Б տարբերակի շարունակությունն ընդգրկում է 25 տարվա անցուդարձ։ Ապացուցելն անգամ ավելորդ է, որ XV դարին վերաբերող վկայություններն ավելացվել են հետագայում՝ XV դարի մեզ անհայտ անձնավորության կողմից և որոնք կապ չունեն ժամանակագրության սկզբնական բնագրի հետ։ Այդ բանը կարող է նկատել երկու բնագրերի յուրաքանչյուր համեմատող։

Ժամանակագրության A բնագիրը ևս մեզ չի հասել իր սկզբնական վիճակով։ Այստեղ հանդիպում ենք սովորական ընդմիջարկության։ Վերջինս գտնվում է «ՅԽԱ Մաշդոց ճգնաւորական հանդիսիւ պայծառանայր» և «ՆԺԷ թուին շինեցան Հաղբատ և Սանահինն...» հատվածների միջև։ Այն սկսվում է «ՇԽԲ թվին սկիզբն շրջանի Շ եկին» և վերջանում «ՇՂԷ թվին շինեցաւ Գանձակ» հատվածներով, ընդամենը հինգ վկայություն, որոնք ավելացվել են հետագայում։

Առայժմ դժվար է ասել, թե ով է եղել ժամանակագրության հեղինակը, բայց եթե այն եղել է մեկ անձնավորություն, ապա պետք է ապրած լինի XIII դարի առաջին կեսում, որը երևում է նրա վերջին վկայությունից, ուր խոսելով 1236 թ. Կայեան, Լոռի, Անի և այլ վայրերի գրավման, ավերումների ու կոտորածների մասին, որպես ժամանակակից ավելացնում է. «և ով կարէ պատմել զնեղութիւնս և զտառապանս, զոր էհաս մեզ յանողորմ ազգէն նետողաց...»։

Թե ի՞նչ աղբյուրներ է օգտագործել ժամանակագրության հեղինակը, նույնպես դժվար է որոշակի բան ասելը։ Ճիշտ է, նրա մի քանի վկայություններն այս կամ այն ձևով գտնում ենք Սեբեոսի, Ասողիկի, Մ. Ուռհայեցու երկերում, սակայն վերջիններիս և ժամանակագրության վկայությունների նմանությունը կայանում է նրանում, որ վերոհիշյալ բնագրերում պատմվում է միևնույն նյութը, տարբեր մանրամասնություններով, ծավալով և տարբեր

[1] Վերոհիշյալ երեք բնագրերի մեջ ամենից հին (1342 թ.) և լավ պահպանված օրինակը A բնագիրն է, որի սկզբնական մի ընդարձակ հատվածը, ինչպես վերևում նշեցինք, բացակայում է №№ 1495 և 3260 բնագրերում։ Բաց թողնված մասը կազմում է Հ. Սարկավագի տոմարական աշխատության մեջ հետաքրքրող հատվածի օրգանական մասը։ Նկատի ունենալով այդ հանգամանքը, ենթադրում ենք, որ № 1973 (A) տարբերակը շատ ավելի մոտ է Հ. Սարկավագի սկզբնագիր օրինակին, քան մնացած երկու տարբերակները։

տարեթվերով, եթե միայն այդպիսիք կան։ Ուստի հիմք չունենք վերոհիշյալ հեղինակների աշխատություններն առաջարկվող ժամանակագրության անմիջական աղբյուրը համարելու։

Սամ. Անեցու ժամանակագրության հնագույն երկու ընդօրինակությունների (№ 5619[1] և № 1897[2] ձեռագրեր) և առաջարկվող ժամանակագրության համեմատությունը ցույց տվեց, որ վերջինիս առաջին կեսի վկայությունները գտնում ենք Սամ. Անեցու ժամանակագրության մեջ։ Դեմ առ դեմ դնում ենք շատերից միայն մի քանիսը։

| Սամ. Անեցու ժամանակագրութիւն<br>№ 5619 տարբերակ | Անանուն ժամանակագրութիւն<br>A տարբերակ |
|---|---|
| 1. էջ 73բ «ՇԿԷ (ԺԴ)» Աջ աստուածային երեւեցաւ ի սուրբ Մատրանն, այլեւ նշան ահեղ հրաշափայլ եւ արիւնատեսակ յերկինս։[3] | 1. էջ 24 «Ի ԺԴ թվականին աջ աստուածային երեւեցաւ ի սուրբ Մատրանն եւ նշան ահեղ հրաշափայլ եւ արիւնատեսիլ յերկինս»։ |
| 2. էջ 74ա «ՇՁԴ (ԼԱ) դարձեալ յուզեր խռովութիւն վասն ժողովոյն Քաղկեդոնին»։[4] | 2. էջ 24 «ՅԼԱ թուականին յուզէր խռովութիւն վասն ժողովոյն Քաղկեդոնին»։ |
| 3. էջ 75բ «ՈԻԷ (ՀԴ) «Աստանաւր ի բաց կացին Վիրք ի միաբանութենէ Հայոց հաւանեալք ազանդոյն Քաղկեդոնի ի ձեռն Կիւրիոնի՝ վրաց առաջնորդի, առ որ բազում թուղթս մագթանաց գրեաց հայրապետն Հայոց Աբրահամ։[5] | 3. էջ 24 «ՀԴ թվականին ի բաց կացին Վիրք ի միաբանութենէն Հայոց ի ձեռն Կիրոնի»։ |
| 4. էջ 82ա «ՉՀՁ (ՄԻԴ) Տէր Ներսէս ի Նիգ գաւառէ, ի դեղջէ Ծղխպատրուշա. սա էր որդի կնոջ այրւոյ, որ շրջէր մուրացիկ առ դրունս կաթողիկոսարանին, սնուցեալ մեծաւ յուսով զորդին, որ եւ եհաս յաստիճան հայրապետութեանն արժանապէս»։[6] | 4. էջ 24 «ՄԻԴ թուականին տէր Ներսէս ի Նիգ գաւառէ ի դեղջէ Ծղապարուշա. սայ էր որդի կնոջ այրոյ, շրջէր մուրացիկ առ դուռն կաթողիկոսին եւ սա եհաս յաստիճան հայրապետութեանն»։ |
| 5. էջ 94ա «ՈԺԲ (ՇՄԹ) Սմբատ Մագիստրոս շինեաց զհր[ե]շտակաբնակ եւ զփափագատենչ վանքն, որ Բագնայր յորջորջի, ժողովետղ (sic) արանց աստուածայրնոց»։ | 5. էջ 25 «ՆՄԹ. թուին Սմբատ Մագիստրոսն շինէ զԲ[ա]գնայրն տուն աստուծոյ»։ |

1 Սամ. Անեցու ժամանակագրությունը գտնվում է № 5619 ժողովածուի 6ա—107ա էջերում։ Հետագա էջերի, 108բ—118բ, դեպքերը ավելացրել են ուրիշները, հետագայում, Սամ. Անեցու ժամանակագրությունը № 5619 ժողովածուի մեջ ընդօրինակելուց հետո։ Սույն ընդօրինակությունը տեղի է ունեցել 1176 (ՈԻԵ) թվականին, Կամրջաձորում, Ավետիքի կողմից (էջ 108ա)։ Սամ. Անեցու ժամանակագրության աղյուսակը այս տարբերակում վերջանում է Հայոց ՈԻԵ (1176) թվականով, իսկ Սամվելի վերջին վկայությունը վերաբերվում է 1173 թվականին։

2 Սամ. Անեցու ժամանակագրությունը գտնվում է № 1897 ժողովածուի 1ա—75բ էջերում։ Ընդօրինակությունը կատարվել է 1178 թվականից հետո, XII—XIII դարերում։

3 Համտ. Ձեռ. № 1897, էջ 48ա, և «Ս. քահանայ Անեցւոյ հաւաքմունք ի գրոց պատմագրաց», էջ 75։

4 Համտ. Ձեռ. № 1897 ձեռագիր, էջ 48բ, հրատարակ. էջ 76։

5 Համտ. № 1897, էջ 59ա և հրատ. էջ 79։

6 Համտ. № 1897, էջ 56ա, հրատ. էջ 59։

*Այսպես՝ երկու բնագրերի համապատասխան վկայությունները ծածկում են իրար սկսած «ի ԺԴ թվականին աջ աստուածային երևեցաւ ի սուրբ Մատրանն...» հատվածից մինչև «ՈԺԷ թուին շարժն Երզնկային» հատվածը։*

*Վերոբերյալ համեմատությունները ցույց են տալիս, որ երկու բնագրերի մատնացույց արված հատվածները ծածկում են իրար, հետևապես առաջարկվող ժամանակագրության հեղինակը, ամենայն հավանականությամբ, որպես աղբյուր, օգտագործել է Ս. Անեցու ժամանակագրությունը և կամ այս երկու բնագրերի համապատասխան հատվածները պատկանում են մի երրորդ, մեզ անհայտ բնագրի։ Այս կապակցությամբ արժե նշել, որ այդ նույն տեղեկությունները անցել են ժամանակագրության այլ հատվածների։*[1]

*Վերջին վկայությունները, որոնք վերաբերում են հեղինակի ժամանակակից դեպքերին, չնայած համառոտ են, բայց խիստ արժեքավոր, ինչպես դեպի Անդրկովկաս մոնղոլների առաջին արշավանքին և նրանց կողմից Գանձակի, Անիի գրավման վերաբերող վկայությունները։*

*Սույն ժամանակագրության ներկա հրատարակության համար հիմք ենք ընդունել նրա* A *տարբերակը, իսկ* Б *տարբերակի և № 2678 ձողովածուի 337-րդ ր էջում (*Г *տարբերակ) գտնվող մի փոքրիկ հատվածի տարընթերցվածքները դրել ենք տողատակում։*

---

[1] *Տես և համեմ. Ձեռ. №№ 7040 (էջ 287ա—290ա), 1127 (էջ 39ա—43բ), 8509 (էջ 110ա—121ա), 015 (էջ 59բ)։*

## I.

## ՅՈՀԱՆՆՈՒ ՔԱՀԱՆԱՅԻ[1] 195ա

Ոչ է մեզ գիտել զժամս և զժամանակս, զոր հայր եդ յիւրում
իշխանութեան, ուսաք ի գրոց ոչ էթէ իբր արգեաւք գաշխարհ
ստուգած սկսաւ գործել, այլ զի արար. և ոչ յայնմանէ կամ անտի
զթիւ ժամանակաց, այլ յորմէ ելին նախաստեղծքն ի դրախտէն,
ապա ոչ ումն զսկիզբն ժամանակց մեր է գիտել, թէպէտ և ար-
ւեստիւ դիպողագոյնս ինչ կանոնեմք։

Նորին:

Եթէ կամիցիս յելանելոյն Ադամայ ի դրախտէն գիտել զժա-
մանակն՝ կալ ՐՃԼԸ (5138) և զամս որ ի ծննդենէ փրկչին ի վե-
րաբեր։ Եւ մի հաւատար որոց ասեն՝ զլինելութիւնն աշխարհի գի-
տել զժա ‖ մանակ, զի գիտէ միայն որ ստեղծն. իսկ մեզ յայտնի 195բ
թերես է յետ յանցանաց մարդւոյն ժամանակն ըստ մեծին
Մովսէսի, որ համարի մինչև յինքն ամս ՎՋԻԹ (3729) ըստ և-
թանասնիցն թարգմանութեան, և մի որոց ասենն ՐՆԻ (5420),
լինել ի սկզբանէ աշխարհի մինչև ի ծնունդ կենարարին, հաւա-
տասցես. զի թէպէտ և յաւելեալ թվոցն ըստ դիպարանելոյ այն-
պէս կշռեալ հանդիպեցուցանէ զհինգ հարիւրեակն ընդ կրուկն
դարձուցանել, այլ ոչ այնպէս ստուգիւ վարկանելի է զչափ ժա-
մանակացն և ոչ աւելի քան զդրեալսն հոգւով ստուծոյ իմանալ
կամ ասել պատշաճ է, քան զի մանգագունից ոմանց և աննշա-
նից արանց թուեցաւ հաճոյ ըստ անըրջից իւրն տեսութեան ար-
ւեստակել այնպէս։

Իսկ անուանիք և բազմահմուտք, որ եար և աշխատասէր
հարցն ժողովեցին զյայտնի ժամանակագրութիւնն այսպէս՝ յԱ-
դամա[յ] մինչև ի փոխիլն Ե ‖ նովքա[յ]՝ ամք ՌՆՁԷ (1487)։ Ի 196ա
փոխմանէն Ենովքա[յ] ի ջրհեղեղն՝ ամք ՁԾԷ (757)։ ՅԱդամայ
ի ջրհեղեղն՝ ՍՄԽԲ (2242)։ Ի ջրհեղեղէն ցաշտարակն՝ ՍՁԿԷ (2767)։
Ի ջրհեղեղէն ի ծնունդն Աբրահամու՝ ՋԽԲ (942)։ Անտի յելսն
յԵգիպտոսէ ՇԵ (505)։ Անտի մինչև ցՍողոմոնի չորրորդ ամն և
ցտաճարին շինութիւնն՝ ամք ՆՁ (480)։ Անտի մինչև ցնորոգումն
տաճարին ի Զաւրաբաբելէ և ի Դարեհի Բ (2) ամն՝ ՇԺԲ (512)։
Անտի մինչև ի ծնունդն Քրիստոսի՝ ՇԺԸ (518)։ Միանգամայն
ՐՃՂԸ (5198)։ Անտի մինչև ի հայ թուականին գիր ՇԾԳ (553),
ինն ամաւ զկնի հինգ հարիւրեակն եղաւ, ի ծննդենէն յետ ՇԿԲ
(562) ամաց։ Ի մկրտութենէն մինչև ցԻ (20)-ամեակն Կոստան-

*դիանոսի՝ ամք Յ (300)։ Անտի մինչև ցհայ թուականն՝ ՄԻԴ (224)
և ի քսան ամէն Կոստանդիանոսի մինչև ցՄ (200) ևակին գիւտ
յԱնդրէասա՝ ամք ԻԳ (23)։ Անտի մինչև ցհայ թուականն՝ ամք
Մ (200)։*

*Ոյք ասեն՝ ի լինելութենէ աշխարհի մինչև ի ծնունդն Քրիս-
տոսի՝ ամք ՐՆԻ (5420) լինել, մեծապէս փրթեն յաւելով զտգի-
տութեանն կարծիս ա ‖ ռանց ճշմարտութեան, վասն զի յարար- 196բ
չութեննէն զժամանակսն ոչ ոք կարասցէ գիտել ի մարդկանէ,
բաց յարտաքսելոյն Ադամա[յ] ի դրախտէն։*

*Ի քսան ամէն Կոստանդիանոսի մինչև ի դիր Մ (200) եկին,
ԻԳ (23) ամք են։ ՁԱ (81) թուականին հոռոմոց, յերկրորդ ամէն
Փիլիպպոսի մինչև ի Ի (20) ամեակն Կոստանդիանոսի, և անտի
ԻԳ (23)՝ լինի ՃԴ (104), Մ (200) Անդրէասին՝ միանգամայն ՅԴ
(304) մինչև ի հայ թուականն։ Հերովդէս այլազգի՝ ամս ԼԵ (35).
ի սորա ԼԲ (32) ամին ծնանի Քրիստոս։ Ի ծննդենէն Քրիստոսի
մինչև ցսուրբ Գրիգոր՝ ամք ՅԴ (304)։ Ի սրբոյն Գրիգորէ մինչև
ցսուրբն Սահակ՝ ամք ՃԸ (108)։ Ի սրբոյն Գրիգորէ մինչև ի
հայ թվականն՝ ամք ՄԾԲ (252). մինչև ի տէր Մուսէս, կաթո-
ղիկոսք ԻԴ (24), յորո տասն ամի թուականն հայոց եղաւ։ ՅԱ-
դամայ ի հայ թուականն ԲՉԾԲ (5752)։ Ի ջրհեղեղէն ի հայ
թուականն ՎՇԺ (3510)։ ՅԱբրահամէ ի հայ թվականն ՎՇԿԸ
(3568)։ Ի Մովսէսէ ի հայ թվականն ՍԿԳ (2063)։ Ի Սողոմոնէ
ի հայ թվականն ՌՇԿԳ (1563)։ Յերկրորդ շինութենէն ի հայ
թվականն ՈՁԸ (688)։ ‖ Ի ծննդենէն Քրիստոսի ի հայ թվականն 197ա
ՇԾԳ (553)։ Ի Թադէո[սէ] ի հայ թվականն ՇԺԲ (512)։ Ի ծնըն-
դենէն Քրիստոսի ի հայ թվականն [ՇԾ]Գ։[2] ՅԱռաքելոյն Թադէոսէ
ի սուրբն Գրիգոր ՄԿԶ (266)։ Ի ծննդենէն Քրիստոսի ի Նիկիա
ժողովն՝ ամք ՅԻԳ (323)։ Անտի ի Կոստինուպաւլսի ժողովն՝ ամք
ՀԳ (73). Անտի Եփեսոսի առաջին ժողովն՝ ամք Ծ (50)։ Ան-
տի ի Քաղկեդոնի ժողովն՝ ամք Իէ (27)։ Անտի ի Դվնա ժողովն
ի հայք՝ ամք ԼԶ (36)։ Անտի ի քաղաքի ժողովն, ի սուրբ կա-
թողիկէ՝ ամք Ղ (90), յորում որոշեցին զՅոհան Տիկորեցի. և էր
թվականն հայոց ՃՀԳ (173)։ Եւ յեւիցն ի Վիրապէն սրբոյն Գրի-
գորի՝ ամք ՇԼԳ (533)։ Եւ ի թարգմանութենէ հայոց գրոյս՝
ամք Յ (300)։*

*Յառաջին թվականին սրբոյն Յիզտբուզիտ վկայեաց, Հոռ-
մայեցոց Յուստիանոս, Պարսից Խոսրով, Հայոց մարզպան Մէժէժ,
կաթողիկոս Մուսէս. Յուստիանոս և Խոսրով հաշտեալ և ծաղկէր
ուխտ եկեղեցւոյ։ Ի տասն թուականին եղաւ հինգ Ճ (100) եակն։*

*Ի ԺԱ (562) թվականին Իոռն պատառեաց զկանոն զատկին։*

---

*36-րդ տողից առաջ Б-ն ունի վերնագիր՝ Թագաւորն Ուստիանոս և Խոսրով։
36 Б Յառաչին, Г ամի թվականին, Б Յեզտիբուզտ, Г Յիզիտբու զիտ, Б հռոմայեցոց, Г
Հռոմոց։ 38 Б և կաթուղիկոսն, БГ տէր Մովսէս, Б յայնմ ժամանակին Յուստիանոս և
Խոսրով։ 39 Б եկեղեցեաց, Г եկեղեցոյ, Б Ի տասն թուականին եղաւ հինգ Ճ-եակն չիք։
40 Б Ժ թվին փխ. ԺԱ թվականին, Б ի Իռոն պապառեաց։ 40-րդ տողի փոխարեն՝ Г ի
ԻԴ ամի Խոսրովու Պարսից և ԼԴ Յուստիանոսի և ի չորրորդում ամի Ներսէսի Շինողի և
ի նահատակութեանն Յուզտբուզիտ վկայի սահմանեցին զխաչեցարն և տօմար։*

Ի ԺԴ (565) Թվականին աջ աստուածային երևեցաւ ի սուրբ ‖ Մատրանն և նշան անեղ, հրաշափայլ և արեւնատեսիլ յերկինս։ 197ր

ՑԼԱ (582) Թուականին յուղէբ խռովութիւն վասն ժողովոյն Քաղկեդոնի։

ԼԷ (588) Թվականին Հոռիան Պարսից զաւրավոր առ զԵրուսաղէմ։

ՀԳ (624) Թվականին ի բաց կացին Վիրք ի միաբանութենէն Հայոց ի ձեռն Կիրոնի։

ՀԶ (627) Թուականին մեծ պատր[ի]ա[ր]գն Կոմիտաս շինէ զսուրբ տիկնոջն Հռիփսիմեա[յ] զվկայարանն։

ՁԷ (638) Թուականին Հերակլ ժողով արար ի Կարնո քաղաքն, կոչէ և զԵզր, որ աղխտարար հաւանեցաւ։

ՁԸ (639) Թվականին ելն տաճկաց ի Հայս։[3]

ՃԲ (653) Թվին հայրապետն Ներսէս շինէ զսուրբ Գրիգոր և զսուրբ Սարգիս ի Դվին և զՎիրապն։[4]

ՃԺ (661) Թվականին խաչ երևեցաւ ի Վարդ։[5]

ՃԺԸ (669) Թուականին հայրապետն Անաստաս կոչէ առ ինքն զմեծն Անանիա, անշարժ կարգել զտումարս մեր։ Եւ արարեալ մեծաւ ջանիւ և իբրև կամեցան ժողով առնել վախճանի սուրբն Անաստաս։[6]

ՃՀԱ (722) Թվականին սուրբ իմաստասէրն Յոհան Ուձնեցին պայծառ կարգաւք զարգարեաց զեկեղեցի. երթեալ առ ամիրապետն դարձաւ պատուով։[7]

‖ ՄԻԳ (774) Թուականին տէր Եսայի ի Նիգ գաւառէ, ի 108ա
գեղջէ Եղապարուշա. սայ էր որդի կնոջ այրո, շրջէր մուրացիկ առ գուռն կաթողիկոսին և սա եհաս յաստիճան հայրապետութեան։[8]

ՄԼԷ (788) Թուականին տէր Սողոմոն Մաքենացւոց։[9]

ՄԽԵ (796) Թուին Սահակ և Յովսէփ կատարեցան վկայութեամբ։[10]

ՄԾԵ (806) Թվականին սով սաստիկ։[11]

ՅԽԱ (892) Մաշղոց ճգնաւորական հանդիսիւ պայծառանայր։[12]

ՇԽԲ (1093) Թվին սկիզբն շրջանի Շ (500) եկին։

---

1 Б և (ի ԺԴ.), աստուածաին։ 3 Б ԼԱ փխ. յԼԱ, Թվականին, խռովութիւնն։ 5 Б Թվին, զօրավարն, էառ Երուսաղէմ։ 6-րդ և 7-րդ տողերի արանքում Б Ի Թվին Կ երևեցաւ Մահմէտն, որդի Ապտրահմանին։ 7 Б յՀԳ. Թվին, միաբանութենէ, Г Հայոց ՀԳ Թվին. միաբանութենէն չիք։ 8 Г ի ձեռն Կիրոնի չիք։ 0 Б յՀԶ. Թվականին, պատրիարքն։ 10 Б զսուրբն, տիկնոջն չիք, Հռիփսիմեաի վկայեարանն։ 11 Б յՁԷ. Թվականին, Г Թվին,˙ Հերակլ յոյն, БГ Կարնոյ։ 13—15-րդ տողերը Г չիք։ 13 Б յՁԸ. փխ. ՁԸ։ 14 Б յՃԲ. փխ. ՃԲ, Նէրսէս։ 15 Б Վիրապան։ 16 Б Թվին, Г ՃԱ. փխ. ՃԺ. БГ խաչն։ 17—23-րդ տողերը Г չիք։ 17 Б Թվին, 18 Б Անանիայ, զտոմարս։ 20 Б սուրբն չիք։ 21 Б Թվին, իմաստնասէրն, Յոհան Օձնեցին։ 22 Б կարգօք, եկեղեցիք, երթալ։ 24—27-րդ տողերը Б չիք։ 27 Г Թվին, ի Մաքենոցաց։ 27—29-րդ տողերը Г չիք։ 28 Б ՐՃԽԵ Թվին, Յովսէփ։ 30-րդ տողը Б չիք։ 31 Б ՅՃԽԱ Թվին,Մաշտոց Г ՅԽԱ Թվին։ 33-րդ տողը ГБ չիք։

ՇԾ (1101) թուին պատառումն զատկին։

ՇՀԸ (1129) թվին փոխեցաւ ի Քրիստոս մեծ վարդապետն Սարկաւագն։[13]

ՇՁԸ (1139) թվին շարժմամբ կործանեցաւ Գանձակ։[14]

ՇՂԷ (1148) թվին շինեցաւ Գանձակ։

ՆԺԷ (968) թուին շինեցան Հաղբաթ և Սանահինն։ ԺԱ (11) ամաւ յառաջ շինեցաւ Հաղբատ ի կնոջէն Աշոտոյ Շահինշահի[15] և ապա Սանահինն։[16]

ՆԻԸ (979) թագաւորն Սմբատ պարսպէ զԱնի և հինգ արկանէ կաթողիկէին։[17]

ՆԾԷ (1008) հինն Գագկա[յ]՝ հատըրմիտէ շինէ զկաթողիկէն յԱնի։[18]

ՆԾԹ (1010) թուին Սմբատ Մաքրաստրոսն շինէ զԲգնայրն տուն աստուծոյ։

ՇԺԳ (1064) թուին Ալփասլանն առ զԱնի։[19]

‖ ՇԽԲ (1093) թվին սկիզբն շրջանի Շ. (500) ևկին։ 198բ

ՇՀԱ (1122) թվին Դաւիթ թագաւորն առ զՏփխիս։[20]

ՇՀԳ (1124) թուին թագաւորն Դաւիթ առ զԱնի, Առնու ի նոյն ամի զԴազ։[21]

ՈԳ (1154) թվին Դեմետրէ թագաւորն Ափխազաց էհար զՍալտուխն, զտէրն քաղաքին Կարնոյ, յԱնո[յ] դրանն և կալաւ։

ՈԷ (1158) թվին վախճանի Դեմետրէ և զկնի Բ (2) ամսոց մեռանի որդի նորա Դաւիթ և թագաւորէ կրսեր որդի նորա Գաւրգի։

ՈԺ (1161) թվին Գաւրգի առ զԱնի.[22] եւ էհար զՇահիարմէնն, զտէրն Խլաթա[յ] ի դրանն Անոյ.[23]

ՈԺԷ (1168) թուին շարժն Եզնկային։

ՈԻԹ (1180) թվին վախճանի Գաւրգի և թագաւորէ Թամարն։[24]

ՈԼԶ (1187) թվին զԵրուսաղէմ էառ Թուրքն։[25]

ՈԽԳ (1194) թուականին Թամարն կոտորեաց զԹուրքն սաստիկ յոյժ ի դուռն Շամքորո[յ]։[26]

ՈԽԶ (1197) թվականին խանգարեցին զզատիկն և ընդ աստուածասպանսն տաւնեցին այլ ազգքն։ Ի գլուխ կատարման աւուրց յարութեան, բերին յեղբարց մերոց զաւետիս լուցման կանթեղի ի գերեզմանն ի մեր զատկին և յամաւթ եղեն հակառակողքն։

---

1—5 տողերը Б չիք։ 2 Г հանգեաւ փխ. փոխեցաւ։ 3 Г Սարկաւարգ։ 4—5 տողերը Г չիք։ 0 Б ԳճԺԷ թվին, Г ՆԺԵ թվին փխ. ՆԺԷ թուին, Б շինեցան չիք, Հախպատ և Սանահին, Г Հաղբատ և Սանահին, Г Բայց Ժ ամաւ փխ. ԺԱ. ամաւ։ 7 Б առաջ, Г շինեաց զՀաղբատ, Б Հախպատ, Г կինն փխ. ի կնոջէն, Б Աշոտայ, Г Շահանշահի։ 8 Б Սանահին, Г և ապա զՍանահինն վասն արևշատութեան որդոց իւրոց Սմբատայ, Գուրգենայ և Գագկայ։ 10 կաթուղիկէին։ 11 ՆԾԷ թվին, Գագկայ հատրամիտէ, կաթու[ղ]իկէն։ 13 թվին, Մաքրաստոսն։ 15 ՇԺԳ-ին թվին, առնու։ 16 թվին չիք։ 17 էառ։ 18 ՇՀԳ թվին փխ. ՇՀԳ թուին, Գաւիթ թագաւորն, էառ։ 20 Գէմէտրէ։ 21 յԱնու։ 22 Գէմէտրէ, զկ[ն]ի, ամաց փխ. ամսոց։ 23 կրտսեր, Գորկի։ 24 Գորկի, էառ, Շահիարմանն։ 25 Ղլաթայ, դրան յԱնոյ։ 26-րդ տողը չիք։ 27 ՈԺԹ փխ. ՈԻԹ, Գորկի։ 30 թվին։ 31 քաղաքին Շամքորոյ։ 32 թվին։ 33 տօնեցին, ազգն։ 34 յարութեանն, եղբարց: 35 կանթեղին, ամօթ, հակառակորդքն։

ՈԽԷ (1198) թվին ‖ Զաքարիա և Իվանէ, որդիք մեծին 199ա
Սարգսի առին զամուրն Անբերդ:[27]

ՈԿԹ (1220) թվին եկն Թաթարն առաջին:[28]

ՈՀԴ (1225) թվին եկն սուլտանն ի Խորասանա և եհար զզաւրս Վրաց ի Գառնի և քարահոս արար:[29]

ՈՁ (1231) թվին առաւ Գանձակ քաղաք ի Թաթարէն և կոտորեցաւ անչափ մարդ և կանայք և մանկունք, գերեցան քրիստոնեայք և պարսիկք առհասարակ:[30]

ՈՁԵ (1236) թուին անառիկ բերդն, որ կոչի Կայեան և Լաւռէ քաղաք և Անի մայրաքաղաք Հայոց և այլ բնաւ աշխարհքս Հայոց, գաւառք և անառ բերդորեայք և քարայրք և անմուտ մայրիք ի միում ամ առան.[31] և կոտորեցան անհամար և անթիւ արք և կանայք և մանկունք. և ով կարէ պատմել զնեղութիւնս և զտառապանս, զոր էհաս մեզ յանողորմ ազգէն Նետողաց, որպէս ասաց սուրբ հայրապետն Ներսէս, տեսեալ հոգով ակամբ ի ժամ վախճանի իւրոյ, ասէ՝ քակեսցին հայք ի հիմանց յազգէն Նետողաց, զատարկասցին ճանապարհք բազմագնացք առ ի ‖ չգոյ 199բ
մարդկան. և այնպէս եղև որպէս հրամայեաց:[31]

1 և այամ ամի փխ. ՈԽԷ թվին, Զաքարիայ և Իւանէ: 3 առաջինն: 4 սուլթանն, էհար: 5 զզօրս, Գառնի, արար բազումս: 6 Թաթարն առաւ Գանձակ քաղաքն փխ. առաւ, Գանձակ քաղաք ի Թաթարէն: 7 և (կանայք) չիք: 7 քրիստո[ն]եայք: 8 պարսիկ: 9 թվին: 10 Լոռէ քաղաքն, յԱնի մայրաքաղաքն, և այլ բնաւ աշխարհքս Հայոց չիք: 11 բերդօրեաք, քարայ[ր]ք: 12 առան փխ. առան: 15 Նէրսէս, հոգւոյ: 16 վաղճանի իւր: 17 ճանապար[հ]ք, բազմագնացք, գոյլ փխ. չգոյ: 18 և այնպէս եղև որպէս հրամայեաց չիք:

## Б ՏԱՐԲԵՐԱԿԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*ԹՃ (1451) թվին Օսմանի որդին Մուրատ բէկն մեռաւ. և* 246ա *նս[տ]աւ ի աթոռն իւր որդին, սուլթան Մահամատն փոխանակ հօրն։*[32]

*Ի ՋԱ (1452) թվին սուլթան Մահտմատն ի ՚Գօղօզ բերդն զուգեց։*[33]

*Ի թվին ՋԲ (1453)-ին Սու[լ]թան Մահամատն էառ զՍտամբօլ.*[34] *բազում զօրօք ծօվով և ցամաքօվ գնաց, յուլիս ամսուն զՍինօպ էառ և օգոստոսի ամսուն զՏրապիզոն էառ։*

*Թվին ՋԺԱ (1462)-ին սեպտեմբերի ամսուն էառ Միտիլլին իւր երկրօքն։*[35]

*Թվին ՋԺԷ (1468)-ին այս սուլդան Մահամատ գնաց ի Ղաման բազում զօրօք, զերկիրն ամէն էառ. և զմարգն սուրկուն եբեր զՍտամբօլ։*[36]

*Թվին ՋԻ (1471)-ին խունդքարն գնաց բազում զօրօք ծօվով զՆգրպօզ*[37] *էառ։*

*Թվին ՋԻԴ (1475) Ահմատ փաշան, որ սաեն անունն Կէտուկ, աւել անունն է, գնաց զէՃ (700) զաարղով*[38] *ի վերա[յ]ի ծովն և զԿաֆայն էառ իւր երկրօքն Գալըխլիօքն։ Եւ այսպէս օրըստօրէ յառաջ եկեալ աստուծոյ կամեցողութեամբն աշխարհս յամէն տիրեցին, արևմտման մլքեցան ազգն տաճկաց և թագաւորեցին մի ընդ միոյ. և քրիստոնեա[յ] ազգն եղեւ հարկատու և եղան ցիր և ցան, որպէս ասէ Երեմիայ մարգարէն ի վերայ Երուսաղէմի՝ իշխանք աշխարհիս եղեն հարկատու։*[39]

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Բնագրում խորագիրը գրված է կարմիր թանաքով։

2. Տարեթիվը ջնջված է, երեում է միայն վերջին՝ «Գ» թիվը։ Բնագրում «ի ծննդենէն Քրիստոսի ի հայ թվականն ՇՄԳ» հատվածը կրկնված է։

3. Հեղինակը նկատի ունի արաբների արշավանքը դեպի Հայաստան։ Այս մասին տես ակադ. Հ. Մանանդյան «Մանր հետազոտություններ», Երևան, 1932 թ., էջ 23—28։

4. Խոսքը վերաբերում է Ներսես Գ. Իշխանցուն, որը հայտնի է նաև Շինող անունով։ Դվինը գրավելիս արաբներն այրել էին նաև եկեղեցիները, ուստի Ներսես Շինողի առաջին հոգսը լինում է վերաշինել Ս. Սարգսի եկեղեցին Դվինում և Գ. Լուսավորչի եկեղեցին Խոր Վիրապում։ Հմմտ. Ս. Անեցի (էջ 83)։

5. Այդ մասին ավանդությունն այսպես է պատմում՝ Հռիփսիմե կույսը վզից կախված ուներ այն խաչափայտի կտորը, որի վրա խաչվել էր Քրիստոսը։ Հռիփսիմեն իր ընկերուհիների հետ փախչելով Հայաստան և վախենալով հալածանքներից, խաչափայտի այդ կտորը թաքցնում է Վարագի գագաթում, Վանի հանդեպ, իսկ ինքը փախչում Վաղարշապատ։ Հետագայում մոռացվում է խաչափայտի տեղը։ Մի օր, գիշեր ժամանակ, երբ ճգնավորներից Թոդիկը և Ցովելը աղոթք էին անում, նկատում են, որ Վերին Վարագի եկեղեցու վերևում բարձրացող Գալիլիա կոչվող քարաժայռի գագաթի վրա լուսավոր տաճար է երևում։ Այդ մասին հաղորդում են յուրայիններին։ Պարզվում է, որ խաչափայտը աստվածային զորության շնորհիվ ինքն իրեն հայտնաբերել է։ Տեղի են ունենում կրոնական մեծ տոնախմբություններ, Ներսես Շինող կաթողիկոսը Վարագա խաչի երևման օրը հավերժացնելու նպատակով հայ եկեղեցու մեջ հաստատում է տարեկան տոն։ Այդ տոնը հայ եկեղեցին հիմա էլ է տոնում, որն ընկնում է սեպտեմբերի 25-ից մինչև հոկտեմբերի 1-ը տևող յոթ օրերից մեկում։

6. Անաստաս Ա. Ակոռեցին մահացել է 667 թ. («Ազգապատում», էջ 749)։

7. Հմմտ. «Յով. կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1912, էջ 100—103, «Պատմութիւն Հայոց արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ», էջ 63—64։

Գոյություն ունի կարծիք, որ Հով. Օձնեցին ամիրապետի մոտ ուղևորվել է «720-էն առաջ, կամ թէ ըսել Օձնեցիի աթոռ բարձրանալէն քիչ ետքը»։ («Ազգապատում», էջ 821)։

8. Հմմտ. Հով. Դրասխանակերտցի, էջ 107—108։ «Ստ. Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական», Ս. Պետերբուրգ, 1885, էջ 105։ Համաձայն Օրմանյանի Եսային կաթողիկոս է եղել 775—788 թ. թ. («Ազգապատում», էջ 894)։

9. Սողոմոն Ա. Գառնեցի, ըստ Օրմանյանի կաթողիկոս է եղել 791—792 թ. թ. («Ազգապատում», էջ 914)։ Կ. Գանձակեցու հաղորդմամբ մի տարի կաթողիկոս մնալուց հետո մահացել է, որովհետև էր «ծերացեալ յոյժ» (էջ 70—71)։

10. Մանրամասնությունները տես «Ազգապատում», էջ 920—921։ Ս. Անեցին հիշում է սպանության օրը. «յարաց ի ժԵ (=15) յաւուր Ե. շաբթու» (էջ 90։ Հմմտ. Կ. Գանձակեցի, էջ 71)։ Ըստ այնմ նահատակությունը կատարվել է 808 թ. հոկտեմբերի 19-ին, հինգշաբթի։

11. Հմմտ. Ս. Անեցի, էջ 91, Կ. Գանձակեցի, էջ 71։

12. Հով. Դրասխանակերտցու համաձայն Մաշտոց Ա. Եղիվարդեցին կաթողիկոս եղել է «ամիսս եօթն միայն» (էջ 183), Օրմանյանի հաշվումներով 897 թ. հունիսի 18-ից մինչև 898 թ. հունվարի վերջերը («Ազգապատում», էջ 1016)։ Բնագրում «հանդիսիւ» բառի «հան» վանկը կրկնված է։

13. Հմմտ. Ս. Անեցի, 129։ Վ. Արևելցին Հ. Սարկավագի մահը նշում է 568 (=1119) թվին («Մեծին Վարդանայ Բարձրբերդցւոյ Պատմութիւն Տիեզերական», Մոսկվա, 1861, էջ 159)։ Սակայն Կոստանյանցը Հ. Սարկավագի մահը նշում է 1139 թ. (տես «Ազգագրական Հան-

դէսա, 1906, գիրք XIV, էջ 106)։ Տես և հմմտ. Մ. Աբեղյան «Հայոց հին գրականության պատմություն», գիրք II, Երևան, 1946, էջ 533—536։

14. Հմմտ. Կ. Գանձակեցի, էջ 108, Վ. Արևելցի, էջ 162։ Ստ. Օրբելյանը նշում է 1138 թվին («Պատմութիւն նահանգին Սիսական», Թիֆլիս, 1910, էջ 340)։

15. Բնագրում «Շահինշահի» ձևով։

16. Г տարբերակն այստեղից ընդհատվում է։ Մնացած տարընթերցվածքները վերաբերում են Б-ին, ուստի և Б տառը տողատակ չենք նշի։

17. Տես և հմմտ. Ասողիկ, էջ 187։

18. Տես և հմմտ. Ասողիկ, էջ 256։

19. Հմմտ. Մ. Ուռհայեցի «Ժամանակագրութիւն», Վաղարշապատ, 1898, էջ 144—150, «Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ», Վենետիկ, 1901, էջ 133—134, Ս. Անեցի, էջ 112, Կ. Գանձակեցի, էջ 86, Վ. Արևելցի, էջ 135—136։ Ս. Անեցին Անիի գրավումը նշելով Հայոց ՇԺԴ (=1065) թ. ավելացնում է «ի տօնի Տիրամօրն յաւուր երկշաբթոջ»։ Եվ իսկապես, այս տեղեկությամբ Անիի գրավումը տեղի է ունեցել 1065 թ. օգոստոսի 16-ին, երկուշաբթի, իսկ պաշարման սկիզբը համարում են հուլիսի 21-ին («Ազգապատում», էջ 1264)։ Քաղաքի պաշարման տևողությունը նույնքան է նշում նաև Կ. Գանձակեցին. «... զի պաշարեաց (Արփ Արսլանը— Վ. Հ.) զաւուրս քսան եօթն» (էջ 86)։

20. Հմմտ. Ուռհայեցի, էջ 349—350, Ս. Անեցի, էջ 125։

21. Հմմտ. Մ. Ուռհայեցի, էջ 359, Ս. Անեցի, էջ 125։

22. Հմմտ. Մ. Ուռհայեցի, էջ 426—427, Ս. Անեցի, էջ 137։ Մ. Ուռհայեցու հաղորդմամբ վրացական զորքը Անիի համար գրոհել է «յաւուրս ամարայնոյ, յաւուր երկուշաբթի...»։ Ս. Անեցին նշում է գրավման ամսաթիվը հունիսի 13-ին։ Եթե նկատի ունենանք Մ. Ուռհայեցու վկայությունը, որ Գորգին Անին գրավել է պաշարման հետևյալ օրը (իսկ պաշարումը սկսվել էր երկուշաբթի). «և մի օր արարեալ ի վերայ քաղաքին, ի վաղիւն առեալ զքաղաքն բռնութեամբ» (էջ 426, ծ. 3), ապա դրանով հաստատվում է Ս. Անեցու վկայությունը՝ Անին գրավել են 1161 թ. հունիսի 13-ին երեքշաբթի օրը։

23. Վրաց թագավոր Գեորգի III-ը չարգեց Շահիարմեն Նասիր-ադ-դին-Սուկման II-ին (1128—1183 թ. թ.) 1161 թ.։ Մ. Ուռհայեցին այս կռիվը նշում է օգոստոս ամսվա մեջ (էջ 427), իսկ Ս. Անեցին՝ «յօգոստոս ամսամտին» (էջ 137), այսինքն օգոստոսի սկզբին (գուցե և 1-ին)։ Այս կռիվների մասին Ս. Անեցին գրում է. «ականատես եղեք մեք» (էջ 137)։

24. Թամարը թագավորել է 1184—1213 թ. թ.։

25. Խոսքը վերաբերում է Սալահեդդինին։ Այս մասին տես ներքևում, III ժամանակագրություն, ծանոթ. 28։

26. Հեղինակը նկատի ունի իրանական Ադրբեջանի աթաբակ Աբու-բեկրի (իշխել է 1191—1210 թ. թ.) Շիրվանի արշավանքը։ Վերջինիս շահ Ահսարտան օգնություն խնդրեց Թամար թագուհուց։ Վրացական արքունիքը չմերժեց։ Վրացական զորքերին առաջնորդում էր Թամարի ամուսին Դավիթ Սոսլանը։ Երկու բանակների միջև վճռական ճակատամարտը տեղի ունեցավ Շամխորում 1195 թ., որտեղ Աբու-բեկրը գլխովին ջախջախվեց և ինքն էլ փախուստի դիմելով հազիվ ազատվեց գերվելուց։

27. Համբերդի գրավումը նշված է երկու տարով ուշ։ Տես ներքևում II ժամանակագրություն, ծանոթ. 8։ Սկզբնական բնագրում հավանաբար եղել է «Ոխե» ձևով։

28. Խոսքը վերաբերում է դեպի Անդրկովկաս մոնղոլների կատարած առաջին արշավանքին։ Այս մասին մեր պատմիչները հակասական տեղեկություններ են հաղորդում։ «Պատմութիւն վասն ազգին նետողաց» աշխատության հեղինակը, այդ դեպքը նշում է 1214 թ. ներքո (Ս. Պետերբուրգ, 1870, էջ 6), Մխ. Այրիվանեցին՝ 1211 թ. (Մոսկվա, 1860, էջ 65), Կ. Գանձակեցին՝ 1220 թ. (էջ 190), իսկ Վ. Արևելցին՝ 1221 թ. (էջ 186)։ Սակայն կարելի է ցույց տալ, որ վերջինիս վկայությունը աղճատվել է և նրա պատմության հնագույն՝ 1307 թ. ընդօրինակության մեջ (Ձեռ. № 3074, էջ 78ա), այդ դեպքը նշված է 1220 թ. ներքո (Հմմտ. „История монголов по армянским источникам". перевод Патканова, вып. I. СПБ, 1873, стр. 2). Վարդանի պատմության մի այլ վկայությունը հաստատում է Ձեռ. № 3074 տեղեկությունը, ահա այն. «Իսկ թաթարն կոչեցեալ, որ եկեալ էր յառաջագոյն սակաւուք ի վեց հարիւր վաթսուն և ինն թուին՝ կամեցաւ դառնալ ի վեց հարիւր եօթանասուն և մի, և ոչ վստահացաւ» (էջ 189)։ Այսպիսով մոնղոլների առաջապահ զորքերն առաջին անգամ Անդրկովկաս մտել են 1220 թ.։

29. Խոսքը վերաբերում է Ջալալեդդինի և հայ-վրացական միացյալ ուժերի 1225 թ. Գառ-

նիի ճակատամարտին։ Մանրամասնությունները տես Կ. Գանձակեցի, էջ 211—215, Վ. Արևելցի, էջ 187—188։

30. Վ. Արևելցին մոնղոլների կողմից Գանձակի գրավումը նշում է 1235 թ. (էջ 189), իսկ Մաղաքիա աբեղան 1214 թ. Կոտմանի ճակատամարտից «յետ երից ամաց» (էջ 6)։ Ուսումնասիրողները Վ. Արևելցու տեղեկությունն ընդունել են աներկբա (տես Չամչյան, «Պատմութիւն Հայոց», Հ. Գ., էջ 206, Saint-Martin Memoires hist. et géogr. sur l'Arménie, I, Paris, 1818, p. 384, Бартольд „Место прикаспийских областей в истории мусульманского мира" Баку. 1925, стр. 62—63)։ Սակայն ակադ. Մանանդյանը „Новые данные о времени разрушения Ганджи монголами" („Известия Азербайджанского филиала" № 7, сентябрь—октябрь, 1943, Баку, стр. 80) հոդվածում ցույց է տվել, որ Վ. Արևելցու վկայությունը ստույգ չէ և Գանձակը մոնղոլների կողմից գրավվել է 1231—1232 թվերին։ Ակադեմիկոս Մանանդյանը միաժամանակ ցույց է տվել, որ այդ մասին Կ. Գանձակեցու հրատարակության (Թիֆլիս, 1909 թիվ) մեջ հետաքրքրող «Ձկնի անցանելոյ ինչ աւերման քաղաքին Գանձակայ...» (էջ 224) հատվածն աղճատված է։ Կ. Գանձակեցու պատմության երկու ձեռագրերի մեր ստուգումը հաստատեց ակադ. Մանանդյանի ենթադրությունը։ Հրատարակության վերոհիշյալ հատվածի փոխարեն, այնտեղ կարդում ենք. «[Չ]կԾԻ ամաց ինչ անցանելոյ աւերման քաղաքին Գանձակայ...» (Ձեռ. 1486, էջ 53բ, 1518, էջ 229բ։ Հմմտ. „История монголов по армянским источникам" вып. II, СПБ. 1874, стр. 17)։ Առաջարկվող ժամանակագրության սույն վկայությունը հաստատում են II և X ժամանակագրությունները։ Սակայն ոմանք հենվելով Հավապտկին նվիրված Վանենու ավետարանի հիշատակարանի վրա, կարծում են, թե Գանձակի ավերումը կատարվել է 1232—3 թվականներին («Խաղբակյանք և Պռոշյանք Հայոց պատմության մեջ», Վաղ-պատ, 1928 թ., հտ. Ա, էջ 89, տես նույնը, հտ. Գ, էջ 90—91)։

31. Ժամանակագրության Б տարբերակը շարունակվում է, նկատի ունենալով, որ վերջինս կապ չունի բուն բնագրի հետ և ուրիշներն ավելացրել են հետագայում, այն ներկայացնում ենք առանձին։ Ինչպես հայտնի է XIII դարի մեր պատմիչներից, Վ. Արևելցին (էջ 189—192), Կ. Գանձակեցին (էջ 217—257), Մխ. Այրիվանեցին (էջ 66), Մաղաքիա աբեղան (էջ 7—8), Ստ. Օրբելյանը (էջ 402), Ս. Անեցու ժամանակագրության շարունակողը (էջ 150) խոսելով մոնղոլների կողմից Աղվանքի, Վրաստանի և Հայաստանի նվաճման մասին, այն նշում են ընդհանուր ձևով 1235—1236 թթ. ժամանակամիջոցում, սակայն նրանցից և ոչ մեկը չունի մոնղոլների կողմից Անիի գրավման ստույգ տարեթիվը։ Այդ մասին սխալ է Ս. Մարտենի (նույն տեղ, էջ 384) և այլոց կարծիքը։ Մինչդեռ առաջարկվող ժամանակագրությունը տալիս է այդ։

Պատմ. գիտ. թեկնածու Վ. Համազասպյանը քննության ենթակա հարցի մասին դրել է հատուկ հոդված. «Մոնղոլների կողմից Անիի գրավման տարեթվի ճշտումը» խորագրով («Գիտական նյութերի ժողովածու», Մատենադարան, № 1, Երևան, 1941, էջ 75—79)։ Սույն հոդվածին առիթ տվել է Մատենադարանի № 8100 ժողովածուի ժամանակագրության (մեր Б տարբերակը) մի վկայությունը։

Հոդվածագիրը ճիշտ լուծելով իր առաջ դրված խնդիրը, այնուամենայնիվ թույլ է տվել մասնակի երկու սխալ. Նախ՝ հոդվածագիրը սխալմամբ կարծում է, որ մոնղոլների կողմից 1236 թ. Անիի գրավման մասին հրապարակի վրա որոշակի ցուցում գոյություն չունի և այդ ցուցումը տալիս է միայն Մատենադարանի № 8100 ժողովածուի ժամանակագրությունը, որի հիման վրա էլ նա փորձել է պարզել իր առաջ դրված հարցը։ Մինչդեռ այդ մասին հրապարակի վրա ունենք մի շարք հետաքրքիր տեղեկություններ, այսպես՝ 1236 թ. ընդօրինակած մի ավետարանի հիշատակարանը, որը հրատարակվել է մի քանի տեղ՝ Ալիշանի «Շիրակ»-ում, էջ 102, ծանոթ. 4, «Նշխարք մատենագրութեան Հայոց» Ք. Պ[ատկանեան], ՍՊԲ, 1884, էջ 70—71, Ալիշան, «Հայապատում», էջ 457, Բ. Սարգսեանց «Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց», Վենետիկ, 1914, հատոր Ա., էջ 443։

Վերոհիշյալ հիշատակարանի հեղինակը եղել է Անիի պաշարմանն ականատես անձնավորություն և այդ նկարագրել է սրտաճմլիկ ձևով։ Սույն հիշատակարանը, դժբախտաբար, վերջից թերի է։ Անիի գրավման տարեթվի մասին սեղմ վկայություն ունի նաև Առ. Դավրիժեցին իր պատմության առընթեր գտնվող ժամանակագրության մեջ (Վաղարշապատ, 1896, էջ 623)։ Բացի սրանից ձեռագիր վիճակում մեզ հայտնի են նաև ուրիշ վկայություններ (տես ներքևում՝ II և X ժամանակագրություններ)։

Աղբյուրագիտական վերոհիշյալ տեղեկություններից զատ, հոդվածագրից շատ առաջ էլ

մի շարք ուսումնասիրողներ մոնղոլների կողմից Անիի գրավումն ընդունել են 1236 թ., ինչպիսիք են՝ Ալիշան («Շիրակ», էջ 102), Սահակ Տէր-Մովսիսեան («Պատմութիւն Հայոց», հ. Բ., Վենետիկ, 1924, էջ 518)։ Համա. «Խաղքակլյանք կամ Պոռշյանք Հայոց պատմության մեջ», հտ. Ա, էջ 89 և այլն։ Երկրորդ՝ հոդվածագիրը կարծում է, որ «...այս Անանուն ժամանակագրությունը (այսինքն № 8100 ձեռագրի ժամանակագրությունը— Վ. Հ.) մի փոքրիկ հատված է մեզ համար անհայտ մի հեղինակի ամբողջական աշխատությանս» (էջ 78)։ Ասված է առանց հիմնավորման, մինչդեռ վերոհիշյալ ժամանակագրությունը նույնությամբ գտնում ենք 1342 թ. ընդօրինակված մի այլ ձեռագրի մեջ (Ներկա հրատարակության A տարբերակը), նշանակում է ժամանակագրությունն ամբողջական է։

32. Կարծում ենք խոսքը վերաբերում է օսմանական սուլթան Մուհամմեդ II-ին, որն իշխել է 1451—1481 թ. թ.։ Սույն վկայությունն, ինչպես և մյուսներն առավել մանրամասնությամբ տես Գ. Կամախեցու մոտ («Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղեցւոյ», Երուսաղէմ, 1915, էջ 9), որը մի շարք ժամանակագրական հոդվածներ կորուստից փրկելու համար դրել է իր ժամանակագրության սկզբում։

33. Համա. Գր. Կամախեցի, էջ 9։ Թուրքերը Բոսֆորը կոչել են Պողազ (Նեղուց)։

34. Մուհամմեդ II-ը Կ. Պոլիսը գրավել է 1453 թ. մայիսի 29-ին, երեքշաբթի, արշալույսին, մոտավորապես երկու ամիս պաշարելուց հետո (պաշարումը սկսվել էր ապրիլի 6-ից)։ Այդ մասին բավական մանրամասն տեղեկություններ բերում է Չամչյանը («Պատմութիւն Հայոց», հ. Գ., էջ 492—500), վերցնելով դեպքերին ժամանակակից հույն պատմիչներ՝ Դուկասից, Ֆրանձասից և ուրիշներից։

35. Գր. Կամախեցու մոտ նշված է դեկտեմբերի 13-ին, էջ 10։

36. Գր. Կամախեցու մոտ նշված է այսպես. «...Մուհամմատս գնաց բազում զօրօք ի Ղարամանն...» (էջ 10)։ Առաջարկվող բնագրի «Ղաման»-ն արդյո՞ք «ղարամանն» բառի աղճատումը չէ։

37. Կարծում ենք Նեգրոպոնտ անվան աղճատումն է։ Հունական Եվբեյա կղզին, որը թուրքերը նվաճեցին 1471 թ.։

38. Բնագրում «Ղէժ» ձևով։ «Ղատրղով» կատըրգա-թիականավ=галера այստեղից ռուսերեն каторга=նավի թիավարման ծանր պատիժ։ Այս դեպքերի մասին հիշում է նաև Գր. Կամախեցին, Կաֆայի գրավումը նշելով հունիսի 6-ին (էջ 11)։

39. Երեմիա, Ողբ Ա. 1։

## II.

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XIII դ.)

Առաջարկվող ժամանակագրությունը կազմում է Ս. Անեցու ժամանակագրության շարունակությունը։ Սակայն հեղինակը որոշակիորեն սահմանազծել է Ս. Անեցու և իր ժամանակագրության եզրերը։ Ս. Անեցու ժամանակագրական աղյուսակը վերջանում է Հայոց ՈԽԲ (=1193) թվականով (Ձեռ. № 8481, էջ 204ա), որից հետո, նախքան բուն ժամանակագրության սկսելը, հեղինակը գրում է փոքրիկ ներածական, որից որոշակիորեն իմանում ենք, որ. «Զայս գաւազանք և չափ ժամանակաց գտաք ճշդիւ սահմանեալ և եդեալ Սամուէլի ճշ[մար]տաբան քահանայի, զկարգս թագաւորաց և կայսերաց, ընդ [որոց և] կաթողիկոսացն Հայոց, սկսեալ յառաջին ամէ [մարմնա]նալոյ տեառն մինչ ի ՌՃՂԵ (=1195) ամն և ի ՈԽԲ (=642) թիւն [Հայոց]։ ... և համառատիւք, զգործս և զքանս, որ յիւրաքանչիւր ժամանակս եղեն, բերել հասուցանել մինչ ի մերս ժամանակ» (էջ 35)։

Ինչպես պարզվում է այս ներածականից՝ տարեգրության հեղինակն իր ձեռքի տակ ունեցել և ընդօրինակել է Ս. Անեցու ժամանակագրության մի այնպիսի խմբագրություն, որն ավարտվել է 1193 թվականին։ Եվ հենց այդտեղից էլ նա սկսել է իր տարեգրությունը, այդ մասին որոշակիորեն հայտնելով ներածականի հաջորդ հատվածում «... ես՝ նուաստ Ստեփաննոս անուամբ այցելու կարգեցից ի գաւազանս սկիզբն արարեալ»։ Ստեփաննոս եպիսկոպոսի (=այցելու) տարեգրությունը վերջանում է 1290 թ. տեղի ունեցած մի շարք տեղեկությունների հաղորդմամբ։ Վերջին վկայությունները վերաբերում են հեղինակի ժամանակակից դեպքերին։

Այսպիսով տարեգրությունն ընդգրկում է շուրջ 100 տարվա անցուդարձ, որոնք վերաբերում են Արևելյան Հայաստանում, Կիլիկիայում, Վրաստանում տեղի ունեցած դեպքերին՝ Զաքարյանների, մոնղոլների, մամլուկների նվաճումներին, բավական տեղեկություններ կան Հուլաիդների գահակալական կռիվների և այլ բազմաթիվ հարցերի մասին։

Քոսյանը, իր կողմից կազմած Սանասարյան վարժարանի հայերեն ձեռագրերի ցուցակում,[1] հենվելով Ակինյանի կարծիքի վրա,[2] սույն տարեգրու-

---

[1] Քոսեան «Ցուցակ հայերէն ձեռագրաց Սանասարեան վարժարանի ի Կարին» («Հանդէս Ամսօրեայ», 1921 թ., էջ 173—181)։

[2] Ակինեանը գրում է. «Այս ձեռագրին մէջ կը յայտնուի մեզի Ստեփանոս Օրպէլեանի մինչև ցայսօր անծանօթ ժամանակագրութիւնը։...Հոս Օրպէլեան աղիւսակի մէջ ամփոփած է համառօտիւ, բայց կարեւոր մանրամասնութիւններով իւր Պատմութեան վերջին էջերը։ Հետաքրքրական նորութիւններ կը բովանդակէ նաև վերջաբանը» («Հանդէս Ամսօրեայ», 1921 թ., էջ 177—178, տողատակ)։

*թյունը վերագրում է XIII դարի նշանավոր մատենագիր Ստ. Օրբելյանին։ Ավելին, Ս. Անեցու ժամանակագրությունը, որը նախորդում է քննության ենթակա տարեգրությանը, նա սխալմամբ վերագրում է Ստ. Օրբելյանին։*[1] *Առանձին հայագետներ ևս սույն տարեգրությունը վերագրել են Ստ. Օրբելյանին։*[2] *Ավելի ուշ, 1942 թ. պրոֆ. Աշ. Աբրահամյանը քննության ենթակա տարեգրությունը հրատարակեց Օրբելյանի անունով։*[3] *Հրատարակության բնագրին նախորդող փոքրիկ ներածականում (էջ 3—7) հրատարակիչը նախորդ ուսումնասիրողների կարծիքն ապացուցած լինելու համար, փորձում է ընդհանուր եզրեր գտնել առաջարկվող տարեգրության և «Պատմութիւն նահանգին Սիսական» աշխատության միջև։ Առաջին անգամ ընկ. Լ. Խաչիկյանի հետ միասին տողերիս գրողը կասկած հայտնեցինք և հիմնավոր փաստերով փորձեցինք խախտել վերոհիշյալ կարծիքը։*[4]

*Մեր գրախոսականում Արևելյան Հայաստանում գործող մի շարք Ստեփանոսների անուններ էինք թվել։*[5] *Այս ցուցակին այժմ կարող ենք ավելացնել ուրիշ Ստեփանոսներ, որոնք գործել են ոչ միայն Արևելյան Հայաստանում, այլև Սյունիքում։ Օրինակ՝ Ստեփանոս Գ. Աղթամարի կաթողիկոսը (1272—1296 թ. թ.)։*[6]

*Ստ. Օրբելյանը, իր պատմության մեջ գրում է, որ Նորավանքի Սարգիս եպիսկոպոսին (վերջինս նահատակվել է Երուսաղեմում) հաջորդել է տեր Ստեփաննոսը «... որ և սա գնացեալ առ մեծ կաթողիկոսն Հայոց Տէր Կոստանդին և վերստին հաստատէ զայն ովստ յաթոռ եպիսկոպոսաց, և զթէմն զոր ունէր՝ զՎայոց ձոր բոլոր»։*[7]

*Սյունիքի Վայոց ձորի Նորավանքում, 1292 թ. Մոմիկի կողմից ընդօրինակած ավետարանի հիշատակարանում հիշվում է. «... և վերադիտողի տանս Սիւնեաց տեառն տէր Ստեփաննոսի, առաջնորդի սուրբ ուխտիս...»։*[8]

*Տաշյանի «Ցուցակ»-ում հիշվում է «Ստեփաննոս եպիսկոպոս Սիւնեաց»,*

---

1 Քոսյանը բառացի գրում է. «Ստ. Օրբէլեանի ժամանակագրութիւնը՝ փրկչական թուականէն սկսեալ մինչև իւր ժամանակը, այն է 1—1292 տարիներու ժամանակագրութիւնը աղիւսակաձե» (էջ 178)։

2 Գ. Հովսեփյան «Խաղբակյանք կամ Պռոշյանք հայոց պատմության մեջ» մասն Ա, էջ 8, ծանոթ. *, 135 և այլն։

3 «Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբէլեանի» հրատարակության համար պատրաստեց պատմ. գիտ. թեկնածու՝ Աշ. Աբրահամյանը, Երևան, 1942 թ.։

4 Տես մեր գրախոսականը. «Ինչպես չպետք է հրատարակվեն պատմական սկզբնաղբյուրները» (Հայկ. ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի Հասարակական բաժանմունքի Տեղեկագիր, 1949, № 2, էջ 77—87)։ Այստեղ ցույց է տրված, որ տարեգրությունը չի պատկանում Ստ. Օրբելյանի հեղինակությանը, և հրատարակված բնագիրն ու ծանոթագրությունները անբավարար են։

5 Տեղեկագիր, 1949 թ., № 2, էջ 82։

6 Ակինեան, «Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ», Վիեննա, 1920, էջ 42։

7 Թիֆլիս, 1919 թ., էջ 363, հմմտ. նույն տեղ, էջ 480։

8 Մատենադարան Ձեռ. № 2848, էջ 317ա, ամբողջ հիշատակարանը գտնվում է Ձեռ.-ի 315ա—319ա էջերում։ Նույնը տես «Շողակաթ», գիրք առաջին, Վաղ-պատ, 1913, էջ 297։ Հնարավոր է, որ 2-րդ և 3-րդ օրինակներում հիշված Ստեփաննոս եպիսկոպոսները միևնույն անձնավորությունները լինեն, սակայն դրանով գրությունը չի փոխվում։ Հմմտ. Ալիշան, «Սիսական», էջ 191, 299, 294։

որը Յովհաննես եպիսկոպոսի, Դավիթ և Եսայի վարդապետների հետ պատասխանեց Կոստանդին Գ. Կեսարացու նամակին։[1]

Այսպիսով, պարզվում է, որ XIII դարի 90-ական թվերին Արևելյան Հայաստանում, մասնավորապես Սյունիքում, Ստ. Օրբելյանից բացի եղել են ուրիշ Ստեփաննոս եպիսկոպոսներ։ Հարց է ծագում, ինչո՞ւ չէր կարող սրանցից որևէ մեկը Ս. Անեցու ժամանակագրության առընթեր այսպիսի մի փոքրիկ տարեգրություն կազմել։ Հետևապես, կարծում ենք, բացառված չէ այն ենթադրությունը, որ առաջարկվող տարեգրությունը հավանաբար կազմել է Նորավանքի Ստեփաննոս եպիսկոպոսը։

Առաջարկվող տարեգրության բնագրի աղյուսակում, համապատասխան տարեթվերի մոտ տեղ չլինելու պատճառով, մի շարք տեղեկություններ իրական տարեթվից մի քանի տարով ետ կամ առաջ են նշված, սակայն գրիչը, նման սխալներ կանխելու նկատառումով, վերոհիշյալ տեղեկությունների և սրանց համապատասխան տարեթվերի մոտ միանման նշաններ է դրել, ցույց տալով այդպիսի տեղեկությունների ստույգ տարեթիվը։ Հրատարակության բնագրում, գրչի ցուցումի համաձայն, տեղափոխել ենք այդ փաստերը և տվել անհրաժեշտ ծանոթագրություններ։

---

[1] «Ցուցակ հայերէն ձեռագրաց», Վիեննա, 1895, էջ 180։ Տաշյանը սրան նույնացնում է Ստ. Օրբելյանի հետ (նույն տեղ, էջ 1153բ)։ Սակայն ինչպես հաստատել այն իրողությունը, որ Ստ. Օրբելյանը մահացել է 1304 թ. («Ազգապատում», էջ 1773, տես և հմմտ. Ալիշան, «Սիսական», էջ 194), իսկ Կոստանդին Կեսարացին գահ է բարձրացել 1307 թվին («Ազգապատում», էջ 1803)։

## II.

Զչափ լրմանց ժամանակացս տյսոցիկ ցուցանէ Գաբրիէ[լի]. 204ա
Դանիէլի մարգարէին յասելն ի վախճանել մեղաց և ի նրնքել
անաւրէնութեանց և ղալն յաւիտենից արդա[ր]ութեան եւթնե-
բորդքէ և եաւթներորդքն ԿԻ. համառաւտեցան, որ բաւ[ա]նդակէ
յինքեան ՆՁԳ (483) ամ, սուղ ինչ նուազ ի շինութենէ տաճա-
րին մինչև ի գալուստ բանին աստուծոյ յաւուրս Հերովդէի ար-
քայի.

Զայս գաւազանք և չափ ժամանակաց գտաք ճշդիւ սահ-
մանեալ և եդեալ Սամուէլի ճշ[մար]տաբան քահանայի, զկարգս
թագաւորաց և կայսերաց, ընդ [որոց և] կաթուղիկոսացն Հայոց՝
սկսեալ յառաջին ամէ [մարմնա]նալոյ տեառն մինչ ի ՌՃՂԵ
(1195) ամն և ի ՈԽԲ (642) թւին [Հայոց][1]։ Եւ հանդէպ միմեանց
եդեալ զիւրաքանչիւր | | |[2] որ յիւրաքանչիւր ժամանակսն
իրագործեցան | | | սակաւուք զթերին, միայն ամբողջ պահել
զհամա[ռոտագ]ոյն և զկարգ հայրապետացն, և զվերջին թագա-
ւորութիւնն Հայոց՝ որ ի Կիլիկիայ, ի ներսի գաւառսն և զՎրացն
արտաքո[յ] միայն ղանուանսն նու և համառաւտիւք, զգործս և
ղրանս, որ յիւրաքանչիւր ժամանակս եղեն, բերել հասուցանել
մինչ ի մերս ժամանակ։

Արդ՝ յետ մահուան տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի,
յաջորդի յաթոռն Գրիգորիս տղայն ամ մի։[3] Եւ յաղագս զրա‖- 204բ
րանութեան ինչ ըմբռնեալ եղև ի մեծ իշխանէն Կիլիկոյ՝ Լևոնէ
և արգելեալ յամուրն Կոպիտառայ։[4] Ի գիշերի կամեցաւ ելանել
և կախեալ ընդ բարձր պարիսպն, անկաւ և մեռաւ։ Եւ ապա յա-
ջորդէ ի տեղին միւս Գրիգորիս, Ապիրատն կոչեցեալ, եղբաւր
որդի մեծ հայրապետացն՝ Գրիգորի և Ներսէսի, որ և ի մահուան
նորին, նախ սա քարոզեցաւ կաթողիկոս և զկնի եկն էրէց եղ-
բաւր որդին վայելչագեղն Գրիգորիս. և ի ձեռն Մլեհա[յ] իշխա-
նին, հրամանաւ և ուժով Նորադին ամիրային եհան զնա և
նստաւ ինքն։ Եւ ետ նմա տեղի և գաւազան, զՀամբռաւն և զՏար-
սուս և զԿէսարիայ իւր գաւառաւքն, որ և զկնի եկն յաթոռն, որ
և զաւրացեալ Յիսուսիւ, ես՝ նուաստ Ստեփաննոս անուամբ այ-
ցելու կարգեցից ի գաւազանս սկիզբն արարեալ։[5]

—Ցայս թվիս փայլէր մեծ ջահն եկեղեցոյ Ներսէս Լամբրոնեցին ի ճգունս և յիմաստս և մեկնեաց զբր-եանս զԲԺ (12) անքն՝ զառակս, զՑորն, զպատարագն և զՍա[զ]մոսս և այլ բազումս։[6]

| Քրիստոս Թագաւոր | Կաթողի-կոս | Թուական հայոց | |
|---|---|---|---|
| ՌՃՂԶ | Ա | ՈԽԳ | —Կաթողիկոս տէր Գրիգո-րիս ամ Ա (1)։ —Մէլիք Էզիլն եկն ի Խլաթ պաշարեաց և չկարաց առ-նուլ։ |
| ՌՃՂԷ | Ա | ՈԽԳ | —Կաթողիկոս տէր Գրի-գորիս Ապիրատն՝ ամս Է (7)։[7] |
| ՌՃՂԸ | Բ | ՈԽԵ | |

Ի ՈԽԵ (1196) թուին մեծ սպարապետքն Վրաց, որդիք Սարգսի՝ Զաքարէի, Իւանէի առին ի տաճկէն զամուրն զԱնբերդ և զԲջնի։[8]

Աստանաւր կամիմ կարգել զնորոգ թագաւորութիւնն Հա-յոց։ Լևոն, որդի Ստեփանեայ, եղբաւր Ռուբինա, յետ բազում քա-ջութեանց և առման ՀԲ (72) բերդից, վերապատուի ի Ցունաց և ի Հոռոմոց թագաւորացն Բ (2) թագիւ. և վերին տեսչու-թեամբն աւծանի թագաւոր Հայոց յարևմուտս, Կիլիկիայ։

| | Քրիստոս Աստուած թագաւոր | Հայոց Լևոն ամս ԻԵ | Կաթողիկոս տէր Գրիգորիս | Թուական Հայոց | |
|---|---|---|---|---|---|
| —Թագաւոր Հայոց Լևոն կացեալ ամս ԻԵ (25)։[9] | ՌՃՂԹ | Ա | Գ | ՈԽԶ | —Մոլորեցան Վիրք և Հոռոմք և խանգարեցաւ զատիկն, իսկ Հայք անշփոթ մնացին։ |
| | ՌՄ | Բ | Գ | ՈԽԷ | |
| | ՌՄԱ | Գ | Ե | ՈԽԸ | —Զաքարէ էառ ի տաճ[կէ]ն զԱնի։[10] |
| | ՌՄԲ | Գ | Զ | ՈԽԹ | |
| —Զաքարէ էառ զԱնի։ | ՌՄԳ | Ե | Է | ՈԾ | —Մեծ պատերազմեաք Հայոց և Վրաց Իւանէ և Զաքարէ առին զԴւին և կոտորեցին և թափեցին զաշխարհս Հայոց ի տաճկէն, ի Կուր գետոյ մինչև յԵրասխ և Բարքուշատա[յ] մինչ ի Մժնկերտ։[11] |
| | ՌՄԳ | Զ | Ա | ՈԾԱ | —ՈԾԱ (1202) թւին կաթողիկոս տէր Յոհան[ն]էս Մեծաբարոյն, ամս ԺԸ(18)։ Ի սոյն ամի Ռուքնադին սուլտանն էառ զԿարնոյ քաղաք և կոտորեցաւ ի Զաքարիայէ։[12] |
| —Զաքարէ էառ զԲջնի։[13] | ՌՄԵ | Է | Բ | ՈԾԲ | —ՈԾԲ (1203) թւին Զաքա, Ծաղա բահատուրն եկն ի Տփխեաց [տու]նն, զԾախոտէ աւերեաց և դարձաւ Զաւրն Վրաց ի հետ գնաց և ի Կոստանա կոտորեաց և բարձոյ[ց]։[14] Ի գալ ամին ֆռանգն էառ զԿոստանդինուպալիս ի Հոռոմէն։[15] |
| | ՌՄԶ | Ը | Գ | ՈԾԳ | |
| | ՌՄԷ | Թ | Գ | ՈԾԳ | |
| —Յայսմ ամի էառ Զաքարէ ի տաճկէն զԿարս։[16] Եւ Աւագն Իւանէի որդի եղաւ։ Ի գալ ամին մեռաւ Թամարն և որդին Լաշա Գուրգէն թագաւորեաց Վրաց։[17] | ՌՄԸ | Ժ | Ե | ՈԾԵ | |
| | ՌՄԹ | ԺԱ | Զ | ՈԾԶ | |
| | ՌՄԺ | ԺԲ | Է | ՈԾԷ | |

| | Քրիստոսի ասաուած թագաւոր | Հայոց Լեւոն | Կաթողի-կոս տէր Յոհան-[ն]էս | Թուական Հայոց | 205բ |
| --- | --- | --- | --- | --- | --- |
| —Զիւանէ աթաբակն ի Խլաթ կալան և յոլով աւուրս պահեցին. և զդուստը[ր]ն Թամթի բազում աղախնաւք և ծառայիւք և յոլով գանձիւք ետ ի գինս իւր յամիրայն և ազատեցաւ։[18] | ՌՄԺԱ | ԺԳ | Ը | ՈԾԸ | —Զհայերն ի Մանծկերտո[յ] հանին։[19] |
| | ՌՄԺԲ | ԺԴ | Թ | ՈԾԹ | |
| | ՌՄԺԳ | ԺԵ | Ժ | ՈԿ | |
| | ՌՄԺԴ | ԺԶ | ԺԱ | ՈԿԱ | —Ի ՈԿԱ (1212) թվին Մելիք Աշրաֆն մեռաւ և Մէլիք Ավհադինն նստաւ։ Ցայսմ ամի Զաքարէ և Իւանէ կամեցան միաբանել զՀայս և զՎիրս և ժողովք արարին ի Գետակն բազում հարանց և վարդապետաց[20], ընդ որս էին աշխարհալոյս և աստուածազգեաց վարդապետքն՝ Գոշ Մխիթարն, Մոնօնիկն և Տուրքիկն։ Եւ ոչ կարացին միաբանել, այլ հաստատուն մնացին Հայք յուղղափառ հաւատս, որ և խրոխտացեալ Զաքարէ վարդապետացն, նզովեցաւ ի նոցանէ. և գնաց յԱրտաւէլ և կոտորեաց[21]։ Եւ ի դալ ամն մեռաւ ի ճանապարհին և եղաւ ի Սանահինն ուխտ։[22] |
| —Կատարի սուրբ և աշխարհալոյս վարդապետն Գոշ Մխիթարն ի Գետիկ։[23] | ՌՄԺԵ | ԺԷ | ԺԲ | ՈԿԲ | |
| | ՌՄԺԶ | ԺԸ | ԺԳ | ՈԿԳ | |
| | ՌՄԺԷ | ԺԹ | ԺԴ | ՈԿԴ | |
| —Գաւիթ թագաւորն ծնաւ որդի Լաշային։[24] | ՌՄԺԸ | Ի | ԺԵ | ՈԿԵ | —Մէլիք Էդիլն մեռաւ։ |
| —Թագաւորն արեւնաբբու ազգաւ Նետողացն Չանկըզ ղանն եկն յեզրն Երանու։[25] | ՌՄԺԹ | ԻԱ | ԺԶ | ՈԿԶ | |
| | ՌՄԻ | ԻԲ | ԺԷ | ՈԿԷ | |
| | ՌՄԻԱ | ԻԳ | ԺԸ | ՈԿԸ | —Ի ՈԿԸ (1219) թուին վճարեցաւ Յոհաննէս կաթողիկոս։[26] |
| —Անէութիւն հայրապետացն։[27] | ՌՄԻԲ | ԻԴ | [Ա] | ՈԿԹ | —ՈԿԹ (1220) թուին աղեւոր աստղն ելաւ և զթաթարն վրացին կոտորեաց ի Կոռմանա ջրին։[28] |

| | Քրիստոս աստուած թագաւոր | Հայոց Լևոն | Կաթողիկոս | Թվական հայոց | Ի ՈՀԱ (1222) թվին[30] 206ա |
|---|---|---|---|---|---|
| —Ի ՈՀ (1221) թվին մեռաւ Լևոն թագաւոր և տարաւ յամենայն ազգաց բազում գրուատինք, և եթող դուստր մի ժառանգ թագաւորութեանն։[29] | ՌՄԻԳ | Իե | Բ | ՈՀ | —Մէլիք Աշրաֆին ի Խլաթ երեկ և սով եղև յոյժ։[33] |
| —Ի ՈՀԱ (1222) թվին նստուցին ի Սիս կաթուղիկոս զաէր Կոստընդին մեծափառ, որդի Թափչի, ի Բարձրբերդ։[31] | ՌՄԻԳ | Ա | Ա | ՈՀԱ | |
| | ՌՄԻԵ | Բ | Բ | ՈՀԲ | |
| —Ի ՈՀԳ (1224) թվին Լաշա Գորգի մեռաւ և Ռուսուդան թագաւորեաց։[32] Եւ հեղեղն զԽլաթ աւերեաց։[34] Ի սոյն ամի Աշրաֆն զԽըլաթ էառ ի Ղազունէ | ՌՄԻԶ | Ա | Գ | ՈՀԳ· | |
| —Ոչ գոյր թագաւոր։[35] | ՌՄԻԷ | Բ | Դ | ՈՀԴ | |

Յայսմ թվականիս բաղում աւեր և անչափ դառնութիւն և սպանմունք հասաւ աշխարհիս մեր, զի բորբոքեաց ի հարաւոյ հուր բարկութեան և եկեր զգեղեցկութիւն աշխարհիս մեր։ Եւ Ջալալադին սուլտանն Խորասանայ, որդի Խորազմա[յ] շահի, և եկն փախստեամբ յերեսաց նետողաց։ Եւ անց ընդ պարսիկս ի մէջ երկրայս, աւերելով և կոտորելով. եւ զերկիրս Հայոց հրդեհէ սրով, քակեաց և աւերեաց և հանդիպեալ զօրացն մերոց՝ Հայոց և Վրաց ի գաւառն Այրարատու, արձանանայր ընդդէմ նոցին։ Եւ էր մեծ զօրավարն Իւանէ, ժողովեալ զօրս ԿՌ (60000). բայց բարկութիւնն աստուծոյ զարթուցեալ էր ի վերայ սոցա վասն անօրէն և անուղղ[ե]այ գնացից իւրոց։ Առանց յաղթութեան և պատերազմի փախստական լինէին ընդ քաղաքագեղն Գառնոյ։ Եւ առանց ձեռին և սրոյ իբր յաներ[և]ոյթ հրեշտակէ ուժգին հողմով հարեալք գահավէժ եղեն ընդ մեծ խրամն, և առհասարակ սատակեցան. և սակաւ ի նոցանէ թէ ապրեցան և ինքն մազապուրծ եղեալ անկան ի յամուրն Քեղէ։ Իսկ խոբազմիքն անտէրունջ գտեալ զաշխարհս, յանխնայ կոխեաց և աւերեաց և գնաց մինչ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. և արեամբ քրիստոնէից ելից զսուրբ տաճարն և զփողոցսն, բայց ինքն, ասի սպանեալ ի Հոռմոց յաննշան արանց։ Եւ զկնի այսորիկ ամենայն ցասումն և պատուհաս բազմացաւ յաշխարհիս մեր ‖ չարաշշուկք, 206բ զի ի ջուրս և յամանս և յանկողինս եռային ի տուէ և ի գիշերի։ Եւ եկն մարախ սաստիկ և եկեր մինչ ի ծոցն Ովկիանոս. և ապա սով սաստիկ, որ չև էր եղեալ յաշխարհի. և ապա դայլ մարդախանձ, այսպէս տեսիլ եղաք ամենայն մսեղեաց։[36] Եւ յետ ԲԺ (12) ամի Խորասմին ոչ շատացաք այնու, այլ եկն ազգն նետողաց թաթարն, անընդել և անհագնատեսիլ և անյադ գազանն։

Եւ ծածկեցին զերեսս աշխարհի, զորոց զանհնարին գործսն և զանցս աղէտիցն, ոչ րաւէ լեզու բանիւ բացայայտել, այլ միայն լռել. որոց գլխաւորքն կոչէին՝ Զօրման և Ջաղաթայ, զորս յիւրում տեղոջ Թուականին կարգեցից։[37]

| | Քրիստոս աստուած Թագաւոր | Հայոց հեթո[ւ]մ | Կաթուղիկոս տէր Կոստանդ[ին] | Թուական հայոց | |
|---|---|---|---|---|---|
| —Թագաւորէ Հեթում, այր բարի և յազթանդամ, յաջողակ յամենայն բանս, թագաւորէ ԽԵ (45) ամ։[38] | ՌՄԻԸ | Ա | Ե | ՈՀԵ | —Ի ՈՀԵ (1326) թուին Խորազ[մ]քն ի Խլաթ եկն և Խ (40) օր պաշարեաց և չկարաց առնուլ։[39] |
| —Խայան կոչեցեալ Աննա, ուժով սուլտանին Նստի կաթուղիկոս ի Հռոմ, հակառակ աթոռոյն Կոստանդեա[յ] և զապալեաց զկաթուղիկոսութիւնն, որ և յետ բազում հնարից, ազօթիւք խնդրէ տէր Կոստանդին բառնալ յերկուցն մինն, և որ հաճոյն է տեառն մնալ և միամտել։ Ապա ի տեսլեան հրեշտակ տեառն գրէ յաջ թաթի ձեռինն տէր Կոստանդնայ՝ եթէ բարձցի կաթուղիկոսութիւնն յԱննայէ և տացի Կոստանդնայ ծառայի աստուծոյ. և եղեւ այնպէս, զի ի գիշերի սատակեալ այրն այն բարձաւ ի միջոյ։[41] Եւ փայլէր ի Կիլիկիա[յ] տէր Գրիգոր Սկեւռացին։[47] | ՌՄԻԹ | Բ | Զ | ՈՀԶ | —Մեռաւ աթարակ Իւանէ։[40] |
| | ՌՄԼ | Գ | Է | ՈՀԷ | —Խորազմն զՄուշ, զՏօզուտափ և զՀամբլեա (sic) աւերեաց։[42] |
| | ՌՄԼԱ | Դ | Ը | ՈՀԸ | —Փռանգն զԾրուսաղէմ էառ. և Հռոմցին զԽորազմն կոտորեաց և զԿարնոյ քաղաքն էառ։ |
| | ՌՄԼԲ | Ե | Թ | ՈՀԹ | —Խորազմն զԽլաթ աւերեաց։[43] |
| | ՌՄԼԳ | Զ | Ժ | ՈՁ | —Թաթարն զԽորազ[մ]ին կոտորեաց և զԳանձակ էառ։[44] |
| | ՌՄԼԳ | Է | ԺԱ | ՈՁԱ | —Թաթարն եկն ի Խլաթ, շատ աւեր արար.[45] և Քէմիլն էառ զԱմիթ։[46] |

| | Քրիստոս աստուած թագաւոր | Հայոց հեթում | Կաթողիկոս տէր Կոստանդին | Թուական հայոց | |
|---|---|---|---|---|---|
| | ՌՄԼԾ | Ը | ԺԲ | ՈՋԲ | —Հոռմցին էառ զԽլաթ։ |
| | ՌՄԼԶ | Թ | ԺԳ | ՈՋԳ | —Հոռմցին զԽարբերդ էառ։ |
| | ՌՄԼԷ | Ժ | ԺԳ | ՈՋԳ | —Շահնշահ, որդի Զաքարէին էառ զսուրբ Մարէ։[48] Եւ Հոռմեցին էառ զՈւռհայ, զԽառզս և ուերակորն։[49] |
| —Ցայսմ ամի էառ Զորմանն և Չաղաթայն զբոլոր երկիրս մեր՝ զԱնի, զԿարս և զԼաւռէ, զսուրբ Մարէ։ Եւ զԱւագն ի գուրս բերին ի բերդէն կայենոյ։[50] | ՌՄԼԸ | ԺԱ | ԺԵ | ՈՋԵ | |
| | ՌՄԼԹ | ԺԲ | ԺԶ | ՈՋԶ | —Մեռան Ալագինն, Աշրաֆն և Քէմլինն։[51] |
| | ՌՄԽ | ԺԳ | ԺԷ | ՈՋԷ | |
| | ՌՄԽԱ | ԺԳ | ԺԸ | ՈՋԸ | —Արեգակն խաւարեցաւ և Թաթարն զԿարնոյ քաղաք և զգաւառն աւերեաց. և Հոռմցին զԿարս էառ։ |
| —Սուտ վարդապետ մի յարեաւ Սահմեռի ի Հոռոմք և անուանեաց զինքըն բաբ Ռասուլ և յետ սակաւուց բարձաւ չարն ի մէջոյ։[52] | ՌՄԽԲ | ԺԵ | ԺԹ | ՈՋԹ | |
| | ՌՄԽԳ | ԺԶ | Ի | ՈՂ | —Հալբցին զԽոբազմն կոտորեաց. և Հոռմցին զԱմիթ էառ։ |
| —Առ այսու ժամանակաւ փայլէր ծերացեալ աւուրբք մեծ վարդապետն Վանական, աշակերտ Գոշին. և լցոյց զերկիրս աշակերտելովք, որք փայլէին գիտութեամբ, որպէս զատեղս՝ զՎարդան, զԿիրակոս, զՈւսէփ, զԱռաքեալն և այլք բազում, որք էին սիւնք եկեղեցոյ։[54] | ՌՄԽԴ | ԺԷ | ԻԱ | ՈՂԱ | —Թաթարն զԿարնոյ քաղաք էառ և բազում գրեանըս և սպաս եկեղեցոյ գերեցին և լցաւ երկիրս մեր։[53] |
| | ՌՄԽԵ | ԺԸ | ԻԲ | ՈՂԲ | —Թաթարն զՀոռոմք կոտորեաց. զՃզնկան, զ[Սե]աստ և զՂասարիա էառ։[55] |

207բ

| | Քրիստոսի աստուած թագաւոր | Հայոց հեթում | Կաթողի-կոս տէր Կոստնդին | Թուական հայոց | |
|---|---|---|---|---|---|
| | ՌՄԽԶ | ԺԹ | ԻԴ | ՈՂԴ | —Թաթարն ի Հալապա[յ] դուռն գնաց և զԹաղէշ էառ։ |
| | ՌՄԽԷ | Ի | ԻԴ | ՈՂԴ | —Թաթարն զԲաղդատա[յ] դուռն նվաղեցոյց։ Եւ |
| | ՌՄԽԸ | ԻԱ | ԻԵ | ՈՂԵ | Ռուգնադին սուլտանն մեռաւ և որդիքն ի Հոռոմք գնացին։ |
| | ՌՄԽԹ | ԻԲ | ԻԶ | ՈՂԶ | —Ռուսադանն մեռաւ։ Եւ Փոլատն ի Վրաց տուն էրեկ։ |
| | ՌՄԾ | ԻԳ | ԻԷ | ՈՂԷ | —Գաւիթ թագաւորն բազում հնարիւք զերծեալ ի ձեռաց Ռուսադանին, եկն ի դանէն և նստաւ յաթոռն։[56] |
| —Ցայսմ ամի մեռանի Աւագն, որդի Իւանէի, անորդի, և թողու դուստր մի Խոշաք անուն, և սուգ անհնարին պատեաց զերկիրս մեր. և կին նորա Գոնցայն առնէ զտէրութիւն աշխարհիս։[58] | ՌՄԾԱ | ԻԴ | ԻԸ | ՈՂԸ | —Կրկին անգամ յաւարի հարութէնալն պեղծ զաշխարհս մեր. և զՍամցխէ աւիրեցին և Պապայն փախեաւ։[57] |
| | ՌՄԾԲ | ԻԵ | ԻԹ | ՈՂԹ | |
| —ՑՋ (1251) թւին կատարեցաւ սուրբն աստուծոյ Վանական վարդապետն և տէր Յովան[ն]էս մեծ եպիսկոպոսն Սիւնեաց։[59] | ՌՄԾԳ | ԻԶ | Լ | Ջ | |
| | ՌՄԾԴ | ԻԷ | ԼԱ | ՋԱ | —Մանգու ղանն թագաւորեաց իւրում ազգին՝ տիրեալ ընթանուր (sic) աշխարհի։[60] |
| | ՌՄԾԵ | ԻԸ | ԼԲ | ՋԲ | Եւ մարախ եկն յերկիրս։ |
| | ՌՄԾԶ | ԻԹ | ԼԳ | ՋԳ | —Եկն աշխարհաւերն Արղուն Ալադինն և արար աշխարհագիր, զաշխարհս ամենայն և զամենայն գլուխ եդ ընդ հարկաւ։[61] |
| —Հուլաու ղանն եկն յԱլամութըս, զՄլհէտն էառ. և Բաչոյն ի Հոռոմք գնաց և զսուլտանն կոտորեաց։[62] | ՌՄԾԷ | Լ | ԼԴ | ՋԴ | |

| | Քրիստոս աստուած թագաւոր | Հայոց հեթում | Կաթողիկոս տէր Կոստնդին | Թուական հայոց | |
|---|---|---|---|---|---|
| —Աստ մեռաւ Բաթու ղանն հիւս[ի]սային և որդին իւր Սարթախն։[63] | ՌՄԾԸ | ԼԱ | ԼԵ | ՉԵ | —Հուլաւուն եկն յԱլամութս զՄլհէտն էառ. և Բաչուն ի Հոռոմք գնաց և զսուլտան կոտորեաց։ |
| —Ղազա ղանն զէզնկայն աւերեաց։[64] | ՌՄԾԹ | ԼԲ | ԼԶ | ՉԶ | |
| | ՌՄԿ | ԼԳ | ԼԷ | ՉԷ | —Հուլաւուն զԲաղդատ էառ. և Արղունն Ապաղանին որդի եղաւ։ |
| —Դաւիթ թագաւորն յԱփխազք մտաւ, և Դէմէտրէ եղաւ։ | ՌՄԿԱ | ԼԴ | ԼԸ | ՉԸ | —Հուլաւոյն պաշարեաց ամ մի զՄուփարղինն և սովամահ արարեալ էառ զքաղաքն։[65] |
| | ՌՄԿԲ | ԼԵ | ԼԹ | ՉԹ | —Թաթարն զՀալպ աւերեաց, և Մանկու ղանն գընաց յաստուած։[66] |
| —ԶԶաքարէ սպանին և հայրն Շահանշահ մեռաւ։ Եւ ի սոյն ամի կատարի վկայական մահուամբ մեծ իշխանն Խաչենոյ Ջալալն ի Ղազմինն, հրամանաւ Արղունին, և բերեալ գնի ի Գանձասար։[67] | ՌՄԿԳ | ԼԶ | Խ | ՉԺ | |
| | ՌՄԿԴ | ԼԷ | ԽԱ | ՉԺԱ | —Խուլի և Բալախայն փախեան։[68] Եւ զԴաւիթ թագաւորն ի զուրս էբեր պարոն Ումեկն։ |
| | ՌՄԿԵ | ԼԸ | ԽԲ | ՉԺԲ | |
| —Մեծ բարեպաշտ քրիստոնէից յոյսն Առաւնղուղ խաթունն մեռաւ. ընդ Հուլաւուին, և ասին՝ գեղակուր լեալ Բ (2)-ուքն յանիծեալ Սահիպէն։[69] | ՌՄԿԶ | ԼԹ | ԽԳ | ՉԺԳ | —Հուլաւուն մեռաւ և Ապաղայն յաթոռ նստաւ։ |
| | ՌՄԿԷ | Խ | ԽԴ | ՉԺԴ | |
| —Մորցին մտաւ ի Կիլիկէ՝ զՍիս և զայլ աշխարհն աւերեաց. և զթագաւորին Բ (2) որդիքն զերեցին՝ զԹորոսն սպանին և զԼեւոն գերեցին. աւաղ և եղուկ եղև Հայոց։[71] | ՌՄԿԸ | ԽԱ | ԽԵ | ՉԺԵ | —Բարքն ի զուրս եկն, որ էր ղան հիւսիսային աշխարհին, և պատնէշ կապեաց ի Կուռ գետոյ վերայ և ի ղառնալն մեռաւ ինքըն։[70] |
| | ՌՄԿԹ | ԽԲ | ԽԶ | ՉԺԶ | —Մեռաւ սուրբ կաթուղիկոսն Կոստնդին ի Ծաղկազարդ աւրն.[73] և պարոն Ումեկն մեռաւ ի Տփխիս։[73] |

208բ

| | Քրիստոս աստուած թագաւոր | Հայոց Հեթում | Կաթողիկոս տէր Յակոբ | Թուական հայոց | Սահիպն զԹոշաքն էառ ՉԺԸ (1260) թվին։[75] |
|---|---|---|---|---|---|
| —Յայս թուին առաւ սուլտանն մայրաքաղաքն Անտաք ի Փունտըխզար սուլտանէն Մորայ. գերեալ և կոտորեալ աւելի զԺԲ (12) բիւր. քակեալ բաղում եկեղեցի յատակեցին և ծովացուցին զքաղաքն. Ռ (1000) աւազ մեզ։[74] | ՌՄՀ | ԽԴ | Ա | ՉԺԷ | —Յաջորդէ տէր Յակոբ կաթողիկոս։ |
| —Մեռաւ աւագ Սարգիս, որդի Շահանշահի։ | ՌՄՀԱ | ԽԴ | Բ | ՉԺԸ | —Մեծ զօրօքն Թագուդարըն մտեալ յԱփխազք մըտաւ, իսկ Սիրամոնն զաւրաւք ի հետմտեալ կոտորէ և զինքն ըմբռնեալ ածէ առ Ապաղայն։[76] |
| —Ղան Ապաղայն գնաց բաղում զօրաւք ի Խորասան և կռուեալ ընդ Փարախին՝ կոտորէ և դառնա[յ] մեծ յաղթութեամբ։[77] Ի սոյն ամի վճարեցան Բ (2) թագաւորքն՝ Հեթում հայոց[78] և Դաւիթ Վրաց։ | ՌՄՀԲ | ԽԵ | Գ | ՉԺԹ | —Կատարեցաւ սուրբ վարդապետն Վարդան ի յետ Ծ (50)աւուր՝ Կիրակոս վարդապետն ի Կիլիկիայ։[79] |
| —Լևոն թագաւոր հայոց։ | ՌՄՀԴ | Ա | Դ | ՉԻ | —Եւ յաջորդէ զթագաւորութիւնն Լևոն, որդի Հեթմոյ, ի ՉԻ (1271) թուին։ |
| —Յայսմ ամի կատարեցաւ մեծ և փառաւոր իշխանն Սմպատ ի ցեղէն Աւրբէլանց։[80] | ՌՄՀԴ | Բ | Ե | ՉԻԱ | —Դեմէտրէ թագաւորէ Վրաց։ |
| —Եկն Արղունն և կրկին զՎիրս և զհայս աշխարհագիր առնէ։[81] Եւ Տրապիզոնա թագաւորն առ[յ] զգուսարն ի կնութիւն զԴիտօփայլն։ | ՌՄՀԵ | Գ | Զ | ՉԻԲ | —Աստանաւք յայտնեցան նշխարհք սրբոց ի Թիլն էգնկային և համբաւեցին թէ՝ սրբոյն Ներսէսի է։[82] |
| —Մսրցին ի Սիս մտաւ և այրեաց զՍիս և զէաս։[83] | ՌՄՀԶ | Դ | Է | ՉԻԴ | |
| Եւ շարժն զԱրճէշ և ըզԽլաթ տարաւ սաստիկ։[84] | ՌՄՀԷ | Ե | Ը | ՉԻԴ | —Սիրամոնն յԱփխազ մըտաւ և բաղում աւեր էած։ Եւ Արղուն ազէն մեռաւ։[85] |
| | ՌՄՀԸ | Զ | Թ | ՉԻԵ | —Յայսմ ամի սպանաւ ի տաճկաց մեծ արքեպիսկոպոսն էգնկային տէր Սարգիս և որդին իւր և այլ քահանայք, որոց գլխաւորքըն՝ Տութարն և Զալապին։ Եւ Ապաղայն ի Հըռոմք գնաց ‖ 209ա և վըրէժխնդիր եղև արեան նորա. և բաղում ամիրայք էսպան. և զնիկիտա և զԹարբերզոյ երկիրն աւերեաց։[86] |

| | Քրիստոսաստուած թագաւոր | Հայոց Լեւոն | Կաթուղիկոս տէր Յակոբ | Թուական հայոց | |
|---|---|---|---|---|---|
| —Մարգէն եկն ի Կեսարիա յանցեալ ամն և նետահար եղեալ դարձաւ ի Դմշխ. և սատակեցաւ անիծեալ Փունգխտարն և յետոյ նստաւ Ալփին։[87] | ՌՄՀԹ | Է | Ժ | ՉԻԶ | —Թաւզան Նուինն ԺԵՌ (15000)-աւ յԱպլասթայն կոտորեցաւ ի Փունդուխտա[ր] սուլտանէն Մսրայ. և զՓարուանայն յԱլատաղըն կոտորեցին և այլս բազումս սպանին։[88] |
| —Ապաղայն ի Խորասան գնաց[89] և դարձաւ ի Մուղան։ Եւ ղժաւոյ աթաբակն և զՏրապիզոնա թագաւորն էսպան։[90] | ՌՄՁ | Ը | ԺԱ | ՉԻԷ | |
| | ՌՄՁԱ | Թ | ԺԲ | ՉԻԸ | —Կատարի մեծ վարդապետն Յովսէփ ի վանսն Ախչոյ։ |
| | ՌՄՁԲ | Ժ | ԺԴ | ՉԻԹ | —Ապաղայն ի Քէթոյն եկն և զՋալալ Թօբէն էսպան։ |
| —Մեռաւ Մանկու Դէմուրըն, եղբայր Ապաղանին, ի Ջաղաթոյն և Շիպաուչին՝ ի Բաղդատ. և նստաւ յաթոռն բռնութեամբ Թաղուդարն՝ Ահմատ անուանեալ, Մահմետի աւրինաւքն։[92] | ՌՄՁԴ | ԺԱ | ԺԴ | ՉԼ | —Մանգու Դէմուրն գնաց բազում զաւրօք ի Հալբ. և պարտեցաւ ի դաշտն Համսա[յ] ի Մսրցոյն և փախեաւ։ Եւ Արաղէն ի Ռահբէն գնաց և դարձաւ ի Բաղդատ։[91] |
| —Մեռաւ աթաբակ Սագունն, կինն՝ Թամարն, լայր թագաւորն Դեմէտրէ։[94] Յարեգ ամիս մեռաւ և Ալագին սահիպն։[96] | ՌՄՁԴ | ԺԲ | ԺԵ | ՉԼԱ | —Գակասեաց բարի և խաղաղ աշխարհաշէն ղանն մեր Ապաղայն ի Համիան ի սահմի ԻԲ (22)։[93] |
| —Վճարի Շահաբադինն ի Տփխիս։[98] | ՌՄՁԵ | ԺԴ | ԺԶ | ՉԼԲ | —Յայսմ ամի, ի Նաւասարդի արեգակն խաւարեցաւ և Գալիալօղն, Հոռոմ կայ[ս]րն, մեռաւ և որդին յաթոռն նստաւ։[95] |
| | ՌՄՁԶ | ԺԴ | ԺԷ | ՉԼԴ | —Մեռանի մեծ և բարի իշխանն հայոց Գռաւշ և դնի ի Կեչառուս։[97] |

Յայս թուականիս եղեն ղրոյցք յոլովք և զարմանալիք, զոր ի կարճոյ յիշատակեցից. Ի ՉԼԱ (1282) թուին մինչ պակասեաց Ապաղայն, եկն ժառանգ թագաւորութեանն իւրոյ, որդին իւր Արղունն, որ սնեալ էր ի Խորասան, աննման տեսակաւ և վայելչագեղ հասակաւ, յոյժ ծանաւթ և սիրող քրիստոնէից աւրինացս։ Եւ ոչ կարաց առնուլ զտախտ արքայութեանն, այլ ընդացեալ ի վերայ ումն ի նոյն ցեղէ Թագուդար անուն.[99] և յափրշտակեալ յինքն զտէրութիւնն, նստի յաթոռն ի Դուռն դաշտին,[100] որ այժմ Ալատաղ կոչեն, յԱրտազ գաւառի։ Եւ էր ի ծածուկ Մահմետի աւրինաւքն, որ և բացայայտեաց զդենն և անուանեաց զինքն Ահմատ։ Եւ զընիկ անուն տէրութեանն, որ էր ղան, եդ սուլտան, և այսպէս բարձրացան գլուխք ամենայն տաճկաց։ Եւ ժողովէին առ նա ամենայն զազրատեսիլ և գարշագործ պաշտաւնեայքն Մահմետի՝ շեխքն և ջվալախիքն։ Եւ նորա թողեալ զսահ- 209բ

ման Թագաւորութեանն և դհոդս ղաւրացն և աշխարհացն, միայն
զցայգ և զցերեկ կայր և զբօսնոյր ի մէջ նոցին։ Եւ ի միում
աւուր դոյզն ինչ պատճառաւ սպանանէ զեպիսկոպոսն Բերկրոյ,
այլ ևս քահանաիւք, որք կարգեցան ի դասս սրբոցն։ Եւ յերկ-
րորդ ամին սկիզբն արարեալ արքայաշէն տան բնակ ‖ ութեան 210ա
ի դաշտին Դւնա, մերձ ի սուրբ Վիրապն, ի վերայ ոստոյ միոյ։
Եւ եդ հրամայատար և գործակալ զմեծ և զարքայաշուք իշխանն
Հայոց զՏարսաիճն, եղբայր Սմպատա[յ] արքայի։[101] Եւ ինքն կե-
ցեալ ամս Գ (3) խորհէր ի մտին բառնալ և ջնջել ամենեւին զա-
ւանդ քրիստոնէից և զամենեսեան բռնի ածել ի հաւատս իւր և
միապետել զամենայն ազգս։ Եւ զայս խորհրդածութեամբ չար
գործակցացն Սահիպ դիւանին և Հտսամանկլի շեխոյն. և ոչ կա-
րէր յայտնել, զի կասկածէր յորդոյ Ապաղտնին՝ յԱրղունէն։ Ապա
ի ձմեռնային ժամանակն ըմբռնեալ զեղբայրն իւր, զմեծ գո-
ռոզն Ղաւնղրաթին և սպանանէ և այլ բազումս, ընդ որս և զեր-
կու որդիքն մեծ կողմնակալին Վրաց՝ Ցագանին, կորուսանեն և
զսուլտանն Հոոմաց զԽիաթադինն։[102] Զայսոսիկ արարեալ[103] և ի
ժամ գարնան ի յՉԼԳ (1284) թուին ժամ տուեալ մարտի, ի լոյս
բերեալ զմթին խորհուրդն, հրաւիրակ հանեալ ընդ երեսս աշ-
խարհի, հրամայեաց ժողովիլ ամենայն ուժով զաւրուն յամե-
նայն կողմանց բոլոր պատրաստութիւնք, որ և երագ հտսեալ
կուտէին առ նա անհուն բանակաւք, աւելի քան ՃՌ (100.000)աց.
և առեալ զնա, խաղա[յ] գոռալով, հպարտ և գոռոզ մտաւք և հա-
սանի յաշխարհն Խորասանա[յ], առ ի բառնալ ‖ զժառանգ Թագա- 210բ
ւորութեանն զԱրղունն։ Եւ տպա ասպատակ հանեալ ղընդիրսն,
որոց զաւրագլուխ քաջազաւրն Ալինախ կոչեցեալ, յառաջեալ զնա
մտրտիկսն, զոր Մանղլա. կոչէին։ Եւ գնացեալ նորա գտանէ զԱր-
ղունն սակաւուք և պատերազմէ և յաղթեալ ի նմանէ գառ-
նա[յ] մեծ ամաւթով առ Ահմատն։ Եւ նորա մռմռեալ հրամայէ
առ հասարակ յարձակիլ ի վերայ։ Իսկ սակաւաձեռն զոլով Ար-
ղունն փախըստեա[յ] լինի և անկանի յամուր մի, անառիկ մի, յոյժ
լայն և ընդարձակ. և յոլով անգամ խնդրէ հաշտութիւն և խա-
ղաղութիւն և ինքեան ծառայաբար կեալ։ Իսկ նորա խորաման-
կութեամբ խոստացեալ և յղէ խնդրակս գալ առ ինքն ի մեծա-
մեծաց[ն] | | | նորա յամենայն հնարից զերծուցման ապա-
ւի[նեալ քրիստ]ոնէից։ Եւ ի մեծ զաւրավարն Սարգիս | | | ւք
ելանէ և գա առ նա։ Եւ իբրև մերձեցաւ, ձեռս ի յետս
կապեցին, որպէս մահապարտ և այնպէս ածին ի դուռն արքու-
նի։ Ապա ժողովեցան ամենայն բազմութիւնք անթիւ զաւրացն
ի տեսութիւն աննման դեղոյն և աւտար պատկերին։ Ի նոյն
ժամուն հրամայէ փողոց կարգիլ բազմութեանն և անցուցանէին
զանմեղ մանուկն ընդ մէջն. և միաբան գոռացին ահեղ աղա-
ղակաւ՝ մօրէ, մօրէ, այսինքն թէ՝ յաղթեցաք։ Եւ էր ամենե-
ցունց ‖ ի ծածուկ սրտի սուգ և յակն արտասուս, առեալ տա- 211ա
նէին ի կողմն մահապարտաց և նստուցանէին միայն, և ի բա-
ցեա[յ] բազում արք պահակ լինէին։ Եւ ինքն իմացեալ զորպէս[104]

որս վայրի ողորմ դիմօք այսր անար ակն արկէր։ Իսկ Ահմատն առեալ զյաղթութիւնն և պանծացեալ յանձն դառնայ և յառաջէ ընդ զօրսն և հրամայէ բերել զնա զկնի. զի կամէր առ գեղեցիկ հարճն իւր հասուցանել և առաջի նորա սպանանել, վասն իւրոյ սաստիկ չարութեանն։ Իսկ ապա աստուածն քրիստոնէից, որ ոչ կամեցաւ. Թողուլ զգինս արեան իւրոյ ի կորուստ, այլ խնայեաց յեկեղեցի և արար իրաւունս արդար։ Եւ այնմ գիշերի եա սիրտ ամենայն բազմութեան Արղունին։ Եւ դարձան ի նա ամենայն զօրքն ձեռնտուութեամբ Բուղային, և Առուխին, և Թագանային, և կամօք Հուլաչու ղանին։ Եւ յարեան ի մէջ գիշերին և հանեն զնա ի կապանացն։ Եւ զԱլինախն, և զամենայն բարեկամսն Ահմաաին կոտորեցին յանկողինս իւրեանց։ Եւ ի վաղիւն հանին զնա յերիվար և ամենեքեան ծունր ածեալ հնազանդեցան և հեծան ընդ նմա. և որ ոչ հնազանդէր սպանանէին, և պնդեցան զկնի Ահմաաին. և նորա լուեալ փաղչի ե. զգենու. հանդերձ կանացի, զոր և գաեալ քարշեն և չարամահ սատակեն. չարն չարաւ բարձաւ ի միջոյ։[106] Ընդ նմին և ամենայն համախոհք իւր՝ Շեխն, |Հ|ասամանկլի և Ահաիպն և այլք բազումք։ Իսկ աստուածակոչն այն և աստուածադիր Արղունն արքայակերպ ճոխութեամբ գայ ի հայրենի աշխարհն և իջանէ յԱլատաղն և անդ հարեալ զտախտն արքունական, նստի ղան և Թագաւոր ի վերայ ամենայն աշխարհիս։[106] Խաղաղանայ աշխարհս, խնդան քրիստոնեայք և պայծառանան եկեղեցիք ի փառս Քրիստոսի; խնամողին զմեզ, որում փառք յաւիտեանս։

211բ

| | Քրիստոսի ատուած Թագաւոր | Հայոց Լևոն | Կաթողի- կոս տէր Յակոբ | Թուական Հայոց | |
|---|---|---|---|---|---|
| —ՌՄԶէ (1287) թվին կատարեցաւ կաթողիկոսն տէր Յակոբ յԻսնակին պահոցն, և եղաւ ի Դրազարկն։[108] | ՌՄԶէ | ԺԵ | ԺԸ | ՉԼԴ | —Այշէն մեռաւ։[107] |
| —ԶԲուղայն Զինքս անուանեցին, որ է իշխանաց իշխան։[109] | ՌՄԶԸ | ԺԶ | ԺԹ | ՉԼԵ | —Սպանին՝ զՄաժդատինաթարն, զԱլինչաքիբանն, զՍագադինն և զՀարոն, Սահիբի որդին։[110] |
| —Զմեոն խիստ եղև։ Մեռան մեծ իշխանք ի Խաչէն՝ Աթաբակ, որդի Ջալալին[111] և Հասան, թոռն Դոպ(ւ)ափին[112] և այս մեռաւ Ճարն ի Տփխիս։[113] | ՌՄԶԹ | Ժէ | Ա կաթ. տէր Կոստանդին | ՉԼԶ | —Նստաւ մեծափառ շքով կաթողիկոս Հայոց տէր Կոստանդին, այր գիտնական և արգիւնական, հայր Խորնին։[114]; |
| —Մեծ կոտորումն եղև ի Բուղայէն և սպանին տարապարտ զԹագաւորն Վըրաց Դեմէտր ի դաշտին Մուղանայ, յեզրն Կուր գետոյն։[115] | ՌՄՂ | ԺԸ | Բ | ՉԼէ | —Մեռաւ բնաւին բարին Լևոն Թագաւորն Հայոց, ի գարնան ժամանակն և յաշունն աքսորեցին զկաթողիկոս Կոստանդին, և զիբրաւ պատճառն ոչ գիտեմ։[116] |
| —Թագաւորէ Հայոց արժանապատիւ այրն և բնաւին բարին Հեթում, որդին Լևոնի։ | ՌՄՂԱ | ԺԹ | Գ | ՉԼԸ | |
| —Տէր Ստեփաննոս կաթողիկոս Հայոց։ | ՌՄՂԲ | Ա Հեթում Թագաւոր | Ա Ստեփաննոս կաթողիկոս | ՉԼԹ | —Եկին զօրք բազումք Թօգա Մանկուին ի դուռն Դարբանդին՝ և զօրաժողով եղեալ յոյժ, Արղունն ախոյանանայ ի Սպիտակ Ջրին. և առանց պատերազմի դարձան նոքա։[117] |

Կամիմ և աստանաւք զբազում բանից[118] և գործոց, որ յայսմ 212ա ամի եղեն, սակաւուք նշանակել ձեզ։ Ի թագաւորելն Արղունին և ի տիրելն ի վերայ ամենայն աշխարհաց և ի սատակելն ըզթշնամիսն, էր բուն պատճառն և զաւրավիգն Բուղայն կոչեցեալ, որ յետոյ Զինքսան անուանեցին։ Սա ի մահու և ի կապանաց հանեալ զնա թագաւորեցոյց ի վերայ ամենայնի։ Եւ սակս այն մեծի երախտեացն պատուեցաւ և փառաւորեցաւ ի նմանէ և եղաւ ի վերայ ամենայն գործոյ և տանն արքունի և ղաւրաց և աշխարհաց իւրոց, այնքան, զի միայն յանուանէն ինքն ունէր զտէրութիւնն և Արղունն բաց ի զբաւսնլոյն ի խաղս և ի թատերս և յորսս, որպէս աւրէնն է հեթանոսաց, այլ ինչ ոչ հոգայր և ցնորէր, այլ ամենայն նմա ապաստան լինէր։ Եւ էր այրն այն ազամբ Ջալակիր կոչեցեալ և այն ազգ յոլով էր, քան զամենայն ազգս և յաղթող։ Ապա ժողովեալ յինքն, զաւրացաւ, բարձացաւ, գոռոզացաւ, հպարտացաւ այրն այն և ոչ կարաց հանդուրժել իրացն, այլ կամեցաւ անձամբ յափշտակել յինքն և

զաթոռ թագաւորութեանն և զբնիկ այրսն արմաաա[ւ]ք ի ջըն֊ջել։ Ահա այսպէս խորհուրդ ի մէջ առեալ, յինքն գրաւէ զսիրտս ամենայն մէծամեծացն ի ծածուկ։ Իսկ կամքն վերին, որ յայն֊պիսի մտհուանէն յափշտակեաց զնա և թագաւորեցոյց նոյն և սատ տնաւրինեաց, զի գծածուկ խորհուրդ սրտի նորա ծանոյց ազդմամբ Արղունին։ Եւ յաւուր պայմանին, յորում կամէր խորհրդակցաւքն կոխել զազատն արքունի Բուղայն, ինքն իսկ Արղունն վառեալ սուսերաւք և զրահիւք ՌՌ (4000) այր, յաւուր տարէմտին իւրեանց և խաղ || ա[յ] յանկարծ յառաւաւտուն ի 212բ վերայ բանակին և տանն Բուղային, զոր գիտացեալ փախըստեա[յ] անկանի ի շամբ մի մեծ և երթա[յ] ի տուն Այլջա խաթունին, և անկանի յոտս նորուն, զի զերծուսցէ զարիւն նորայ, ընդ որում երագ ժամանեալ ըմբռնէին և հանեալ անտի չարամահ սաաակէին. ընդնմին և զամենայն ազգատոհմն և զարու զաւակ նորին ջնջէին. և զամենայն խորհրդակիցսն ի մեծամեծաց սա֊տակեցին՝ զԱրուխն, եղբայրն նորին ի Բաղաաա[յ], զՈւճանն հազարապետ,* զՄաժուն հազարապետ, զԹարաունաս թուխ֊լուխն հազարապետ, զԱշտկ թուխլուխն հազարապետ, զՂազանն ի Շարուր 'Ի (4) հազարապետ, զՋալալադին սահիպն, զՇիմոն քահանայն ասորի և բժշկապետ և այլս բազումս ի մեծաց և ի փոքունց։ Եւ եղև հարուածք մեծ, և հեղաւ արիւն բազում. և էր շշուկ և ահ մեծ ի վերա[յ] ամենեցուն։ Եւ եղև այս ի մեծ դաշ֊տին Մուղանայ, յեզր Կուրա[յ], որ էր անհուն գետոց ասպնջա֊կան։[119] Աստանաւք ի սոյն աւուրս եղև սուգ մեծ և անհնարին ամենայն քրիստոնէից, զի թագաւորն Վրաց Դեմէարէ, վասն խնամութեան նորին, որ տըւեալ էր զդուստրն իւր ի հարսնու֊թիւն Բուղային, կալան և եդին ի բանդի, որպէս թէ համախոհ էր նորին. և յետ բազում հարցափորձութեանց և ամենեւիմբ ան֊պարտ լինելոյն, սպանանեն զնա ի նոյն դաշտի և ջնջեն ի սպառ զթագաւորութիւն ն[որա] || և տան զորդին նորա զԴաւիթ ի պան֊ 213ա դանդ (sic) և զայլսն վարատեալ ցրուեն այսր և անդր։[120] Բայց նախ քան զայս բերեալ էին ի դուրս զՎաղթանգ,՝ որդի թագա֊ւորին Սոնաց զ[Դ]աւթի և փեսայացուցեալ քեռ իւրոյ. Արղունն տա[յ] զթագաւորութիւնն Դեմէարէի նմա և յուղարկէ ի յար֊քունական գահն ի Տփխիս և կացուցանէ նմա և ամենայն զաւ֊րացն Վրաց սպասալար զորդի Սադոնին զԽութլու Բուղայն։[121]

Ի սոյն ամի փոխի մեծ բարեպաշտ թագաւորն Հայոց Լե֊ւոն, և յաջորդէ զաեղին որդին իւր, արին և բնաւին բարին Հե֊թում, որ ունէր եղբարս վեց։[122]

Եւ յաւուրս զարնան եկն Ալփին, սուլտանն Մսրայ և պա֊շարեաց զմեծ մայրաքաղաքն Տրապաւլիս, և ձեռնտըւութեամբ ոմանց յիշխանացն առեալ եղև քաղաքն աստուածային. և զերեալ և կոտորեալ եղեն անհուն քրիստոնեայք։[123] Կործանեցաւ և աթոռ բրնձին և պատրէարգին, որ փոխեցաւ անդ յԱնտաքու։ Եւ անձ֊

* Բնագրում միշտ «Ռապետ» ձևով։

նաւոր պատկերն Քրիստոսի, որ կանգնեալ կայր ի մէջ եկե-
ղեցոյն, քարշեցաւ և անարգեալ խորտակեցաւ ի փողոցսն. անցն
անտի և աւերեցան բազում եկեղեցիք. ‖ Ի սոյն աւուրս մրտե- 213բ
ցան[124] ի Խորասան Քէնքշոյն ի ցեղէն իւր և Նաւռուզն որդի Ար-
ղունին, և փախուցին զՂազանն որդի զան Արղունին. և սպանին
զՆօխա Արղուչին, և Թագանայն փախեաւ և եկն ի վեր, և ընկե-
ցին զնա ի մեծ պատւոյն ի ղրան արքունի. Եւ յաղագս այդր
պատճառի կասկածեաց յազգայնոցն իւրոց, որպէս թէ խորհրդա-
կիցք են Նաւռուզին և այլ ապրստամբելոցն զաւրս բազումս առա-
քէ ի Խորասան ի վերայ նոցա. և ինքն ատ ձեռնակալ առնէ զմեծ
զաւրաւորսն զՀուլաչու ղանն, զԽարա Նօխայն, որդի Ջէւմուտին,
զՋաւջկապն, զմինն կոբուսին և զր(2)սն եղին ի բանտի, ի ըերդն
Գարդաքաւ, որ ի Մլհդստան.[125] Եւ զԻ(~) որդիք Ահմատին, որ
մնացեալ էին, ընկեցին յանբնակ կղզի մի ի մեծ ազի ծովուն,[126]
որ մերձ ի Թավրէժ. և դեռևս շմորէին. Բայց ինքն իսկ Արղունն
յաջող աճէր յամենայն իրս և ի բանս զինչ և առնէր.
Ի սոյն ամի և ղեսպանս մեծամեծս եկեալ ի Հոռմա[յ],
հր[ա]մանաւ պապին քարոզեցին զՔրիստոս և կանգնեցին եկե-
ղեցի [մե]ծ, բազում ծախիւք ի դրան արքունի. Եւ սահմանե-
ցին անխափան կատարել զպաշտաւն փառաբանութեանն աստու-
ծոյ և մեծ խնդութիւն ամենայն քրիստոնէից. Եւ յաւծանելս
կանգնեալ կ[այ ան]հուն հանդեսիւ[127] ինքն Արղունն և աւրհնեալ
կողակ[ից իւ]ր Ու[ր]ու[կ] խաթունն, զաւուրս Գ(3) ի Խաչի
տաւնին. [ա]յ ծողն մեծ կաթողիկոսն, որ ի Բաղդատ Նեստոր ԺԺ
(12) [եպիսկոպոսօք][128] | | ի հայոց [և] եպիսկոպոսն Վ[ա]րա-
գա[յ] || | | | և կացուցին զոՖ այ[ր] իմաստուն և կուսակրաւն 214ա
քահանայ [աստուածա]բան էրէց Ռապան Սումա[129] կոչեցեալ.
այդ այդպէս եղեալ.
[Իս]կ յետ ամի միոյ բան ինչ բասրանաց և կարծիք յոլով
ճնասուց եղեալ և վկայեալ ի վերայ մեծ քահանապետին մերոյ
Կոստնդնա[յ], զորոյ զիրաւն աստուած միայն զիտէ, և թագա-
ժառանգն Հեթում մեծ ժողովով և յոլով հարցաքննութեամբ ի
բազում աւուրս տեսեալ զարժանն լուծին դադարեցուց[ի]ն զնա
ի պատուոյ կաթուղիկոսութեանն, կացեալ ամս Գ(3). և ի ձեռն
թղթոց մեծապատիւ արամ[բ]ք հրաւիրեցին զմեզ և զայլ եպիս-
կոպոսունս և զայլ իշխանս տրևելից երթալ ի թագաւորութիւնն
մեր ի Սիս, յընդրութիւն նորոգ հայրապետին, որում անպարապ
գտեալ ոչ ժամանեցաք, այլ թողաք ի շնորհս հոգոյն և յընդրու-
թիւն նոցին:[130]
Իսկ ի յՋԼԹ (1290) թուին մեռաւ Տարսաիճն, եղբայր
Սմպա[տայ], որդի մեծին Լիպարտի, ի ցեղէն Աւրբէլեանց և
եդաւ ընդ հարսն իւր, ի Նորավանս, ի Վայոյ ձոր.[131]

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Հեղինակի սույն վկայությունը մատնացույց է անում, որ նրա ձեռքի տակ գտնվող Ս. Անիցու ժամանակագրության վերջին սահմանը եղել է Հայոց ՈԽԲ (=1193) թվականը։

2. Ուղղահայաց երեք գծերը ցույց են տալիս բնագրի վնասված լինելը։

3. Խոսքը վերաբերում է Գրիգոր Դ տղայի հաջորդ Գրիգոր Ե-ին, որը հայտնի է Քարավեժ անունով։ Համաձայն Սմբատ Գունդստաբլի («Տարեգիրք», Փարիզ, 1859, էջ 107), Գ. Քարավեժը մահացել է Հայոց 643 (=1194) թվին։ Հմմտ. Ս. Անեցի, էջ 143։

4. Բնագրում «կոպիտ ռռայ» ձևով։

5. Բնագրի 204բ էջի ձախ լուսանցքում, վերոհիշյալ հատվածի ուղղությամբ նկարված է ձեռք, որը ցուցամատով ցույց է տալիս Ստեփանոսի կողմից կազմված տարեգրության սկիզբը։

6. Ներսես Լամբրոնացու մատենագրական գործունեության մասին առավել մանրամասն տեղեկություն տալիս է Կ. Գանձակեցին (էջ 102—103)։

7. Սույն վկայությունը հաստատում են Կ. Գանձակեցին (էջ 142) և Ստ. Օրբելյանը (էջ 503)։ Սմբատը Ապիրատի կաթողիկոսական տարիները նշում է 1194—1203 թ. թ. (էջ 107, 114), իսկ Ս. Անեցու ժամանակագրության շարունակողի տեղեկություններն ստույգ չեն (էջ 144, 145)։ Օրմանյանը հավանական համարում է Սմբատի տեղեկությունը («Ազգապատում», էջ 1510, 1556)։

8. Բնագրի «մեծ սպարապետքն վրաց, որդիք Սարգսի՝ Զաքարէի, Իւանէի...» (իմա Զաքարէ և Իվանէ) հատվածի առթիվ պրոֆ. Աբրահամյանը գրում է. «Անկասկած եղած պիտի լինի «մեծ սպարապետն վրաց, որդիք Սարգսի՝ Զաքարէ և Իւանէ»։ Սա գրչի սխալ է, ուստի և ուղղում ենք» (էջ 22, ծանոթ.***)։ Սակայն այս սրբագրությունից հետո էլ նախադասությունը քերականորեն չի շտկվում, որովհետև բնագրում «սպարապետք» բառը հոգնակի լինելով վերաբերում է երկու եղբայրներին՝ Զաքարեին և Իվանեին, իսկ սրբագրությունից հետո ստացվում է եզակի՝ «սպարապետ», որը չգիտես ում է վերաբերում՝ Սարգսի որդիներին, թե Սարգսին։ Պրոֆ. Աբրահամյանի սույն սրբագրությունը ճիշտ չէ, այդ երևում է Դվինի գրավման կապակցությամբ բնագրի նույնանման մի վկայությունից. այնտեղ կարդում ենք. «ՈԾ մեծ սպարապետքն Հայոց և Վրաց Իւանէ և Զաքարէ առին զԴուին...»։

Վարդան Արևելցին տարեգրության Անբերդի գրավման վկայությունը հաստատում է (էջ 181), սակայն 1196 թ. Բջնիի գրավման մասին ոչինչ չի հայտնում։ Ամբերդի գրավման առթիվ Զաքարեն 1200 թ. մի խաչքար հուշարձան է կանգնեցրել, որը հիմա գտնվում է Աշտարակի շրջանի Ինաքլու գյուղի եկեղեցում, այնտեղ արձանագրված է. «Ի ՈԽԹ թուականութիւնս ես Զաքարէ ամիր սպասալար Հայոց և Վրաց որդի մեծին Սարգսի առի զանառիկ ամրոցս զԱնբերդոյ յաղախնայծին (SIC) որդոցն Հաքարու...», ճիշտ է Գ. Հովսեփյանի այն դիտողությունը. որ «ՈԽԹ թվականը Ամբերդի առման թվականը չէ, այլ խաչի կանգնման» («Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ», մասն Ա, էջ 8, ծանոթ.**)։

9. Բնագրում «կացեալս» ձևով։ Համաձայն մեր հեղինակի Լևոն Ա.-ը թագավոր է օծվել Հայոց 646 (=1197) թվականին, մեր պատմիչներից՝ Կ. Գանձակեցին (էջ 153), Ս. Անեցու շարունակողը (էջ 144), Վարդան Արևելցին (էջ 182), Հեթում Բ.-ն (III տարեգրություն), հաստատում են առաջարկվող տարեգրության վկայությունը։ Միխ. Ասորու համաձայն Լևոն Ա-ն թագավոր օծվել է Հայոց ՈԽԵ (=1196) թվականին («Ժամանակագրութիւն», Երուսաղէմ, 1871, էջ 504)։ Իսկ Սմբատը (էջ 109) և Կիլիկիայի պատմիչը («Հայապատում», էջ 437) վերոհիշյալ դեպքը նշանակում են Հայոց 647 (= 1198) թվականի տակ, Քրիստոսի հայտնության

տոնին։ Ուսումնասիրողներից Չամչյանը («Պատմութիւն Հայոց», հատոր Գ, էջ 165) և Ա. Տեր-Միքելյանը («Սամուէլ քահանայի Անեցւոյ հաւաքմունք...», էջ 296, ծանոթ. 73) հավաստի վկայությունը համարում են Սմբատինը և Կիլիկիայի պատմիչինը՝ 1198 թ. հունվարի 6-ին։ Սակայն Ալիշանը («Սիսուան», էջ 470) և նրան հետևելով Օրմանյանը («Ազգապատում», էջ 1545) հիմնվելով շարժական տոմարի հաշվումների վրա, գտնում են, որ Սմբատի և Կիլիկիայի պատմիչի Հայոց 647 թվականի Քրիստոսի հայտնության տոնի, վերոհիշյալ վկայությունը համընկնում է ոչ թե 1198 թ. հունվարի 6-ին, այլ 1199 թ. հունվարի 6-ին, որովհետև Հայոց 647 թ. սկսվում է 1198 թ. հունվարի 31-ին, այսինքն՝ Քրիստոսի հայտնության տոնը՝ հունվարի 6-ը, անցնելուց հետո, հետևապես 647 թ. վերոհիշյալ տոնը կընկնի 1199 թ. հունվարի 6-ին։ Մարտինոս Լեհացու Հռոմի պապերի և կայսրների ժամանակագրության հայերեն թարգմանության բնագրում Լևոն Ա-ի թագավոր օծվելը նշված է 1199 թ. ներքո (Ձեռ. № 2037, էջ 122բ)։ Սխալ է տարեգրության այն վկայությունը, թե Լևոնը թագավորել է 25 տարի, իրականում նա թագավորել է 21 տարի։ Համաձայն Մխ. Այրիվանեցու («Պատմութիւն Հայոց», Մոսկվա, 1860, էջ 16) Լևոն Ա-ն թագավորել է ԽԱ (41) տարի, ամենայն հավանականությամբ այստեղ տեղ է գտել գրչագրական սխալ «ԻԱ»-ն դարձել է «ԽԱ»։ Իսկ Միխ. Ասորու («Ժամանակագրութիւն», էջ 505) 23 տարի։

10. Մեզ համար անհասկանալի պատճառով Զաքարեի կողմից Անիի գրավման վկայությունը, բնագրում կրկնված է՝ Հայոց 648 (=1199) և 650 (=1201) թվականներին։ Իրականում Զաքարեն Անին գրավել է 1199 թ.։ Այդ է հաստատում նաև Վարդան Արևելցին. «... և ի վեց հարիւր քառասուն և ութ առին զԱնի...» (էջ 181)։ Պրոֆ. Աբրահամյանը իր հրատարակության մեջ սույն դեպքը սխալմամբ դրել է Հայոց ՈԽԷ (=1198) թվականի դիմաց։

11. Համաձայն Վ. Արևելցու, Զաքարեն Դվինը գրավել է Հայոց 652 (=1203) թվականին (էջ 181)։ Ստ. Օրբելյանը Հայաստանի հյուսիսային գավառների դրավումը Զաքարեի և Իվանեի կողմից նշանակում է մինչև Հայոց 660 (=1211) թիվը՝ Սյունիքի նվաճումը, ընդհանուր ձևով, առանց կոնկրետ տարեթվերի (էջ 391—392)։ Այդպես է վարվում նաև Կ. Գանձակեցին (էջ 154), Մ. Այրիվանեցին (էջ 64—65)։ Վերջինս վերոհիշյալ դեպքը դնում է 1191 թվի ներքո։

12. Ռուքն-էդ-դինի զորքերի ջախջախման մասին մեզ հասած աղբյուրները տարակարծիքի են։ Այսպես՝ Քարթլիս-ցխովրեբայի Մարիամ թագուհու վարիանտում գտնվող «Թագակիրների պատմականն ու գովասանքը» աշխատության հեղինակը վերոհիշյալ դեպքը նշանակում է Զաքարեի կողմից Կարսի գրավումից հետո (Պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկ, «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», Բ. հատոր, Երևան, 1936, էջ 20—21)։ Հմմտ. Անանուն «Թամար թագուհու պատմությունը», նույն տեղ, էջ 35, նաև 43։ Ուսումնասիրողներից Ջավախիշվիլին վերոհիշյալ դեպքը նշանակում է 1205—1206 թ. թ. (նույն տեղ, էջ 31, ծանոթ. 31), իսկ „История Грузии" (I մաս, Թիֆլիս, 1946) դասագրքի հեղինակները՝ 1204 թ. Բասենում (էջ 218)։ Գ. Հովսեփյանը հենվելով Մշո Առաքելոց վանքի Տոնականի հիշատակարանի վրա (Մատենադարան № 7729 ձեռագիր), Ռուքն-էդ-դինի ջախջախումը նշանակում է 1204—1205 թ. թ. («Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ», մասն Ա, էջ 10, ծանոթ.*), իսկ ավելի ուշ՝ 1201—1202 թ. թ. («Նիւթեր և ուսումնասիրութիւններ», պրակ Ա, Երուսաղէմ, 1935, էջ 9)։ Ռուքն-էդ-դինի ջախջախման մասին առանձին հոդված ունի պրոֆ. Աշ. Աբրահամյանը՝ «Ռուքն-էդ-դինի ջախջախումը» խորագրով («Տեղեկագիր» ՍՍՌՄ Գիտ. Ակադեմիայի Հայկական ֆիլիալի, № 5—6 (10—11), Երևան, 1941, էջ 77—83)։ Նա գտնում է, որ այդ ճակատամարտը տեղի է ունեցել ոչ թե Բասենում, այլ՝ Կարինում՝ 1202 թ.։

13. Զաքարեի կողմից Բջնիի գրավումը երկու անդամ է հիշվում. առաջինը՝ 1196 թ. Անբերդի գրավման հետ, երկրորդը՝ 1203 թվականին։ Համաձայն Վարդան Արևելցու (էջ 181) վերոհիշյալ դեպքը տեղի է ունեցել 1201 թվականին։

14. Պրոֆ. Աբրահամյանը բնագրի «Կոտմանա» բառն իր հրատարակության մեջ դրել է «կոոմանա» ձևով (էջ 23), հայտնելով միաժամանակ. «Թողնում ենք բնագրի ձևով»։ Մինչդեռ բնագրում շատ պարզ երևում է «կոտմանա»։ Վերջինս ըստ Մաղաքիա աբեղայի մեծ դաշտ է, «որ կայ առաջի Տէրունական բերդին» (էջ 5), իսկ Վ. Արևելցին Կոտմանը գետ է կոչում (էջ 186)։ Հավանաբար և՛ գետը և՛ դաշտավայրը կոչվել են միևնույն՝ Կոտման անունով։ Պատմական Կոտմանը գտնվում է այժմյան Նոյեմբերյանի շրջանում և կոչվում է Ինճա-չայ (Բարակ գետ), որի վերին հոսանքում գտնվում է Կոտի գյուղը համանուն սարով (հմմտ. Բարխուդարեանց «Արցախ», Բագու, 1895, էջ 392)։ Կոտման դաշտն Ալիշանը տեղադրում է Արցախի մեջ («Հայապատում», էջ 455, ծանոթ. 1)։

*Տարեգրության սույն վկայությունը, անկասկած, չի վերաբերում դեպի Անդրկովկաս Սուբութայի և Ջեբեյի գլխավորած մոնղոլների առաջին արշավանքին, այլ ինչ որ եղելություններին արձագանք են, որոնց մասին առայժմ մեզ ուրիշ բան հայտնի չէ։ Բնագրի «Սախոտէ»-ն կարծում ենք Վ. Արևելցու (էջ 170) և Ստ. Օրբելյանի (էջ 383) հիշած Սախաթէ բերդն է, որտեղ Դեմնայի և Իվանե Օրբելյանի 1177 թ. ապստամբության ժամանակ գտնվում էր Գեորգի III վրաց թագավորը (1156—1184 թ. թ.), այս մասին բավական մանրամասն պատմում է Ստ. Օրբելյանը (էջ 383—389)։ Սախատէ=Սախոտէ բերդը գտնվում է հավանաբար Թբիլիսիի հարավ-արևմտյան ուղղությամբ։*

*15. Հմմտ. Հեթում Բ-ի տարեգրության հետ։*

*Հեղինակը նկատի ունի խաչակիրների Բոնիֆացիոս Մոնֆերրատցու հրամանատարությամբ 1204 թ. ապրիլի 12-ին Կ. Պոլսի գրավումը։ Որից հետո Ֆլանդրիայի Բոլդուին կոմսը՝ 1204 թ. մայիսի սկզբին ընտրվում է կայսր, դառնալով լատին առաջին կայսրը բյուզանդական կայսրերի շարքում։ Բոլդուին Ֆլանդրացին իշխել է 1204—1206 թ. թ.։ Այս մասին մանրամասնությունները տես՝* акад. Успенский, „История Византиискои империи" т. III, 1948, стр. 366 - 377.

*16. Տարեգրության մեջ Կարսի գրավման վկայությունը հաստատում է Վ. Արևելցին (էջ 181), որին համապատասխանում է նաև Իբն-Ալասիրի վկայությունը (հմմտ. Ջավախիշվիլի, «Վրաց ժողովրդի պատմությունը», հատոր 2-րդ, Թիֆլիս, 1914, էջ 611—612)։ Իսկ վրացական աղբյուրներից՝ «Թամար թագուհու պատմության» հեղինակի (XIII դար) վկայությամբ վերոհիշյալ դեպքը տեղի է ունեցել Թամար թագուհու թագավորության 23-րդ կամ 24-րդ տարում («Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», Բ հատոր, էջ 35—36)։ Այսպիսով, ստանում ենք 1184+23 կամ 24=1207/8 թ. թ.։ Մի այլ հեղինակ այն նշում է մինչև Ռուքն-էդգինի ջախջախումը (նույն տեղ, էջ 20)։ Գ. Հովսեփյանը հավանական համարում է 1206/7 թվականները։ Կա կարծիք, որ տարեգրության հեղինակը սույն վկայությունը վերցրել է Վ. Արևելցուց («Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ», մասն Ա, էջ 8, ծանոթ.*)։ Կ. Գանձակեցին և Մխ. Այրիվանեցին Զաքարեի նվաճումները հաղորդում են ընդհանուր ձևով, ընդ որում Կ. Գանձակեցին չի հիշատակում դրանց տարեթիվը (էջ 154), իսկ Մխ. Այրիվանեցին ամբողջ նվաճումները նշանակում է 1191 թվականի ներքո (էջ 64—65)։ Ստ. Օրբելյանը վերոհիշյալ նվաճումները դնում է մինչ 1211 թ. (էջ 391)։*

*17. Սույն վկայությունը հաստատում է «Դեմետր, Գիորգի, Թամար և Լաշա-Գիորգիի պատմության» հեղինակը (XIII դար). այդ առթիվ նա գրում է. «(Թամարը) թագավորեց քսան և երեք տարի և վերհամբարձավ առ աստված, ուր բնակվում են մարգարեները, հայրապետներն ու արքաները, հունվար ամսվա տասն և երկուսին, չորեքշաբթի օրը, Սոմխիթի Ագարա[կ]ում, քրոնիկոնի չորս հարյուր քսան և եոթին (և) թաղեցին Գելաթի նոր[ակառույց] վանքում...» («Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին». Բ հատոր, էջ 43—44)։ Այսպիսով կըստանանք 1184+23=1207 կամ 427+780=1207։ Թամարի մահը ոմանք հաշվում են 1208 թվականին («Խաղբակյանք...», մասն Ա, էջ 11, ծանոթ. **)։ Ջավախիշվիլու համաձայն Թամարը մահացել է 1213—1214 թվականներին («Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», Բ հատոր, էջ 45—46։ Հմմտ.* „История Грузии" часть I, стр. 224)։ *Հայկական և ոչ մի վկայություն չի հաստատում Թամարի մահվան 1213—1214 թ. թ.։ Հոռոմայրի 1206 թ. և Հաղբատի 1210 թ. արձանագրության մեջ Լաշան արդեն հիշվում է որպես թագավոր։ Ստորև բերում ենք վերոհիշյալ արձանագրությունների համապատասխան հատվածները.*

*«Ի թու. ՈԾԵ և ի թագաւորութեան Լաշային... ես հայր Սամուէլ և այլ միաբանքս շինեցաք զեկեղեցիս վասն յերկար կենդանութեան պատրոնացս...» (Կ. Կոստանեանց «Վիմական տարեգիր», Ս. Պետերբուրգ, 1913, էջ 47, հմմտ. Ալիշան «Այրարատ», էջ 62)։*

*«... Ցամս ամենայն աստուծոյ թագաւորաց թագաւորին Գէորգէ որդւոյ մեծ թագաւորին Թամարին, ... որ թիւ հայոց է ՈԾԹ...» (նույն տեղ, էջ 50—51)։ Ջավախիշվիլին այս առթիվ գրում է. «Ըստ երևույթին նրանից հետո, ինչ Լաշա-Գիորգուն... Թամարի աթոռակից դարձրին, վերջինս իր մոր՝ Թամարի օրոքն էլ թագավոր էր կոչվում, այնպես որ երբեմն արձանագրությունների մեջ Թամարն այլևս չի հիշատակվում...» (սույն հատվածը վերցրել ենք «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» աշխատության թարգմանիչի կազմած 4-րդ ծանոթագրությունից, էջ 46)։ Այսինքն Լաշան թագավոր է օծվել իր մոր կենդանության ժամանակ։ Թամարի մահվան տարեթվականի շուրջը եղած բիբլիոգրաֆիան տես՝ պրոֆ. Մելիքսեթ-Բեկի «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» աշխատության Բ հատոր, էջ 45—46, ծանոթ. 4։*

18. Բնագրում «Իւանէ» ձևով՝ Իվանեի Խլաթում գերվելու և ազատվելու մասին որոշ տեղեկություններ տալիս են Կ. Գանձակեցին (էջ 156—157) և Վ. Արևելցին (էջ 181—182), առանց տարեթիվը հիշելու։ Իսկ Մխ. Այրիվանեցին վերոհիշյալ դեպքը հիշում է 1201 թվականի տակ (էջ 65)։ Սակայն Աբուլ-ֆեդան հաղորդում է այնպիսի մանրամասնություններ, որոնք չենք գտնում մեր պատմիչների մոտ։ Նա գրում է. «Նրանց (վրաց) թագավոր Իվանեն, տաքացած գինով՝ անխոհեմաբար հրապարակի պարասպների տակ քսան ձիավորով զբոսնելու ժամանակ, մահմեդականները դուրս եկան, ձիուց վայր գլորեցին և ձերբակալեցին։ Նա ազատություն ձեռք բերեց, խոստանալով վերադարձնել բազմաթիվ ամրոցներ և 5000 մահմեդական դերի, վճարեց 10000 ոսկեդրամ, զինադադար անել 20 տարի և յուր Թամթա դուստրը կնություն տալ Ավադին։ Այդ պայմանները ընդունվեցին երկուստեք երդմամբ, և վրացինետ ուղարկվեցավ՝ յուր խոստումները կատարելուց հետո» (տես «Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ» աշխատության Ա մասի, 9-րդ էջի ծանոթագրություն)։ Հմմտ. W. Tomaschek „Sasun und das quellengebiet des Tigris. Historisch—topographische Untersuchung" («Հանդէս Ամսօրեայ», 1896, էջ 262)։

19. Ս. Անեցու ժամանակագրության շարունակողը Մանազկերտից հայերի գաղթեցումը նշանակում է Հայոց ՈԿԲ (=1213) թվականին, Զաքարեի կողմից Կարսի գրավման հետ միաժամանակ («Հավաքմունք...», էջ 147 տողատակ)։ Սակայն ինչպես հայտնի է Զաքարեն Կարսը գրավել է 1206 թվականին (ծանոթ. 16) և եթե Կարսի գրավման տարեթվին էլ կատարվել է հայերի գաղթեցումը Մանազկերտից, նշանակում է վերջին դեպքը պետք է նշանակել ոչ թե 1213 թ., ինչպես վարվում է Ս. Անեցու ժամանակագրության շարունակողը, այլ 1206/7 թվականներին։ Սակայն այդ հարցի լուսաբանության համար կարևոր նշանակություն է ստանում առաջարկվող տարեգրության վկայությունը՝ այսինքն Մանազկերտից հայերի գաղթը տեղի է ունեցել ոչ թե Զաքարեի կողմից Կարսի գրավման, այլ Խլաթի համար մղված կռիվների ժամանակ։ Այս գաղթեցման մասին տես և հմմտ. «Նիւթեր և ուսումնասիրութիւններ», Երուսաղէմ, 1935, էջ 9)։ Հենց այդ տեղափոխության հետ է կապվում նաև Ումեկի Մանազկերտից Կարին տեղափոխվելը։ Հմմտ. Ճարի 1283 թ. Գետիկում թողած արձանագրության հետ (նույն տեղ, էջ 9)։

20. Պրոֆ. Աբրահամյանը, իր հրատարակության մեջ (էջ 23) սույն հատվածը սխալմամբ բաժանել է երկու մասի։ Բնագրի «և ժողովք արարին ի Գետակն բազում հարացն և վարդապետաց...» հատվածի «ի Գետակն» բառի մոտ հրատարակիչը դրել է վերջակետ, իսկ «բազում հարանց և վարդապետաց» հատվածը կցել «ՈԿԵ Մէլիք էդիլն մեռաւ» նախադասությանը։ Այսպիսով, աղճատվել է վերոհիշյալ վկայության իմաստը։ Կ. Գանձակեցին (էջ 157—168) բավական մանրամասն խոսելով Զաքարեի պատարագի չարժական սեղան ունենալու մտադրության, ինչպես և այդ առթիվ Կիլիկիա գրած նրա նամակների, ստացած պատասխանների, Լոռիում և ապա Անիում հրավիրված կրոնական ժողովների, վեճերի ու երկպառակտությունների մասին, ոչինչ չի հայտնում Գետակում (իմա Գետիկ) հրավիրված ժողովի մասին։ Գետիկում հրավիրված ժողովի մասին ոչինչ չեն հաղորդում նաև Վ. Արևելցին (էջ 182—183) և Մխ. Այրիվանեցին (էջ 65), մինչդեռ նրանք գիտեն Լոռիում և Անիում հրավիրված ժողովները (հմմտ. «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», հատոր Բ, էջ 16—20, 28, ծանոթ. 29)։

Ժողովի մասնակիցները տարեգրության հեղինակի համաձայն եղել են «բազում» հայրեր և վարդապետներ. «ընդ որս էին աշխարհալոյս և աստուածազգեաց վարդապետքն՝ Գոշ Մխիթարն, Մոնօնիկն և Տուրքիկն»։ Կ. Գանձակեցու վկայությամբ նույնպես մասնակցել են «... այլք յոլովք աստի և անտի, հանդերձ երևելի քահանայիւք վանաց և քաղաքաց և գիւղից» (էջ 162), նա թվում է նշանավոր շատ վարդապետների անուններ, ի միջի այլոց՝ վերևում հիշված Մխիթար Գոշի, Մոնոնիկի և Տուրքիկի անունները։ Մեզ թվում է, որ տարեգրության հեղինակի վկայությունը Գետիկի ժողովի մասին, վերաբերում է Լոռիում տեղի ունեցած ժողովին, որտեղ Զաքարեն չի կարողացել իր նպատակին հասնել։ Եթե սա ճիշտ է, նշանակում է, ըստ տարեգրության, վերոհիշյալ ժողովը տեղի է ունեցել ոչ թե 1205 թ., ինչպես կարծում է Չամչյանը («Պատմութիւն Հայոց», հատոր Գ, էջ 181), կամ 1208 թ. հետո, ինչպես կարծում է Օրմանյանը («Ազգապատում»), էջ 1576), այլ 1211 թվականին։

21. Ըստ Վ. Արևելցու, Զաքարեի Արդավիլի արշավանքը տեղի է ունեցել 1210 թ. (էջ 139)։ Կ. Գանձակեցին արշավանքի տարեթիվը չի հիշում (էջ 175)։ XIII դարի վրաց Անանունը Զաքարեի երկու արշավանքն է նշում դեպի Պարսկաստան («Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», հ. Բ, էջ 22—24)։ Սակայն Հովսեփյանը այդ համարում է չափազանցություն («Խաղբակյանք կամ Պռոշյանք...», մասն Ա, էջ 11, ծանոթ.*)։ Ի դեպ այս մասին խոսելիս

պրոֆ. Մելիքսեթ-Բեկը մոնղոլների կողմից 1236 թ. Անիի գրավման և ավերման Կ. Գանձակեցու տեղեկությունները (որոնք նկարագրված են «Պատմություն Հայոց»-ի հատուկ գլխում. «Վասն քաղաքին Անւոյ, թէ որպէս մատնեաց տէր ի ձեռս նորա», էջ 244—246) սխալմամբ վերագրում է 1207—1208 թ. թ. Անին ավերող Արտավիլի սուլթանին։ (Նույն տեղ, էջ 31—32, ծանոթ. 36)։

22. Զաքարեի մահվան մասին մեր սկզբնաղբյուրները տալիս են հակասական վկայություններ։ Առաջարկվող բնագրի համապատասխան այն տեղի է ունեցել Զաքարեի Արտավիլ արշավելուց մեկ տարի հետո՝ 1213 թ., ըստ Վ. Արևելցու՝ 1210 թ. (էջ 183), ըստ Մխ. Այրիվանեցու՝ 1211 թ. (էջ 65), ըստ Ստ. Օրբելյանի՝ 1212 թ. (էջ 398)։ Ուսումնասիրողներից Չամչյանը համարում է 1211 թ. («Պատմութիւն Հայոց», հատոր Գ, էջ 185, Արտավիլ արշավելուց «յետ տարւոյ միոյ վախճանեցաւ»), Օրմանյանը՝ 1213 թ. («Ազգապատում», էջ 1587), իսկ Կոստանեանցը՝ 1212 թ. («Վիմական տարեգիր», էջ 51, 55)։ Հմմտ. «Խաղբակյանք...», մասն Ա, էջ 11։

23. Բնագրում սույն հատվածը գրված է ՌՄԺԹ (ՈԿԶ) թվականի դիմաց, միևնույն ժամանակ պայմանական նշանով ցույց է տրված, որ այդ հատվածը պետք է դնել ՌՄԺԵ (ՈԿԲ) թվականի դիմաց։ Տարեգրության սույն վկայությունը հաստատում են Կ. Գանձակեցին (էջ 209) և Վ. Արևելցին, (էջ 184)։

24. Բնագրում սույն հատվածը կազմում է «կատարի սուրբ և աշխարհալոյս վարդապետն Գոշ Մխիթարն ի Գետիկ» նախադասության շարունակությունը և գտնվում է ՌՄԻԱ (ՈԿԸ) թվականի դիմաց, միևնույն ժամանակ պայմանական նշանով ցույց է տրված, որ այդ հատվածը պետք է դնել ՌՄԺԸ (ՈԿԵ) թվականի դիմաց։

25. Բնագրում սույն հատվածը դրված է ՌՄԻԲ (ՈԿԹ) թվականի դիմաց, միևնույն ժամանակ պայմանական նշանով (կարմիր թանաքով) ցույց է տրված, որ այդ հատվածը պետք է դնել ՌՄԺԹ (ՈԿԶ) թվականի դիմաց։ Պրոֆ. Աբրահամյանը «Երանուն» բառը համարելով աղճատված, վերոհիշյալ բառի դիմաց փակագծում նշում է «Երասխուն» (?) (հարցականը պրոֆ. Աբրահամյանինն է, էջ 23)։ Նախ, ինչպես հայտնի է, ոչ մի վկայություն չունենք այն մասին, որ Չինգիզ խանը եկել է Հայաստան, բացի այդ, ինչպես հայտնի է, մոնղոլների հետախուզական արշավանքները Հայաստան 1220 թ. շուտ չի կատարվել։ Մոնղոլները նվաճելով Չինաստանը (1211 և 1215 թ. թ.), տարեգրության նշած թվականին՝ ՈԿԶ (1217) մոտենում էին Խորեզմին։ «Երանուն» բառը կարծում ենք, «Երան» (հմմտ. Եղիշէ «Երան—Աներան)=Իրան բառն է։

26. Հովհաննես Սսեցի (Մեծաբարոյ) կաթողիկոսի մահվան մասին սույն վկայությունը հաստատում է Ս. Անեցին (էջ 148), սակայն Միխ. Ասորին խոսելով թափուր գահը հափշտակելու առթիվ Սիր Ատանի սպանությունից հետո կազմակերպված դավադրության մասին, գրում է, որ դավադիրները ամրացել էին Տարսոնում, «իսկ պարոն Կոստանդին և տէր Յովհաննէս կաթողիկոսն գնացին զօրօք և պաշարեցին զնոսա սուղ ինչ ժամանակս...։ «Բայց տէր Յովհաննէս կաթողիկոսն յառաջ քան զառնուլ քաղաքին վախճանեցաւ ի թուին Հայոց ՈԿԹ (669)...» (էջ 516)։ Այսպիսով, Հովհաննես Սսեցին մահացել է ՈԿԹ (1220) թվին նախքան Տարոնի գրավումը Կոստանդին պայլի կողմից. (հմմտ. Հեթում Բ-ի «Տարեգրությունը»։ Օրմանյանը Հովհաննեսի մահը դնում է 1220 թ. ամառը («Ազգապատում», էջ 1595)։

27. Բնագրում համապատասխան տարեթվի մոտ տեղ չլինելու պատճառով սույն հատվածը դրված է ոչ իր տեղում, պայմանական նշանով ցույց է տրված, որ այն պետք է դնել ՌՄԻԲ (ՈԿԹ) տարեթվի դիմաց։

28. Վկայությունը վերաբերում է դեպի Անդրկովկաս մոնղոլների կատարած առաջին արշավանքին (տես վերևում, էջ 29, ծանոթ, 28)։ Ինչպես հայտնի է, մոնղոլներն այդ ժամանակ Գանձակ չհասած շարժվեցին Դերբենդ և ապա հյուսիս։ Նկատի ունենալով այդ հանգամանքը, բնագրի «Կոոմանա» ջուրը, ենթադրում ենք, որ պետք է լինի Կուրակ-չայը, որը սկիզբ է առնում Քեափաս, Բաղիրկյան և Բանեովշա լեռների լանջերից (Մռավից հյուսիս), այնուհետև անցնելով Գետաշեն գյուղի միջով, վերջինիցս բավական ներքև իր մեջ աջ կողմից ընդունում է Բալա Կուրակ վտակը (տես «Ազգագրական Հանդէս», 1899, [illegible], էջ 275, հմմտ. Բարխուդարյանց, «Արցախ», էջ 9)։

29. Լևոն Ա թագավորի մահվան տարեթիվը չի համապատասխանում իրականության։ Մեր պատմիչները, բացառությամբ Ս. Անեցու, որն այդ դեպքը դնում է ՈԿԷ (=1218) թվականի տակ (էջ 148), Լևոն Ա-ի մահը դնում են ՈԿԸ (=1219) թվականին։ (Տես՝ Միխ. Ասորի, էջ 515։ Վ. Արևելցի, էջ 185։ Կ. Գանձակեցի, էջ 177։ «Հայապատում», էջ 440։ Հեթում Բ-ի «Տա-

րեգրությունը)։ Ուսումնասիրողներից՝ Չամչյանը համարում է 1219 թ. մայիսի 1-ը («Պատմութիւն Հայոց», հատոր Գ, էջ 193), Ալիշանը և Օրմանյանը՝ 1219 թ. մայիսի 2-ը («Սիսուան», էջ 524, 553, «Ազգապատում», էջ 1593)։

30. Բնագրում գրված է միայն տարեթիվը։

31. Կոստանդին Բարձրբերդցու կաթողիկոս ընտրվելը Ս. Անեցին նշանակում է ՈԿԹ (1220) թվականին (էջ 148), որը հաստատվում է Հեթում Բ-ի վկայությամբ (III տարեգրություն), սակայն ըստ Միխ. Ասորու վերոհիշյալ դեպքը տեղի է ունեցել Հայոց 670 (1221) թվականին (էջ 517), իսկ Օրմանյանը մի դեպքում ընդունում է 1221 թ., մի այլ դեպքում 1220 թ. («Ազգապատում», էջ 1602, 1665)։

32. Վրաց թագավոր Գեորգի-Լաշայի մահը դրված է իրականից 3 տարի ուշ։ Վրաց աղբյուրներից XIII դարի Անանունը, գրում է. «... (և) մեռավ Գեորգ թագավորը Բագավանում հունվարի տասնեութին, չորեքշաբթի օրը, (լերբ) քրոնիկոնի չորս հարյուր քառասուն և երկուսն էր...» (Մելիքսեթ-Բեկ, «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», հ. Բ, էջ 44։ Համտ. նույն տեղ, էջ 51, ծանոթ. **)։ Այսինքն՝ 412+780=1222 թ.։

33. Համտ. Ս. Անեցի, էջ 147, տողատակ։

34. Համտ. Ս. Անեցի, էջ 147, տողատակ։

35. Բնագրում համապատասխան տարեթվի դիմաց տեղ չլինելու պատճառով սույն հատվածը գրված է տարեթվերից դուրս, սյունակի ներքևի մասում, սակայն պայմանական նշանով ցույց է տրված, որ այն պետք է տեղավորել բնագրի ՌՄԻԷ (ՕՀԴ) թվականի դիմաց։

36. Կ. Գանձակեցին Ջալալեդդինի Հայաստան արշավելուն նվիրում է հատուկ գլուխ (էջ 211—215) և այդ արշավանքը դնում ՈՀԴ (=1225) թվականին, ինչպես և մեր տարեգրության վկայությունը։ Այս դեպքերի մասին համառոտ վկայություն տալիս է նաև Ստ. Օրբելյանը (էջ 400)։ Ըստ Միխ. Ասորու այն տեղի է ունեցել 675 (1226) թվականին (էջ 519)։

37. Ինչպես տեսնում ենք տարեգրության հեղինակը մոնղոլների արշավանքը դնում է Ջալալեդդինի արշավանքից «յետ ԲԺ ամի», այսինքն 686 (=1237) թվականին, իսկ բնագրի 39-րդ էջում նշում, որ մոնղոլները Անին, Կարսը, Լոռին և հայկական այլ քաղաքներ գրավել են 1236 թ.։ Նկատի ունենալով ,որ վերջին վկայությունը ճիշտ է և հաստատվում է մատենագրական այլ վկայություններով (տես՝ վերևում I ժամանակագրություն, ծանոթ. 31), ուստի պետք է եզրակացնել, որ տարեգրության առաջին վկայությունը ճիշտ չէ։ Ստ. Օրբելյանը գրում է, որ մոնղոլների արշավանքը դեպի Հայաստան, տեղի է ունեցել Ջալալեդդինի արշավանքից «յետ մետասան ամի» («Պատմութիւն...», էջ 400), այսինքն 674+11=685, որ վերջին՝ 685 թիվը ճիշտ է, այդ երևում է ոչ միայն Ստ. Օրբելյանի մի այլ վկայությունից, որտեղ գրում է. «և առին զաշխարհս ի 685 թուականին» (Նույն տեղ, էջ 402), այլ վերևում ցույց տրրված մատենագրական ուրիշ վկայություններից։ Բայց Ս. Անեցու համաձայն մոնղոլները Հայաստան, Վրաստան, Աղվանք մտել և ավերել են ՈՁԴ (1235) թվին (էջ 150)։ Տարեգրության հեղինակը մոնղոլներին նկարագրում է «... անընդել և ահագնատեսիլ և անյագ գազանն» (Համտ. Կ. Գանձակեցի, էջ 257, Մաղաքիա աբեղայի «Պատմութիւն...», էջ 6—7), իսկ Օրբելյանին մոնղոլները երևում են «պատկերով յոյժ գեղեցիկք» (էջ 401)։

38. Հեթում Ա-ի թագավորության տարեթվի մասին տարեգրության վկայությունը ստույգ է և հաստատվում է այլ մատենագիրների կողմից՝ Միխ. Ասորու («Ժամանակագրութիւն», էջ 519), Սմբատ Գունդստաբլի («Տարեգիրք», էջ 121), Հեթում Բ-ի տարեգրություն, Սամ. Անեցու ժամանակագրության շարունակողի (էջ 149)։ Այդ վկայությունները հաստատվում են ժամանակակից մի այլ անձնավորության հիշատակարանով. ոմն Գրիգոր, 1225 թ. ընդօրինակելով մի ավետարան, իր կողմից թողած-հիշատակարանում գրում է՝ «Յամի ՈՀԴ (1225) թուաբերութեանս Հայոց գրեցաւ կենսաբեր սուրբ Աւետարանս, ձեռամբ Դրիգորի ի Տարսուս քաղաքն... յաւուրս Կոստանդեայ սպարապետին՝ քեռորդւոյ թագաւորին Հայոց Լևոնի»։ (Հիշատակարանների ժողովածու, № 6273, էջ 33բ)։ Սա նշանակում է, որ 1225 թ. Հեթումը դեռ չէր թագավորել։ Ուսումնասիրողներից Ալիշանը վերոհիշյալ դեպքը դնում է 1226 թ. Հոգեգալստյան տոնին, որը հեղինակի հաշվումներով կընկնի հունիսի 14-ին («Սիսուան», էջ 528), իսկ Օրմանյանը այդ առթիվ գրում է. «... Հոգեգալստեան տօնին, որ այն տարի կ'իյնար յունիս 7-ին»։ («Ազգապատում», էջ 1608)։ Սակայն չնայած ժամանակակից մատենագիրների՝ Միխ. Ասորի, Սմբատ, Գրիգոր գրչի հավաստի ցուցումներին, կան մատենագիրներ, որոնք Հեթում Ա-ի թագավորության ժամանակը ետ են տանում. այսպես Կ. Գանձակեցին գրում է. «Եւ եղև սկիզբն թագաւորութեանն Հեթմոյ՝ ի ՈՀԳ (=1224) թուականին Հայոց...» (էջ 180)։ Չամչյանը հավանաբար հետևել է Կ. Գանձակեցուն (Համտ. «Պատմութիւն Հայոց», հատոր Գ, էջ 194)։

39. Բնագրում սույն հատվածը գրված է սյունակների աջ կողմի ամենավերևում, միևնույն ժամանակ պայմանական նշանով ցույց է տրված, որ այն պետք է դնել ՌՄԻԸ (ՈՀԵ) թվականի դիմաց։ Ինչպես տեսնում ենք տարեգրության վկայության համաձայն Ջալալեդդինը 1226 թ. Խլաթը 40 օր պաշարելուց հետո չկարողանալով գրավել, թողել է պաշարումը, սակայն նրան հաջողվում է Խլաթը գրավել հետագայում՝ 1230 թ.։ Մեր այն մատենագիրները, որոնք հիշում են այս դեպքերը, վկայում են, որ Խլաթը Ջալալեդդինի կողմից գրավվել է նրա առաջին հարձակման ժամանակ։ Այսպես՝ Վ. Արևելցին Ջալալեդդինի արշավանքը նշանակելով Հայոց 675 թ. (=1226) դրում է. «... զկնի ամի միոյ գայ ընդ կողմն դաշտավայրեացն Գագայ ի Տփխիս. և բազում ոճիրս գործեալ՝ դառնայ ի վերայ Խլաթայ. և առեալ զնա և հարստացեալ երթայ ի վերայ Ալադին սուլտանին Հոռոմոց և Մելիք Աշրափին» (էջ 188)։ Այսպիսով, ըստ Վ. Արևելցու, Ջալալեդդինը 1227 թ. Տփխիսը գրավելուց և ավերելուց հետո, նույն տարին հարձակվում է և գրավում Խլաթը։

Իսկ Կ. Գանձակեցին, վերոհիշյալ դեպքերի մասին խոսելիս, չի նշում տարեթիվը, միայն դրում է կործանեցին և քանդեցին. «... ոչ միայն ի Տփխիս, այլ և ի Գանձակ, և ի Նախջաւան, և յայլ տեղիս գործէին» (էջ 213), և այնուհետև ավելացնում «յետ գործելոյ նորա զայս չարիս, գնաց նա ի քաղաքն Խլաթոր (պետք է լինի Խլաթ որ է) աշխարհին Բզնունեաց. և էր նա ընդ իշխանութեամբ Աշրաֆ սուլտանին, և ետ պատերազմ ընդ նմա, և առ զնա» (էջ 215)։

40. Սույն վկայությունը հաստատում է Վրաց XIV դարի Անանունը («Վրաց աղբյուրները Հայաստանի...», հ. Բ, էջ 52)։ Տես և հմմտ. Օրբելյան (էջ 398), Կ. Գանձակեցի (էջ 224—225)։

41. Այս ավանդությունն ըստ երևույթին տարածված չի եղել, որը հայտնի չի Չամչյանին և Օրմանյանին (տես և հմմտ. «Պատմութիւն Հայոց», հ. Դ, էջ 226—227, «Ազգապատում», էջ 1614—1615)։

42. Հմմտ. Սամ. Անեցի, էջ 149։

43. Հմմտ. Ս. Անեցի, էջ 149։

44. Տես վերևում I ժամանակագրություն, ծանոթ. 30։

45. Եթե խոսքը վերաբերում է Բաչուի արշավանքին, որն ըստ Կ. Գանձակեցու Չիմանկատուի ճակատամարտի երկրորդ տարում արշավեց «... ընդ կողմանս Բզնունեաց ի քաղաքն Խլաթ, և առեալ զնա...» (էջ 276), ապա այն տեղի է ունեցել 1245 թ. (հմմտ. «Վրաց աղբյուրները Հայաստանի....», հ. Բ, էջ 55)։

46. Կ. Գանձակեցու մոտ «Մելիք Քամլ» կամ «Մելիք Քեմլ» (էջ 145, 156), որին նա համարում է «յազգէ Սալահատնին, որ առ դԵրուսաղէմ» (էջ 156)։ Քամիլ Մուհամմեդը Սալահեդդինի Ադիլ-Սեյֆ-ադ-դին Աբուբեկր (Սաֆադին) եղբոր թոռն է, Մուսաֆֆար Ղազիի որդին, որն իշխել է Եգիպտոսում և Դամասկոսում 1218—1238 թ. թ.։ (Лэн-Пуль, „Мусульм. дин" стр. 60)։

47. Իմա Սկեռացի։

48. Հմմտ. Կ. Գանձակեցի, էջ 247։

49. Բնագրի «զխառզս» բառն աղճատված է։ Ս. Անեցու մոտ պահվել է այդ բառի ճիշտ ձևը... ՌՄԽԱ (=1241), Հոռմցին յԱմիթ երեկ չկարաց առնուլ. էառ զՍեբրակս և զԱնի՝ դԾուրհայ և զխառան» (էջ 150 տողատակ, հմմտ. Ձեռ. № 1869, էջ 257ա)։

50. Տես վերևում, I ժամանակագրություն, ծանոթ. 31։

51. Համաձայն Լեն-Պուլի հաշվումների Աշրաֆ Մուսան մահացել է 1237 թ., իսկ Քամիլը՝ 1238 թ. („Мусульм. династии", стр. 60)։

52. Ս. Անեցու ժամանակագրության շարունակողի մի տարբերակում կա նաև այսպիսի մի վկայություն. «ՌՄԽԹ... Պապայ Ռասուլն եկաւ» (էջ 150, տողատակ)։

53. Ըստ Կ. Գանձակեցու մոնղոլների կողմից Կարինի գրավումը տեղի է ունեցել Հայոց ՋՂ (=1241 թ. տպված է ՈԾ-ը, որը անշուշտ տպագրական սխալ է, էջ 263) թվին, երբ Չարմաղանին հաջորդում է Բաչուն։ «Արդ իբրև առ նա (Բաչուն— Վ. Հ.) զիշխանութիւնն, իսկոյն զօր գումարեաց յամենայն ազգաց՝ որ ընդ ձեռամբ նորա և գնաց յաշխարհն Հայոց... և հասեալ ի Կարին գաւառ...» (էջ 264)։ Այսպիսով, Գանձակեցու համաձայն Բաչուն Կարինը գրավել է 1241 թ.։ Վ. Արևելցին հաստատում է տարեգրության հեղինակի վկայությունը, նա գրում է. «Արդ՝ ի վեց հարիւր իննսուն և մի թուին Հայոց Բաչու նուինն փոխեաց զիշխանութիւնն Չարմաղանին և էառ զԿարնոյ քաղաք...» (էջ 193)։

Հմմտ. Վարդանի սույն վկայությունը «Անանուն Ժամանակագրության» հեղինակի (Երևան,

*1940 թ.) վկայության հետ (էջ 21)։ Սակայն «Պատմութիւն վասն ազգին նետողաց» աշխատության հեղինակը սույն դեպքը դնում է ՈՁԸ (—1239 թ., էջ 13), որը անշուշտ սխալ է։*

*54. Տես և համտ. Մաղաքիա Աբեղայի «Պատմութիւն վասն ազգին նետողաց», էջ 12։*

*55. Խոսքը Չիմանկատուի ճակատամարտի մասին է, որը տեղի ունեցավ 1243 թ.։ Մեր պատմիչներից Կ. Գանձակեցին (էջ 265—269), Վ. Արևելցին (էջ 193—194), «Անանուն»-ի հեղինակը (XIII դար, էջ 21) և Ռւ. Ռուբրյուքը («Ուղեգրություններ», հ. Ա, Երևան, 1932, էջ 24) հաստատում են սույն վկայությունը։ Մաղաքիա Աբեղան ընդհանուր ձևով է նկարագրում. առանց տարեթիվը հիշելու (էջ 14—16), իսկ Մխ. Այրիվանեցին դնում է 1241 թ. (էջ 67) տակ։*

*Համաձայն Վարդանի վկայության թաթարները Կեսարիայում և Սեբաստիայում բնակչությանը սրի չեն քաշել «... զի վաղ եկին ի հնազանդութիւն» (էջ 193), ընդհակառակն, Երզնկայում անխնա կոտորել են և գերեվարել. «... քանզի ընդդէմ դարձան» (էջ 193)։ Համտ. Կ. Գանձակեցի, էջ 267—268։ Վարդան Արևելցին բավական հետաքրքիր ձևով է հաղորդում վերոհիշյալ դեպքի թվականը. «Զի համարադիր թուականին ՈՂԲ էր իւրն, և ընդ այն գործեցան արդիւնքն՝ արժանաւոր Ոդրոց և արտասուաց, ոչ միայն բանականաց՝ այլ և անբանից...» (էջ 193—194)։ Հատվածում հիշված «Ղասարիա» քաղաքը Կապադովկիայի Կեսարիա քաղաքն է, (համտ. ձեռ. № 737, էջ 110), որին մեր պատմիչները կոչել են նաև Մաժակ։*

*56. Մաղաքիա աբեղան բավական մանրամասն նկարագրում է Դավթի կալանքից ազատվելը և թագավոր օծվելը, սակայն թաղադրության տարեթիվը չի հիշատակում (էջ 17—19)։ (Համտ. Կ. Գանձակեցի, էջ 273—274)։*

*57. Նկատի ունի վրաց Դավիթ թագավորի ապստամբությունը մոնղոլների դեմ, որը տեղի է ունեցել իրոք 1249 թ.։ Սույն վկայությունը հաստատում են Կ. Գանձակեցին, (որը իր պատմության մեջ հատուկ գլուխ է նվիրել վերոհիշյալ դեպքերի նկարագրությանը. էջ 303—305), Անանուն ժամանակագրության հեղինակը (էջ 21), Մաղաքիա աբեղան (էջ 20—21), վերջինս տարեթիվը չի հիշում)։ Վ. Արևելցին գրում է. «... և սոյն ՈՂԲ (հեղինակը նկատի ունի ՈՂԲ (=1243) թվականի Երզնկայի և այլ վայրերում կոտորածը) կրկնեցաւ ի վեց հարիւր իննսուն և ութ թուին. քանզի կարծիս առին Բաչուն... ամբարտաւանութեան և ապստամբութեան թագաւորին և իշխանացն Վրաց... անթիւս կոտորեցին՝ և գերեցին գեօղս և ագարակս և գործեցին խայտառականս՝ ի կանայս ի Հայս, և աւելի յաշխարհն Վրաց» (էջ 194)։ Իսկ Ս. Անեցու ժամանակագրության շարունակողը սույն դեպքի մասին գրում է. «ՌՄԾԲ. թաթարն զՍոմխէթ (տպված է «զԱմխէթ») կոտորեաց, աւագն (պետք է լինի «Աւագն») մեռաւ, Պապն փախեաւ... (էջ 150 տողատակ)։*

*58. Վ. Արևելցու (էջ 194), Ստ. Օրբելյանի (էջ 412), «Անանուն ժամանակագրութեան» հեղինակի համաձայն Ավագը մահացել է Հայոց 699 (= 1250) թվին։ Կ. Գանձակեցին նկարագրելով 1249 թ. վրացիների ապստամբությունը մոնղոլների դեմ, գրում է. «Յետ այսորիկ մեռաւ իշխանաց իշխանն Աւագ...» (էջ 305)։*

*59. Բնագրում սույն հատվածը դրված է ՌՄԾԵ (ՉԲ) թվականի դիմաց, սակայն հատվածի առաջին «Յ» տառի և ՌՄԾԴ (ՉԱ) թվականի վրա դրված է միանման պայմանական նշան՝ սև թանաքով, իսկ միևնույն հատվածի վերջին՝ «Սինեաց» բառի և Չ (ՌՄԾԳ) թվականի վրա գրված է մի ուրիշ միանման պայմանական նշան (կարմիր թանաքով) և որովհետև հատվածը սկսվում է Չ թվականով, ուստի ներկա հրատարակության մեջ վերոհիշյալ հատվածը գրեցինք ՌՄՁԳ (Չ) թվականի դիմաց, ինչպես ցույց էր տալիս նաև երկրորդ (կարմիր թանաքով) պայմանական նշանը, ենթադրելով, որ առաջին պայմանական նշանը (սև թանաքով) գրիչը սխալմամբ է գրել։ Վանականի մահվան մասին մանրամասն տեղեկություններ հաղորդում է Կ. Գանձակեցին, ըստ որի նա մահացել է Չ (=1251) թվականի (էջ 334) մարտի 18-ին, շաբաթ օրը (նույն տեղ, էջ 333)։ Մաղաքիա աբեղան նշում է միայն մահը առանց տարեթիվը հիշելու. «ընդ աւուրն ընդ այնոսիկ» և այլն (էջ 21)։ Սյունյաց Հովհաննես եպիսկոպոսի մասին եղած վկայությունը համտ. Օրբելյան, էջ 343։*

*60. Սույն վկայությունը Մանգու ղանի թագավորելու մասին շեղվում է իրականությունից, ինչպես հայտնի է, Մանգու ղանը թագավորել է 1251 թ. մինչև 1259 թ.* (Лэн-Пуль „Мусульм. династии" стр, 177, прим. 1).

*Կ. Գանձակեցու (էջ 346) և Մխ. Այրիվանեցու (էջ 67) համաձայն Մանգու ղանը գահին տիրացել է 1251 թ.։*

*61. Համտ. Կ. Գանձակեցի (էջ 348), Ստ. Օրբելյան (էջ 412—413), «Անանուն ժամանակագրություն» (էջ 22), սակայն Վ.Արևելցու համաձայն Արղունի աշխարհագիրը տեղի է ունեցել*

*702 (=1253) թվին (էջ 195), Մխ. Այրիվանեցու՝ 1251 թ. (էջ 67), իսկ Մաղաքիա աբեղան վերոհիշյալ դեպքի ժամանակը մշուշապատ է ներկայացնում, նա մորեխի հանդես գալը և պատճառած վնասները դնում է 1251 թ. և ապա գրում. «և զկնի ցասմանս այսորիկ եկն գըլխաւոր մի Տաթար Արղուն անուն.... և համարեաց զերկիրն յարեւելից վասն հարկի...» (էջ 22)։*

*62. Մեզ համար անհասկանալի պատճառով սույն հատվածը կրկնված է. նախ գրված է ՉԴ (=1255) թվականի դիմաց, ապա ՉԵ (=1256) թվականի։*

*Համաձայն Համդալլահ Ղազվինի Ալամութ նշանակում է «արծվի բույն», հավանաբար նկատի ունենալով բերդի տեղադրությունը։ Ալամութը գտնվում է Էլբուրս լեռնաշղթայի մեջ, Ղազվինից հյուսիս-արևելք։ Ալամութը համարվում էր իսմաիլյանների (իսկ ավելի ուշ՝ XI—XIII գ. գ. ասասասիներ՝ մարդասպաններ անունով, այստեղից մեր մատենագրության մեջ հաշիշյաններ) աղանդի կենտրոն (տես և համտ.* Бартольд „Историко-географический обзор Ирана" СПБ, 1903, стр. 139—140):

*Մոնղոլների կողմից Ալամութի և այնուհետև Երզնկայի, Սեբաստիայի, Կեսարիայի և այլ քաղաքների գրավման մասին Կ. Գանձակեցին հաղորդում է իր Պատմության հատուկ գլխում (էջ 357—361)։ Վերոհիշյալ դեպքերը գնելով ՉԵ (=1256) թվականին։ Համաձայն Վ. Արևելցու Հուլաուն Ալամութը գրավել է 704 (=1255) թվականին (էջ 195)։ Հեթում Բ-ի համաձայն Հուլաուն Ալամութը, ինչպես Բաղդադը, Հալեպը գրավել է ՉԷ (=1258) թվականին (III տարեգրություն)։ Մխ. Այրիվանեցին Ալամութի գրավումը հիշում է Բաղդադի և Մուաֆարկինի գրավումից հետո, իսկ այդ բոլորը նա դնում է 1251 թվականի տակ (էջ 67)։ Սույն դեպքերի մասին բավական հետաքրքիր և ստույգ տեղեկություններ է հաղորդում դեպքերին ժամանակակից Ռաշիդ-ադ-դինը (1247—1318 թ. թ.), իր նշանավոր Տարեգրության մեջ* (Рашид ад-дин „Сборник Летописей", том III, Москва-Ленинград, 1946): *Ռաշիդ-ադ-դինն այստեղ (էջ 28—32) նկարագրում է Մեյմունգիզ, Ալամուտ և Լյումբեսեր ամրոցների գրավման մանրամասնությունները, ըստ որի Ալամուտի գրավումը տեղի է ունեցել 1256 թ. դեկտեմբերի 15-ին (էջ 31)։*

*Բաչուի կողմից փոքրասիական քաղաքների նոր ասպատակության մասին Ռաշիդ-ադ-դինը անուղղակի գրում է, երբ Հուլաուն 1257 թ. մարտ-ապրիլ ամիսներին Ղազվինի շրջակայքից ուղևորվում է Համադան, Ադրբեջանի սահմաններում նրան ընդառաջ է գալիս Բաչուն։ Հուլաուն կշտամբում է վերջինիս, որ նա նվաճումներ չի կատարել և թշնամիներին իրեն չի հնազանդեցրել։ Բաչուն արդարանալով պատասխանում է. «որ իմ ուժերի ներածին չափ կատարել եմ Ռեյից մինչև Սիրիայի սահմանները» (Ռաշիդ-ադ-դին, էջ 33), նշանակում է այդ արշավանքը տեղի է ունեցել մինչև 1257 թ.։*

*63. Համտ. Կ. Գանձակեցի, էջ 357—358, Վ. Արևելցի, էջ 196։*

*64. 1257 թ. Գարնանը Հուլաուի և Բաչուի հանդիպումից անմիջապես հետո, Բաչուն արշավում է Իկոնիա։ Վերջինիս սուլթան Քեյխոսրովն ընդունում է Բաչուի զորքերի ճակատամարտը Քյոսե դաղ վայրում, որտեղ նա գլխովին ջախջախվում է։ Հենց այս դեպքերի ժամանակ էլ ավերվել է Երզնկան։ Բնագրի «Ղադա ղան» հավանաբար եղել է Բաչուի զորավարներից։ Անանունը ևս հիշում է, որ Ղաաա ղանը 1256 թ. գնացել է Կամախի վրա (էջ 24)։*

*65. Տեղ չլինելու պատճառով բնագրում սույն հատվածը դրված է Հայոց ՉԹ թվականի դիմաց, միևնույն ժամանակ պայմանական նշանով, ցույց է տրված, որ այն պետք է դնել Հայոց ՉԸ թվականի դիմաց։ Համաձայն Ռաշիդ-ադ-դինի հավաստի վկայության Մուաֆարկինի գրավումը տեղի է ունեցել 1259 թ. Հուլաուի որդի Յուշմուտի և այլոց կողմից։ Համտ. Կ. Գանձակեցի, էջ 371, Վ. Արևելցի, էջ 199, Մաղաքիա աբեղա, էջ 27։*

*66. Բնագրում համապատասխան մասում տեղ չլինելու պատճառով, սույն հատվածը դրված է ՉԺ (=1261) թ. դիմաց և միևնույն ժամանակ պայմանական նշանով ցույց է տրված, որ այն պետք է դնել Հայոց ՉԹ թվականի դիմաց։ Լեն-Պուլի հաշվումների համաձայն Մանգու ղանը մահացել է 1257 թ. (էջ 177), մինչդեռ Բարտոլդն այն ուղղում է 1259 թ. (նույն տեղ, էջ 177, ծանոթ. 1)։*

*67. Համտ. Կ. Գանձակեցի, էջ 373—376, Մխ. Այրիվանեցի, էջ 68, Վ. Արևելցի, էջ 200։ Բնագրի «Ղազմինը» Ղազվին քաղաքի անվան աղավաղումն է։*

*68. Վերոհիշյալ անձնավորությունները Բերքիարուխի զորավարներից էին, որոնք 1262 թ. Դերբենդի ճակատամարտում Հուլաուից պարտվեցին և փախան։ Համտ. Կ. Գանձակեցի (էջ 378—379)։*

69. Համաձայն Ռաշիդ-ադ-դինի Հուլաուն մահացել է 1265 թ. փետրվարի 5-ին, կիրակի (էջ 62)։ Համտ. Կ. Գանձակեցի էջ 382, Վ. Արևելցի էջ 209, Ստ. Օրբելյան էջ 419, Հեթում Պատմիչ («Պատմութիւն թաթարաց», Վենետիկ, 1842, էջ 50) և այլն։

70. Մանրամասնությունները տես Ռաշիդ-ադ-դինի մոտ, էջ 68։ Բնագրի այն տեղեկությունը, թե Բերքիարուխը «պատնէշ կապեաց ի Կուր գետոյ վերայ» ստույգ չէ, որովհետև Ռաշիդ-ադ-դինի հավաստի հաղորդմամբ 1265/66 թ. այդ բանը կատարում է Աբաղա ղանը հյուսիսից եկող վտանգի առաջն առնելու համար (էջ 68)։

71. Խոսքը վերաբերում է Մառիի ճակատամարտին. այս մասին տես Ներքևում, III ժամանակագրություն, ծանոթ. 95։

72. 1267 թ. ծաղզարդարը կլինի ապրիլի 10-ին (իսկ զատիկն ապրիլի 17-ին)։ Սակայն Վ. Արևելցու վկայության (էջ 215) հիման վրա Օրմանյանը Կոստանդինի մահը դնում է 1267 թ. ապրիլի 9-ին («Ազգապատում», 1665։ Համտ. Ստ. Օրբելյան, էջ 427, 503)։

73. Բնագրում «Սփխիս» ձևով։

74. Բնագրում սույն հատվածը դրված է աղյուսակի ձախ կողմի ամենավերևի մասում, սակայն պայմանական նշանով ցույց է տրված, որ այն պետք է դնել Հայոց ՉԺԷ (— 1268) թվականի դիմաց։ Այս դեպքերին անդրադառնում է նաև Հեթում պատմիչն իր հիշատակարանում (Հայկական ՍՍՌ ԳԱ «Տեղեկագիր», 1948 թ., № 10, էջ 72), ըստ որի Ցնդխտարն Անտիոքը գրավել է 1268 թ. ծաղկազարդի շաբաթ օրը, այսինքն մարտի 31-ին։ Սույն վկայությունը հմմտ. Ստ. Օրբելյան, էջ 441, Մաղաքիա աբեղա, էջ 47։

75. Խոսքը վերաբերում է Ավագի դստեր Խոշաքի ամուսնությանը։ Հմմտ. Ստ. Օրբելյան էջ 418, «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», հ. Բ, էջ 59։

76. Բնագրի «...Թագուդարն մտեալ յԱփխազք մտու» հատվածի վերջին բառը աղճատված է կամ ավելորդ։ Պրոֆ. Աբրահամյանը սույն ժամանակագրության իր հրատարակության բնագրում վերոհիշյալ հատվածը բերում է հետևյալ սրբագրությամբ. «Թագուդարն մտեալ Ափխազ Քմտու.» (էջ 27) և ապա տալիս հատուկ ծանոթագրություն, «Աղավաղված բառ է։ Գուցե եղել է «յԱփխազք մտնու» (էջ 27, ծանոթ. 5)։ Թագուդարի Վրաստան մտնելը և ապա Սիրամոնի կողմից նրա բանտարկելու մասին բավական մանրամասն տեղեկություններ գտնում ենք Մաղաքիա աբեղայի մոտ (էջ 49—51), սակայն չի հիշում եղելության տարեթիվը։ Անանուն ժամանակագրության մեջ վերոհիշյալի մասին գտնում ենք խիստ համառոտ հաղորդագրություն, ըստ որի այդ դեպքերը տեղի են ունեցել ՉԺԷ (=1268) թվականին (էջ 24), իսկ Մխ. Այրիվանեցին 1261 թվականի տակ դրում է «Դակութարն փախեաւ ի Սռնէթ» (էջ 68)։

77. Բնագրում սույն հատվածը սկսվում է «Յայս նշանիս» բառերով, որովհետև բնագրի առաջին բառի «ա» տառի վրա կարմիր թանաքով գրված է պայմանական նշան՝ և նման մի նշան էլ գրված է ՉԺԹ թվականի վրա, ուստի «յաս նշանիս» բառերը չվերցրինք հրատարակության բնագրում, ենթադրելով, որ դրանք վերաբերում են ստույգ տարեթիվը մատնացույց անող նշանին։ Ներկա հրատարակության մեջ վերոհիշյալ ողջ հատվածը դրեցինք ՉԺԹ թվականի դիմաց, համաձայն գրչի ցուցմունքի։ Աբաղայի Խորասան արշավելու մասին բավական մանրամասն տեղեկություններ հաղորդում է Ռաշիդ-ադ-դինը (էջ 69—81)։ Արշավանքի պատճառը Չաղատայի որդու՝ Բորակի ապստամբությունն էր։ Աբաղա ղանը բազմաթիվ զորքով Ադրբեջանի սահմաններից դուրս է գալիս 1270 թ. ապրիլի 27-ին, ճակատամարտի տեղն ընտրվում է մի ընդարձակ վայր, որը տարածվում է այն լեռների լանջերին, որոնց ստորոտից հոսում է Կարասու («Սև ջուր») գետը (էջ 78)։ Ճակատամարտը տեղի է ունենում 1270 թ. հուլիսի 22-ին (էջ 81), որտեղ գլխովին ջախջախվում է Բորակը և մի կերպ փախչում կռվի դաշտից։ Վերոհիշյալ դեպքերի մասին համառոտ տեղեկություն տալիս է նաև Անանուն ժամանակագրությունը (էջ 24), սակայն վերջինիս համաձայն Աբաղայի արշավանքը դեպի Խորասան և նրա հաղթանակը տեղի է ունեցել ոչ թե 1270 թ., այլ 1271 թ., որը ինչպես տեսանք, ճիշտ չէ։

78. Հեթում Ա. թագավորի մահն Անանունի համաձայն տեղի է ունեցել 1270 թ. հոկտեմբերի 28-ին (էջ 24), իսկ ավետարանի մի հիշատակարանի համաձայն՝ 1270 թ. հոկտեմբերի 25-ին (Գ. Սրուանձտեան «Թորոս Աղբար», մասն Բ, Կ. Պոլիս, 1885, էջ 382—383)։ Օրմանյանը Հեթում Ա-ի մահվան օրը վիճելի է համարում, թողնելով այն նոր հետազոտությունների լուսաբանման («Ազգապատում», էջ 1679)։ Այդ մասին տես նաև «Հանդէս Ամսօրեայ», 1948, № 3—6, էջ 269։

79. Հմմտ. Մաղաքիա աբեղա, էջ 52։ Կիրակոս վարդապետին վերաբերող սույն վկայությունը, պրոֆ. Աճառյանը սխալմամբ վերագրում է պատմության հեղինակ Կիրակոս Գանձակե-

ցուն («Հայոց անձնանունների բառարան», հ. 2, էջ 625—626), սակայն խոսքն այս Կիրակոսի մասին չէ, այլ մի ուրիշ Կիրակոսի, որը դարձյալ Գանձակեցի է և հայտնի է Արևելցի անունով («Հայապատում», էջ 472, ծանոթ. 1)։ Վերջինիս մահը նշում են 1272 թ. հունվարին («Սիսուան», էջ 555, «Ազգապատում», էջ 1668), որն իր կյանքն անց է կացրել Կիլիկիայում և այնտեղ էլ մահացել։

80. Համաձայն Ստ. Օրբելյանի Սմբատ Օրբելյանը մահացել է Հայոց 722 (= 1273) թվականին (էջ 420)։

81. Տես և հմմտ. Մխ. Այրիվանեցի, էջ 68։

82. Հմմտ. Մաղաքիա աբեղա, էջ 53—54։

83. Սույն վկայությունը հաստատում են Սմբատը («Տարեգիրք», էջ 125)։ Հեթում Բ-ն (III տարեգրություն), իսկ Ս. Անեցու շարունակողը նշում է Հայոց ՉԻՁ (=1277) թվին, էջ 152, Անանուն ժամանակագրությունը (էջ 24) և ժամանակակից մի հիշատակարան («Հայապատում», էջ 481) Հայոց ՉԻԴ (= 1275) թվին։ Ալիշանն ընդունում է 1275 թ. («Սիսուան», էջ 225, 255)։

84. Խլաթում տեղի ունեցած երկրաշարժն Անանունը դնում է 1275 թ. (էջ 24)։ Ռաշիդ-ադդինը նշում է, որ 1272/73 թ. ձմռանը Թավրիզում տեղի է ունեցել մի ուժեղ երկրաշարժ (էջ 88)։ Ձեռ. № 6273 պահվել է մի հիշատակարան, ըստ որի 1275 թ. տեղի է ունեցել երկրաշարժ (էջ 47ա և բ.)։ Տես և հմմտ. Ակինեան «Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ», Վիեննա, 1920, էջ 43)։

85. Հմմտ. Ռաշիդ-ադ-դին, էջ 88։

86. Տես նաև Անանուն ժամանակագրություն, էջ 24—25։ Ռաշիդ-ադ-դինը հաղորդում է, որ Յունլխտարը մահապատժի է ենթարկել մի շարք հայերի (էջ 88)։

Խոսքը վերաբերում է 1277 թ. Աբաղայի կազմակերպած արշավանքին, եգիպտական սուլթան Բեյբարսին պատժելու համար, որը նախորդ տարում Ալպիստանում ջախջախել էր մոնղոլական պահակային զորքը։ Այդ մասին մանրամասն պատմում է դեպքերին ժամանակակից Ռաշիդ-ադ-դինը։ Վերջինիս համաձայն Փերվանեի և այլոց դրդմամբ Բեյբարսը 1276 թ. արշավում է Ալպիստան. այստեղ սահմանի մոտ էր և մոնղոլական սահմանապահ զորքը։ Երկու բանակները հանդիպում են միմյանց 1276 թ. հուլիսի 3-ին։ Մոնղոլների ջախջախումից հետո Բեյբարսը մտնում է Կեսարիա։ 1276 թ. հուլիսի 3-ին մոնղոլների պարտության լուրը հասնում է Աբաղային, որը նույն թվի հուլիսի վերջերին բազմաթիվ զորքերով դուրս է գալիս Թավրիզից և հասնում Ալպիստան, ականատես լինելով ճակատամարտի հետքերին. «Նա տխրեց, լաց եղավ նրանց համար (սպանվածների— Վ. Հ.) և շատ վշտացավ Տուկուի և Տուդաունի համար (մոնղոլ զորավարներ— Վ. Հ.)», էջ 88։ Հմմտ. Անանուն, էջ 25։

Խարբերդի, Նիկիտայի (այժմյան Նիկտե) նվաճումն Աբաղայի կողմից կատարվել է այս ժամանակ։

Պրոֆ. Աբրահամյանը բնագրի «զՆիկիտան» սխալմամբ սրբագրել է «զկնի Կիտա» ձևով։ Նիկիտա (Նիկտէ) քաղաքը գտնվում է պատմական Կարամանիայում (Փ. Ասիա)։

87. Համաձայն Ռաշիդ-ադ-դինի Բեյբարսը մահանում է Դամասկոսում 1278 թ. ապրիլ-մայիս ամիսներին (էջ 89)։ Հմմտ. Անանուն, էջ 25։

88. Արաղան Մուին ադ-դին Փերվանեին Ալագաղում սպանել է 1277 թ. օգոստոսի 2-ին (տես Ռաշիդ-ադ-դին, էջ 89)։

89. Ռաշիդ-ադ-դինի համաձայն Աբաղան Թավրիզից Խորասան շարժվել է 1278 թ. մայիսի 25-ին (էջ 92)։

90. Հմմտ. Անանուն ժամանակագրություն, էջ 25։ Խոսքը վերաբերում է Տրապիզոնի թագավոր Մանվել I-ի որդի Գեորգի I-նին, որը թագավորել է 1266—1280 թ. թ.։

91. Հմմտ. Անանուն էջ 25, Մխ. Այրիվանեցի էջ 68։ Հեթում Պատմիչի համաձայն սույն դեպքերը տեղի են ունեցել 1282 թ. («Պատմութիւն թաթարաց», էջ 55—56, տես ներքևում III տարեգրություն)։

Խոսքը վերաբերում է եգիպտացիների և մոնղոլների պատերազմին։ Եգիպտական զորքերին առաջնորդում էր սուլթան Մանսուր Սեյֆ ադ-դին Կալաունը, նույն ինքն Ալֆին (1279—1290 թ. թ.), իսկ մոնղոլների զորքին առաջնորդում էր Աբաղայի եղբայր Մանկու Թեմուրը։ Համաձայն Ռաշիդ-ադ-դինի, ճակատամարտը տեղի է ունեցել 1281 թ. սեպտեմբերի 29-ին (էջ 96), Կալամելե վայրում (ըստ Սանուտոյի) Համայի և Հեմսի միջև (Սիրիայում)։ Այս պատերազմում մոնղոլները պարտվել են։

92. Մանկու-Թեմուրը Հուլաուի 11-րդ որդին էր, Աբաղայի եղբայրը, որը մահացել է 1282 թ. ապրիլի 26-ին (Ռաշիդ-ադ-դին, էջ 20, 97)։ Բնագրի «Շիպաուչին» հավանաբար Հուլաուի 13-րդ որդին էր, որը մահացել էր դեռևս 1265 թ. ձմռանը (Ռաշիդ-ադ-դին, էջ 21), իսկ Թադուդարը (Ահմաա) Հուլաուի 7-րդ որդին էր, որը գահը հափշտակեց Աբաղայի մահից անմիջապես հետո (մանրամասնությունները տես Ռաշիդ-ադ-դին, էջ 98—111)։

93. Բնագրում գրված է «ԻԲ» (=22), բայց կարելի է կարդալ նաև «ի Բ» (=2)։ Աբաղայի մահվան մանրամասնությունները տես Ռաշիդ-ադ-դինի մոտ (էջ 97), ըստ որի նա մահացել է 1282 թ. ապրիլի 1-ին Համադանում, անչափ կերուխումից հետո։ Համտ. Ստ. Օրբելյան, էջ 419, Անանուն, էջ 25, Հեթում Պատմիչ «Պատմութիւն թաթարաց», էջ 56։ Ճիշտը «ԻԲ» ընթերցումն է, որովհետև 1282 թ. Սահմի ամսվա 22-ը իսկապես ընկնում է ապրիլի 1-ին։

94. Խոսքը վերաբերում է վրաց թագավոր Դեմետրե II-ի խնամակալ Սադուն Արծրունի Մահկանաբերդցուն։ Ս. Անեցու շարունակողը սրա մահը նշում է 1285 թ. Տաշիրում (էջ 163), իսկ Մխ. Այրիվանեցին 1281 թ. (էջ 68) „История Грузии" (часть I, Тбилиси, 1946) հեղինակները՝ 1281 թ. (էջ 273)։

95. Հեղինակը նկատի ունի բյուզանդական կայսրության Պալեոլոգների դինաստիայի (1261—1453 թ. թ.) հիմնադիր Միխայիլ VIII-ին, վերջինս մահացել է 1282 թ. դեկտեմբերին (տես՝ акад. Успенский „История Византийской империи". том III, Москва- Леград, 1948 թ, стр 654. Համտ. Անանուն, էջ 25, Գելցեր «Համառօտութիւն բիւզ. կայսրների պատմութեան», Վաղպատ, 1901, էջ 436, վերջինս նշում է դեկտեմբերի 11-ին)։

96. Ըստ Ռաշիդ-ադ-դինի խոջա Ալա-ադ-դինը մահացել է 1283 թ. մարտի 5-ին (էջ 102), սկզբում կարծում էինք, թե վերջինս և Ալադին Սահիպն միևնույն անձնավորություններն են։ Բայց, որովհետև 1282—1284 թ. թ. Արեգ ամիսն ընկնում է օգոստոսի 8-ից մինչև սեպտեմբերի 6-ը և չի համապատասխանում Ռաշիդ-ադ-դինի վկայությանը, ուստի ենթադրում ենք, որ դրանք տարբեր անձնավորություններ են։ Ալադինին վերաբերող հատվածը բնագրում գրված է այնպես, որ կարելի է կարդալ նաև ՌՄԼԶ թվականի ներքո։

97. Մխ. Այրիվանեցին Պռոշի մահը նշում է 1281 թ. ներքո (էջ 68), սակայն Գեղարդի մի արձանագրությունից հայտնի է, որ Պռոշը մինչև 1283 թ. դեռ կենդանի էր (տես «Խաղբակեանք կամ Պռոշեանք Հայոց պատմութեան մէջ», հատոր Գ, Նյու-Յորք, 1942/43, հավելված Ա—17, էջ 13—14), իսկ Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի ավետարանի հիշատակարանում, որն ընդօրինակված է 1284 թ., Պռոշի փոխարեն հիշվում է «յիշխանութե[ան] բարեպաշտ Պապաքին...», («Խաղբակյանք կամ Պռոշյանք...», մասն Ա, էջ 125)։ Այստեղից եզրակացնում են, որ Պռոշը մահացել է 1284 թ. (Նույն տեղ, էջ 125)։

98. Այս և «Սարվանին որդին Շահապատինն» («Անանուն, էջ 23)„ որը Վարդան Արևելցուն ուղեկցեց Հուլաուի մոտ, արդյո՞ք միևնույն անձնավորությունները չեն։ Համտ. Ս. Անեցու շարունակ., էջ 161 և Վ. Արևելցու, «Աւագ երեցն Տփխեաց տէրտէրն» (էջ 204)։

99. Այս մասին տես ծանոթ. 92։

100. Ստ. Օրբելյանի մոտ «Դառն» ձևով (էջ 415), համտ. Մաղաքիա աբեղա, էջ 32, Վ. Արևելցին մի փոքր այլ ձևով է պահել «... ե ի կայս ամարայնի և Դառին գաւառ կոչեցեալն, կամ ըստ այլոց ի Դարան դաշտ...» (էջ 199)։ Դառնին Վասպուրականի հյուսիսային գավառներից մեկն էր, սահմանակից Ծաղկանց (կամ Ալա դաղ) լեռներին, որտեղ, ինչպես հաղորդում է Կ. Գանձակեցին, Հուլաուն կառուցել էր իր ամառանոցը (էջ 380—381)։ Հավանաբար գրչագրական սխալի պատճառով Կ. Գանձակեցու մոտ «Դառնոյ»-ի փոխարեն տպված է «Գառնոյ»։

101. Համտ. Ստ. Օրբելյան, էջ 423։

102. Համտ. Ռաշիդ-ադ-դին, էջ 103—111, Ստ. Օրբելյան, էջ 425։

103. Բնագրում այս երկու բառը գրված է միասին՝ «Ջայսոսիկարարեալ», պրոֆ. Աբրահամյանն իր հրատարակության բնագրում բառանջատումը սխալ կատարելով այն սրբագրել է «Ջայսոսիկ կատարեալ» ձևով, (էջ 29)։

104. Բնագրում «զորպէս» բառին դարձյալ հաջորդում է «որպէս» հապավված ձևով. վերջինս չվերցրինք։

105. Համտ. Մատ. ԻԱ, 41։ Ռաշիդ-ադ-դինի համաձայն Թակուդարին սպանում են 1284 թ., օգոստոսի 10-ի գիշերը (էջ 111)։ Տես և համտ. ներքևում III տարեգրություն, Մխ. Այրիվանեցի, էջ 68։

106. Համաձայն Ռաշիդ-ադ-դինի Արղունը գահ է բարձրացել 1284 թ. օգոստոսի 11-ին (էջ 113)։

107. Սույն անձնավորությունը հավանաբար Հուլաուի 8-րդ որդին է, որն Արղունի գահ բարձրանալուց հետո ստացավ Վրաստանը (Ռաշիդ-ադ-դին, էջ 114) և որի մահվան մասին Ռաշիդ-ադ-դինը ոչինչ չի հաղորդում։

108. Պրոֆ. Աբրահամյանն իր հրատարակության բնագրում (էջ 30, ծանոթ. 1), այս մասին հետևյալ ծանուցումն է դրում. «...Ներկա թվականը (այսինքն 1287 թ.— Վ. Հ.) և թաղման վայրը մեզ թվում է ավելի հավանական»։

Սակայն վերոհիշյալ վկայության համաձայն էլ Հակոբ Կլայեցու մահը տեղի է ունեցել ոչ թե 1287 թ., այլ 1285 թ., որովհետև սույն հատվածը դրված է Հայոց ՉԼԴ (=1285) թվականի դիմաց։ 1285 թ. «յիսնակին պահոցն» կլինի նոյեմբերի 19-ին, երկուշաբթի, ուրեմն Հակոբ Կլայեցին մահացել է 1285 թ. նոյեմբերի 19-ին։ Ստ. Օրբելյանի տված տեղեկությունները ևս հաստատում են Հակոբ Կլայեցու մահվան վերոհիշյալ թվականը։ Ստ. Օրբելյանը քահանա է ձեռնադրվել 1280 թ. (էջ 427) «և յետ հինգ ամի» (էջ 427), այսինքն 1286 թ. ձմռան վերջերին գնում է Կիլիկիա եպիսկոպոս ձեռնադրվելու, սակայն նա Կիլիկիա հասնելով Հակոբ Կլայեցուն արդեն վախճանված է գտնում։ Ստ. Օրբելյանի ճանապարհորդությունը դրեցինք ձմռան վերջերին, որովհետև նոր կաթողիկոսի ընտրությունը տեղի է ունենում 1286 թ. ապրիլի 13-ին («յաւուր ճրագալուցի Զատկին», Ստ. Օրբելյան, էջ 427—428)։ 1285 թ. հաստատում է նաև մի այլ վկայություն («Հայապատում», էջ 496)։ Տես և հմմտ. Սմբատ Գունդստաբլ (էջ 125), Անանուն, էջ 26։

Ալիշանի հաշվումներով Հակոբը մահացել է 1286 թ. փետրվարի 12-ին («Հայապատում», էջ 491, ծանոթ. 9), Օրմանյանը հետևել է Ալիշանին («Ազգապատում», էջ 1692)։

109. Հմմտ. Ռաշիդ-ադ-դին, էջ 116, ըստ որի Բուղային չինսագ („чиснаг")պատվավոր կոչում շնորհվել է մինչև 1286 թ. փետրվարի 23-ը։ Ստ. Օրբելյանը Բուղայի մասին ուրիշ առիթով դրում է. «...զմեծ զօրապետն զԲուղայ չինքսանն, որ կոչի աւագաց աւագ կամ ռէքրանց աէր...» (էջ 430)։

110. Համաձայն Ռաշիդ-ադ-դինի 1286 թ. ամառը Բուղայի (ծանոթ. 109) եղբայր Արուկը սպանում է Մաջդ-ադ-դին իբն ալ-Ասիրին, Սադ-ադ-դինին և Ալիչեկիբանին, իսկ Սահիբ Շամս-ադ-դինի որդի Հարունը սպանվում է նույն թվին Աբաղայի որդի Քեյխատուի կողմից Ալադաղում (էջ 117)։

111. Աթաբակի մասին, որը նահատակված իր հոր՝ Հասան Ջալալի մարմինը բերել տվեց Ղազվինից և թաղեց Գանձասարում, մեծ գովեստով խոսում է Կ. Գանձակեցին. «...այր սրբասնունդ, պարկեշտ և խոնարհամիտ և աղօթական...» (էջ 376)։

112. Խոսքը վերաբերում է Դոփյան Հասան Բ-ին։ Կարապետ եպիսկոպոսը վերջինիս որդի Գրիգորի 1289 թվին Ծարում թողած խաչքարի արձանագրության հիման վրա ենթադրում է, որ Հասան Բ-ն մահացել է 1289 թ. («Նիւթեր հայ մելիքութեան մասին», Բ. պրակ, Էջմիածին, 1914, էջ 64—65)։

113. Ճարը խոշոր վաճառական Ումեկի որդին էր։ Վերջինս 1240-ական թվերի մոնղոլական արշավանքների ժամանակ Կարինից (իսկ մինչ այդ Մանազկերտից—Կարին) տեղափոխվում է Թբիլիսի (տես՝ Կ. Գանձակեցի, էջ 349—50)։ Ճարը Գետիկ վանքում 1283 թ. թողել է մի ընդարձակ արձանագրություն, որտեղ հայտնում է իր տոհմի մանազկերտցի լինելը («Նիւթեր և ուսումնասիրութիւններ», պրակ Ա, էջ 9, հմմտ. Բարխուդարեանց «Արցախ», էջ 350—351)։

114. Հեղինակը նկատի ունի Կոստանդին Բ. Կատուկեցի կաթողիկոսին, որը նախքան կաթողիկոս ընտրվելը «...էր առաջնորդ սուրբ և գերահռչակ մենաստանին Խորին կոչեցելոյ» (Ստ. Օրբելյան էջ 436—437)։ Խորին վանքը գտնվում է Կիլիկիայում «մերձ ի սահմանս Բարձրբերդոյ և Լևոնկլային՝ անառիկ ղղեկացն» գրում է ոմն հիշատակագիր 1302 թ. («Սիսուան», էջ 151)։ Կոստանդին Բ-ին կաթողիկոս ընտրելու ժամանակի մասին ստույգ տեղեկություն հաղորդում է Ստ. Օրբելյանը, որը մասնակցել է Կոստանդինի ընտրությանը։ Նրա համաձայն «...բաղում ընտրութեամբ կացուցաննեն կաթողիկոս Հայոց զՏէր Կոստանդին յաւուր ճրագալուցի Զատկին...» (էջ 427—428), 1286 թ. ապրիլի 13-ին («Ազգապատում», էջ 1698)։

115. Տարեգրության հեղինակը վերևում (էջ 49) առավել մանրամասն է խոսում այս դեպքերի մասին։ Տես նաև ծանոթ. 119։

116. Բնագրում սույն հատվածը սկսվում է Հայոց ՉԼԷ (=1288) թվականից մի փոքր վերև։ Հատվածի սկզբի բառի և «ՉԼԷ» թվականի վրա դրված է պայմանական նշան։ Այն հասկացանք հետևյալ իմաստով՝ հատվածը պետք է թողնել Հայոց «ՉԼԷ» թվականի դիմաց։ Տես և հմմտ. Ստ. Օրբելյան, էջ 439, Սմբատ «Տարեգիրք», էջ 125, Ս. Անեցու շարունակությունը, էջ 153։

Օրմանյանը Կոստանդինի կաթողիկոսությունը նշում է 1286—1289 թ. թ. վերջերը («Ազգ․», էջ 1722)։

117. Սույն հատվածը բնագրում դրված է Հայոց «ՉԼԹ» թվականից բավական վերև, միաժամանակ պայմանական նշանով ցույց է տրված, որ այդ հատվածը մնալու է Հայոց «ՉԼԹ» թվականի դիմաց։ Այս կռիվների մասին մանրամասն հաղորդում է Ռաշիդ-ադ-դինը, ըստ որի 1290 թ. մարտին Դերբենդի կողմից սկսվում է թշնամու հարձակումը։ Արղունի ուղարկած զորքի առաջավոր ջոկատները թշնամու հետ հանդիպում են 1290 թ. ապրիլի 29-ին Կարա-սու գետի մոտ, Դերբենդից այն կողմ (էջ 124—125), բայց իսկական իմաստով ճակատամարտ չի եղել։

118. Բնագրում սույն հատվածը դրված է կարմիր թանաքով։

119. Տարեգրության հեղինակը Բուղայի կազմակերպված դավադրությունը նշում է իրականից 2 տարի ուշ։ Այս դավադրության մասին մանրամասն հաղորդում է Ռաշիդ-ադ-դինը (էջ 119—122), որի համաձայն Արղունը Բուղային սպանել է 1289 թ. հունվարի 16-ին (էջ 121)։ Ստ. Օրբելյանն այս մասին համառոտ է հաղորդում, անցուդարձը դնելով Հայոց 738 (1289) թվականի ներքո (էջ 430)։ Այս դեպքերին արձագանքել է միջնադարյան բանաստեղծ Ֆրիկը՝ «Վասն Արղուն ղանին և Բուղային» իր չափածոյի մեջ (տես Ֆրիկ, «Բանաստեղծություններ», Երևան, 1941, էջ 209—215)։

120. Վրաց թագավոր Դեմետր II-ի սպանության մասին հեղինակը երկու վկայություն է տալիս՝ նախ նրան սպանել է Բուղան 1288 թ. (էջ 58) և սույն վկայությունը։ Իրականում Դեմետրեի սպանությունը տեղի է ունեցել 1289 թ. մարտի 12-ին։ Համեմատ. Ստ. Օրբելյան, էջ 430։ Մխ. Այրիվանեցին Դեմետրեի սպանությունը նշում է 1281 թ. ներքո (էջ 68—69)։

121. Խոսքը վերաբերում է Վախթանգ II-ին, որը մինչ այդ թագավորում էր Իմերեթում։ Արղունը սրան հաստատեց Արևելյան Վրաստանի թագավոր (1289—1292 թ. թ.) և միաժամանակ իր՝ Օլջեյտին քրոջը նրան տվեց կնության (համմտ. Ռաշիդ-ադ-դին, էջ 65)։ Այս բոլորը կատարվում էր Սագուն Արծրուն Մահկանաբերդցու որդի Խութլու Բուղայի բանակցությունների միջոցով, որն ստացավ Վրաստանի աթաբեկի և ամիրսպասալարի կոչումները։ Սակայն Խութլու Բուղան շուտով դավադրություն է կազմակերպում Վախթանգ II-ի դեմ, գահից զրկել տալիս և փոխարենը գահին նստեցնում Դեմետր II-ի անչափահաս որդի Դավթին։

122. Լևոն Բ. թագավորը մահացել է 1289 թ. փետրվարի 6-ին (տես՝ ներքևում, III տարեգրությունը, համմտ. «Սիսուան», էջ 556, «Ազգապատում», էջ 1708)։ Լևոն Բ-ի որդիների անունը հանվանե տես Ս. Անեցի, էջ 153։ Համմտ. Հեթում Բ-ի տարեգրությունը։

123. Ալֆին Տրապոլիսը գրավել է 1289 թ. գարնանը։ Անանունը նշում է նաև ամսաթիվը՝ ապրիլի 15 (էջ 26. սխալմամբ տպագրված է ապրիլի 17 (ԺԷ), ձեռագիր բնագրում նշված է ապրիլի 15։ Ձեռ. № 3425, էջ 7բ)։ Համմտ. Ստ. Օրբելյան, էջ 441—442, Հեթում Պատմիչի հիշատակարանը (Գիտ. Ակադեմիայի Տեղեկագիր, 1948 թ., № 10, էջ 72)։

124. Պրոֆ. Աբրահամյանն իր հրատարակության մեջ սույն բառը սրբագրել է «մօտեցան» ձևով (էջ 31), մինչդեռ բնագրի հստակ դրված «մրտեցաւ»-ն առաջ է եկել «մռտել» բառից, այսինքն «ապստամբել»։

125. Արղուն ղանի որդի Նավրուզի Խորասանում և Հուլավուի թոռ Ջուշկապի Դիարբեքիրում 1289 թ. կազմակերպված դավադրության մասին մանրամասն խոսում է Ռաշիդ-ադ-դինը (էջ 122)։ Մեր այս բնագրում որոշ դեպքերի շփոթում կա։

126. Նկատի ունի Ուրմիոն լիճը,

127. Համմտ. Ստ. Օրբելյան էջ 482։

128. «Եպիսկոպոսօք» բառը բնագրում վնասված լինելու պատճառով անընթեռնելի էր, այն վերցրինք Ստ. Օրբելյանից (էջ 482)։ Մեր հեղինակը Արղունի կառուցած եկեղեցու օծումը դնում է 1290 թ., որն օծել է Բաղդատի «մեծ կաթողիկոսն» Նեստոր, իսկ Ստ. Օրբելյանի համաձայն նա Կիլիկիայից վերադառնում է Հայոց 736 (=1287) թվին (էջ 429) և «... ի դալն մեր ի Կիլիկիոյ յետ աւուրց ինչ գնացաք առաջին աշխարհակալ արքային Արղունին» (էջ 481), այսպիսով Արղունի մոտ նա գնացել է 1287 թ., որտեղ և Բաղդատի կաթողիկոս Նեստորի հետ եկեղեցին «օրհնեցաք ի միասին մեծաւ հանդիսիւ...» (էջ 482)։

129. Կ. Գանձակեցին հիշում է «Ռաբան Սիմեոն... այր երկիւղած և աստուածապաշտ, ասորի ազգաւ...» (էջ 261, 274—275)։ Այս և տարեգրության «Ռաբան Սոմանն»-ը հավանաբար տարբեր անձնավորություններ չեն։

130. Համմտ. Ստ. Օրբելյան, էջ 436—441։

131. Համմտ. Ստ. Օրբելյան, էջ 430։

III.

## ՀԵԹՈՒՄ Բ-Ի ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XIII Դ.)

*1842 թ. Վենետիկում, հայագետ Ավգերյանը Հեթում Պատմիչի անունով հրատարակեց մի փոքրիկ ժամանակագրություն։[1] Հայագետները մինչև հիմա այն վերագրում էին Հեթում Պատմիչին և Ավգերյանի հրատարակության բնագիրն էլ համարում էին նրա սկզբնական բնագրի մի տարբերակը։ Սակայն Մատենադարանի № 663 ժողովածուի 246ա—252բ էջերում գտնվող այդ ժամանակագրության մի նոր բնագիրը, որն Ավգերյանի հրատարակության բնագրի նկատմամբ ունի բազմաթիվ կարևոր շեղումներ և նրանից բավական ընդարձակ է, հնարավորություն է տալիս նոր լույսի տակ քննել ինչպես ժամանակագրության սկզբնական բնագրի, այնպես էլ հեղինակի հետ կապված հարցերը։[2]*

*Նկատի ունենալով վերոհիշյալ հարցերի պարզաբանման կապակցությամբ այս նոր բնագրի բացառիկ դերը, ինչպես և նրա բովանդակած մի շարք կարևոր տեղեկությունները, որոնք բացակայում են ժամանակագրության հրատարակության բնագրում, անհրաժեշտ գտանք այն վերահրատարակել։ Առաջարկվող բնագիրը ըստ էության տարեգրություն է և այն այդպես էլ կանվանենք, որի № 663 ժողովածուի բնագիրը կնշանակենք* A։ *Տարեգրության Ավգերյանի հրատարակության և* A *բնագրի համեմատությունը երևան հանեց մի շարք հետաքրքիր փաստեր. նախ՝* A *բնագրից բազմաթիվ վկայություններ բացակայում են Ավգերյանի հրատարակության բնագրում։ Այդ բանը նկատելի է 1233 թվից սկսած։* A *բնագրում գտնում ենք բավական հետաքրքիր վկայություններ, որոնք վերաբերում են Կիլիկյան հայկական թագավորական իշխանության դեմ ներքին, ֆեոդալական կենտրոնախույս ուժերի պայքարին և որոնք բացակայում են հրատարակության բնագրից. օրինակ 1293 թվի տակ կարդում ենք.*

---

[1] *«Ժամանակագրութիւնք երեք հարիւր և մէկ ամաց կարճ ի կարճոյ հաւաքեալ ի զանազան պատմութեանց հայ, ֆրանկ և ասորի, շարագրեալ պարոն Հեթմոյ տեառն Կոռիկոսոյ և արար զայս բանք ի թուին Հայոց ՇԽԵ և յամի մարդեղութեան Տեառն ՌՄՂԶ» (1296), որը հրատարակվել է «Պատմութիւն Թաթարաց»-ի հետ մի կազմում։ Սույն աշխատության հայերեն բնագիրը և ֆրանսերեն թարգմանությունը հրատարակված է էդ. Դյուլորիեի կողմից, 1869 թ.* „Recueil des Historiens des Croisades. Documents Armeniens", tome 1er, Paris, *էջ 471—490։ Ժամանակագրությունը եվրոպական մի քանի լեզուներով նույնպես հրատարակված է։*

[2] *Այս մասին զեկուցում կարդացվել է Հայկ. ՍՍՌ-ի Մինիստրների Սովետին կից Պետ. Ձեռագրատան (Մատենադարան)* IV *գիտ. սեսիայի 1950 թ. սեպտեմբերի 29-ի նիստում։*



504—5

«Դաւ եղև Հեդումոյ թագաւորն իւր իշխանացն, որք էին գլխաւորք պարոնայք, Հեթում Կուռիկոսոյ տէրն և իւր եղբայր Օշին Կանչոյն տէրն և բազումք յիշխանացն Հայոց»։

Կամ՝

«Ի նոյն ամի (1296) դաւ եղև իշխանացն Հայոց, որք էին գլխաւորք պարոն Օշինն սինչալն, որդի պարոն Սմպաթայ Գունդստապլին և պարոն Օշինն Բակուրեանց, որ էր ասպասալար դարպասին և այլ բազում իշխանք և ծիաւորք»։

Մեջ բերված օրինակներով չի սպառվում հրատարակության բնագրի թերի լինելու փաստը։ Ավելին, վերջինիս մեջ չենք գտնում նաև 1233 թվից մինչև 1266 թիվը, 1268—1273 թ. թ., 1276—1279 թ. թ., 1285—1288 թ. թ. անդի ունեցող դեպքերի հիշատակումը և այլն։ Սակայն, հետաքրքիրն այն է, որ հրատարակության բնագրում տեղ չգտած վկայությունները գերազանցապես վերաբերում են հեղինակի ժամանակակից դեպքերին։

Երկրորդ՝ A բնագրում հանդիպում ենք վկայությունների, որոնց մեջ հեղինակն ակնարկում է իր մասին, և որոնք նույնպես չենք գտնում հրատարակության բնագրում։ Օրինակ՝ Կոստանդին Լամբրոնացուն հեղինակը համարում է իր պապը, իսկ Կիռ Աննա թագուհուն՝ իր մայրը։

Երրորդ՝ տարեգրության և հրատարակության և A բնագրի խորագրում նշված է, որ հեղինակը իր աշխատությունը կազմել է 1296 թվին։ Եվ իսկապես, A բնագիրը վերջանում է ճիշտ 1296 թվին վերաբերող վկայությամբ, իսկ հրատարակության բնագիրը՝ 1307 թվին։ Նշանակում է տարեգրության սկզբնական բնագիրը ավարտված է եղել 1296 թվին, իսկ հրատարակության բնագրի վերջին՝ 1307 թվի վկայությունը նրա սկզբնական բնագրին ավելացվել է հետագայում։[1]

Չորրորդ՝ տարեգրության երկու բնագրերի խորագրերն էլ նշանակալի չափով տարբերվում են միմյանցից. այսպես, եթե հրատարակության բնագիրը ունի «Ժամանակագրութիւնք երեք հարիւր և մէկ ամաց կարճ ի կարճոյ հաւաքեալ ի զանազան պատմութեանց հայ, Փրանկ և ասորի շարադրեալ պարոն Հեթմոյ տեառն Կոռիկոսոյ և արար գայս բանք ի թուին Հայոց ՇԽԵ[2] և յամի մարդեղութեան տեառն ՌՄՂԶ (=1296)» խորագիրը, ապա A-ն ունի «Համառօտ պատմութիւն ժամանակաց հաւաքեալ ի զանազան պատմութեանց այսինքն ի Հայոց, ի Ֆռանկաց, ի Յունաց, ի Յասորոց գրեանց, աշխատութեամբ իմոյ ծառայիս Քրիստոսի աստուծոյ Հեթմոյ տեառն Կուռիկօսոյ ի թվականի Հայոց ՉԽԵ (=1296)» խորագիրը։

Համաձայն հրատարակության խորագրի, աշխատությունը կոչվում է ժամանակագրություն, մինչդեռ A բնագրի խորագրի համաձայն՝ «Համառօտ Պատմութիւնն ժամանակաց». բացի այդ, A բնագրում բացակայում է հրատարակության բնագրի «Երեք հարիւր և մէկ ամաց կարճ ի կարճոյ» հատվածը, իսկ A բնագրի «աշխատութեամբ իմոյ ծառայիս Քրիստոսի աստուծոյ Հեթմոյ

[1] Ալիշանը հրատարակության բնագրի 1307 թվի վկայության մասին կարծիք է հայտնում, որ «...կամ ինքն մեր պատմիչն (Հեթում—Վ. Հ.) աւելացուցեր է, կամ ուրիշի մի յարեր է»։ («Հայապատում», մասն Ա, էջ 114)։ Ինչպես հիմա է պարզ դառնում, Հեթում Պատմիչին վերագրված ժամանակագրության սկզբնական բնագիրը 1296 թվից այս կողմ չի անցնում։

[2] Տպագրական սխալ է պետք է լինի ՉԽԵ (=1296)։

տեառն Կոռիկոսոյ» հատվածի փոխարեն, հրատարակության բնագրում կարդում ենք «չարագրեալ պարոն Հեթմոյ տեառն Կոռիկոսոյ» հատվածը։ Ինչպես դժվար չէ նկատել, տարեգրության սկզբնական բնագրի վրայով օտար ձեռք է սահել և այն խմբագրել են։ Քննության ենթակա երկու բնագրերի վերոհիշյալ տարբերությունները ցույց են տալիս, որ տարեգրության հրատարակության բնագիրը չի արտահայտում Հեթում Պատմիչին վերագրված ժամանակագրության սկզբնական բնագիրը, ինչպես կարծում էին մինչև այժմ։ Հետևապես A բնագիրը հանդիսանում է այն որոնելին, որն արտահայտում է տարեգրության սկզբնական բնագիրը։ Այսպիսով, մեզ համար պարզ է դառնում, որ Հեթում Պատմիչին վերագրված տարեգրության սկզբնական բնագիրը ենթարկվել է խմբագրման և հրատարակության բնագիրը հենց այդ խմբագրման արդյունքն է։

Ո՞րը կարող էր առաջ գալ տարեգրության հրատարակության բնագիրը։ Վերևում արդեն նշել ենք, որ նրա խորագիրն ունի այսպիսի մի հատված. «ժամանակագրութիւնք երեք հարիւր և մէկ ամաց կարճ ի կարճոյ», այսինքն՝ երեք հարյուր մեկ տարվա անցուդարձի համառոտ ժամանակագրություն։ Այլ խոսքով, հրատարակության բնագիրն սկսվելով 1076 թվականից և ընդգրկելով 301 տարվա համառոտ պատմություն, նրա վերջին վկայությունը պետք է վերաբերվեր 1377 թվականին (1076+301=1377), սակայն հրատարակության բնագիրն սկսվելով 1076 թվականին Գագիկ Բ. սպանության և վերջանալով 1307 թվականին վերաբերող վկայություններով, այն ընդգրկում է ոչ թե 301 տարվա պատմություն, ինչպես ազդարարում է հրատարակության բնագրի խորագիրը, այլ երկու հարյուր երեսուն մեկ տարվա անցուդարձ (1307—1076==231)։ Այստեղից կարելի է հանգել մի քանի եզրակացությունների, Նախ՝ քննության ենթակա տարեգրության սկզբնական բնագիրը խմբագրվելուց բացի, շարունակվել է մինչև 1377 թվականը։ Երկրորդ՝ հրատարակության բնագրի խորագրում չնայած նշվում է, որ ժամանակագրությունն ընդգրկում է 301 տարվա համառոտ պատմություն, իրականում այնտեղ ընդգրկված է 231 տարվա պատմություն։ Հիմք ընդունելով խորագրի «երեք հարիւր և մէկ ամաց» հատվածը, կարող ենք եզրակացնել, որ, մի կողմից, հրատարակության բնագիրը թերի է,[1] իսկ մյուս կողմից, այն կարող էր հանդես գալ XIV դարի 70-ական թվերի վերջերին։

Սույն տարեգրության բնագրից բացի Մատենադարանում գտնվում են նաև նրա չորս այլ ընդօրինակությունները, որոնցից երեքը՝ №№ 2037, էջ 145ա—146բ, 7841, էջ 303ա—306բ, 3079, էջ 215բ—221բ,- A բնագրի հետ ունեն այն հարաբերությունը, ինչ հրատարակության բնագիրը, միայն այն տարբերությամբ, որ սրանք վերջից շարունակվում են մի փոքր ավելի՝ № 2037 (Б) և № 7841 (B) տարբերակները մինչև 1351 թիվը, իսկ № 3079 (Г) տարբերակը՝ 1374 թիվը։ Այդ պատճառով այս երեք տարբերակները քննության չենք ենթարկի։

---

[1] Սույն ժողովածուն ապագրության հանձնելուց հետո միայն իմացանք, որ հայագետ Ք. Պատկանյանը ևս այդ կարծիքն է ունեցել (տես «Փորձ», 1880, № 1, հավելված, էջ 31)։

[2] Տարեգրությունը գտնվում է ժողովածուի վերևում նշված Բ էջերում միայն, իսկ Ա էջերում գտնվում է Ներսես Պալենցու թարգմանած Մարտինոս Լեհացու հռոմեական կայսրերների և քահանայապետների ժամանակագրությունը։

Իսկ չորրորդ ընդօրինակությունը (Е), որը գտնվում է № 5599 ժողովածուի 219ա—221բ էջերում, ինչպես А, այնպես էլ հրատարակության բնագրի համեմատությամբ ունի զգալի տարբերություններ։

Վերջինս А բնագրի նկատմամբ ունի հետևյալ շեղումները։ Նախ՝ А բնագրից բազմաթիվ վկայություններ նույնպես բացակայում են Е բնագրում, սկսած 1190 թվից։ Այնուհետև Е բնագրում բացակայում են 1196 թ., 1198—1204 թ. թ., 1205—1206 թ. թ., 1213—1216 թ. թ., 1217—1219 թ. թ., 1227—1265 թ. թ., 1270 թ., 1272—1273 թ. թ., վերաբերող վկայությունները, ինչպես նաև ուրիշ մանր վկայություններ։

Երկրորդ՝ հակառակ А բնագրի, Е բնագիրը 1296 թվից հետո նույնպես շարունակվում է, հասնելով մինչև 1345 թիվը։

Երրորդ՝ Е բնագրում բացակայում է А բնագրի խորագրի միայն հեղինակին վերաբերող «Աշխատութեամբ իմոյ ծառայիս Քրիստոսի աստուծոյ Հեթմոյ տեառն Կոռիկոսոյ» հատվածը։

Վերոհիշյալ տարբերությունները ցույց են տալիս, որ Е բնագիրը, որը զգալի շեղումներ ունի ոչ միայն А բնագրից, այլև հրատարակության բնագրից, մեզ ներկայանում է տարեգրության մի նոր խմբագրություն։

Ե՞րբ կարող էր առաջ գալ Е բնագիրը։ Е բնագրի ժողովածուն (№ 5599) ընդօրինակվել է 1347 թվին, Կիլիկիայի Ուրէլ գյուղում, Ստեփանոս քահանայի ձեռքով։ Եվ որովհետև տարեգրության բնագրում հիշատակված դեպքերը հասնում են մինչև 1345 թիվը, այստեղից դժվար չէ եզրակացնել, որ տարեգրությունն ամենայն հավանականությամբ խմբագրել է և ապա շարունակել ընդօրինակության գրիչ՝ Ստեփանոս քահանան, 1347 թվին։

Այսպիսով, ինչպես հիմա է պարզ դառնում, քննության ենթակա տարեգրությունը մեզ հասել է երեք խումբ բնագրերով, որոնցից А բնագիրը, որը կառուցվածքի և ընդգրկած նյութի ծավալի տեսակետից տալիս է տարեգրության լրիվ բնագիրը, իսկ հրատարակության ինչպես և Б, В, Г, Е բնագրերը հանդիսանում են նրա երկու տարբեր խմբագրությունները։

Սակայն, արդյո՞ք հավաստի է մինչև հիմա գոյություն ունեցող այն կարծիքը, որն ի դեպ հայագետներից ոչ ոք կասկածի չի ենթարկել, թե քննության ենթակա տարեգրության հեղինակը Կոռիկոսի իշխան Հեթում Պատմիչն է։ Այդ կարծիքը հավաստի չէ և պետք է վերանայվի։ Ուշագրավ ինչպիսի՞ փաստեր են մեզ հնարավորություն տալիս, առաջ քաշել այդ հարցի վերանայման խնդիրը։

Նախ՝ մեր ձեռքի տակ գտնված տարեգրության բնագրերից հինգի՝ А, Б, В, Г, Д խորագրերում նշված է, որ նրա հեղինակը Կոռիկոսի իշխան Հեթումն է (հայտնի է Պատմիչ անունով)։ Վերոհիշյալ բնագրերից ամենից հինը № 2037 (Б) ժողովածուն է, որն ընդօրինակվել է 1421 թվին։ Իսկ Е բնագիրը, որն ընդօրինակվել է 1347 թ., այսինքն տարեգրությունը կազմվելուց 50 տարի հետո, խորագրում չի պահել հեղինակի անունը։ Е բնագրի խորագիրը բերում ենք ամբողջությամբ. «Համառօտ պատմութիւն ժամանակաց հաւաքեալ ի զանազան պատմութեանց, այսինք[ն]՝ ի հայ, ի ֆռանկ և ի յուն և ի յասորի գրենաց [ի թուա]կանիս Հայոց ՉԽԵ»։

Այսպիսով եղած բնագրերի ամենից հնի (Е, XIV դարի 1-ին կես) խորագրում հեղինակի անունը չի հիշված և այդ պատճառով մենք չգիտենք թե հեղինակը ով է, Հեթում Պատմիչը, թե՞ մեկ ուրիշը։

Երկրորդ՝ վերևում անցողակի նշեցինք, որ տարեգրության հեղինակը A բնագրում իր մասին երկու անգամ հիշում է։ Այդ վկայությունները քննենք ավելի մանրամասն։

1. «Ի թվականիս Հայոց ՈԽԲ (=1250) և յունիսի ԻԹ (=29) կատարեցաւ ի սորայ պապն իմ և տէրն Լամբրոնի»:

2. «ՉԼԴ (=1285) փոխեցաւ ի Քրիստոս ամենագովելին հոգով և գեղեցկական տեսօք, առաքինի մայր իմ, Կեռան թագուհին Հայոց, յոգոստոսի ԻԹ (=29»։ (Երկու ընդգծումը մերն է— Վ. Հ.):

Ո՞ւմ է ակնարկում հեղինակը առաջին վկայության «պապն իմ և տէրն Լամբրոնի» արտահայտությամբ։ Խոսքը վերաբերում է Կոստանդին Լամբրոնացուն, որը Հեթումյան թագավորական տան նկատմամբ անհաշտ դիրք ունենալու պատճառով Հեթում Ա.-ի հրամանով սպանվեց 1250 թ.։

Ինչպես դժվար չէ նկատել, վերևում բերված օրինակներից տարեգրության հեղինակը եղել է Կոստանդին Լամբրոնացու թոռը և Կեռան (իմա Կիռ Աննա) թագուհու որդին։ Այս վկայությունները չէր կարող Հեթում Պատմիչը գրել, որովհետև Կիռ Աննա թագուհին նրա մայրը չէր, ինչպես և Կոստանդին Լամբրոնացին նրա պապը չէր։

Ինչպես հայտնի է, Կիռ Աննա թագուհին, Հեթում Լամբրոնացու դուստրը և Կոստանդին Լամբրոնացու թոռը Լևոն Բ. թագավորի (իշխել է 1270—1288 թթ.) կինն էր։ Այս երկուսից ծնվել էր Հեթում Բ. թագավորը (իշխել է ընդմիջումներով 1288—1307 թ. թ.)։ Վերջինիս համար արդեն հասկանալի է դառնում «պապն իմ» և «առաքինի մայր իմ» արտահայտությունները։

Երրորդ՝ բրիտանական թանգարանի (Լոնդոն) հայերեն ձեռագրերի ցուցակում, ձեռագրերից մեկի նկարագրության մեջ նկատեցինք, որ այնտեղ գտնվում է առաջարկվող տարեգրության A տարբերակի մի ուրիշ բնագիր, որի խորագրում հեղինակի անունը Կոռիկոսի իշխան Հեթումի (իմա Պատմիչ) փոխարեն նշված է Հովհաննես սպասավոր։ Բերում ենք խորագիրն ամբողջությամբ. «Համառօտ պատմութիւն ժամանակաց հաւաքեալ ի զանազան պատմութեանց, այսինքն ի Հայոց, ի Ֆռանկաց, ի յունաց, յասուրոց աշխատութեամբ իմո ծառայիս աստուծոյ Յովհաննէս սպասաւոր բանին ի թվիս Հայոց ի ՉԽԵ»։[1] Այնուհետև բերված է բնագրի սկզբի մի փոքրիկ հատվածը, որը տառացիորեն ծածկում է քննության ենթակա տարեգրության A տարբերակի համապատասխան հատվածին։ Վերոհիշյալ խորագրի, Ձեռ. ցուցակում մեջ բերված և տարեգրության A տարբերակի համապատասխան հատվածների համեմատությունը մեզ բերեց անսխալ այն եզրակացության, որ բրիտանական թանգարանում գտնվում է մեզ հետաքրքրող տարեգրության A բնագրի որևէ օրինակը, որը դժբախտաբար վերջից թերի է և ընդհատվում է 1270 թվականով։ Այդ ձեռագիրը ընդօրինակվել է մոտավորապես 1400 թվին։[2]

Սակայն ո՞վ է վերևում հիշված «Յովհաննէս սպասաւոր»-ը, ի՞նչ կապ կարող է լինել նրա և Հեթում Պատմիչի անվան միջև։ Ոչ մի։ Ինչպես հայտնի է, Հեթում Բ. թագավորը, 1293 թ. հրաժարվում է գահից, և այն հանձնում եղբորը՝ Թորոսին, իսկ ինքը դառնում կրոնավոր, աշխարհական անունը փոխում և

[1] „A catalogue of the Armenian manuscripts in the British Museum“, Londou, 1913, էջ 291—292։

[2] Նույն տեղը, էջ 292։

կոչվում է Հովհաննես։ Այսպիսով, տարեգրության բրիտանական բնագրում հիշված «Յովհաննէս սպասաւոր»-ը, նույն ինքը Հեթում Բ թագավորն է, Կիռ Աննա թագուհու որդին, Կոստանդին Լամբրոնացու թոռը։ Հետևապես, առաջարկվող տարեգրության հեղինակը իրականում եղել է Հեթում Բ. թագավորը։[1]

Որ մեր այս ենթադրությունը ճիշտ է, կարող է հաստատել մի այլ անուղղակի հանգամանք ևս։ Մատենադարանի № 1898 ժողովածուի 123ա—167բ էջերում (ժողովածուն մագաղաթ է, նրա հնությունը վերաբերում է XIII—XIV դարերին) գտնվում է Հեթում Պատմիչի կողմից 1296 թ. թարգմանված Խրոնիկոնը, որն ունի հետևյալ խորագիրը՝ «Պատմութիւն Խրոնիկոնին զոր նըւաստ ծառայս Քրիստոսի Հեթումս տէր Կոռիկաւսոյ փոխեցի ի ֆռանգ գրոց ի թուին Հայոց ՉԽԵ»։

Առաջարկվող տարեգրության տեղեկությունների կեսից ավելին (խաչակիրներին վերաբերող մասը և այլն) գտնում ենք Խրոնիկոնի մեջ։ Հետևապես իրավացիորեն ենթադրում ենք, որ վերջինս Հեթում Բ.-ի համար հանդիսացել է սկզբնաղբյուր, այդ մանրամասնորեն ցույց կտանք ներքևում։ Սակայն այստեղ անհրաժեշտ է ընդգծել այն հանգամանքը, որ առաջարկվող տարեգրության հեղինակը եթե Հեթում Պատմիչը լիներ, նա ինչու պետք է Խրոնիկոնի թարգմանության տարում՝ 1296 թ. կազմեր մի աշխատություն, որի տեղեկությունների կեսից ավելին վերցներ իր թարգմանած նյութից։ Բնական է ենթադրել, որ Խրոնիկոնի Հեթում Պատմիչի թարգմանությունը (եթե ոչ նրա եվրոպական բնագիրը) Հեթում Բ-ն իր տարեգրության համար օգտագործել է, որպես սկզբնաղբյուր։

Վերոհիշյալ մի շարք փաստերը կարծում ենք մեր հավաստիացման պակասություն չեն թողնում։ Այսպիսով, չնայած A բնագրի խորագրում ևս հեղինակի անունը նշվում է Հեթում Պատմիչ, սակայն հեղինակը իրականում եղել է Հեթում Բ թագավորը (նույն ինքը Հովհաննես)։

Իսկ այն հարցը, թե տարեգրությունն ինչպե՞ս է վերագրվել Հեթում Պատմիչին, առանձին կարևորություն չունի պատմագրության համար և ենթադրությունների մեջ դեգերելու ասպարեզն այստեղ բավական ընդարձակ է։ Սակայն նշենք, որ այդ կարծիքը գալիս է հնից, որովհետև այն գոյություն ուներ տակավին XV դարի առաջին քառորդում։ Ըստ երևույթին ժամանակակից Հեթում անունների նույնությունը շփոթել է մարդկանց և տրադիցիա դարձել մինչև հիմա։

Տարեգրության A բնագիրը լինելով ուշ ժամանակի՝ 1724 թվի ընդօրինակություն, պարունակում է մի շարք բառերի աղավաղումներ, որոնց իմաստը հնարավոր է հասկանալ հրատարակության և E բնագրերի օգնությամբ. օրինակ՝ A բնագրում կարդում ենք՝ «Ջնոր մարդոյ աշխարհն» փոխանակ՝ «զնորմանդո աշխարհն», «շինեցաւ Ջաստել Բլրին բերթանքն փլեցոյց» փոխանակ՝

[1] Տարեգրության մեջ Հեթում Բ-ն մի քանի անգամ անդրադառնում է իր մասին (երբ է ծնվել, թագավոր դարձել և այլն), սակայն այդ վկայությունները գրել է ոչ թե առաջին դեմքով, այլ երրորդ։ Այս հանգամանքը չի կարող վերոհիշյալ մեր հավաստիացման վրա ստվեր գցել, որովհետև երրորդ դեմքով գրելը գրական ձև է, որին հաճախ դիմել են մեր մատենագիրները։ Սմբատ Գունդստաբլը իր մասին առաջին դեմքով գրելու հետ միաժամանակ գրել է նաև երրորդ դեմքով. օրինակ՝ «Ի թուին 657 ծնաւ Սմբատ Գունդստապլն...» («Տարեգիրք», Փարիզ, 1859, էջ 116)։ «Եւ թագաւորահայրն պարոն Կոստանդին ու Սմբատ Գունդստապլն եկին, մտան ի Տարսուս...» (էջ 123) և այլն և այլն։

*«շինեցաւ Ջաստէլ Բլրինն բերդ Դամբլցեց», «մեռաւ և թագաւորն ապա՝նոց»... փոխանակ՝ «մեռաւ թագաւորն Սպանիոյ...»։ A բնագրում Ներսես Շնորհալու մահը գրված է 1173 թվի օգոս. 13-ին (ԺԳ) հինգշաբթի. սակայն 1173 օգոստոսի 13-ը կլինի ոչ թե հինգշաբթի, այլ երկուշաբթի, իսկ իրականում 1173 թվի օգոստոս ամսվա հինգշաբթիները ընկնում են 2-ին, 9-ին, 16-ին, 23-ին և 30-ին։ Հետևապես Ներսես Շնորհալու մահը ընկնում է օգոստոսի 16-ին հինգշաբթի օրը. և իրոք տարեգրության E բնագրի համաձայն Ներսես Շնորհալին մահացել է 1173 թվի օգոստոսի 16-ին, հինգշաբթի օրը։ Այստեղ, ինչպես և նշված բառերում տեղ են գտել գրչագրական սխալներ։*

*Հեթում Բ-ն տարեգրության խորագրում գրում է. «հաւաքեալ ի զանազան պատմութեանց այսինքն՝ ի հայոց, ի ֆռանկաց, ի յունաց, ի յասորոց գրեանց», այս նշանակում է, որ քննության ենթակա աշխատությունը զանազան աղբյուրներից հավաքած մի գործ է, միայն այն տառավելությամբ, որ ժամանակագրության վերջին մասում տեղ են գտել հեղինակի ժամանակակից մի շարք դեպքերի հիշատակություններ, որոնք, չնայած խիստ համառոտ են, բայց արժեքավոր և հետաքրքիր տեղեկություններ են։*

*Ի՞նչ աղբյուրներ է ունեցել տարեգրության հեղինակն այն կազմելիս՝ 1296 թվին։ Գիտենք, որ Հեթում Պատմիչը նույն թվին «ի ֆռանկ դրոց» թարգմանել է «Պատմութիւն Խրոնիկոնի»-ն աշխատությունը։ Արդեն նշել ենք, որ Խրոնիկոնը որպես սկզբնաղբյուր օգտագործվել է Հեթում Բ-ի տարեգրության մեջ։[1] Այդ բանը ցույց տալու համար երկու ձեռագրերից բերենք մի քանի օրինակներ.*

| | |
|---|---|
| *«Պատմութիւն Խրոնիկոնին»* <br> *№ 1898 ձեռագիր.* | *«Համառոտ պատմութիւնն ժամանակաց»* |
| *1. էջ 152բ «ՌՃՂ (1190) կայսրն Ալամանաց ֆրտրիկն խեղդեցաւ ի գետն Սելեկիոյ և թաղեցաւ յԱնտիոք։ ...և ի սոյն ամի Ֆիլիպ ըռէ աը ֆրանց և Ռուիչառդ թագաւորն Ընկլիդոց եկին պաշարել զԱկրա, և ի գալն Ռուիչառդ թագաւորն ընկլիդաց էառ զԿիպրոս կղզին ի յունաց ի Կեռսակ տուկէն։ Եւ յայսմ ամի եղև սկիզբն կարգաւորութեան Ալաման ֆրէրացն»։* | *1. էջ 77 «ՌՂԹ (1190) Կայսրն Ալամնաց ֆարկն խեղդեցաւ ի գետն Սելեկիոյ և թաղեցաւ ի յԱնտիոք։ Եւ ֆիլիպ ռէ տը ֆրանցն և Ռուչարդ թագաւորն Ընկլիդաց անցին յայս կոյս ծովու և պաշարեցին զԱկրա, որ և ի գալն Ընկլիդաց էառ ըղկղզին Կիպրոսին յունաց ի Կիռսակ տուկէն։ Եւ սկ[ի]զբն եղև կարգաւորութեան Ալտման ֆրէրացըն»։* |
| *2. էջ 154ա «ՌՄԹ (1209) պատերազմեցաւ լաշքարէ կայսրն յունաց ընդ սուլտանն յԻկոնիոյ ի Խոնաս. և յաղթեալ անաւրէնացն սպանաւ սուլտանն և եկաց ի տեղի նորա սուլտան յԱզըտին Քայքաուսն»։* | *2. էջ 78 «ՌԾԸ (1209) պատերազմեցաւ լաշքարէին ընդ սուլթանն յԻկոնիոյ ի Խոնաս և սպանաւ սուլթանն, և եկաց ի տեղի նորա Ազըտին Գագազուզն»։* |
| *3. էջ 154բ—155ա «ՌՄԺԶ (1216) վախճանեցաւ Ինաւսանթ պապն և յեա նորա եկաց պապ ի Հռոմ Ոնորիոս երրորդ, հռոմայեցի* | *3. էջ 79ա «ե ՌԿԵ (1216) մեռաւ ըպրուըըն Ալամնաց և եկաց հետ նորին Ֆտրիկն։ Եւ թագաւորն Հայոց Լևոն էառ գաւօվ* |

*[1] Այդ մասին տես վերևում էջ 70։ Խրոնիկոնն ընդգրկում է 1294 տարվա պատմություն, սկսվելով 1 թվից (մ. թ.) և վերջանում է 1294 թվականով։ Խրոնիկոնի տեղեկությունները գերազանցապես վերաբերում են եվրոպական պետությունների, հռոմեական պապերի, լատինական թագավորությունների և վերջիններիս հարևանների համառոտ պատմությանը. բացի դրանից այնտեղ գտնում ենք նաև Կիլիկիայի հայկական թագավորությանը վերաբերող մի շարք տեղեկություններ, որոնք հանդես են գալիս 1173 թվից (էջ 151բ) սկսած։ Ենթադրում ենք, որ Կիլիկիայի հայկ. թագավորության վերաբերող տեղեկությունները թարգմանիչն է ավելացրել բնագրին։*

*ազգաւ, կացեալ ամս Ժ (=10) ամիսս Է (=7) և աւուրս ԻԳ (=23)։ Եւ մեռաւ ընրրուրն Ալամանաց Աւգոււնն։ Եւ տիրեաց յետ նորա Ֆրտրիկն։ Յայսմ ամի թագաւորն հայոց Լեոն էառ գաւռվ ի գիշերի զքաղաքն Անտիոք և կացոյց անդ ըրինծ զըՌաւբէն Թոռն Ըռաւ-բինի աւագ եղբաւրն իւրոյ։ Եւ ծնաւ Զապէլ դուստր թագաւորին Լևոնի։ Յայսմ ամի Քայ-քայուս սուլտանն յԻկոնիոյ պաշարեաց զբերդ Կապանն և կալաւ պիշխանսն հայոց՝ զԿոս-տանդին Գունդուստապլն, որ կոչեցաւ աւագ պարոն և զԿոստանդին որդի տեառըն Լամբ-րունին, և զԿեռսակ տէրն Մաղվայոյ և դայլսն։*

*ի գիշերի զԱնտիոք և կացոյց անդ ըրինձ զՌուբէն, Թոռ եղբօրն իւրոյ։ Եւ ծնաւ դուստր Լևոնի թագաւորին Զապէլն։*

*Եւ Քաքտուզ սուլթանն պաշարեաց զբերդ Կապանն և կալաւ զիշխանսն հայոց Կոստանդին Գոնտօստապլն, որ կոչեցաւ աւագ պարուն, և զԿոստանդին Լանբրօնին տիրոջ որդին, և Կեռսակ Մամուաղոյ տէրն և դայլսն։*

*Նման օրինակները կարելի է ավելի շարունակել։ Խրոնիկոնի առանձին տեղեկությունները, սկսած 1097 թվից մինչև 1293 թիվը, գանում ենք տարե-գրության մեջ։ Սակայն այդ չի նշանակում, թե Խրոնիկոնի տեղեկությունները նույնությամբ անցել են տարեգրությանը։ Ընդհակառակը, վերջինիս մեջ բեր-ված տեղեկությունները շատ համառոտ են։ Ավելին, Խրոնիկոնի մեջ միևնույն տարեթվի տակ նշված ոչ բոլոր վկայություններն ենք գտնում տարեգրության մեջ, ինչպես այդ կարելի է նկատել վերևում համադրած երրորդ օրինակից։ Սակայն տարեգրության մեջ կան բազմաթիվ վկայություններ, որոնք չկան Խրոնիկոնի մեջ. օրինակ՝ Գագիկ Բ-ի սպանությունը, Ռուբեն իշխանին և հա-ջորդներին վերաբերող վկայությունները, Հեթում Բ-ի ժամանակակից մի շարք դեպքեր և ուրիշ տեղեկություններ։*

*Այսպիսով մեզ համար պարզվում է Հեթում Բ-ի տարեգրության հիմնա-կան աղբյուրը[1]։ Եվ եթե սրան ավելացնենք նաև այն, որ տարեգրության մի շարք տեղեկություններն իրենց՝ հեղինակի ժամանակակից դեպքերն են, որոնց աղբյուրն ինքը, Հեթում Բ-ն կարող էր լինել, ապա կմնան տարեգրության ոչ շատ վկայությունները, որոնք, ինչպես հեղինակն է նշում, նա վերցրել է հայ-կական, հունական և ասորական աղբյուրներից։ Հայկական աղբյուրներից Սամվել Անեցու ժամանակագրության հրատարակության բնագրի առանձին վկայությունները բավական մոտ են Հեթում Բ-ի տարեգրության այն տեղեկու-թյուններին, որոնք չկան Հեթում Պատմիչի կողմից թարգմանված Խրոնիկո-նի մեջ։*

*Ս. Անեցու ժամանակագրության հրատարակության բնագրում (էջ 135—136) գտնվում է Կիլիկիայի Ռուբինյան իշխանների հաջորդական կարգը։ Այդ տեղեկությունների մասին հեղինակը գրում է. «... և այս ընդ* ոմանց պատմա-

*[1] Հեթում Պատմիչի թարգմանած Խրոնիկոնի բազմաթիվ վկայությունները գտնում ենք նաև Ս. Անեցու ժամանակագրության հրատարակության բնագրում, մինչդեռ Ս. Անեցու ժամանակագրության № 5619 ձեռագրում, որը 1176 թվի ընդօրինակություն է, (գրիչն Ավետիս, վայրը Կամրջաձոր, էջ 108ա), Խրոնիկոնի և ոչ մի վկայության չենք հանդիպում։ Նշանակում է Խրոնիկոնի մի շարք տեղեկությունները Ս. Անեցու ժամանա-կագրության բնագրում մուծվել են Հեթում Պատմիչի թարգմանությունից հետո։ Առայժմ դժվարանում ենք հաստատ որոշել թե Ս. Անեցու ժամանակագրությանն անցած Խրոնիկո-նի տեղեկությունները անմիջականորեն վերջինիցս է անցել, թե Հեթում Բ-ի տարեգրու-թյան միջոցով։*

գրաց։ Իսկ մեք այսպէս ոչ եգաք զի ոչ յարմարէր ի շարս թագաւորացն Յունաց... վասն այն և ես փոխեցի ըստ այլ պատմագրաց...»։[1]

Սույն վկայությունը, ինչպես և Ռուբինյանց իշխանների կարգը չենք գտնում Սամ. Անեցու ժամանակագրության ամենահնագույն բնագրերում (№№ 5619, 1898 ժողովածուներ), և եթե վերոհիշյալ վկայության «ոմանց պատմագրաց», «այլ պատմագրաց» արտահայտությունների մեջ հեղինակը նկատի չի ունեցել նաև Հեթում Բ-ի տարեգրությունը, որի Ռուբինյան իշխանների հաջորդական կարգը բավական մոտ է Ս. Անեցու ժամանակագրության հրատարակության բնագրի հիշյալ տեղեկություններին, նշանակում է վերջիններս մեզ անհայտ մի երրորդ բնագրից օգտագործել են, ինչպես Հեթում Բ-ն, այնպես էլ Ս. Անեցու ժամանակագրության բնագրին ավելացում կատարողը։[2]

Հայերին վերաբերող առանձին վկայություններ հնարավոր է, որ Հեթում Բ-ն վերցրած լինի Հեթում Պատմիչի թարգմանած խրոնիկոնից։ Իսկ հեղինակի այն պնդումը, թե նա օգտվել է հունական և ասորական աղբյուրներից, մեր որոնումները չհաստատեցին նրա հավաստիացումը։

Հեթում Բ-ի տարեգրությունը իր հերթին որպես սկզբնաղբյուր ծառայել է այլ հեղինակների։ Նրա մի շարք վկայությունները հանդիպում ենք Ալիշանի երկերում («Սիսուան», էջ 141, 194, 547 և այլն), վերջինս այդ վկայությունները վերագրում է ոմն ժամանակագրի կամ XVIII դարի սկզբի հեղինակ Մաղաքիա դպիր Ճեվեհիրճյանին։ Սակայն, ինչպես այժմ պարզվում է, այդ վկայությունների հեղինակը Հեթում Բ-ն է։

Հեթում Բ-ի տարեգրության այս նոր բնագրի արժանիքը կայանում է նրանում, որ այն մեզ ներկայանում է, որպես մատենագրական մի ամբողջական գործ։ Եթե նկատի չունենանք առանձին բառերի աղճատումները, որոնք գրչագրական սխալի արդյունք են, ապա առաջարկվող բնագիրը արտահայտում է տարեգրության սկզբնական բնագիրը։

Երկրորդ՝ առաջարկվող բնագրում գտնվում են Հեթում Բ-ի ժամանակակից դեպքերին վերաբերող բավական արժեքավոր և հետաքրքիր տեղեկություններ, որոնք չենք գտնում նրա մեզ հասած մնացած բնագրերում։

Երրորդ, սույն բնագրի շնորհիվ պարզվեց իսկական հեղինակի հարցը։

Չորրորդ՝ առաջարկվող բնագիրը հետաքրքիր է նաև լեզվի տեսակետից։ Այն գրված չէ մաքուր հայերենով. բնագրում տեղ են գտել օտարազգի՝ լատինական, արաբական, բազմաթիվ բառեր, աանեք, պարոն, բասաճ, ըմպրուր, ֆրեր, բրինձ, խալմ, դարիթ, սինոր, խսարել և այլն և այլն։

Հրատարակության համար հիմք ընդունել ենք A բնագիրը, որը չծանրաբեռնելու նպատակով, մնացած Б, В, Г, Е և Ալգերյանի հրատարակության (Д) բնագրի տարընթերցվածքների աչքի ընկնող շեղումները տվել ենք տողատակ՝ բացառելով մանրամասնությունները (օր. Կոստանդին թե Կոստանտին, բերթն, թե բերդն և այլն)։

---

[1] «Սամուէլի քահանայի Անեցւոյ հաւաքմունք ի գրոց պատմագրաց» էջ, 130։

[2] Հեթում Բ-ն իր տարեգրութիւնը կազմելիս, կարծում էինք, օգտագործած կլինէր Սմբատ Գունդստապլի «Տարեգիրքը» (վերջինիս միջոցով էլ Մ. Ուռհայեցու Ժամանակագրութիւնը), սակայն երկու բնագրերի համեմատութիւնը ցույց տվեց, որ միևնույն դեպքերը ոչ միայն տարբեր ձևով ու ծավալով են պատմված, այլև գրված են տարբեր տարեթվերի տակ. օրինակ՝ համաձայն Հեթումի, Կոստանդինը մահացել է 1102 թվին, իսկ Սմբատի՝ 1100-ին։

III.

ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ ԺԱՄԱՆԱԿԱՑ ՀԱՒԱՔԵԱԼ Ի ԶԱՆԱԶԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ, ԱՅՍԻՆՔՆ՝ Ի ՀԱՅՈՑ, Ի ՖՌԱՆԿԱՑ, Ի ՅՈՒՆԱՑ, Ի ՅԱՍՈՐՈՑ ԳՐԵԱՆՑ. ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ ԻՄՈՅ, ԾԱՌԱՅԻՍ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ ՀԵԹՄՈՅ ՏԵԱՌՆ ԿՈՌԻԿՈՍՈՅ, Ի ԹՎԱԿԱՆԻ ՀԱՅՈՑ ՉԽԵ (1296) 246ա

*Ի թուականին Հայոց ՇԻԵ (1076) Գագիկ թագաւորն Հայոց ըսպանաւ որդոցն Մանդղէլի,[1] ի բերդն Կենդռոսկօյ.*

*ՇԼ (1081) յետ որոյ Ռուբէն ազգական նորա երթեալ բնակեցաւ ի սահմանս Կոսիտառոյ. և անտի հասեալ ի գեօղըն Կորմօղօյօն և անդ վախճանեցաւ։*

*ՇԽ (1001) և որդի նորա Կոստանդին էառ զՎահկայն։ Եւ նախ սա տիրեաց ի Կիլիկեայ, ի վերայ ազգին Հայոց։*

*ՇԻԹ (1080) Սուլիմանն էառ զԱնտիոք, սպանօ Սուլիմանն։[3]*

*ՇԽԵ (1096) շարժեաց աստուած մեծ բասաճն՝ Ֆռանկաց գալ ի թափումն յԵրուսաղէմի ի ձեռն ֆռանկի միայնակեցի միոյ, ուրում անուն էր Փեռէրմիա։[4]*

*ՇԽԶ (1097) բասաճն էառ զՆիկիեա քաղաքն Յունաց։[5]*

*ՇԽԷ (1098) եղև թափումն Անտիոքայ և Ուռհայոյ յանօրինաց։[6]*

*ՇԽԸ (1099) եղև թափումն Երուսաղեմի և առուկն Գոնտոֆրէ տիրեաց յԵրուսաղէմի։*

*ՇԽԹ (1100) մեռաւ Գոնտոֆրէ և եկաց || առաջին թա-* 246բ

---

*1—4* БВГD *ժամանակագրութիւնք* (Г *ժամանակագրութեանց*) *Յ* (B *ՅԱ*. Г *Գծ*. D *երեք հարիւր*) *և մէկ ամաց կարճ ի կարճոյ հաւաքեալ ի զանազան պատմութեանց՝ հայ, ֆռանկ և ասորի, շարագրեալ պարոն Հէթմոյ* (Г *Հեթմոյ*) *տեառն Կոռիկոսոյ* (B *Կոռիկոսի*, Г *Կօռիկոսաց*) *և արար* (B *արարեալ*) *զայս բանք ի թվին* (BD *թուին*) *Հայոց ՇՃԽԵ* (Г *ՇՃԻԷ*, D *ՇԽԵ*) *և յամի* (Г *յամի տեառն*) *մարդեղութեան ՌՄՂԶ* (Г *ՌՔՃՂԶ*)*։ 1—4* E *Համառօտ պատմութիւն ժամանակաց հաւաքեալ ի զանազան պատմութեանց այսինք[ն] ի հայ, ի ֆռանկ և ի յուն և ի յասորի դրենաց [ի թուա]կանիս Հայոց ՉԽԵ։ 5* БВГ *ՇԻԵ* (Г *ՇՃԻԵ*) *և Քրիստոսի ՌՀԶ փխ. ՇԻԵ։ 6* БВГD *բերդն Կենդռոսկէի* (B *Կենդռոսկէի*, Г *Կենդրօսկօյի*, D *Կենդռոսկոյի*) *ի Լիկանդոնն։ 7* БВГDE *ՇԼ չիք։ 9* БВГDE *և չիք։ 10* БВГ *ՇԽ չիք*, D *ՇԽԶ փխ. ՇԽ*, E *և [որդի] չիք։ 11* БВГD *նախ չիք*, БВГD *ի Կիլիկեայ չիք։ 12* A *ՇԽԹ Սոլէմոն։ 12—13-րդ տողը* БВГD *չիք։ 14* БВГ *ՇԽԶ Հայոց և Քրիստոսի ՌՂԷ* (Г *ՇՃԽԶ յամի տեառն ՌՂԷ*) *եղև* (B *[եղ]և*) *առաջին* (Г *յառաջին*) *փխ. շարժեաց աստուած զմեծ*, D *ՇԽԵ չիք։ 15* БВГD *և ազատել յանօրինաց փխ. ի թափումն յԵրուսաղէմի։ 17* БВГD *ի նոյն* (Г *ի սոյն*) *ամին փխ. ՇԽԶ*, БВГDE *ի յունաց։ 18* БВГD *ազատեցան փխ. եղև թափումն։ 20* БВГD *ազատեցաւ փխ. եղև թափումն։*

գաւոր Երուսաղէմի Պաղաինն, եղբայրն Գոտոֆրէի, կոմսն Ուռհայոյ։

ՇԾ (1101) առաւ Սղայրն[8] յանօրինաց։

ՇԾԱ (1102) պարոնն Հայոց Կոստանդին վախճանեցաւ,[9] և էառ զիշխանութիւն նորա, անդրանիկ որդին իւր՝ Թորոս։

ՇԾԳ (1104) առաւ Աքա յանօրինաց։

ՇԾԸ (1109) առաւ Տրապօլիս յանօրինաց։[10]

ՇԾԹ (1110) առաւ Պէրուա և Սայաայ ի յանօրինաց։[11]

ՇԿԴ (1115) շինեցին քրիստոնեայքն զՄարաշ[12] և զՇապաք։[13]

ՇԿԵ (1116) մեռաւ թագաւորն Երուսաղեմի Պաղաինն և երկրորդ թագաւորեաց Պաղտինն Տպուրքն, ազգական նոցա։

ՇՀԸ (1129) վախճանեցաւ պարոն Թորոսն Հայոց և էառ զիշխանութիւն Լևոն, եղբայր նորա։

ՇՁ (1131) թագաւորն Երուսաղէմի Պաղտինն վաղճանեցաւ, և երրորդ[14] թագաւորեաց իւր փեսայն Ֆուքն։

ՇՁԶ (1137) թագաւորն Յունաց Պորֆիրօժն էառ զԿիլիկիեայ ի պարոն Լևոնէն։[16] ԸզԼևոն հանդերձ որդւովքն կապեցին և առաքեցին ի Կոստանդնուպօլիս. և մեռաւ Լևոն։

ՇՂԲ (1143) թագաւորն Երուսաղեմի Ֆուքն վաղճանեցաւ և չորրորդ թագաւորեաց որդի նորա Պաղաինն։

ՇՂԳ (1144) Թորոս որդին Լևոնի եկն ի Կոստանդնուպոլսէ և էառ զՎահկան և նորոգեաց զիշխանութիւնն Հայոց։

ՇՂԵ (1146) և եղև երկրորդ[15] բասաճն. և նորոգեաց բասաճն ֆռանգաց, յոր եկն Ֆուռաթն, բրուրն Ալամնաց և Լաւիզ ռէ տն Ֆրանցն։[17]

ՇՂԶ (1147) ընպրուռն և ռէ տը Ֆրանցն պաշարեցին զԴամասկոս և ոչ կարացին առնուլ։[18]

ՈԶ (1157) առաւ զԱսզալէն յանօրինաց։[19] Պարոն Հայոց Թորոսն վախճանեցաւ կրօնաւորեալ[20] և կալաւ զիշխանութիւն նորին եղբօրն Մլեհն։

ՈԺԲ (1163) թագաւորն Երուսաղէմի Պաղտինն վախճանեցաւ։

---

3 БВ Խօսսայրն (D Խուսայրն, E Շէզայրն) փխ. Սզայրն։ 3-րդ տողը Г չիք։ 4 БВГD մեռաւ փխ. վախճանեցաւ։ 5 БВГD տիրեաց փոխան փխ. էառ զիշխանութիւն, БВ անդրանիկ չիք, E նորայ փխ. իւր։ 7 БВD ՇԾԹ (Г ԽձԾԹ) փխ. ՇԾԸ։ 8 БВГD ի նոյն ամին փխ. ՇԾԹ, БВГD ի չիք։ 12 E թագօւոր եկած փխ. թագաւորեաց, Г Տէպուրց, БВГD նորին փխ. նոցա։ 13 БВГD մեռաւ փխ. վախճանեցաւ։ 14 БВ Լեոն չիք։ 15 БВГD մեռաւ փխ. վաղճանեցաւ։ 16 БВГD նորին փխ. իւր։ 18 БВDE Լեոնէ, БВГD և զԼևոն Բ. որդոֆն (Б որդօֆն) առաքեաց փխ. ըզԼևոն հանդերձ որւովքն կապեցին և առաքեցին, E առաքեաց կապանօք փխ. կապեցին և առաքեցին։ 19 БВГDE որ և անդ մեռաւ (E մեռո) փխ. և մեռաւ Լևոն։ 20 БВГD մեռաւ (E մեռո) փխ. վաղճանեցաւ։ 24 БВГDE և [եղև] չիք, БВГDE և նորոգեաց բառաճն (D բասաճըն չիք) չիք։ 25 БВГ զոր (D յոր չիք, E յորս) փխ. յոր, БВГD փրիօրն փխ. բրուրն։ 26 БВГD Լոյզն ռէ դէ (E Լօիզ ռե տէ)։ 30 Б կալ (В կալեալ, E կալօ) փխ. կալաւ։ 31 БВГDE նորա (E նորայ) Մլէհ (DE Մլեհ) եղբայր (E եղբայրն) իւր փխ. նորին եղբօրն Մլեհն։ 32—33 БВГD մեռաւ (E մեռո) փխ. վախճանեցաւ։

ՈԺԳ (1164) Մլեհ եղբայրն Թորոսի սպանաւ ի Սիս. և իշխանքն նորա, զՌուբէն որդին Ստեփաննէի ‖ եղին պարոն Հա- 247ա յոց։[21] Եւ հինկերրորդ (SIC) թագաւորեաց յԵրուսաղեմի Ամառի. և ՈԺԶ (1167) էառ զՍքանդարիա[22] և զԳլպէս։

ՈԺԷ (1168) Ամառի թագաւորն Երուսաղեմի խանկարեաց զՍալահատինն և Հոռոմայն օգնականութեամբն պաշարեաց զՏատիաթն և ոչ կարաց առնուլ։[23]

ՈԺԸ (1169) Գլինաս խլվեցաւ ի քրիստոնէիցն։

ՈԺԹ (1170) եղև շարժ սաստիկ և բազում քաղաք և բերթք փլեցան, նաև ի Սէհլն։

ՈԻԲ (1173) տէր Ներսէս Շնորհալին վախճանեցաւ ի Քրիստոս յօգոստոսի ԺԳ (13), օրն հինգշաբթի. ոհ։[24]

ՈԻԳ (1174) թագաւորն Ամառին Երուսաղէմի վախճանեցաւ։ Եւ վեցերրորդ թագաւորեաց որդի նորա Պաղտին, որ անկաւ յախտ գութութեան։

ՈԻԹ (1180) կայսրն Յունաց Մանուէլն յաղթեցաւ ի Ղլիճ Ասլանէն մերձ ի Կոնն։[25]

ՈԻԹ (1180) թագաւորն Յոնաց կայսր Մանուէլն վախճանեցաւ։

ՈԼ (1181) եօթներրորդ թագաւորեցուցին զփոքր Պաղտինն՝ որդին մարգիզին, յառաջ քան զվախճանիլ Պաղտին Գոթոյն։

ՈԼԴ (1185) վախ[ճա]նեցաւ թագաւորն Երուսաղէմի[26] Բաղաին Գոթին։

ՈԼԵ (1186) պարոն Հայոց Ռուբէնն վախճանեցաւ և եկաց ընդ նմայ Լևոն եղբայրն ի[ւր].[27] Թագաւորն Երուսաղեմի Բաղաին փոքրն [մեռաւ] և եկաց ընդ մայրն նորա Սլիպ թագուհին և իւրհայրգիրն Կիւ տ[ը] Լաղօնեայն։

2 БВГDE բերեալ զՌօբէն (DE զՌոբէն) զորդին։ 3—4 БВГD ի սոյն ամի թագաւորեաց Երուսաղեմի Ե-երորդ Ամառինն։ ՈԺԶ Ամառի թագաւորն Երուսաղեմայ էառ զՍանկարիայ և զԳլպէս փխ. և հինկերրորդ թագաւորեաց... էառ զՍքանդարիա և զԳլպէս։ 5 ВГ խանդրեց (D խանկրեց, Ė խանկրեաց)։ 6 Ä հասումնոյն (БВГ յունաց) փխ. Հոռոմնոյն։ 9—10 E և փլան քաղքնի և բերդեր ի բազում տեղիս և ի Սէհլն փխ. և բազում քաղաք... նաև ի Սէհլն։ 10 БВГD և ի Սէհլն առաւել փխ. նաև ի Սէհլն։ 11—12 БВГD Կլայեցին կաթողիկոսն հայոց (БВ հայոց չիք) փոխեցաւ առ Քրիստոս յօգոստոսի (Г օգոստ[ո]սի) ԺԳ օր (ГD օրն) Ե շ[աբթի], E Կաթողիկոս Հայոց փոխեցօ առ Քրիստոս յօգոստոս ԺԶ. եւշաբթի օր։ 13 БВГD մեռաւ (E մեռաօ) փխ. վախճանեցաւ։ 14 БВГD որ եւ 15 БВГD յախտ չիք, E յախ, БВ գողութիւն, ГD ի գողութիւն։ 16 БВDE ՈԻԵ (Г ՋԾԻԵ) փխ. ՈԻԹ, БВГDE Ղլիճ (DE Ծըլիճ) Ասլան սուլտանէն։ 18 БВDE կայսրն փխ. թագաւորն 18—19-րդ տողը Г չիք, БВDE կայսր չիք, БВD մեռաւ (E մեռ[օ]) փխ. վախճանեցաւ։ 20 БВD թագաւորեաց փխ. թագաւորեցուցին։ 20—22Г ՋԾԻԹ կայսրն որդին մարքէզին յառաջ քան զվաղճանն Պալտին Գոգոյն առաւ իծնէբօտիայ և Ամասիայ փխ. ՈԼ եօթներրորդ թագաւորեցուցին... Պաղտին Գօթոյն։ 21 БВ զվախջանն (D զվախճան, E զմեռնելն) փխ. զվախճանիլ։ 22—23-րդ տողերի միջև D Սա շինեաց քաղաք ի վերայ Յորդանանու ի հունն Ցակոբայ։ Առաւ Իծնէբոտիա և Ամասիա։ 23 БВD ՈԼԳ (Г ՋԾԼԳ) փխ. ՈԼԳ, БВГD մեռաւ (E մեռօ) փխ. վախ[ճա]նեցաւ, БВГD թագաւորն Երուսաղէմի չիք։ 25 БВГD մեռաւ (E մեռօ) փխ. վախճանեցաւ, БВГD էառ զիշխանութիւնն փխ. եկաց ընդ նմայ։ 26 E և նստօ եղբայր իւր Լևոնն փխ. և եկաց ընդ նմայ Լևոն եղբայրն ի[ւր]։ 26—28 БВГDE ի սոյն ամի (E ի սոյն ամի չիք) Պալտին փոքրն (E Պաղտինն Երուսաղէմի) մեռաւ և եկաց ութերորդ (БВE Ը.երորդ) թագաւոր մայր նորա (E նորայ) Սիպիլիայ թագուհին (D Սիպիլիա) և հայրգիրն իւր Պալտին Կի տ[ը] Լաղինեանն փխ. [մեռաւ] թագաւորն Երուսաղեմի ...Կիւ տ[ը] Լաղօնեայն։

ՈԼԶ (1187) կոտորումն քրիստոնէից ի Սալահադրնէն մերձ յԵրուսաղեմի,[28] յորում աւուր կալան և զԹագաւորն Գի. և անյայտ եղև սուրբ խաչն Քրիստոսի։ Եառն և զԱքա ի Սալահատինն և ապա զԱսղալէն, որ և ի սոյն ամի էառ զՍալահատինն զԵրուսաղէմ և զամենայն Սէհլն, բաց ի Սրոյ և ի Տրապօլսոյ։[29]

ՈԼԹ (1190) կայսրն Ալամանաց Ֆարկն խեղդեցաւ ի գետն Սելևկիոյ և թաղեցաւ ի յԱնտիոք։ Եւ Ֆիլիպ ռէ ար Ֆրանցն[30] և Ռիչարդ Թագաւորն Ընկլիզաց[31] անցին յայս կոյս ծովու և պաշարեցին ըզԱքա, որ և ի գալն Ընկլիզաց էառ ըզկղզին Կիպրոսին Յունաց ի Կիռսակ տուկէն։

Եւ սկ[ի]զբն եղև կարգաւորութեան Ալաման ֆրէրացըն։[32]

Ոխ (1191) ռէ տ[ը] Ֆրանցն և Ընկլիզաց Թագաւորն առին 247բ զԱքա ի յանօրինաց։[33]

Ոխ (1191) Կի Թագաւորն յԵրուսաղեմի գնեաց զԿիպրոս կղզին ի Թագաւորէն Ընկլիզաց։[34]

ՈԽԱ (1192) Թագաւորն Ընկլիզաց արար սէր ընդ Սալահատինն և դարձուցին սիրով ի ձեռըն քրիստոնէից զՃօփըն, զԱրսուֆն, զՍզայրն և Կաֆաս։[35]

ՈԽԳ (1194) Թագաւորն Կիպրոսի Կի վախճանեցաւ, և երկրորդ Թագաւորեաց Կիպրոսի Հնմրի, եղբայրն իւր։

Պարոնն Հայոց Լևոն կալաւ զՊեմունդ բրինձն[36] Անտիոքայ և եդ ի բանդի ի կլայն Սիսոյ։

ՈԽԴ (1195) ազատեցաւ Տէմունդն ի բանդէն միջնորդութեամբ Հէռի գունդին և եղև խնամութիւն ընդ պարոն Լևոնին և բրինձին։

ՈԽԵ (1196) մեռաւ Սալահատինն և ժառանգեաց Մսրայ և Դամասկոսի Ցէտլ եղբայր նորա։[37]

ՈԽԶ (1197) պարոն Լևոնն պսակեցաւ Թագիւ և եկաց առաջին Թագա[ւ]որ ի Կիլիկեա։

Եւ զՃպէԹն Թաւօվ (sic) առին յանօրինաց։

Մելիք Ցեալն էառ ի քրիստոնէից զՃօֆն։

1 БВГD եղև կոտորումն (E եղև կատարումն) փխ. կոտորումն։ 2 БВГDE և կալան փխ. յորում աւուր կալան, БВE և (զԹագաւորն) չիք։ 3 БВГDE յորում աւուր (E օուք) աւին (ГD ավին) փխ. եառն եւ 4 БВГ զԱսկալօնն (D զԱսկալոնն)։ 5 БВГD Տրայպօլսոյ Սուր Տիւբոսէ, յամի տեառն Ցիսուսի ՌՃՁԲ փխ. ի Սրոյ և ի Տրապօլսոյ։ 7 БВГD ռէ տէ փխ. ռէ ար։ 6—7-րդ տողը (ՈԼԹ կայսրն...Թաղեցաւ ի յԱնտիոք) E չիք։ 8 БВГD Ռէչառլ։ 7—20-րդ տողը (Եւ Ֆիլիպ...եղբայրն իւր) E չիք։ 10 ГD ի յունացն (БВ ի յունաց), БВГD Կիրսակ։ 11 БВГD յայսմ սկիզբն փխ. և սկ[ի]զբն, Г կարգաւորութեան չիք։ 14 БВГD Ոխ չիք։ 17 БВГD սիրով ի ձեռըն չիք, БВD ի քրիստոնէքն (Г ի քրիստոնեայքն) փխ. քրիստոնէից։ 17—18 БВГD զՃաֆն, զԱրսուֆ (ГD Սուֆ) զԽուսայրն ու զԿաֆաս փխ. զՃօֆըն, զԱրսուֆն, զՍզայրն և Կաֆաս։ 19 БВГD մեռաւ փխ. վախճանեցաւ, և չիք։ 21 БВ Թորոս պարոնն Հայոց (Г Թորոս Լևոն պարոն Հայոց), E պարոնն չիք։ 22 A եա փխ. եդ։ 24 A Հէռի փխ. Հեռի, БВ Գունդէն։ 23—24 E միջնորդութեամբ Հէռի Գունդին չիք։ 24 E և (եղև) չիք, БВD խաղաղութիւն (E խնամեցօ) փխ. խնամութիւն։ 24—25 БВГD Լևոն և ընդ բրինձն։ 25 E և բրինձին չիք։ 27 БВГ սուլտանն Ցէտ փխ. Ցէտլ, D սուլտան փխ. Ցէտլ։ 26—27-րդ տողը E չիք։ 28 БВГD Պարոնն (Г պարոնն չիք) Հայոց Լևոն, E Հայոց Լևոն պսակեցօ, Г Թագիւ յաւուրս յայտնութեան։ 29 E ի չիք, Կիլիկոյ։ 30—31-րդ տողերը E չիք։ 30 БВГD և չիք, զՃպլէԹ (Г Ճլպէթ) դաւով (Б դաւօվ)։ 31 БВГD զՃաֆն փխ. զՃօֆն։

*ՈԽԷ (1198) Պէրու թ առաւ յանօրինաց։*[38]

*ՈԾ (1201) մեռաւ Պէմունդն, իւր որդին, որ [էր] կոմսն Տրապօլսոյ։*

*ՈԾԱ (1202) եղև երկրորդ շարժ և կործանեցաւ բազում քաղաք և ապարանք ի Սէհլն։*

*ՈԾԲ (1203) Լևոն թագաւորըն Հայոց էառ զԱնտիոք։*

*ՈԾԳ (1204) Գունթըռ ֆլան[դ]րն և տուկն Վանաաբ-կացոց առին զԿոստանդնուպօլիս ի Յունաց։ Եւ եղև կայսր ի Կոստանդնուպօլիս Պաղաինն։*[39] *Եւ զօրքն Երուսաղէմի և Կիպ-րոսի գնացին յՆղիպտոս և աւերեցին բազում աեղիս ծովե-զերացս։ Եւ Փիլիպ ռէ աէ Ֆրանցն էառ զՆորմանգոյ*[40] *աշխարհն ի թագաւորէն Ընկլիզաց։*

*ՈԾԴ (1205) մեռաւ թագաւորն Կիպր[ո]սի Հեմրին։*

*ՈԾԵ (1206) մեռաւ բրինձն Անտիոքա Պէմունդն և եկաց որդին Պէմունդն կոյրն։*

*ՈԾԶ (1207) թագաւորըն Հայոց Լևոն կալաւ զՍևաստիոսն*
*Հեռի որ ‖ զօվքն և զԿոսաանց Խումարախաշն, և Ճօլինն և զՊաղ-* 248ա
*տիննն։*[41] *Եւ զաէր Յովհաննէս կաթուղիկոսն ընկեցին*[42] *յաթոռոյն*
*և եդին զտէր Դաւիթն Արքակաղեցին։*

*ՈԾԷ (1208) Պէմունդ բրինձ Անտիոքա[յ] խանկարեաց իւր ձիաւորքն և զԱնտիոքա[յ] Գումինն, որ մարտեալք էին ընդ-դէմ նորա, կալաւ և զպարոնարքն և եդ ի բանտի, որ և անդ վախճանեցաւ։ Եւ Խոսրոֆ շահ սուլթանըն յԻկոնիոյ,*[43] *որդի Ղլիճ Ասլանին էառ զԲեր[դ]օսն ի Հայոց և կալաւ ըղտէր նորա Գրի-գորն, որդին Լևոնի։*[44]

*ՈԾԸ (1209) պատերազմեցաւ լաշքեարին ընդ սուլթանն յԻկոնիոյ ի Խոնաս.*[45] *և սպանաւ սուլթանն, և եկաց ի տեղի նորա Ազըտին Գաղազուզն։*[46]

*ՈԾԹ (1210) պսակեցաւ ռէ Ճուանն ընդ թաքուհին Մա-րիայ, որ եղև տասներորդ թագաւոր Երուսաղեմի։ Եւ Լեոն թա-գաւորն Հայոց էանց ի Կիպրոս և էառ իւր կին զքոյր թագա-ւորին զՍպիլն, որ է Եղիսաբէթ։*[47]

*ՈԿ (1211) վախճանեցաւ տէր Դաւիթն և դարձեալ եղև կա-թուղիկոս Հայոց տէր Յովանէսն։*

---

*1—5-րդ տողերը* E *չիք։ 1* A *յունօրինաց։ 2* БВГD *իւր չիք։ 2* БВГD *որդոմն։ 5* БВГD *և տպարանք չիք։ 7* БВГ *գունդն գէ* (D *գունտն տէ)։ 6—8-րդ տողերը* E *(ՈԾԲ Լևոն...ի Յունաց) չիք։ 7* БВ *Վէնէժոյ,* ГD *Վնիժոյ։ 8* БВГD *ի (Կոստանդնուպօլիս) չիք։ 9* БВГD *և (զօրքն) չիք։ 10* ВГD *ի ծովեզերս* (Б *ի ծովեզերս),* E *ծովեզերացս չիք։ 11—15-րդ տողերը (և Փիլիպ... Պէմունդն կոյրն)* E *չիք։ 11* БВГD *և չիք,* A *զնոր մար-դոյ։ 15* БВГD *որդի նորա Պէմունդ միականի։ 16* E *սսան փխ. զՍևաստիոսն։ 17* БВГD *զԿոստանց չիք, զՃօշտիննն փխ. և Ճօլինն,* E *զՃօշլին։ 18* БВГDE *և (զտէր) չիք,* БВГD *Յովհան։ 18—19* БВГDE *կաթողիկոս Հայոց զտէր Դաւիթ* (E *Դօիթ) զԱրքակաղնին։ 20—23-րդ տողերր (ՈԾԷ Պէմունդ... որ և անդ վախճանեցաւ)* E *չիք։ 21—22* БВГD *մոտել էին ի վերայ փխ. մարտեալք էին ընդդէմ։ 22* БВГD *և եդ ի բանտի չիք։ 23* БВГD *ի բանդին մեռաւ փխ. անդ վախճանեցաւ,* БВГDE *և չիք։ 25* E *որդին Լեոնի չիք։ 26* БВГD *ի փխ. ընդ։ 26—28-րդ տողերը* E *չիք։ 29* БВГD *թագուհին Երուսաղէմայ* (D *Երուսաղէմի) Մարինն։ 30* БВГD *և փխ. որ, 31* БВГDE *և չիք,* БВГDE *թագաւորին Կիպռոսի* (ГE *Կիպրոսի)։ 32* БВГDE *որ է Եղիսաբէթ չիք։ 33* БВГD *մեռաւ Դաւիթ կաթողիկոսն Հայոց,* (E *վաղճանեցօ կաթողիկոս տէր Դօիթ)։ 33—34* БВГDE *կալաւ* (E *կալօ) զաթոռն փխ. եղև կաթուղիկոս Հայոց։*

ՈԿԲ (1213) Հաշիշիքն սպանին զՊէմունդ բրինձն Անտիոքայ։ Եւ եղև մեծ պատերազմ ընդ ըՍպայնաց թագաւորքն և ընդ մղրբ-պիքն։[48]

ՈԿԳ (1214) Ֆիլիպ ռէ աէ Ֆրանցն խանգարեաց զբբուրն Ալամնաց զՕդն. և Լաւիդ, որդին ռէ տր Ֆրանցին խանգարեաց և զԻնկլիզաց թագաւորն զռէ Ճուաննն։[49]

ՈԿԴ (1215) Իննօնցէնցիոս պապն արար ժողով ընդհան-րական ի Հռոմ, վասն թափմանն Երուսաղէմի։ [Եւ էին ի ժո-ղովքն] ՆԻԲ (422) եպիսկոպոսաց և ՀԲ (72) արքեպիսկոպոսաց։[50]

Եւ ՈԿԵ (1216) մեռաւ ըպրուրն Ալամնաց և եկաց հետ նո-րին Ֆտրիկն։ Եւ թագաւորն Հայոց Լևոն էառ դաւօվ ի գիշերի զԱնտիոք[51] և կացոյց անդ բրինձ ըղՌուբէն, թոռ եղբօրն իւրոյ։ Եւ ծնաւ դուստր Լևոնի թագաւորին Զապէլն։

Եւ Քաքաուզ սուլթանն պաշտրեաց զբերթ Կապանն[52] և կա-լաւ զիշխանն Հայոց Կոստանդին Գօնտօսաապլն, որ կոչեցաւ աւագ պտրուն և զԿոստանդին, Լանբր || օնին տիրոջ որդին և 248r Կեռոակ Մամուաղոյ տէրն և զայլսն։

ՈԿԶ (1217) եկն թագաւորն[53] Ընկլիզաց յայս կոյս ծովուն և շինեցաւ Զաստել Բլրին բերթանքն Դամըլցեց[54] և ռէ Ճոյտնն և պատրիարքն շինեցին զՍղայրին բերթն։

ՈԿԷ (1218) թագաւորն Կիպրոսի Ույկն մեռաւ ի Տրապօլիս. և զօրքն քրիստոնէից գնացին ի Տիմիաթն։[55] Մեռաւ և թագա-ւորն Սպայնոց[56] Ալֆուն Սլպօնն։[57] Թագաւորն Հայոց Լևոն ետ զին սուլթանին զբերթն Լուլվայ և զԼուլզատի և ազատեաց զկա-լանաւոր իշխանս իւր։

ՈԿԸ (1219) առաւ զՏիմիաթն յանօրինացն։[58] Պէմունգ բրինձն խլեաց զԱնտիոք ի յՌուբենայ։

Եւ վախջանեցաւ թագաւորն Լևոն։

ՈԿԹ (1220) մեռաւ Ֆիլիպ ռէ աը Ֆրանցն և թագաւորեաց որդի նորին Լաւիդն։[59] Պարոն Վահրամն, մարաջախտն Հայոց և այլ իշխանքն կամեցան պարոնացնել Հայոց ըղՌուբէն բրինձն. և պայլն Հայոց Կոստանդինն կոտորեաց զնոսա մերձ ի Սիս, և կալաւ զբրինձ Ռուբէնն և զիշխանքն, տարան ի Տարսիս։[60]

---

1—9-րդ տողերը E չկա։ 2 БВГD Սպանիոյ թագաւորն։ 4 БВГD խանկրեց զուն-բրուրն (Г զբրուրն, D զըմբրուրն)։ 7 БВГ երկրորդ պապն փխ. պապն։ 8 БВГD ի Հռոմ չկա, ազատելոյ յանօրինացն զԵրուսաղէմ փխ. թափմանն Երուսաղէմի։ 9 БВГD եպիսկո-պոսք, արքեպիսկոպոսք։ 10 БВГD և (ՈԿԵ) չկա։ 10 БВГD յետ նորա փխ, հետ նորին։ 11 БВГЕ և (թագաւորն) չկա։ 12-րդ տողը (և կացոյց...եղբօրն իւրոյ) E չկա։ 13 E և (ծնաւ) չկա, 13-րդ տողը БВГD չկա, E Լևոնի չկա։ 14 БВГDE և չկա։ 15 Г զիշխանութիւնն փխ. զիշխանն, E զիշխանս, БВГD զպարոն փխ. Հայոց։ 17 БВГD զայլս ևս փխ. զայլսն։ 16 E տղայն փխ. որդին, E Մամուաղոյ տէրն և զայլսն չկա։ 18—27 տողերը E չկա։ 18 БВГD ունկարաց ի յայս փխ. ընկլիզաց յայս։ 19 БВГD բերդ, A փլեցոյց փխ. Դամըլցեց, БВГ Զուաննն Երուսաղեմայ (D Երուսաղէմի), 20 БВГD զՍայրին փխ. զՍղայրին։ 21 БВГD Ուկն փխ. Ույկն։ 22 БВ Դէմիաթ, ГD Տէմիաթ, БВГ և (թագաւորն) չկա։ 23 БВГD Սպանիոյ... Բօնն փխ. Սպայնոց... Սլպօնն։ 25 БВ իշխանքն, ГD իշխանայքն։ 26 БВГ Դամիաթն, D Տամաթն։ 27 ГD ի չկա։ 28 БВD մեռաւ փխ. վախջանեցաւ, 28-րդ տողը Г չկա, E ՈԿԲ մեռ թագօ[որ] Հայոց Լևոն փխ. (ՈԿԸ) և վախջանեցաւ թագաւորն Լևոն։ 29—30-րդ տողը (ՈԿԹ մեռաւ...Լաւիդն) ГЕ չկա։ 30 БВD նորա Լոյդն։ 32 БВГD Հայոց չկա, БВ Սմիս (E Մսիս) փխ. Սիս։ 33 БВГDE զիշխանսն ի քաղաքն Տարսուս, E տարան չկա։

Վախճանեցաւ. Հայոց կաթուղիկոսն տէր Յոհաննէս և եղև տէր Կոստանդին Բարձրբերթցին։

ՈՀ (1221) Թագաւորն Հայոց Լևոն մահուամբ վախճանեցաւ ի Թրիստոու[61] Կուրուսին քրիստոնեաքն զ[Տ]ամիաթն։[62] Թագաւորեաց Հայոց Փիլիպպ, որդի կոյր բրինձին, ամուսնանալով ընդ Զապէլ, դուստրն Լևոն Թագաւորին։ Եղև սաստիկ շարժ և փլոյց զԱֆն[63] ի Կիպրոս կղզին։

ՈՀԴ (1225) Թագաւորըն Հայոց Փիլիպն ընբռնեցաւ ի յիւրոց զօրացն։

ՈՀԵ (1226) Ալամնա ֆրերքն սկիզբն արարին շինել Մունիօրտին։[64] Եւ Թագաւորեաց Հայոց ամենաբարին Հեթում, որդին Կոստանդեայ աւագ պարոնին Հայոց։

ՈՀԶ (1227) յեկեղեցին Հռոմայ կանգնեցին զսուրբն Ֆրանցէս և Անտօն զֆրերմնուրացն և կարգեցին զաօնք նոցա։ Թուրքերին առեաց Դամասկոսին։[65]

ՈՀԷ (1228) ըմբորուրն Ֆարիկ եկն այս կոյս ծովուն և շինեաց զՋաֆն։

ՈՀԸ (1229) ըմբրուր Ֆարիկն արար սէր ընդ Մէլէք Քէմլն և դարձուցին || սիրով ի քրիստոնեայս զԵրուսաղէմ և զՆազարէթ 249ա և զՍիտն։[66]

ՈՁ (1231) Լունկւպարաքն առին զՊէրութայ քաղաքըն և բերթն ոչ կարացի[ն] առնուլ։

ՈՁԱ (1232) Լունկւպարաքն խլեցին զԿիպրոս և Պէրութայ տէրն վերաւին էառ ի նմանէ։

ՈՁԲ (1233) մեռաւ բրինձն Անտիոքայ՝ Պէմունտ Կոյրն և եկաց բրինձ Պէմունդ խեղն։ Լունկուպարաքն առին զԿէռին բերթն ի Բէրութայ տէրէն և ի Ջնուիղացն։

ՈՁԷ (1238) բոէ Տրակունն Տօնճանն էառ զՎալան քաղաքն յանօրինացն։

ՈՁԸ (1239) բոէ ա[ր] Նաւարն և այլ կոմսերք եկին յայն կոյս ծովուն և կռուեցան ընդ Մսրայ հեծելին, խէչն զալէու և անօրէնքն յաղթեցան ի քրիստոնէից, և մեծ կոտորում արարին։[67]

ՈՁԹ (1240) արարին սէր քրիստոնեայքն ընդ ի սուլթանն Դմիշխայ Շամէ և առին սիրով յանօրինաց զԻպաֆօրթն, զՍա-

1 ԵBIԴ մեռաւ (E մևռ) փխ. վախճանեցաւ։ 3 ԵBIԴ մեռաւ փխ. մահուամբ վախճանեցաւ ի Թրիստոու։ 3—4-րդ տողը E չիք։ 4 ԵB ե կորուսին։ 6 ԵBΓDE Թագաւորին Հայոց Լևոնի։ 7 ԵBID զՊաֆն փխ. զԱֆն։ 0—7-րդ տողը (եղև սաստիկ... Կիպրոս կղզին) E չիք։ 8 ԵBΓDE ի չիք։ 10 ԵBD Մունֆօրդ բերդին։ 10-րդ տողը E չիք։ 11 E և չիք, E ամենաբարին չիք։ 12 E Հայոց չիք։ 12—13-րդ տողի միջև Γ սա (Հեթումը Վ. Հ.) շինեաց Սադաշէն տաճար սուրբն Սօֆիայ ի Սիս։ 13—34-րդ տողերը E չիք։ 13—15 ԵBΓD կանոնեցին ընդ սուրբս զերանելին Դօմինիկոս և զսուրբն Ֆրանցիսկոս փխ. Ցեկեղեցին Հռոմայ...առեաց Դամասկոսին։ 16 ԵBΓD յայս, ծովուն չիք։ 18 ԵBΓD ըմբրուր չիք։ 19 ԵBΓD սիրով չիք, ԵBD քրիստոնէքն (Γ քրիստոնայքն)։ 20 ԵBΓD զՆիոն փխ զՍիոն։ 21 BB լօնպարտքն (D լունկպարտքն), ԲԲԳ զԲէրութ (D զՊէրութ) փխ. զՊէրութայ քաղաքն։ 22 ԵBΓD և բերթն ոչ կարացի[ն] առնուլ չիք։ 23 ԵB Լօնպարտքն, ԵBΓD զԿիպրոս կղզին։ 24 ԵBΓD խանկրեց (Γ խանդրեցին) զԼոնպարտքն (ID զլունկուպարտքն) և էառ զկղզին փխ. վերստին էառ ի նմանէ։ 25—34-րդ տողերը ԵBΓD չիք։

ւէթն և զԵրուսաղեմի ամենայն երկիրն։ Եւ գունդ Ռիչարթն շինեաց զԱսղալան և դարձեալ ռէ տ[ը] Նաւարն յիւր աշխարհն։

ՈՂ (1241) Պէրուժայ տէրն սկսաւ շինել զԱրսուֆ բերթն։ Եւ ընպրուրին խալէքն բռնեցին զՃնուիզաց խալէքն, որ եղիսկոպոսունքն տանէին ի Հռոմ։

ՈՂԲ (1243) եղև դարձեալ սէր ընդ Սեհլին քրիստոնեայքն և ընդ Դմիշխայ սուլթանն, զԵրուսաղէմ իւր ամենայն յերկրօքն, բաց ի Յերիքովէ, և զնա փլոյց։[68]

ՈՂԳ (1244) Խարազմիքն մտին աշխարհ յԵրուսաղեմի և պատերազմեալք խանկարեցին զՍէհլին քրիստոնեայսն և կալան բաղում իշխանս։[69]

ՈՂԴ (1245) Թագաւորն Հայոց Հեթում էառ զՊռականա ի Հռոոմայ սուլթանէն Քարմտիւք։[70] Սուլթան Խիւթաանին[71] զօրքն պաշարեցին զԱրսուս,[72] որոց էին զօրագլուխք Շամուաին սահիպն և Կոստանդին տէրն Լամբրօնին։ Ինսւաթ[73] պայն արար ժողով ընդհանրական ի Լիոն քաղաք և բանադրեալ հանաւ ի ժառանգութենէ Ֆտրիկ ընպրուրն։

ՈՂԵ (1246) Թագաւորն Հեթում առաքեաց զեղբայրն իւր պարոն Սմպաթն գունտուտապլն ի Կիուկ խանն։[74] Եկաց Թագաւորն Կիպրոսի ‖ Հեռի յետ մահուան իւրու Ալիծ Թագոյն։ 249ր

ՈՂԶ (1247) սուլթանն Մսրա էառ ի քրիստոնէից զՊապարի և զԱսղալան։[75]

ՈՂԷ (1248) Լոյիըզ[76] րէ տը Ֆրանցն եկն յայս կոյս ծովուն ի Կիպրոսն։

ՈՂԸ (1249) ըռէ տը Ֆրանցն էառ զՏամիաթն[77] ի Աքա։ Սկսաւ առաջի շմօրն ընդ Ճնուէզն և ընդ Պիզանքն։

Ի Թվականիս Հայոց ՈՂԹ (1250) և յունիսի ԻԹ (29) կաարեցաւ ի սորայ պայն իմ և տէրն Լամբրօնի։ Ըռէ տը Ֆրանցն խանկարեցաւ և բռնեցաւ ի Մս[ր]այ սուլթանէն և ի նոյն ժամոյն մսրծիքն (sic) սպանեցին զիւրեանց սուլթանէն և ասաուծով ազատեցին զըռը Ֆրանցն և առին դին ՃՌ (100.000) մարկ արծաթոյ։[78]

Չ հարիւր (1251) Պէմունդ բրինձն Անտիոքա վախչանեցաւ և փոխանորդ[ե]աց որդի նորա ես Պէմունդն։

ՉԱ (1251) ըռէ տը Ֆրանցն շինեաց զՃաֆն Ճուլիան, սա յետոյ պսակեցաւ ընդ Ֆիմի, դուստր Հեթմոյ Հայոց Թագաւորն։ Վախճանեցաւ Զապէլ Թագուհին։

ՉԲ (1253) ըռէ տը Ֆրանցն վերըստին շինեաց զՍայտայ։[79] Հեռի Թագաւորն Կիպրոսի վախճանեցաւ։ Եւ Հեթում Թագաւորն գնաց ի Մանկո խանն։[80] Եւ ամուսնացուցին Զապէլ զուըստր (sic) նորա, Պէմունդ բրինծին Անտիոքա և կոմսին Տրապօլսայ։

ՉԳ (1254) ռէ տը Ֆրանցն դարձաւ իւր աշխարհն։ Վախչանեցաւ Քուռաթ որդի ըմրուրին։ Աղաճարիքն և Իսլամ պէկն յայտնեցաւ։

---

1—44-րդ տողերը БВГDE չիք։



504—6

ՉԵ (1256) սկսաւ կռիւն ընդ Ծնիւիղքն և ընդ Վնիսաքն յԱքա։ Թագաւորն Հայոց Հեթում եկն ի Մանկու ղանէն և արշաւեաց զօրքն ի գաւառն Հոռոմաց, ի Մուռնաինն[81] և այլն։ Եւ ձիւրեցոյց զորդին անդրանիկ զԼևոն։[82]

ՉԷ (1258) Վնիսանքն խարգարեցին (SIC) զԾնուիղքն յԱքա և փլուցին Զիպանց պուրճքն։

Հուլաուն խանն էառ զՎալամութ[83] և կոտորեաց զհաշիշիքն։ Հուլաունն էառ Բաղտատ։

Եւ վախճանեցաւ թագաւոր եղբայրն Հայոց զպարոն Լևոն մարաջախտըն։

ՉԸ (1259) Թագաւորն Հեթում գնաց ի Տրապօլիս յողնու || - 250ա թիւն իւր փեսայ բրինձին։ Եւ թագաւորեցոյց զորդին իւր պարոն Թորոսն։ Եւ ձեռնադրեցաւ եղբայրն իւր տէր Յովաննէս եպիսկոպոսն։ Եւ առին զՄունդաս բերթն յանօրինաց։ Եւ ի նոյն ամին զօրք Հայոց պաշարեալ կոտորեցին զՀոռմոց սուլթանին հեծեալքն, որք պաշարեալ էին զՄունդասս։[84]

ՉԹ (1260) Հուլաունն էառ զՀալապ պատերազմաւ և Դամասկոս ընդ ձեռամբ արար։ Եւ ի սոյն ամի Խութուզ սուլթանն կոտորեաց զԿիթբուղայն։[85] Հեթում թագաւորն գնաց ի Յուճն, հետևեալ՝ ի Ճախին։ Պունդուխտարն սպան զԽութուզ սուլթանն և ինքն եղև սուլթան Մսրայ։ Ճուլիան Սայտայու տէրն ծախեաց զանըլուն[85ա] զՍայտէ և զՊիաֆօրթն։ Թուրքմանքն բռնեցին զՊէրութայ տէրն և ծախեցին ի ԻՌ (20.000) կարմիրս։

ՉԺ (1261 Պալիան Արսուֆին տէրն ծախեաց զԱրսուֆն Ոսպիթլուն։ Վախճանեցաւ թագուհին Կիպրոսի Բլաժանսն։

Եւ եղև պայլ Կիպրոսի Ոյն տ Լաղոնեայն։ Պալիօլօղն էառ զԿոստանդնուպօլիս ի Ֆռանկացն։[86]

Ի նոյն ամին Թագա[ւ]որն Հեդում փեսայեցոյց զԿոստանդին, զորդի տեառն Սուրվանդիքարին, ի դուստրն իւր յՌիթայն։ Եւ ի սոյն ամի մեռաւ Ճաւրի, տէրն Սարվանդիքարին։

ՉԺԱ (1262) Ըռէջառն էառ զՄարսէյն սղարով։ Վախճանեցաւ թագաւորի հայրն Հայոց զԿոստանդին աւագ պարոնն։[87] Հեթում թագաւորն գնաց ի Մանիաւնն և խանգարեաց զԽալամանն։[88] Ի սոյն ամի կարգեցաւ թագաւոր որդին Հայոց Լևոն. և ի նոյն ժամու խառնեցաւ Լանբրօն ընդ թագաւորին Հայոց։[89]

Եւ ի սոյն ամի ծնաւ անդրանիկ Լևոնի թագաւորն Զապլունն։

ՉԺԲ (1263) Հեդում թագաւորն և Ռուդնատին սուլթան և աըղուչիքն ժողովեցան Յարակլիա, վասն բերթերաց սնօտաց բաժանելոյ։ Վնէսիանացն Ծ (50) խալէ[90] և թարիթն[91] պաշարե-

1—6-րդ տողերը BBГD չիք։ 4—8-րդ տողերը E չիք։ 7 БВ զԱլութ (ГD զԱլամութ) փխ. զՎալամութ։ 8 БВГD զարձեալ էառ Հուլայուն զԽաղդատ։ 9—16-րդ տողերը БВГDE չիք։ 17 БВГD ՉԹ Հուլաունն էառ չիք, պատերազմաւ չիք, E պատերազմեցաւ, E զԴմոշխ փխ. Դամասկոս։ 18 БВГDE ընդ ձեռամբ արար չիք։ 18—25-րդ տողերը (Եւ ի սոյն... Բլաժանսն) БВГD չիք։ 18—20-րդ տողերը (Եւ ի սոյն...ի Ճախին) E չիք։ 20 E Պունդուխտարն նստօ սուլտան Մսրայ։ 21—35-րդ տողերը (Ճուլիան Սայտայու տէրն...թագաւորին Հայոց) E չիք։ 27 БВ փռանկնոյն։ 28—30-րդ տողերը БВГD չիք։ 36 E ՉԺԱ փխ. և ի սոյն ամի, անդրանիկ չիք։ 37—39րդ տողերը E չիք։

ցին զՍոյր և ոչ կարացին առնուլ. և ձնուիղացն Ի (20) իայէ շահեցան զիւրեանց կարաւանին կէսն, որ ի Վնիժէն կուղային։ Ըղռէճառլն Թագուցին Թաղաւորն Սիկկիոյ. եմուտ ի Բուլն և ‖ խանդալեաց զՌէմաֆրէ։ 230բ

ՋԺԴ (1264) Ֆնդըխտար սուլթան Մսրայ էառ զԱրսուֆն յՌսպիթլէն. Տուրպան սղարէց Գիրն.[92]

ՋԺԴ (1265) |մեսաւ| պարոն Օշինն, թագաւոր եղբայրն Հայոց, տէրն Կիւռիկոռոյ, ԻԵ (25) ղեկտեմբերի, օրն ուրբաթ։[93] Սոյն ամի ծնաւ թաղաւոր որդին Հեթում։

ՋԺԵ (1266) Ֆալնգխաաար (sic) սուլթան Մսրայ էառ ի Դանըլէն զՍաւէա և զԱրասուս։

|Ս|մընլմօթն[94] զօրօք անօրինաց կոտորեաց զօրս Հայոց ի Մառին[95] և կալաւ զթագաւոր որդին Հայոց, զպարոն Լևոնն և միւս որդին, Թորոս սպանին և եմուտ յերկիրն Հայոց գ[ե]րեաց և աւերեաց մինչև ի Բարձնբեբթն (sic) և յԱտանայ։

Եւ վախճանեցաւ գունդն Ճաֆուն սիր Ճուաննն։ Եւ ի սոյն ամի ծնաւ դուստրն թագաւորն Հայոց Ֆիմին։

ՋԺԶ (1267) ձնուիղացն ԻԸ (28) դալէք այրէցին զԱքտյու մինայն և ի դառնալն առին Վնիսեանքն ի Նոցանէ Ե (5) դալէք։ Վախճանեցաւ թագաժառանգն Կիպրոսի Կեթն և թագուեցաւ թագաւոր Ոյկ ա Լազօրեայն։

ՋԺԷ (1268) Պնդուխտար սուլթանն Մսրայ էառ զՃաֆն և փլուցին զԳիաֆօրդն։

Եւ դարձեալ էառ զԱնթաք և փլոյց։[96]

Ջեռնադրեցին կաթուղիկոս զտէր Յակոբ։ Եւ ազատեցաւ թագաւոր որդի Հայոց Լևոնն ի Մսրայ։

Ըռիճարլն խանկարեաց զԿուռադինն և եսպան զնա։

ՋԺԸ (1269) փլան ի շարժէ Սարվանդիքարն և Համուսն։[97] Եւ ի սոյն ամի ծնաւ դուստր Լևոն թագաւորն Հայոց Սպիլն։

ՋԺԹ (1270) ռէ տէ Ֆրանցն պաշարեաց զԴունիզ և անդ մեռաւ։[98] Եւ թագաւորեաց որդի նորա Ֆիլիպն։ Եւ վախճանեցաւ թագաւորն Հայոց Հեթում և տիրեաց որդի նորա Լևոնն։

Պնդխտար սուլթանն էառ զԿրատն յՌսպիթլէն, և Ջասպէլ Պլանկն ի Դանըլէն, և Ճպլաքարն ի բրնձէն, և զՄունֆօրդն յԱլամնեացն, և ըեբթ մի ի Հաշիշեանցն։

---

1—8-րդ տողերը E չիք։ 9 E ՋԺԴ փխ. սոյն ամի, Հայոց Հեթումն։ 10—11-րդ տողերը E չիք։ 12 БВГD զզօրս, E զօրօք անօրինաց չիք։ 14 БВГD Հայոց զպարոն չիք։ 14 БВГ և եմուտ յերկիրն Հայոց չիք։ 14 БВГD և գերեաց։ 15 БВГD այրեաց փխ. աւերեաց, БВ զՀայք մինչ Բարձրբերդ, ГD զՀայք մինչ ի Բարձրբերդ և յԱտանայ, զՍիս այրեցին և զաւադ եկեղեցին և բացին թագաւորաց և զիշխանաց (Г իշխանաց) զոսկերսն հանեալ այրեցին հրով և հոսեցին հողմով փխ. մինչև ի Բարձնբեբթն և յԱտանայ։ 13—15 E կալօ զԲ որդին թագաւորին, |Թ|որոս եսպան և զԼեվոն տարօ զերի ի Մսր և մտօ յերկիրն և գերեաց զեր[կիր] մինչև ի Բարձրբերդ փխ. կալաւ...և յԱտանայ։ 16—21-րդ տողերը БВГDE չիք։ 22—35-րդ տողերը БВГD չիք։ 22—24 E Պնդուխտար սուլտանն էառ զԱնդաք և փլուց փխ. Պնդուխտար սուլթանն Մսրայ...զԱնթաք և փլոյց։ 25 E և նստօ փխ. ձեռնադրեցին, E և չիք։ 27-րդ տողը E չիք։ 29 E ի սոյն ամի չիք։ 30-31-րդ տողերը (ՋԺԹ ռէ տէ...Ֆիլիպն) E չիք։ 31 E և (վախճանեցաւ) չիք։ 32 E նստօ յաթոռ փխ. տիրեաց։ 33—35-րդ տողերը E չիք։

Տաճիկ զալէք ԺԴ (14) կոտորեցան ի Կիպրոս կղզին և
բռնուեցան ի տաճկաց ԳՌ (3000) ծառայս։ Սիր Օտաւարտ,[99]
որդի Թագաւորին || Ընկլիզաց եկն յԱքայ։ Ընտրեցին պապ Հոռ- 251ա
մայ Գրիգորիսէն,[100] որ եկեալ էր յաղօթաւորութիւն հետ սիր
Օտօարտին և կայր ի յԱքայ և անտի տարան ի Հռոմ վասն պա-
պութեան։

Եւ ծնաւ Թագաւորն Լևոն զԹորոսն։

ՉԻԱ (1272) հաշիշիքն զարկին սիր Օտուարտին Ե (5) դանակ արքն ի յԱքառյ բերթն. և ի սոյն ամի անցեալ գնաց յաշխարհն իւր։ Եւ ծնաւ որդի Թագաւորն Լևոնի զՌուբէնն։ Մուլօվոնին[101] տէրն սիր Լևոն և Ապըլղարիպն մտեցին և բռնեցին ի Փարվանայն և ի Թաթարն։ Եւ գնաց պարոն Սմբաթ Դունգուստապլն ի Թաթարն յԱրղու[ն],[102] վերայ Լևոն Թագաւորին։ Ի սոյն ամի զարկին հաշիշիքն պարոն Վահրամայ, Լևոն Թագաւորին փէսայն մոտէց Սիրիկի և գնաց ի Փարվանայն և ի Թագաւորն յԱրղուն, ի վերայ պարոնին Թագաւորութեան։

ՉԻԲ (1273) Գրիգոր պապն արար ժողով ընդհանրական ի Լիոն քաղաքի։[103] Վախճանեցաւ Պէմունդ բրինձ, միւս Պէմունդն, իւր որդին, որ և եղև վերջին բրինձ յազգէ նորա։ Ի սոյն ամի ծնաւ դուստրն Լևոն Թագաւորին Հայոց Զապլունն։

ՉԻԳ (1274) Պնդուխտար Մսրայ սուլթանն եմուտ աշխարհս Հայոց և խլեաց զՄսականդարայն և աւերեաց յերկիրն ի Մար[ա]շա[յ] մինչև ի Կօռիկօսն։[104]

Վախճանեցաւ Ջուլիան Սայաայու տէրն։

ՉԻԵ (1276) Թագաւորն Լևոնի ծնաւ Սմպատն և Սպիլն խեղէփք,[105]

ՉԻԶ (1277) Ռէջառլինն Զ (6) խալէ եկին յԱքա և տիրեցին յԱքառւ ընդ Ռէջառլին ղեացն և կոչեցաւ Ռէջառլն Թագաւոր յԵրուսաղէմի։

Եւ ի սուլն (SIC) ամի ծնաւ Թագաւորն Հայոց Լևոնի Կոստանդինն։

ՉԻԷ (1278) Թագաւորն Լևոնի ծնաւ Ռիթան և Ութիֆանօն[106] խեղէփք։

ՉԻԸ (1279) Թագաւորն Լևոն ծնաւ զՆերսէսն։

ՉԼԱ (1282) Մանկօ Տամօր, եղբայր Ապաղա խանին պատերազմեցաւ մուղխալ զօրօքն ընդ Ալֆի Մսրայ սուլթանին, ի դուռն Համսայ, և կատարեցան յանօրինաց բազումք։[10]

---

1—20-րդ տողերը БВГD չիք։ 1—6-րդ տողերը E չիք։ 7 E ծնօ իր որդի մի Թորոսն։ 8—20-րդ տողերը E չիք։ 21 БВГDE Մսրայ սուլթանն չիք, БВГD յերկիրն փխ. աշխարհս։ 21—23 E յերկիրն զօրօք և օերեաց զերկիրն և զՄսայղանդարայն կտրեաց փխ. աշխարհս Հայոց և խլեաց զՄսականդարայն և աւերեաց յերկիրն ի Մար[ա]շա[յ] մինչև ի Կօռիկօսն։ 22 БВГD և խլեաց զՄսականդարայն չիք։ 22—23 БВГD յերկիրն ի Մար[ա]շա[յ] մինչև ի Կօռիկօսն չիք։ 24-րդ տողը E չիք։ 25—33-րդ տողերը БВГD չիք։ 25 E Թագօր Հայոց փխ. Թագաւորն Լևոնի։ 26 E ի մի փոր փխ. խեղէփք։ 27——29-րդ տողերը E չիք։ 30 E ՉԻԶ փխ. և ի սուլն ամի, E Հայոց Լևոնի չիք։ 32 E Թեֆանօն փխ. Ութիֆանօն։ 33 E խեղէփք չիք։ 36 БВГD ի չիք։ 37 БВГD դուռն Համսայ չիք, E կոտորեցան փխ. կատարեցան, Ա յունաց փխ. յանօրինաց, E յանօրինաց բազումք չիք։

Եւ ապա մուղալն ի փախտուստ դարձաւ, վասն որոյ ի զօրացն Հայոց կորեան աւելի քան ղԲՌ (2000) ք[րիստոնեայք]։

ՉԼԲ (1283), Թուրքմանք տիրեցին Մանօն, յետ Ե (5) ամի պաշարման նորա։[108]

Եւ վախճանեցաւ ‖ Ապաղա խանն և իւր եղբայրն Մանկօ Տամօրն[109] և Ահմատն խան նստաւ։ 251բ

Ի սոյն ամի ծնաւ Թագաւորն Լևոնի Օշէնն և Ալինախն խեղեփք։

ՉԼԴ (1284) եղև Թափուռն[110] Անամօուին[111] ի Թուրքացն։ Վախճանեցիաւ (SIC) Թագաւորն Կիպրոսի Ույկն տ Լաղօնեայ և Թաղաւսր[ե]աց որդի նորին Ճուանն։

ՉԼԴ (1285) փոխեցաւ ի Քրիստոս ամենագովելին հոգով և գեղեցկական տեսօք առաքինի մայր իմ, Կեռան Թագուհին Հայոց, յողոստոսի ԻԹ (29)։[112]

ՉԼԴ (1285) սպանաւ Ահմատ խանն և Արղուն, որդի Ապաղին, նստաւ խան։[113]

Վախճանեցաւ Թագաւորն Կիպրոսի Ճուանն և Թագաւորեաց եղբայր նորին Հեռին։ Ալֆի սուլթանն Մսրա էառ զՄարգապն յՈսպիթլէն։

ՉԼԵ (1286) վախճանեցաւ Փիլիպ ռէ տը Ֆրանցն և Թագաւորեաց որդի նորա Փիլիպպն։[114] Վախճանեցաւ Թագաւորն Արակունաց Փեռն և Թագաւորեաց որդին իւր Ալֆունն։ Հեռի Թագաւորն Կիպրոսի գնաց յԱքա և բռնութեամբ էառ ըղնա և պարոնութիւն նորա, Ցառէջաուլին գործաւորեացն և անդի գնաց ի Սուր և անդ Թագաւորեաց Թագաւոր Երուսաղէմի։

ՉԼԶ (1287) Ալֆի սուլթանն Մսրայ էառ զՀաաիկն[115] ի բր[ն]ձէն։ Եւ ի սոյն ամի կարգեցաւ պարոն Թորոսի քոյրն ընդ Թագաւորն Կիպրոսի։

Սիկիլոյ ղալէքն խանկարեցին ծովօվ զՌէջաուլին որդին և իւր իշխանսն։

ՉԼԷ (1288) փոխեցաւ ի Քրիստոս բարեպաշտ Թագաւորն Լևոն փետրվարի Զ (6) և նստաւ յաԹոռ պարոն անդր[ան]իկ որդին Հեթում։

---

1—6-րդ տողերը E չիք։ 1 БВГ ե ի փախուստն մողալին փխ․ և ապա մուղալն ի փախուստ դարձաւ։ 1—2 БВГ վասն որոյ ի զօրացն Հայոց չիք։ 2 БВГ աւելի քան չիք։ 1—2 D ե ի փախուստն մուղալին կորեան երկու հազար քրիստոնեայք փխ․ և ապա մուղալն․․․ վԲՌ ք[րիստոնեայք]։ 3—4-րդ տողերը БВГD չիք․ 5 БВГD մեռաւ փխ․ վախճանեցաւ, БВГD իւր եղբայրն չիք։ 6 E և չիք։ 7—14-րդ տողերը БВГD չիք։ 7 E և ի յայս տարիս փխ․ ի սոյն ամի, E Թագաւորն Լևոնի չիք։ 7—8 E խեղեփք չիք։ 9—11-րդ տողերը E չիք։ 12—13 E ամենագովելին հոգով և գեղեցկական տեսօք առաքինի մայր իմ չիք։ 13—14 E Հայոց յոգոստոսի ԻԹ չիք։ 15 E ՉԼԴ չիք։ 16 БВD եղև փխ․ նստաւ։ 15—16 Г եղբայրն իւր Քեղաթուն փխ․ որդի Ապաղին։ 17—33-րդ տողերը БВГD չիք։ 17—25-րդ տողերը E չիք։ 26 E Մսրայ չիք։ 26 –27 E ի բր[ն]ձէն չիք։ 27 E յայս տարիս փխ․ սոյն ամի։ 27—28 E Թորոս և էառ զքոյր Թագօոր Կիպռօսայ փխ․ Թորոսի քոյրն ընդ Թագաւորն Կիպրոսի։ 29—30-րդ տողերը E չիք։ 31 E մեռօ փխ․ փոխեցաւ ի Քրիստոս, E բարեպաշտ չիք։ 32 E ի փետրվար։ 32—33 E Հեթում Թագ[ու]որն մինայկեցն փխ․ պարոն անդր[ան]իկ որդին Հեթում։

*ՉԼԸ (1289) մեռաւ Արղուն խանն և նստաւ եղբայր իւր Քեղարթունն։*[116]

*Ի սոյն ամի ծնաւ պարոն Թորոսի որդին Լևոնն։*

*Ալֆի սուլթանն էառ ի քրիստոնէից զՏրապլուսն։*[117]

*ՉԼԹ (1290) մեռաւ Ալֆի սուլթան Մսրայ. եկաց սուլթան որդին իւր Աշրաֆն։*[118]

*ՉԽ (1291) Աշրաֆ սուլթանն Մսրայ էառ զԱքայ ի քրիստոնէից*[119] *և թողին քրիստոնեաքն առանց պատերազմի զՍուր, զՍայտէ, բղԳէ|| րութ և զԱարտուզ և զՋաստել Ըլբինն։* 252ա

*Եւ այսմ ամի ջնջեցաւ տէրութիւն քրիստոնէիցն ի Սեհլէն։*

*ՉԽԱ (1292) Աշրաֆ սուլթանն Մսրայ էառ զհայրապետանիստ տեղեակն* (SIC) *զՀոռոմկլայն*[120] *և գ[ե]րեաց զկաթուղիկոս տէր Ստեփաննոսն։ Վասն սիրոյ եա թագաւորն Հայոց Հեթմ զանմատչելի դղեակն զԳեհեսնի։*

*Ցայսմ ամի մոլորութիւ եղև զատկի, զի մոլորեցան ասորիք և ասորիքն նեստորքն և մասն ինչ ի Հայոց։*

*ՉԽԲ (1293) Աշրաֆ սուլթան սպանաւ յիւր ծառայիցն և եղև սուլթան Կիթպուղայն։*[121] *Հեթմ թագաւորն Հայոց եա զթագաւորութիւնն*[122] *յեղբայրն իւր Թորոս և ինքն կրօնաւոր[ե]աց ի Քրիստոս։*

*Ծնուիզացն զալէք ԺԲ (12) կռուեցան ի յԱյաս ընդ ԼԲ (32) զալէք և ընդ զարիթ Վնխեացոցն և չահեցան ի նոցանէ ԻԴ (24) ընդ զարիթ և ընդ խալէ։*

*Դաւ եղև Հեթմոյ թագաւորն իւր իշխանացն,որք էին գըլխաւորք պարոնայք Հեթմ Կուռիկոսոյ աէրն և եղբայր իւր Օշինկանչոյն աէրն և բազումք յիշխանացն Հայոց։*[123] *Եւ ի սոյն ամի ամուսնացուցանելն Հեթմ թագաւորն զքոյրն իւր, հետ եղբօր թագաւորին Կիպրոսի ընդ սիր Ամառի, նա միջնորդութեամբ հայ*[124] *և ֆիրէնկ եկեղեցեաւն և Սիրոյ տիրոջն իւր փեսային և սիր Օտկրասօնին և այլ հայ և ֆիրանկ իշխանացն։*

---

*1* E *իր ազբայրն։ 3--րդ տողը* ББD *չիք։ 1—3-րդ տողերը* Г *չիք։ 3* E *ի յայս տարիս փխ. ի սոյն ամի,* E *ծնաւ չիք։ 4* E *և Ալֆի,* E *ի քրիստոնէից չիք։ 5* E *Մսրայ չիք,* БВГD *և եկաց.* E *և նստօ փխ. եկաց։ 6* БВГD *նորա փխ. իւր։ 7* E *Մսրայ չիք։ 7—9* E *ի քրիստոնէից և թողին քրիստոնեաքն առանց պատերազմի զՍուր, զՍայտէ, բղԳէրութ և զԱտրտուզ և զՋաստել Ըլբինն չիք։ 10* БВГDE *յայսմ,* БВГD *քրիստոնէութիւնն փխ. տէրութիւն քրիստոնէիցն,* E *ֆռանկին փխ. քրիստոնէիցն։ 11* БВГD *սուլթանն Մսրայ չիք,* E *Մսրայ չիք։ 12* БВГD *դղեակն Հայոց փխ. տեղեակն զՀոռոմկլայն։ 11—12* E *զհայրապետանիստ տեղեակն չիք։ 12—13* БВГD *զտէր Ստեփաննոս կաթողիկոսն։ 13—14-րդ տողերի արանքում* БВГD *և եառն ի սուլտանն տուրտութեամբ (*D *տրտմութեամբ) զՄաղն, զԱպլճէս։ 13* БВГD *և վասն։ 13—14* E *և տուին զԳեհեսնի և զԱպռճէս փխ. վասն սիրոյ ...դղեակն զԳեհեսնի։ 15—16* БВГD *եւ մոլորեցան զզատիկն հայք և ասորիքն նստորք փխ. մոլորութիւ եղև զատկի... մասն ինչ ի Հայոց,* E *զի մոլորեցան ասորիք և ասորիքն նեստորքն և մասն ինչ ի Հայոց չիք։ 17* BBDE *նստաւ (*Г *նաքաւ) փխ. եղև։ 18* E *Հայոց չիք։ 18—19* БВГD*ն պարոնութիւնն փխ. զթագաւորութիւնն։ 19* БВГD *ի պարոն Թորոսն փխ. յեղբայրն իւր Թորոս,* E *ի Թորոսն։ 19—20* БВГ *եմուտ ի կարգ և կրօնաւորեցաւ (*D *եմուտ ի կարգ և կրօնաւորեցաւ եՄակար կոչեցաւ) փխ. կրօնաւոր[ե]աց ի Քրիստոս։ 21 30-րդ տողերը* E *չիք։ 21* БВD *ի չիք։ 22* БВГD *ծէնվէզքն փխ. ի նոցանէ։ 23* БВГD *ընդ զարիթ և ընդ չիք։ 24—30-րդ տողերը* БВГD *չիք։*

*Դարձեալ էառ Հեթում զիւր թագն և թագաւորութիւնն Հայոց։*

*Եւ եղաւ կաթուղիկոս Հայոց տէր [Գ]րիգորն։*

*ՉԽԳ (1294) սպանաւ Քեռաթուն խանն և նստաւ Գայատունն։ Եւ ի սոյն ամին սպանաւ Գայատունն և նստաւ խան Խազանն որդի Արղունին։*[125]

*Ի նոյն ամի գնաց թագաւորն Հեթում առ Գայատունն և գտաւ խան զԽազանն և Գայտունն սպանեալ։*

*Ի նոյն ամի մեռաւ մարաճախն Հայոց պարոն Օշինն, որդին Կոստանդինեայ տէրն Լամբրօնի։ Եւ ի սոյն [ամի] կարգեաց կբոյրն իւր ըզՌիթայն և եղև ընպրուրէս ամենայն Կոստանդնուպօլիսի։ Ի սոյն ամի փախեաւ պարոն Հեթում Կուռիկոսոյ տէրն և իւր եղբայր պարոն Օշինն։*

*ՉԽԵ (1296) ‖ Հեթում թագաւորն ետ զթագաւորութիւն իւր,* 252բ *յեղբօրն իւրոյ պարոն Թորոսին։ Ի նոյն ամի գաւ եղև իշխանացն Հայոց, որք էին գլխաւորք պարոն Օշինն սինջալն, որդի պարոն Սմպաթայ Գունտօստապլին և պարոն Օշինն Բակուրեանց, որ էր առպասալար դարպասին և այլ բազում իշխանք և ձիաւոր։ Հեթում թագաւորն Հայոց և իւր եղբայրն պարոն Թորոսն ետուն զպարոնութիւն ի պարոն Սմպաթն և ինքեանք գնացին ի Կոստանդնուպօլիս։*

*Եւ ի սոյն ամի մարտեաւ պաշտօն ընդդէմ Խազանին։*

*Խութուղշաւ պարոնն եկն ի վերայ իւրն, նա կռուեցաւ ընդ իր առաջնաւորն, որ կոչի Արապ։ Խանկերէց զինքն Սուլամիշն և փախոյց յԱշրաֆի որդին ի յանլի ջրոյ կզղի մի։*[126]

*Կռուեցան Ջնուէզքն ընդ Վնիսանքն և սպանին զպայլն, ԾԶ (56) հոգիք ի յայլոցն, ի քաղաքն Կոստանդնուպօլիս և առին առ և աւար բազումս։*[127]

*Եւ ի սոյն ամի սպանաւ սուլթան Քիթպուղայն և նստաւ սուլթան Հիւսամատինն Ալչին։*[128]

*[Ե]ւ ի սոյն ամի եղև պատերազմ մեծ ընդ Ֆռանկաց թագաւորին հեծեալքն և ընդ Ընկլիզաց թագաւորին հեծեալքն։*

---

*1 տողը* E *չիք,* БВГD *դարձեալ չիք,* БВГD *թագն և չիք։ 2* БГD *և չիք,* БВГDE *Գրիգոր Տուրքերիցանց (*E *Տուրքիրիցանց)։ 3* БВГDE *Գայտուն խան։ 4* E *յայս տարիս փխ. սոյն ամին։ 6—7-րդ տողերը* БВГD *չիք։ 7* E *և Գայտուն սպանեալ չիք։ 8—17-րդ տողերը* ББГDE *չիք։ 18—19* БВГD *աւին (*Г *տվին) զթագաւորութիւնն փխ. ետուն զպարոնութիւն։ 18–20* E *եդին թագօրը զՍմբատ և Բ եղբայրն Հեթում ու Թորոս գնացին ի Կոստընդինուպալիս փխ. Հեթում թագաւորն Հայոց... գնացին ի Կոստանդնուպօլիս։ 19* БВГD *պարոն չիք։ 21* E *յայս տարիս փխ սոյն ամի։ 21* E *մառեցաւ փխ. մարտեաւ,* E *Գալթաւն ընդդէմ խանին փխ. պաշտօն ընդդէմ Խազանին։ 22—27-րդ տողերը* E *չիք։ 25 27* БВГD *ի Կոստանդնուպօլիս և սպանին զպայլն և ԾԶ ոգի և առին աւար բազում փխ. և սպանին զպայլն... և աւար բազումս։ 28* БВГD *և (ի սոյն) չիք։ 29* БВГD *սուլտանն Մսրայ։ 28–29* E *ՉԽԶ նստաւ սուլտան Հուսամատին Լաչինն փխ. և ի սոյն ամի... սուլթան Հիւսամատինն Ալչին։ 30–31-րդ տողերը* БВГDE *չիք։*

## Ե ՏԱՐԲԵՐԱԿԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*ՉԾԶ (1307) սպանօ ավագ պարոնն Հայոց Հեթում յանօրէն* 221r
*Պիլարղուէն յամսեանն նոյեմբերի ԺԷ (17) աւրն և. Լևոն եղբօր որդին իւր.*[129]

*ՉԿԹ (1320) փոխեցաւ ի Քրիստոս Աւշին թագաւորն Հայոց*[130] *և ի սոյն ամի նստօ որդի նորա Լևոն։*

*ՉՀԶ (1327) փոխեցօ յառաուած տէր Կոստընդի[ն] Լամբրունցին կաթողիկոսն*[131] *և ի սու[յ]ն ամի նստօ յաթոռ տէր Յակոբ կաթողիկոս։*

*ՉՁԶ (1337) առ անօրէն ազգն իսմայելի զԱյաս և զԿոպառայ և զՀամուսն և զ[մ]ինչ Ջահան կարէ.*[132]

*ՉՁԵ (1336) աւերեցին զՆղիրն.*[133]

*ՉՀԸ (1329) Լևոն թագ[աւ]որն, որդի Աւշնի թագօրի, էսպան զպարոն Աւշին Կ[ո]ռիկաւսոյ տէրն ու զիր եղբայրն,*[134] *որ էր իր հայրզիր, և ետ զԲ (2) ոսին գլուխն տանել ի Մսր առ Մելէք Նասրն։*

*ՉՀԷ (1328) փախօ Չոպանին որդին Տամուրտաշն և գնաց ի Մսր.*[135]

*ՉՂ (1341) մեռօ Մելէք Նասրն. Եւ ի յայս տարիս ձգեցին յաթոռոյն զտէր Յակոբ,*[136] *և նստաւ յաթոռ տէր Մխիթար կաթողիկոս։ Եւ ի յայս տարիս մեռօ Լևոն թագօրն, Աւշին թաղօւրին որդին, Սսոյ տէրն։*[137]

*ՉՂԳ (1344) եղա[ւ] ժաժ խիստ սաստիկ և փլուց զՊրինկէս բերդին,*[138] *ու Մնպէճ*[139] *ի վ[ա]յր գնաց ի գետինն, ու ԵՌ (5000) մարդ ի վար գնաց։*

*ՉՂԳ (1345) մեռօ Հեթումն ի Յուրէլն.*[140]

*ՉՂԳ (1344) մեռօ Պաքսաւմն։*

*ՉՂԱ (1342) մեռաւ Վասլիկն, Հուտորին եղբայրն, ու այն տարոյն երեկ մորեխն։*

*ՉՂԳ (1344) սղան[ի]ն զՀեռնակն ու զիր ընկերն ի Յուրէլն։*[141]

## Б ՏԱՐԲԵՐԱԿԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*ԶԾԶ (1307) նուէմբեր ԺԷ (17) սպանաւ աւագ պարոն Հայոց* 146բ
*և որդին պարոն Թորոսիս* (sic) *եղբօրն աւագ պարոնիս, Լևոն թագաւորն Հայոց և այլ իշխանք դաւօվ ի գիշերի ի ստորոտն Անարզաբու դղեկին։*[142]

*ՌՅԺԷ (1317) Օշին հօրեղբայր Լևոնի ամս ԺԳ (13)։*[143]

*ՌԶԼԸ (1338) Լևոն որդի Օշնի ամս ԻԱ (21)*[144]

*ՌԶԼԹ (1339) պարոն Ջոհանէս, հօրքւեր որդի Լևոնիս, պայլ կացեալ ամ մի։*[145]

*ՌՁԽԱ (1341) Գիտ եղբայր Ջոհաննիսի ամս Բ (2)։*[146] *Զսայ ընդ եղբօրն իւր հայերն սպանին։*

*ՌՁԾԱ (1351) Կոստանդին ազգական Լևոնի ամս։*[147]

---

*1* Г *ԷԺԾԶ փխ. ԶԾԶ,* ID *յամսեանն նոյեմբերի, աւագ պարոն հայոց հեթում։ 2* ID *Թորոսին,* D *աւագ։ 2—3* Г *աւագ պարոն թագաւորն հայոց փխ. աւագ պարոնիս Լևոն թագաւորն հայոց։ 2* D *և Լեոն։ 3* B *խանք փխ. իշխանք,* BГD *դաւով։ 5—11-րդ տողերը* D *չիք։ 5* Г *թվին փրկչին ՌԳԺԺԷ փխ. ՌԶԺԷ։ 6* Г *ՌԳԺԼԸ փր. ՌԶԼԸ։ 7* Г *ՌԳԺԼԹ փխ. ՌԶԼԹ։ 7—8* Г *Ժոհաննէս ամս Բ փխ. պարոն Ջոհանէս հօրքւեր որդի Լևոնիս պայլ կացեալ ամ մի,* B *հօրքւէր։ 9* Г *ՌՁԽԱ Գիտ եղբայր Ջոհաննիսի ամս Բ չիք,* B *Ջոհանիս,* Г *զսա։ 10* B *եղրօր։ 11-րդ տողի փոխարեն Г-ն ունի՝ ՌԳԺԾԱ Կոստանդին, ազգական Լեվոնի թագաւորին, որդի Ապաղտիք մարախճատի, և ի վերջին Լևոնն ԺԱ ամիս թագաւորեալ. և եկեալ սուլտանն Մսրայ և գերեաց զթագաւորն։ Մարուն թագուհին տարեալ յՑղիպտոս. և խնդրեալ թագուհին ի սուլտանէն, գնաց յԵրուսաղէմ և մեռաւ անդ, ԷԺԾԴ. զուան սուրբ Ցակոբայ թաղեցաւ և բարձաւ թագաւորութիւնն ի տանէն Կիլիկեցոց ԸԺԻԳ։*[148]

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Գադիկ Բ-ի սպանության սույն վկայությունը ստույգ չէ։ Այս դեպքին ժամանակով ամենից մոտ կանգնած Մ. Ուռհայեցին Գադիկ Բ-ի սպանությունը դնում է Հայոց ՇԻԸ (= 1079) թվականի ներքո («Ժամանակագրութիւն», Վաղարշապատ, 1898, էջ 218—220)։ Հմմտ. Սմբատ Գունդստաբլ («Տարեգիրք», Փարիզ, 1859, էջ 86—87), իսկ Սամ. Անեցու ժամանակագրությունը՝ 1078 թվի ներքո (էջ 116), սակայն հեղինակը միաժամանակ ավելացնում է «եւ այլք ասեն թէ ի ՇՀԵ (—1126)», որը բացահայտ սխալ է։ Ալիշանի հաշվումներով Գագիկ Բ-ի սպանությունը տեղի է ունեցել 1080 թվի մայիսի 5-ին («Սիսուան», էջ 550)։

2. Սույն վկայությունն A բնագրում գտնում ենք աղճատված ձևով՝ «ՇԽԹ (= 1100) Սոլէմոն», որի ճիշտ ձևը պահպանվել է տարեգրության E բնագրում 1080 թվի ներքո։ Վկայությունը ամենայն հավանականությամբ վերաբերվում է Իկոնիայի սուլթան Սուլեյման I-ին, որն ըստ Լեն-Պուլի հաշվումների իշխել է 1077—1086 թվերին, մինչդեռ Բոտրոուլգը սկզբնաղբյուրների վկայությունների հակասական լինելու պատճառով կասկածանքով է վերաբերվում Լեն-Պուլի վերոհիշյալ հաշվումներին („Мусульманские династии", 1898, стр. 128 прим. 1).

3. Բնագրի քասաՀ բառը նշանակում է «անցում», առաջ է եկել լատիներեն passagium (հմմտ. ֆր. passage) բառից։ Միջնադարում դեպի «սուրբ երկիր» (Պաղեստին) խաչակիրների կատարած արշավանքները կոչել են քասաճ։ Խաչակիրների առաջին արշավանքը կազմակերպվեց Ուրբանոս II պապի նախաձեռնությամբ և 1095 թվի Կլերմոնի եկեղեցական ժողովի հավանությամբ, այն սկսվեց 1096 թվին։

4. Բնագրի «Փեռէր միտռ» անունը (հմմտ. հրատարակության «Փեր լըլմիթ») կարծում ենք խաչակրաց առաջին արշավանքի, գյուղացիական չքավորական շերտերի առաջնորդ Պետր Ամյենցու անվան աղճատված ձևն է, որին Մարքսը բնորոշել է «տխմար, ինչպես էշ»։ („Архив Маркса и Энгельса" т. V, стр. 122)։ Բնագրի այն վկայությունը, թե Պետր Ամյենցին գրավել է Երուսաղեմը՝ ճիշտ չէ, որովհետև վերջինս հասավ Կոստանդնուպոլիս միայն։ Անոնիմի համաձայն գյուղացի չքավորների արշավախումբը հասավ Նիկոմեդիա, որտեղ էկսերոգորգո բերդի մոտ թուրքերից պարտություն կրելով նահանջեց Կոստանդնուպոլիս։ („Хрестоматия по истории средних веков" т. I, Москва, 1939, стр. 244—245):

5. Նիկիայի գրավման մասին բավական մանրամասն վկայություններ ունի Մ. Ուռհայեցին («Ժամանակագրութիւն», էջ 255—257)։

6. Ուռհայի և Անտիոքի գրավման մանրամասնությունները տես Մ. Ուռհայեցու մոտ (նույն տեղ, էջ 261—266)։

7. Ինչպես հայտնի է խաչակիրները Երուսաղեմը գրավել են 1099 թվի հուլիսի 15-ին, ուրբաթ օրը։ Բնագրի «Դօնտոֆրէ» անունը խաչակիրների առաջին արշավանքի ֆեոդալների առաջնորդ Գոտֆրիդ Բուլոնացու անվան աղճատված ձևն է։ Երուսաղեմի պաշարման և գրավման մանրամասնությունները տես Մ. Ուռհայեցու մոտ (նույն տեղ, էջ 267—268)։

8. Դյուլորիեն կարծում է, որ «Սզայրն» բառը Կեսարիա անվան աղճատված ձևն է, և Հեթում Պատմիչին վերագրված ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության բնագրում այն ուղղել է Կեսարիա։ Պաղեստինի Կեսարիան գտնվում է ծովափին, Յաֆֆայի և Հայֆայի միջև։

9. Համաձայն Սմբատի («Տարեգիրք», էջ 88), Մ. Ուռհայեցու (էջ 269) և Սամ. Անեցու ժամանակագրության լրացնողի՝ Կոստանդինը մահացել է Հայոց ՇԽԹ (=1100) թվին։ Ալիշանը սույն դեպքը դնում է 1099 թվի մայիսի 27-ին («Սիսուան», էջ 551)։

10. Արաբական հեղինակներից Իբն Ալաթիրը, Աբուլֆեդան և Նովեյրին Տրապոլսի գրավումը դնում են 1110 թվի հուլիսի 1-ին, Իբն-Ջուզին 1109 թվի հուլիսի 12-ին, իսկ Գուլիելմ Տյուրա-

դին՝ 1109 թ. հունիսի 1-ին (տես (տես „Recueil des Historiens Croisades documents Arméniens" tome Ier, p. 90. note 1)։ Համաձայն Մ. Ուռհայեցու Տրապոլսի գրավումը նախորդել է 11-ամյա պաշարում (էջ 311), հավանաբար 11-ամսյա։

11. Համաձայն Իբն Ալաթիրի և Իբն Ջուզիի Բեյրութը գրավել են 1109 թվի հուլիսի 30-ին, իսկ Սիդոնը (Սայդա), որը գտնվում է ծովափին, Բեյրութից հարավ, 1110 թվի հուլիսի 19-ին (տես՝ նույն տեղ, p. 90, note 2)։ Համտ. Մ. Ուռհայեցու վկայության հետ (էջ 312—313)։

12. Քարաք ամրոցը գտնվում է Մեռյալ ծովի շրջակայքում, դեպի արևելք, Մոնռեգալից դեպի հյուսիս, երեք օրյա հետիոտն ճանապարհի վրա։

13. Շապաքը դա Շաուբեք ամուր ամրոցն է, Ամ-մամի և Այլայի միջև, Քարաքի շրջակայքում։

14. Բնագրում գրված է «հրկրորդ», բայց նկատի ունենալով, որ 1110 թվի տակ գրված է «և երկրորդ թագաւորեաց Պաղտինն Տպուրքն» մի կողմից, և 1143 թվի տակ. «Յուքն վախճանեցաւ և չորրորդ թագաւորեաց որդի նորա Պաղտինն» մյուս կողմից, բնագրի «երկրորդ» բառը ուղղեցինք «երրորդ»։

15. Բյուզանդական կայսր Հովհան Կոմնեն Ծիրանածին (1118—1143 թ. թ.), Կիլիկիա արշավել է 1137 թվին։ Սամ. Անեցու ժամանակագրությունը Լևոնի գերեվարումը նշում է 1132 թվին (էջ 130), իսկ Վ. Արևելցին՝ 1111 թվի (էջ 163) ներքո։

16. Բնագրում գրված է «երրորդ», այնուհետև դրչի կողմից այն ուղղված է «երկրորդ»։ Տարեգրության Ավգերյանի հրատարակության բնագիրը (էջ 78) ունի «երկրորդ»։

17. Խոսքը վերաբերում է խաչակիրների երկրորդ արշավանքին, որը պատասխան էր Մոսուլի էմիրի կողմից 1144 թվի խաչակիրների Եդեսիայի իշխանության գրավմանը։ Խաչակիրների երկրորդ արշավանքը սկսվեց 1147 թվին, որը ղեկավարում էին գերմանական կայսր Կոնրադ III-ը (1137—1152 թ. թ.) և ֆրանսիական թագավոր Լյուդովիկոս VII-ը (1137—1180 թ. թ.)։ Բնագրի «Քուռաթ» և «Լաւիղ ռէ տն ֆրանցին» վերոհիշյալ երկու անունների աղճատված ձևն է։ Բնագրի «բրուրն», «ըմպրուրն» բառերը լատինական «իմպերատոր» բառի աղճատված ձևն է։ Համտ. Սմբատ՝ «օնբրուն» բառի հետ (էջ 109)։

18. Դամասկոսն այն ժամանակ պատկանում էր Եգիպտոսի արաբական խալիֆատին, այն պաշտպանվում էր վեզիր Մուին ադ-դին Անարի կողմից։ Խաչակիրները տասնօրյա անհաջող պաշարումից հետո թողել են Դամասկոսը։

19. Հեթում Պատմիչի կողմից թարգմանված խրոնիկոնի մեջ Ասկալոնի գրավումը նշված է 1154 թվին (Ձեռ. № 1898, էջ 151ա)։ Տարեգրության սույն վկայությունն իրականությունից երեք տարով ետ է նշված։ Վ. Արևելցին այս դեպքը նշում է 1155 թվի ներքո (էջ 165)։ Ասկալոնը նավահանգիստ է Միջերկրական ծովի արևելյան ափին Յոֆֆայի և Գազզայի միջև։

20. Ս. Անեցու ժամանակագրությունը (էջ 135), Միխ. Ասորին (էջ 454) հաստատում են Հեթում Բ-ի սույն վկայությունը, իսկ Սմբատը Թորոս Բ-ի հաջորդ Մլեհի մահը նշելով 1175 թվին, այնուհետև գրում է. «յետ եօթն ամի տէրութեան պարոն Մլեհին» սպանին, ուրեմն Թորոս Բ-ը մահացել է 1169 թ. (1175—7)։ Ալիշանը սույն դեպքը նշում է 1169 թվի մայիսի 11-ի ներքո («Սիսուան», էջ 56, 232, 551)։

21. Սամ. Անեցու ժամանակագրությունը (էջ 138), Միխ. Ասորին (էջ 476) հաստատում են Հեթում Բ-ի սույն վկայությունը, սակայն Սմբատը Մլեհի սպանությունը նշում է 1175 թվի ներքո (էջ 102)։

22. Տարեգրության հրատարակության բնագրում պահվել է սույն անվան աղճատված ձևը՝ «Սանկարիա»։ Դյուլորիեն ճիշտ է ենթադրում, երբ գրում է. «Սանկարիա» ձևը աղավաղված է, սակայն նա սխալվում է, երբ այն «առանց տատանվելու» ուղղում է Կահիրե ("Recueil des Historiens des Croisades..." tome Ier, p 475, note 5)։ Մեր կարծիքով «Սկանտարիա» բառի տակ պետք է հասկանալ Եգիպտոսի Ալեքսանդրիան (Իսկանդարիա), որովհետև Երուսաղեմի Ամորի թագավորը երեք արշավանք կատարեց դեպի Եգիպտոս 1164, 1167, 1169 թվերին, գրավելով Ալեքսանդրիան, Բելբեսը և Բելուսը։

23. Բնագրում «հասումնոյն օգնականութիւն» ձևով, որն անշուշտ աղճատված է, այն ուղղեցինք Տարեգրության E բնագրի համապատասխան։ Սույն դեպքերը համաձայն Գուլիելմ Տյուրացու տեղի են ունեցել 1169 թվի հոկտ.-դեկտ. ամիսներին, իսկ Իբն Ալաթիրի և Աբուլֆեդայի՝ 1170 թվին։ Բնագրի «Տատիաթն» աղճատված ձևն է Դեմիետե (Տամիաթ) քաղաքի անվան, որը գտնվում է Նեղոսի դելտայում, ծովափին, Ալեքսանդրիայից արևելք։ (Համտ. акад. Успенский, „История Византийской империи" т. III, 1948, стр. 290—291)։

24. Ամսաթվի սույն վկայությունը ստույգ չէ։ Այդ մասին ստույգ տեղեկություն պահպանվել է ժամանակագրության E բնագրում՝ 1173 թ. օգոստոսի 16-ին, հինգշաբթի։ Ալիշանը Ներսես Շնորհալու մահը դնում է 1173 թվի օգոստոսի 8-ին («Սիսուան», էջ 551), իսկ Դյուլորիեն՝ 1172 թվի օգոստոսի 13-ին (նույն տեղ, էջ 224, 476, note 3)։ Սխալ է և առաջինը և երկրորդը, որովհետև 1173 թ. օգոստոսի 8-ը լինում է ոչ թե հինգշաբթի, այլ չորեքշաբթի, իսկ 1172 թ. օգոստոսի 13-ը՝ երկուշաբթի։ Միխ. Ասորին Ներսես Շնորհալու մահը նշում է նույնպես հինգշաբթի (էջ 471), չնայած տարեթիվը իր սովորության համաձայն նշում է 10 տարով շուտ։

25. Բնագրի վկայության տարեթիվը ստույգ չէ, ինչպես հայտնի է Մասուդի որդի, Իզզ-ադ-դինը Ղլիճ Արսլան 11-ի այս հաղթությունը տեղի է ունեցել 1176 թ. սեպտեմբերին (համեմ. տարեգրության Ավգերյանի հրատարակության բնագրի հետ, էջ 79), այսպես կոչված Մյուրիոկեֆալոնում, այժմ ավերակ բերդ Իկոնիայի հյուսիս-արևմտյան կողմում, որտեղ բյուզանդական զորքերը Մանվել Կոմնենոս կայսեր հրամանատարությամբ գլխովին ջախջախվեցին։

26. Բնագրում «Երուսամլմի» ձևով։

27. Համե. Սամ. Անեցի էջ 142, Սմբատ էջ 104։ Բնագրի «Լևոն եղբայրն ի[ւր]» և «բաղտին փոքրն և եկաց ընդ» հատվածները գրված են լուսանցքում։

28. XII դարի երկրորդ կեսին Եգիպտոսի, մասամբ Սիրիայի և Մեսապոտամիայի մուսուլմանական առանձին էմիրությունները միավորվեցին մեկ պետության մեջ, որի գլուխ կանգնեց Սալահդինը (Նասիր Սալահ-ադ-դին Յուսուֆ), իշխելով 1169—1193 թվերը։ 1187 թվի հուլիսի 5-ին Խիտտինում, Տիվերիադա քաղաքի մոտ Սալահդինը ջախջախեց խաչակիրների բանակը, գրավելով ծովեզրյա մի շարք քաղաքներ՝ Ակկան, Ասկալոնը, իսկ հոկտեմբերի 3-ին նաև Երուսաղեմը (տես՝ акад. Успенский „История Визант. империи" т. III, стр. 331—332, Мюллер „История ислама" т. III, стр. 172)։

Այս դեպքերին ականատես Ներսես Լամբրոնացին Երնջակի ս. Կարապետի վանքի աստվածաշնչի հիշատակարանում գրում է հետևյալը.

... «Քանզի ակներև աչաց մերոց, սուրբ և աստուածակոխ քաղաքն Երուսաղէմ, յափըշտակեցան ի սպասաւորութենէ քրիստոնէից որով Իսմայելացւոցն ՈԼԶ թուին Հայոց ի վերայ որոց բազմատեանց հեղմունք եղաւ լատինացւոց բազմացեղ ազգաց, որք դաս դաս առագաստեալ նաւաւք և քաջապինդ հաւատով և սրտաչան արութեամբ հասին ի Պաղեստին և անդ դիականացեալք շուրջ քաղաքաւն ըստ երգոյն և ոչ ոք էր, որ թաղէր։ Եւ մեք մնացաք նախատինս դրացեաց մերոց, մինչև ի լրումն թուիս Հայոց ՈԽԷ (1198), որում ամի վերապատուեցաւ թագաւորն Հայոց Լևոն, որ յՌոբինեանց բարեպաշտ և յաղթող սրով, որոյ հռչակ արութեան չարժեաց զմեծ ինքնակալսն Հին Հռովմայ զՀեռի և Նոր Հռովմայ զԱլէքս, որք պսակեցին զսա քարամբք պատուականաւ, յեկեղեցի Տարսոնի, որ իմ անարժանութեամբ հովուի»... («Նոր-Դար», 1891 թ., № 65)։ Սալահդինի այս հաղթանակը առիթ ավեց խաչակրաց երրորդ արշավանքին։

29. Բնագրում «Տլապօլսոյ» ձևով։ Երկուսն էլ նավահանգիստ Միջերկրականի արևելյան ափին։ Առաջին նավահանգիստը կոչվում է նաև Ծուր կամ Տյուրոս։ Սալահդինն անսպասելի անհաջողության հասավ Տյուրոսի պատերի տակ, որի պաշտպանությունը ղեկավարում էր Կոնրադ Մոնֆերացին։

30. Ֆրանսիական թագավոր Ֆիլիպպ II Ավգուստ, Կապետինգների դինաստիայից, թագավորել է 1180—1223 թ. թ.։

31. Անգլիական թագավոր Ռիչարդ I Առյուծասիրտ, Պլանտագենետների (կամ Անժույան) դինաստիայից, թագավորել է 1189—1199 թ. թ.։

32. Խոսքը վերաբերում է Տևտոնյան կամ Գերմանական օրդենի հիմնադրմանը, որը կազմակերպեցին Ակկայի պաշարման ժամանակ Բրեմենի և Լյուբեկի վաճառականները, Շվաբիայի հերցոգ Ֆրիդրիխի հովանավորության ներքո, և որը հետագայում ստացավ ռազմական բնույթ։

33. Հեղինակը նկատի ունի Ֆիլիպպ II Ավգուստին և Ռիչարդ I Առյուծասրտին, որոնք Ակկան գրավել են, ըստ Հեթում Բ-ի մեկ տարի պաշարելուց հետո, իրականում պաշարումը տևել է 2 տարի (տես՝ акад. Успенский „История Виз. империи" т. III, стр.335: Мюллер „История ислама" т. III, стр. 172) և այն գրավել են 1191 թ. հուլիսի 12-ին, Успенский. նույն տեղ, էջ 343, Мюллер, նույն տեղ, էջ 173)։

34. Ռուս հռչակավոր բյուզանդագետ ակադ. Ուսպենսկին Կիպրոսի գրավումը նշում է

1191 թ. ներքո, Ռիչարդ Առյուծասրտի կողմից, որը կղզին զիջում է Երուսաղեմի թագավոր Գվիդոն Լուզինյանին։ Հեթում Բ-ն այստեղ երկու ջեղում է տալիս, նախ՝ Ռիչարդ Առյուծասիրտը Կիպրոսը գրավել է 1190 թ., երկրորդ՝ Գվիդոն Լուզինյանը Ռիչարդից կղզին գնում է։ Կիպրոսի գրավման մանրամասնությունները տես ակադ. Ուսպենսկու մոտ («История Виз. империи» т. III, ст. 334—335)։

35. Քաղաքներ Միջերկրական ծովի արևելյան ափին։ Դյուլորիեն Ճոֆր (Ճաֆ) քաղաքը նույնացնում է Յաֆֆայի հետ։ Բնագրի «Կաֆաս» քաղաքը կարծում ենք Հայֆան է, Ակկայի և Կեսարիայի միջև։ Բնագրում «զՌզայրն» փոխանակ «զԱզայրն»։

36. Բնագրում «զՏեմունդս» ձևով։

37. Ինչպես հայտնի է Սալահդինը մահացել է 1193 թ. մարտի 4-ին։ Սամ. Անեցին սույն դեպքը նշում է 1194 թ. ներքո (էջ 143), իսկ Միխ. Ասորին՝ 1182 թ. ներքո (էջ 500)։ Բնագրում հիշված «Ցետըլ»-ը Սալահդինի եղբայրը, Ադիլ-Սեյֆ-ադ-դին Աբու-Բեկրն է, որն իշխել է 1200—1218 թ. թ.։

38. Բնագրում «յունօրինաց» ձևով։ Համաձայն Իբն-Ալաթիրի Բեյրութի գրավումը տեղի է ունեցել 1197 թ. սեպտեմբերին։

39. Այս մասին տես վերևում, էջ 53, ծանոթ. 15։

40. Բնագրում «զնոր մարդոյ» ձևով, այն ուղղեցինք ըստ տարբեգրության Ավգերյանի հրատարակության։ Խոսքը վերաբերում է Ֆիլիպպ II Ավգուստի և անգլիական թագավոր Հովհան Անհողի, Անգլիայի՝ ֆրանսիական տիրապետությունների համար մղվող կռիվներին։ Ֆիլիպպ II-ը Նորմանդիան գրավեց 1202—1204 թ. թ. շրջանում։

41. Սույն անուններին հանդիպում ենք Լևոն Ա թագավորի թագադրության հանդեսներին ներկա գտնվող իշխանների ցուցակում, որը մեջ է բերում Սմբատը։ Հեռի (իմա. Հենրի) Սեաստոսը վերոհիշյալ իշխանների հայրն էր և Նոր-բերդի տերը։ Կոստանց Խումարտիաշը (Կամարախաս) Սելևկիայի տերն էր։ Ճոսլինը Սինիտի տերը։ Իսկ Պաղտինի մասին Հեթումը որոշակի չի գրում, սակայն կարծում ենք, որ նա նկատի ունեցել է Անդուշծի և Կուպայի տիրոջը Ջարմանալին այն է, որ Հեթում Բ-ն վերոհիշյալ իշխանների բանտարկության պատճառների մասին ոչինչ չի հաղորդում։ Օրմանյանը նկատի ունենալով, որ Հեթում Բ-ն վերոհիշյալ իշխանների բանտարկությունը և Հովհաննես Զ. Սսեցի կաթողիկոսի գահընկեցությունն իրար կապակցելով և տալիս մի կողմից և Հեռի Սևաստիոսը, Հով. Սսեցու քրոջ ամուսինն էր մյուս կողմից, ենթադրում է, որ այդ բանտարկությունը տեղի է ունեցել քաղաքական անհավատարմության հետևանքով, մանավանդ, որ այդ շրջանում Լևոն Ա թագավորի և Հով. Սսեցի կաթողիկոսի հարաբերությունները լարված էին։ («Ազգապատում», էջ 1568։ Հմմտ. Ալիշան «Սիսուան», էջ 506)։ Դյուլորիեն Խումարտիաշին սխալմամբ համարում է «Թուրքմեն շեֆ» (Նույն տեղ, էջ 481, note 1)։

42. Բնագրում «ընկեձին» ձևով։ Հովհաննես Զ. Սսեցու գահընկեցության և Դավիթ Արքաղնեցու կաթողիկոս դառնալու հարցը բավական մանրամասն քննում է Օրմանյանը («Ազգապատում», էջ 1568—1570), որի համոզմամբ Դավիթ Արքաղնեցին ոչ թե կաթողիկոս է եղել, այլ աթոռակից (Նույն տեղ, էջ 1569)։

43. Ղիաս-ադ-դին-Քեյ Խոսրով I սուլթանը Իզզ-ադ-դին Ղլիճ-Արսլան II-ի որդին էր, որը իշխել է 1202 թ. մինչև 1210 կամ 1212 թ. թ. համաձայն Դյուլորիեի և կամ 1192 թ. մինչև 1200 թ. և 1204 թ. մինչև 1210 թ. (երկրորդ անգամ) ըստ Ս. Լեն-Պուլի։

44. Բերդուս բերդը գտնվում է Խուրմա գետի ձախ ափին, նախքան Կեոք-սու գետին խառնըվելը, Ընկուզեկ լեռից հարավ և Մարաշից հյուսիս։ Բերդուսը ժամանակին պատկանել է Գող Վասիլ իշխանին։ Բերդուսի իշխան Լևոնը և նրա որդի Գրիգորը նույնպես հիշված են Սմբատ Գունդստաբլի ցուցակում («Տարեգիրք», էջ 111)։

45. Երբ 1204 թ. ապրիլի 12-ին խաչակիրները գրավեցին Կոստանդնապոլը (տես էջ 53, ծանոթ. 15), մի շարք իշխանական տներ ձգտեցին կազմակերպել անկախ իշխանություններ։ Հունական իշխաններից մեկը՝ Թեոդոր Լասկարիսը, որը մոտ էր կանգնած կայսերական արքունիքին (ամուսնացած էր Ալեքսեյ III կայսեր քրոջ հետ), Կոստանդնապոլսի 1204 թ. գրավումից հետո, փախավ արևելք և Նիկիայում հիմք դրեց Նիկեայական կայսրությանը (այս մասին մանրամասնությունները տես Акад. Успенский „Истoрия Виз. империи" т. III, отд. VIII) իշխելով 1204 թ. մինչև 1222 թ.։ Բնագրի այն վկայությունը, թե «պատերազմեցաւ լաչքարին ընդ սուլթանն յԻկոնիոյ ի Խոնաս» վերաբերում է Թեոդոր Լասկարիսի և Իկոնիայի սուլթան Ղիաս-ադ-դին Քեյ Խոսրով I-ի պատերազմին, որը տեղի ունեցավ 1209 թ.։ Համաձայն Հեթում

Բ-ի ճակատամարտը տեղի է ունեցել Խոնասում, վերջինս Փոքր Ասիական քաղաք է, գտնվում է Փռուգիայում, Գայլ գետից ոչ հեռու, հնում կոչվել է Կոլոսսա։

46. Կարծում ենք խոսքը վերաբերում է Ղիաս-ադ-դին Քեյ-Խոսրով I-ին, որին հաջորդել է Իզզ-ադ-դին Քեյ-Քավուզ I-ը 1210—1219 թ. թ.։

47. Սմբատի մոտ «Սպիլ»-ի փոխարեն «Զապլլ» սա ոչ թե Կիպրոսի թագավոր Ամորիի քույրն էր, ինչպես հաղորդում են մեր աղբյուրները, այլ դուստր։ Զաբելը, կամ ինչպես ասում են նաև Իզաբելա, Լևոն Ա-ի երկրորդ կինն էր։

48. Խոսքը վերաբերում է իսպանական Ռեկոնկիստայի շրջանում 1212 թ. Լաս Նավաս դե Տոլոսա քաղաքի մոտ տեղի ունեցած նշանավոր ճակատամարտին, որտեղ իսպանական արաբները գլխովին ջախջախվեցին Կաստիլիայի, Արագոնիայի, Նավարայի և Պորտուգալիայի միացյալ ուժերի կողմից։

49. Խոսքը վերաբերում է ֆրանսիական թագավոր Ֆիլիպպ Ավգուստ II-ի և անգլիական թագավոր Հովհան Անհողի կռիվներին, որոնք մղվում էին Անգլիայի ֆրանսիական տիրապետությունների համար։ 1214 թ. հուլիսի 2-ին Ֆիլիպպ Ավգուստի որդին, Լուդովիկոսը (ապագա Լուդովիկոս VIII) Լարոշ-օ-Մուանի մոտ ջարդեց Հով. Անհողի զորքերին, իսկ հուլիսի 27-ին, Բուվինի մոտ, տեղի ունեցած վճռական ճակատամարտում, ինքը՝ Ֆիլիպպ II-ը գլխովին ջախջախեց Անհողի և Օտտոն IV-ի միացյալ ուժերը։

50. Լատերանի տիեզերական 12-րդ ժողովին, որը գումարվեց 1215 թ. նոյեմբերի 11-ին, մասնակցում էին 412 եպիսկոպոսներ, 71 արքեպիսկոպոսներ և 800 վանահայրեր ու վարդապետներ։ Իննովկենտիոս պապը ժողովին մասնակցելու հրավիրագիր ուղարկել էր նաև Հովհաննես Սսեցի կաթողիկոսին, սակայն հայերի մասնակցության մասին տեղեկություն չունենք։ Լատերանի ժողովը նախապատրաստելու էր խաչակրաց հերթական արշավանքը։

51. Լևոն Ա. թագավորն Անտիոքը գրավել է 1216 թ. փետրվարի 14-ին Տեառնընդառաջի տոնին («Միսուան», էջ 502)։ Սամ. Անեցու մոտ հիշված է Հայոց ՈԿԷ (=1218), (էջ 147)։ Համտ. Ներսես Պալենցու վկայության հետ («Միսուան», էջ 502, ծանոթ. 2), Սմբատ «Տարեգիրք», էջ 117։

52. Սույն վկայությունը վերաբերում է Իկոնիայի սուլթան Իզզ-ադ-դին Քայ-Քավուզ I-ի դեպի Կիլիկիա կատարած արշավանքին։ Այդ մասին առավել մանրամասն գրում է Սմբատը («Տարեգիրք», էջ 117), Սամ. Անեցու շարունակողը (էջ 146—147), և Միխ. Ասորին («Ժամանակագրութիւն», էջ 511—512), վերջին երկուսը Կապանի համար մղված կռիվները դնում են 1215 թ. ներքո։ Ալիշանը այդ կռիվները մի տեղ նշում է 1217 թ. վերջերին («Միսուան», էջ 518), մի այլ տեղ՝ 1217 թ. մարտին (էջ 553)։ Իսկ Օրմանյանը 1218 թ. («Ազգապատում», էջ 1592), Կապան բերդը գտնվում է Ջահան գետի ակունքներին մոտ, Կիլիկյան Տավրոսի մեջ։

53. Բնագրում «թագագաւորն» ձևով։

54. Բնագրի «շինեցաւ Ջաստել Բլրին բերթանքն փլեցոյց» հատվածը աղճատված է, և նրա ճիշտ ձևը պահպանված է տարեգրության հրատարակության բնագրում՝ «շինեցաւ Ջաստել Բլրինն բերդ Դամըլցեց» (էջ 82—84)։ Այս բերդը լատինացիք կոչել են Castellum peregrinorum, որը գտնվում է ծովափին, Կարմեղ լեռան հարավ-արևմտյան մասում։ Մարտինոս Լեհացին Ջաստել Բլրի կասուցման և տեղադրության մասին հաղորդում է հետևյալը. «ընդ այսմ ժամանակի (1208—1212 թ. թ.— Վ. Հ.) թագաւորն Ունկարոյ և տուկն Օստրիոյ բաղում զորօք գնացեալք խաչայօղեստ եղեալք ի յաշխարհն սուրբ։ Եւ գնացեալ մինչ ի Յակուրն կոչեալ տեղի և ի լեառն Թափօր և անդ ի տեղի պատշաճաւոր շինեցին դղեակ և կոչեցին յիւրեանց անունն Ջաստէլ Բէլէկրին. և եդուն զայն, ՚զկնի դարձին իւրեանց, եղբարցն Դըմբլունա («Ձեռ. № 2037, էջ 122բ)։

55. 1218 թ. հերցոգ Լեոպոլդ Ավստրիացին խաչակիրների զորքով հարձակվեց Եգիպտոսի վրա և հաջողությամբ պաշարեց Դեմիետը, որը խաչակիրները գրավեցին 1219 թ., բայց երկու տարի հետո՝ 1221 թ. մամլյուկները կարողանում են նորից ետ գրավել։

56. Բնագրում «ապայնոց» ձևով։

57. Կաստիլիայի թագավոր Ալֆոնս IX, որը կոչվում էր Բարի (Bon) նա վախճանվել է ոչ թե 1218 թ., այլ 1214 թ.։ Բնագրի «Ալֆուն ըլպօնն», առաջ է եկել Alphonse le Bon-ից։

58. Տես վերևում ծանոթ. 55։

59. Հեթում Բ-ն ճիշտ չէ, Ֆիլիպպ Ավգուստ II-ը մահացել է 1222 թ.։ Հաջորդը՝ որդին Լուդովիկոս VIII-ը թագավորել է 1223 թ. մինչև 1226 թ.։

60. Համտ. Միխ. Ասորի «Ժամանակագրութիւն», էջ 515—516։

61. Մեր համար անհասկանալի պատճառով Լևոն Ա. թագավորի մահը կրկնված է, ընդ որում վերջին վկայությունը ճիշտ չէ։

62. Տես վերևում ծանոթ. 55։

63. Բնագրի «զԱֆնէ» կարծում ենք աղճատված է և պիտի լինի Պաֆոս, վերջինս քաղաք է Կիպրոս կղզու արևմտյան ափին։

64. Բնագրի «Մունիօրտին» աղավաղված ձևն է «Մոնտֆորտի»։ Վերջինս բերդ է և գտնվում է Հայֆայից և Կարմեղ լեռից հյուսիս-արևելք։ Դյուլորիեի կարծիքով խոսքը վերաբերում է բերդի վերականգնմանը։

65. Հեթում Բ-ի խոսքը հավանաբար վերաբերում է Դամասկոսի էյուբյան իշխող Մուաղզամ Շերեֆ-ադ-դին Իսայի (1218—1227 թ. թ.) մահվանից հետո տեղի ունեցած կռիվներին, որի ժամանակ վերջինիս որդի Նասիր Սալահ ադ-դին Դավուդի վրա հարձակվեցին նրա հարեան իշխանները և խլեցին Դամասկոսը 1229 թ. (հմմտ. Мюллер „Истор. Исл." т. III, стр. 177). Բնագրի «Քուրետին» բառը թերևս Նուր-ադ-դին անվան աղճատումն է։

66. Հեթում Բ-ն ակնարկում է Ֆրիդրիխ II կայսրի և եգիպտական սուլթան Մելիք-էլ-Քամելի (1218—1238 թ. թ.) միջև կնքված դաշինքը, ըստ որի կայսրին հանձնվեց Երուսաղեմը, Բեթղեհեմը մինչև Յաֆֆա։ Համաձայն դաշնագրի խաղաղությունը տևելու էր 10 տարի և վեց ամիս։ (Տես նաև Միխ. Ասորի «Ժամանակագրութիւն», էջ 524)։

67. Հեղինակը նկատի ունի հավանաբար Նասիր Դաուդ Քարաքցու հարձակումը Երուսաղեմի և շրջակայքի վրա, որը տեղի ունեցավ 1239 թ., Ֆրիդրիխ II կայսրի և Մելիք-էլ-Քամելի միջև կնքված դաշինքից տասը տարի հետո։

68. Կարծում ենք խոսքը վերաբերում է Նասիր Դաուդ Քարաքցու, Սալիխ Իզմայիլ Դամասկոսցու և խաչակիրների դաշինքին, որն ուղղված էր Եգիպտոսի մամլյուկների դեմ։ Երիքովը քաղաք է Հորդանան գետի աջ ափից մոտավորապես 10 կմ. արևմուտք, գետաբերանից բավական հեռու։

69. Խոսքը վերաբերում է ոչ թե Բաչուի արշավանքին դեպի Փ. Ասիա, այլ դաշնակիցների (տես ծանոթ. 68) և եգիպտական սուլթան Սալիխ Նեջմ ադ-դին Էյուբի կռիվներին։ Երկու բանակների միջև վճռական ճակատամարտը տեղի ունեցավ 1244 թ. Գազզա քաղաքի մոտ, որտեղ դաշնակիցները ջախջախվեցին և եգիպտացիները գրավեցին Երուսաղեմը, 1245 թ. Դամասկոսը, 1246 թ. Բաալբեկկը, 1247 թ. Ասկալոնը և Տիվերիադան։

70. Հմմտ. Սմբատ, էջ 123—124։ Պռականա և Քարամուտ բերդեր են Սելևկիայի շրջանում։

71. Հեղինակը նկատի ունի Իկոնիայի սուլթան Ղիաս-ադ-դին Քեյ-Խոսրով II-ին, որն իշխել է 1236—1245 թ. թ. ըստ Լեն-Պուլի։

72. Նավահանգիստ Միջերկրականի արևելյան ափին, Ալեքսանդրետայից հարավ։ Թուրքերն այն կոչել են Արսուս-Պուճաղի։ Հնում կոչել են Հռոսոս։

73. Իննոկենտիոս IV պապի (1243—1254 թ. թ.) անվան աղավաղումն է (հմմտ. ... -Успенский „История Виз. империи" т. III, ст. 4?3):

74. Հմմտ. Սմբատ, էջ 124։ Հեթում Բ-ի վկայությունը երկու տարով ետ է իրականից։

75. Խոսքը վերաբերում է եգիպտական սուլթան Սալիխ Նեջմ-ադ-դին Էյուբի (1240—1249 թ. թ.) գրավումներին (տես ծանոթ. 69)։ Բնագրում նշված երկու քաղաքները գտնվում են Միջերկրականի արևելյան ափին։ «զՊապարին» կարծում ենք Տիվերիադա քաղաքն է, որը Ասկալոնի հետ միասին Սալիխ Նեջմ-ադ-դին Էյուբը գրավել է 1247 թ.։ Սակայն ոմանք Պապարին նույնացնում են Աֆրիկայի հետ (հմմտ. Ձեռ. № 7141, էջ 274բ)։

76. Խոսքը վերաբերում է ֆրանսիական թագավոր Լուդովիկոս IX-ին, որն իշխել է 1226—1270 թ. թ.։ Այս և հետագա մի քանի վկայությունների մեջ հեղինակն ակնարկում է խաչակիրների VII արշավանքը։ Կիպրոսը խաչակիրները գրավել են 1248 թ. սեպտեմբերին։

77. Լուդովիկոս IX-ը Դեմիետը (Տամիաթ) գրավել է խաչակիրների VII արշավանքի ժամանակ 1249 թ. հունիսի 6-ին։

78. Լուդովիկոս IX-ը 1249 թ. հունիսի 6-ին Դեմիետը գրավելուց հետո շարժվեց առաջ և 1250 թ. մոտեցավ Մանսուր քաղաքին։ Մինչ այդ խաչակիրների ուժերը թուլացել էին, այդ պատճառով Լուդովիկոս IX-ը ստիպված նահանջեց դեպի Դեմիետ։ Ճանապարհին եգիպտացիք նրան գերեցին, սակայն Դեմիետ քաղաքը ետ վերադարձրեց, որպես փրկավճար և ազատվեց գերությունից։ Հեթում Բ-ի վկայությունը, թե փրկավճար հանձնվել է 100 000 արծաթե մարկ, կարծում ենք ճիշտ է, որովհետև եգիպտացիք միայն Դեմիետի ետ ստացումով չէին

ռավարարվի, քանի որ Լուդովիկոս IX-ի գերելուց հետո, այդ կարող էին հեշտությամբ ետ վերցնել, ըստ երևույթին Լուդովիկոս IX-ը գերությունից ազատվելու համար վճարել է 100 000 մարկ, ինչպես և Դեմիետտը։

79. Խոսքը Սիգոն նավահանգստի մասին է, որը գտնվում է Միջերկրականի արևելյան ափին, Տյուրոսից հյուսիս։

80ֈ Վ. Արևելցին Հեթումի տեսակցությունը Մանկու ղանի հետ դնում է 1252 թ. ներքո (էջ 195), իսկ Կ. Գանձակեցին 1255 թ. (էջ 350—357)։

81. Ուղիղ ձևն է Մուսանդին, բերդ է, գտնվում է Փ. Ասիայում՝ Հերակլեա կամ Պոակլի քաղաքի մոտերքում։

82. Սմբատը Հեթում Ա-ի անդրանիկ որդի Լևոնի ասպետ կարգելը նշում է 1259 թ. Մունգաս բերդի գրավման տարում (էջ 124)։

83. Եթե խոսքը վերաբերում է աղանդավորների կենտրոն Ալամութին, ապա այն Հուլավուն գրավել է 1256 թ. դեկտեմբերի 15-ին (Рашид-ад дин „Сборник летс писей, т. III, Москва-Ленинград, 1946, стр 31)։ Տես վերևում էջ 59, ծանոթ. 62։

84. Հմմտ. Սմբատ, էջ 124։ Մունդաս կամ Մինդոս բերդը գտնվում է Լամբրոնի հյուսիսարևմտյան ուղղությամբ, Տավրոսի մեջ, Խոճա գետի ձախ ափին գտնվող Ղարա-Յուսուֆ գյուղից հարավ («Սիսուան», էջ 177)։ Մունդաս բերդի համար կռիվներ մղել է Իկոնիայի սուլթան Ռուկն ադ-դին Ղլիճ-Արսլան IV-ը, որը իշխել է 1257-1267 թ. թ.։ Մունգաս բերդի համար 1259 թ. մղած կռիվների մասին բավական մանրամասն վկայություն մեջ է բերում Ալիշանը «Սիսուան»-ում (էջ 177—178), ըստ որի այդ կռիվները և ապա Մունդաս բերդի գրավումը տեղի է ունեցել 1259 թ. հուլիս ամսին։

85. Խոսքը վերաբերում է Թարորական լեռան ստորոտում տեղի ունեցած հայտնի ճակատամարտին։ Այս մասին ավելի մանրամասն պատմում են Վ. Արևելցին, էջ 199—200, Կ. Գանձակեցին, էջ 371—373, Մաղաքիա աբեղան, էջ 35—36 և ուրիշները։ Միխ. Այրիվանեցին (էջ 68) այդ ճակատամարտը սխալմամբ նշում է 1261 թ. ներքո։ Եգիպտական զորքին առաջնորդում էր սուլթանն անձամբ՝ Մուզաֆֆար Սեյֆ-ադ-դին Կուտուզը (1259—1260 թ. թ.)։

85ա. Նախագաղափար օրինակում հավանաբար եղել է «Դանըլուն»։

86. Խոսքը վերաբերում է Միխայել Պալեոլոգին (իշխել է 1261—1283 թ. թ.), որը դաշինք կնքեց ճենովացիների հետ Կոստանդինոպոլը լատին կայսրներից ետ նվաճելու համար։ 1261 թ. հուլիսի 25-ի գիշերը, Միխայիլ Պալեոգի բանակն, Ալեքսեյ Ստրատիգոպուլի ղեկավարությամբ, մոտենում է Կոստանդնապոլսի պարիսպներին, նրանք անաղմուկ մտնում են քաղաք և գրավում այն, համարյա առանց դիմադրության։ Բյուզանդական լատին կայսր Բալդուին II-ն իր կլանքը փրկեց Էվբեյա փախչելով։ Այս հաղթանակից հետո, Միխայիլ Պալեոգը 1261 թ. օգոստոսի 15-ին, հանդիսավոր կերպով մտավ Կոստանդնուպոլիս և թագադրվեց Սոֆիայի տաճարում։

87. Ըստ Ալիշանի Կոստանդին պայլը մահացել է 1263 թ. փետրվարի 24-ին («Սիսուան», էջ 554)։ Հմմտ. Սամ. Անեցի, էջ 151։ Մաղաքիա աբեղան կարծում է, թե Կոստանդին պայլը մահացել է Հուլաուի և նրա կնոջ մահվան տարում (էջ 37), իսկ վերջիններս, ինչպես հայտնի է, մահացել են 1265 թ.։

88. «Ջխարամաննս» անունը Կարամանիա (նաև Լարանտա) տեղանվան հնչյունափոխված ձևն է։ Ալն գտնվում է Իկոնիայից հարավ-արևելք և Իսավրիայից արևելք։ Կարամանիա (ըստ մեր աղբյուրների խարաման) կոչվել են նաև այդ վայրի իշխողների տոհմը։ Մանիոն բերդ է և գտնվում է Կարամանիայի արևելյան մասում։ Մանիոնի գրավման մասին Ալիշանն ընդարձակ մեջբերում է կատարել արքունի պատմիչից («Սիսուան», էջ 293—294)։ Ալիշանը Մանիոն բերդի պաշարման սկիզբը համարում է 1259 թիվը, իսկ գրավումը՝ 1262 թ. (Նույն տեղ, էջ 294)։

89. Հեթում Ա-ի որդի Լևոնը (ապագա Լևոն Բ) ամուսնացել է Կոստանդին Լամբրոնացու որդի՝ Հեթումի դստեր՝ Աննայի հետ։ Հեթում Բ-ի վկայությամբ հենց այդ ժամանակ էլ Լամբրոնը միացվել է արքունիքին։

90. Բնագրի «խալէ»-ն միջնադարում գործածվող իտալերեն և ֆրանսերեն galere բառի հնչյունափոխված ձևն է, որը նշանակում է ռազմանավ։

91. Բնագրի «Թարիթն» բառը հավանաբար հունարեն τριήρης (լատ. triremis) «երեք կարգի թիակներով ռազմանավ»-ի հայկական ոչ-ճիշտ արտասանությունն է։

92. Բիր=Բիրջիք, քաղաք=հին Ապամեյան, գտնվում է հյուսիսային Միջագետքում, Ուրֆայի և Մերդինի միջև։

93. Կոստանդին պայլի որդիներից մեկը, որն իր եղբայր Հեթում Ա-ի գահ բարձրանալուց հետո ստանձնեց պայլության պաշտոնը և Կոռիկոսը։ Սմբատի հաղորդմամբ Օշինը մահացել է 1263 թ. (էջ 124), որն անշուշտ սխալ է։ Ալիշանն Օշինի մահը մի դեպքում նշում է 1265 թ. («Սիսուան», էջ 193), մի այլ դեպքում՝ 1264 թ. դեկտեմբերի 26 (նույն տեղ, էջ 555)։ Սույն վկայության մեջ Հեթում Բ-ն հաղորդում է մահվան օրն՝ ուրբաթ, և իսկապես 1265 թ. դեկտեմբերի 25-ն ուրբաթ է։

94. Մառիի ճակատամարտում եգիպտական զորքին առաջնորդում էր էմիր Իզզ-ադ-դին Իղան, որի մականունն էր Սեմմ-էլ-մոտ (արաբ. նշանակում է «մահացու թույն») կամ Սեմմ-Ել-արար (արար. «արաբների թույն»)։ Հեթում Բ-ն գործածում է «Սմընլմօթ» կամ «Սմլմօթ», իսկ Վ. Արևելցին «մսլմօթ» (էջ 214)։ Վ. Արևելցու պատմության տարբերակներից մեկը պահել է «Սմլմօթ» ձևը, (էջ 214, ծանոթ. 2)։

95. Խոսքը վերաբերում է Մառիի նշանավոր ճակատամարտին, որտեղ սպանվեց Հեթում Ա-ի որդին՝ Թորոսը, իսկ Լևոնը գերվեց։ Հմմտ. Սամ. Անեցի, էջ 151, Մաղաքիա աբեղա, էջ 39—40, Վ. Արևելցի, էջ 213—214, Հեթում Պատմիչ «Պատմութիւն թաթարաց», էջ 52, և ուրիշներ։ Մխ. Այրիվանեցին Մառիի ճակատամարտը նշում է 1261 թ. ներքո (էջ 68)։ Ալիշանի հաշվումներով ճակատամարտը տեղի է ունեցել 1266 թ. օգոստոսի 23-ին երկուշաբթի օրը (Վ. Արևելցին հիշում է «մերձ յաշնան եղանակն», էջ 213)։ Այս մասին, Հեթում Ա թագավորի եղբայր, Հովհաննես եպիսկոպոսն ահա թե ինչ է գրում իր մի հիշատակարանում. «բայց գրեցաւ սա (ժողովածու— Վ. Հ.) ձեռամբ Ստեփաննոս գրչի մերձ ի բերդն Բարձր կոչեցեալ ի դառն և յանբարի և յոյժ վշտալի ժամանակի, զի վասն բազում մեղաց մերոց արբոյց աստուած մեզ զթարկութեան բաժակն, զի բռնօրն Եգիպտոսի Պլտուխտարն, վերջինս Նաբուգոդոնոսոր, ի թվին Հայոց ՉԺԵ (—1266) բազում զաւրօք քրիստոսատեաց տաճկաւքն զաշխարհս Կիլիկո սրով և հրով սպառեաց. զորդիս եղբօրն իմո, զբարեպաշտ թագաւոր Հեթմոյ զանդրանիկն Լևոն, որ էր պարոն Հայոց, գերի ունի ամ մի է, և կրտսերն Թորոս, զլցեալն ամենայն բարէձևութեամբ, Լսպան յոլով հոմազնեա նիզակակցօք ի Մառի, որոց տէր ողորմեսցի։ Եւ զարքայանիստն Սիս մեծօն Սոփէօ և զամենայն սահմանս նորա մինչև յԱտանու հրձիգ արար, անթիւ էսպան, բազումս գերեաց»... (Ձեռ. № 4243, էջ 222բ)։

Մառին բերդ է, այն գտնվում է Սարվանդաքարից կեսօրյա հետիոտն ճանապարհ դեպի արևելք, Ամանոս կամ Սև լեռան լանջին։

96. Հմմտ. Ստ. Օրբէլեան «Պատմութիւն տանն Սիսական», Թիֆլիս, 1910, էջ 441, Հեթում Պատմիչի հիշատակարանը (Հայկական ՍՍՌ ԳԱ «Տեղեկագիր», 1948 թ., № 10, էջ 72) և «Պատմութիւն թաթարաց», էջ 73, Սմբատ էջ 125, և ուրիշներ։

97. 1269 թ. երկրաշարժը մեծ ավերածություններ պատճառեց Կիլիկիայում։ Այդ մասին Ալշիանը մեջ է բերում մի ժամանակակցի վկայություն («Սիսուան», էջ 8)։ Համուսը բերդ է, գտնվում է Թիլ-Համտունի արևելյան կողմում։

98. Լուդովիկոս IX-ը 1270 թ. մարտին արշավեց Թունիս, այն նվաճելու նկատառումով, սակայն այդ չհաջողվեց, որովհետև զորքի մեջ հիվանդություն ընկավ և շատերը մահացան։ Շուտով ինքն էլ հիվանդացավ և օգոստոսի 25-ին մահացավ։ Լուդովիկոս IX-ին հաջորդեց Ֆիլիպպ III-ը, որն իշխել է 1270—1285 թ. թ.։

99. Սույն անունը կարծում ենք Էդուարդ անվան աղճատված ձևն է, եթե ճիշտ է սա, նշանակում է խոսքը վերաբերում է անգլիական թագավոր Հենրիխ III-ի (1216—1272 թ. թ.) որդի Էդուարդ I-ին, որը թագավորել է 1272-ից մինչև 1307 թ.։ Այս մասին Մարտինոս Լեհացին գրում է. «իսկ Ոտուարդ որդի թագաւորին Անկլիոյ միայն իւրօքն գնայր ի յաշխարհն սուրբ յաջօթաւորութիւն. և հասեալ յԱքայ, եկաց անդ ամս Բ (2) և յերրորդումն զարկին գնայ հաշիշքն Ե (5) դանակ ի բերդն Աքայո, բայց ողջացաւ դարձեալ և յայնմ ամին գնաց յաշխարհն իւր»։ (№ 2037, էջ 123ա)։

100. Հեղինակը նկատի ունի Գրիգորիս X-ին, որը պապական աթոռը զբաղեցրել է 1271—1276 թ. թ. և որը 1274 թ. Լիոնում հրավիրեց եկեղեցական ժողով, խաչակրաց նոր արշավանք կազմակերպելու նպատակով, բայց հաջողություն չունեցավ։

101. Բնագրում գրված է «Սոլօվոնին», նկատի ունենալով, որ այդ գրչագրական սխալ էր, ուղղեցինք այն։ Մոլևոն բերդը (կամ Մլուն դաշտ) գտնվում է Լամբրոնից հյուսիս և Բարձրբերդից հարավ-արևմուտք։ Մոլևոնի իշխան սիր Լևոնը Ապլղարիպի հետ ապստամբեցին Լևոն Բ-ի դեմ, սակայն ձերբակալվեցին և հանձնվեցին թաթարների Փ. Ասիական կառավարիչ Փարվանային։ Ալիշանը սույն վկայությունը մեջ բերելով, այն վերագրում է ոմն ժամանակագրի («Սիսուան», էջ 142, ծանոթ. 1), նշելով 1271 թ. ներքո։

102. Այս մասին Սմբատն իր «Տարեգրքում» ոչինչ չի հիշում։ Մինչդեռ «Միսուանի» ժամանակագրական աղյուսակում Ալիշանը հիշում է այն (էջ 555)։

103. Տես ծանոթ. 100։

104. Տես Սմբատ, էջ 125։ Սամ. Անեցու ժամանակագրության շարունակողը սույն դեպքը նշում է Հայոց 726 (=1277) թվի ներքո (էջ 152)։

105. Խեղեփքը համապատասխանում է հուն. ʽΗμιτομιον բառին և նշանակում է համամաս, կես («Նորբառագիրք հայկազեան լեզուի», հ. Ա, էջ 939)։ Այստեղ պետք է հասկանալ երկվորյակ իմաստով։

106. Բնագրի «Ուլթիֆանօն» բառը կարծում ենք աղճատումն է Ստեփանիա անվան։ (Հմմտ. «Միսուան», էջ 555)։ Ստեփանիան հայտնի է նաև Թեֆանոյ անվամբ (հմմտ. Աճառյան «Հայոց անձնանունների բառարան», հ. Բ, էջ 309, № 9)։

107. Տես վերևում, էջ 61, ծանոթ. 91։ Բնագրում «կատարեցտն յունաց բաղումք» Երկրորդ բառն աղճատված է և ուղղեցինք «կատարեցան յանօրինաց բաղումք»։

108. Բնագրում սույն հատվածի առաջին երկու բառը պահպանված է «Թագաւորքմունքն տարեցին» ձևով, որն անշուշտ աղճատված է։ «Միսուան»-ում պահված մի վկայությամբ, որը մեր կարծիքով վերցրած է առաջարկվող տարեգրության սկզբնական բնագրից, ուղղեցինք այն։ Այդ վկայությունն Ալիշանը վերագրում է մի ումն ժամանակագրի, ուր կարդում ենք «ՁԼԲ (=1283) Թուրքմանք տիրեցին Մանիօնին, յետ եօթն ամի պաշարման նորա» (էջ 547)։ Խոսքը հավանաբար վերաբերում է Իկոնիայի սուլթան Ղիյաս-ադ-դին Մասուդ II-ի նվաճմանը։

109. Ռաշիդ-ադ-դինը բավական մանրամասն է նկարագրում Աբաղայի մահվան հանգամանքները (Նույն տեղ, էջ 97)։ Դյուլորիեի մոտ (էջ 488, ծանոթ. 1) Աբաղայի մահը նշված է 1202 թ. ապրիլի 1, տարեթիվն անշուշտ տպագրական սխալ է։ Մանկու Թեմուրը, համաձայն Ռաշիդ-ադ-դինի մահացել է ապրիլի 26-ին, Դյուլորիեն ավելացնում է, որ Մանկու Թեմուրը թունավորվել է վեզիր Ալա-ադ-դինի դրդումով, Ջեզիրեի հրամանատար Մումին-Աղայի կողմից (էջ 488, ծանոթ. 1)։

110. Բնագրում «փափումն» ձևով։

111. Անեմոռ՝ բերդ, համանուն հրվանդանի վրա։ Հնում կոչվել է Անեմուռ կամ Անեմուրիոն (ʽΑνεμουριον)։ Անեմուռ հրվանդանը Կիլիկիայի ամենահարավային մասն է, այն գտնվում է Քարագրոսից հարավ-արևելք և Քեռթյուճե չայից արևմուտք։ Ալիշանի հաղորդմամբ («Միսուան», էջ 322) Լևոն Ա թագավորի մահից հետո Անեմոռը, Ալայան գրավեց Իկոնիայի սուլթան Ալա-ադ-դին Քայ Քուբատ 1-ը (իշխել է 1219—1236 թ. թ.)։ Հեթում Բ-ն սույն վկայությամբ նկատի ունի Անեմուռի ետ գրավումը Լևոն Բ թագավորի ժամանակ։

112. Սարգիս քահանա Սսեցի պատմիչին վերագրված ժամանկագրության (IV) վկայության համապատասխան Կեռան թագուհին մահացել է օգոստոսի 9-ին։ Բնագրի «յոգոստոսի ԻԹ» հատվածը թերևս կարելի է սրբագրել «յոգոստոսի ի Թ (=9)» ձևով։

113. Ռաշիդ-ադ-գինի համաձայն Ահմատը, նույն ինքը Թեկուդար, Հուլաուի VII որդին, Քուտույ խաթունից, սպանվել է 1284 թ. օգոստոսի 10-ի գիշերը (էջ 111), իսկ Արղունը գահ է բարձրացել հետևյալ օրը՝ օգոստոսի 11-ին (էջ 113)։

114. Ֆրանսիական թագավոր Ֆիլիպպ III Քաջն իրականում մահացել է 1285 թ. և նրան հաջորդել է Ֆիլիպպ IV Գեղեցիկը 1285 թ.։

115. Լաոդիկե, նավահանգիստ Անտիոքի լատինական իշխանության հարավ արևմտյան մասում։

116. Ռաշիդ-ագ-դինի համաձայն Արղուն ղանը մահացել է 1291 թ. մարտի 10-ին (էջ 127)։ իսկ եղբայրը Քեյ-Խատուն հաջորդել է 1291 թ. հուլիսի 23-ից (էջ 130)։

117. Հմմտ. Հեթում Պատմիչի հիշատակարանը (Հայկ. ՍՍՌ ԳԱ «Տեղեկագիր», 1948 թ., № 10, էջ 72, 73), ներքևում՝ IV ժամանակագրություն, իսկ Անանուն ժամանակագրության (Երևան, 1940 թ.) համաձայն Ալֆին Տրապոլիսը գրավել է 1288 թ. ապրիլի 17-ին (էջ 26), այստեղ տարեթիվը սխալ է, իսկ ամսաթիվը թերևս ճիշտ լինի։

118. Աշրաֆ Սալախ-ադ-դին Խալիլ, իշխել է 1290—1293 թ. թ.։

119. Հմմտ. Հեթում Պատմիչի հիշատակարանը (Նույն տեղ, էջ 67, 72), որտեղ նշված է նաև գրավման օրը՝ մայիսի 18։ Սանուտոն հաստատելով Հեթում Բ-ի վկայությունն ավելացնում է՝ ուրբաթ օրը, սակայն Դյուլորիեն վերջինս ուղղելով, առաջարկում է «կարդա երեքշաբթի» („lis. mardi") իրականում 1291 թ. մայիսի 18-ը եղել է ուրբաթ, իսկ երեքշաբթին կընկնի մայիսի 15-ին կամ 22-ին։ Ինչպես դժվար չէ հետևեցնել, Դյուլորիեի ուղղումը ստույգ չէ և

Սանուտոն ճիշտ է։ Իսկ Մաքրիզն Ակկայի գրավումը նշում է 1291 թ. մայիսի 12-ին, ուրբաթ օրվա ներքո։ Իրականում 1291 թ. մայիսի 12-ը եղել է ոչ թե ուրբաթ, այլ շաբաթ, հետևապես եթե Մաքրիզի մոտ հաստատ է «ուրբաթ» հիշատակությունը, նշանակում է ամսաթիվը պետք է ուղղել մայիսի 11 կամ 18։ Անկասկած, ճիշտ է մայիսի 18-ը, որովհետև այն բացի Հեթում Պատմիչից և Սանուտոյից հաստատում է մի ուրիշ, երրորդ հեղինակ՝ Անանուն ժամանակագրության հեղինակը, ըստ որի Աշրաֆն Ակկան գրավել է 1290 թ. մայիսի 18-ին (էջ 26)։ Անանունի մոտ տարեթիվը մի տարով շուտ է նշված (հմմտ. ծանոթ. 117)։

120. Հմմտ. Հեթում Պատմիչի հիշատակարանը (Նույն տեղ, էջ 67—68, 73), որտեղ հեղինակը Հռոմկլայի գրավումը նշում է 1292 թ. հունիսի 28-ին, իսկ Սարգիս քահանա պատմիչ Սսեցուն վերագրած ժամանակագրությունը՝ հուլիսի 28-ին։

Ճիշտը Հեթում Պատմիչն է, որովհետև արաբական հեղինակներից Աբուլ Մեհասի Տաղրիբերդի պատմիչը «Երևելի աստղեր» աշխատության մեջ (Կահիրե, 1939 թ., հատ. VIII, էջ 12) վերոհիշյալ դեպքը նշում է հիջրեի 691 թ. ռաջաբ ամսի 11-ին, շաբաթ օրը։ 691 թ. ռաջաբ ամսի 11-ը համապատասխանում է 1292 թ. հունիսի 28-ին, և իսկապես այդ օրն էլ շաբաթ է։

Սույն տեղեկությունը ընկ. Հ. Նալբանդյանից ստանալու համար հայտնում ենք մեր շնորհակալությունը։

121. Հեթում Բ-ն մի փոքր սխալվում է. Աշրաֆ Սալահ-ադ-դին Խալիլն սպանվելուց հետո, կարճ ժամանակով՝ մոտավորապես մեկ տարի, նրան հաջորդում է Նասիր Նասիր-ադ-դին Մուհամմեդը։ Վերջինս գահազրկվեց 1294 թ. և հաջորդեց Ադիլ Զեյն-ադ-դին Քիթբուղան, որն իշխեց մինչև 1296 թ.։

122. Բնագրում դրված էր «զԹագաւորին» ձևով, առանց պատվի իմաստը մնում էր անհասկանալի, ուստի այն ուղղեցինք։

123. Սույն վկայությանն Ալիշանը կասկածանքով է վերաբերվում («Սիսուան», էջ 194, ծանոթ. 1), և այն վերագրում է XVIII դարի հեղինակ Մաղաքիա դպիր Ճեվեհիրճյան ժամանակագրին։

124. Բնագրում «յահ» ձևով. միտքը մնում է անիմաստ։ Ուղղեցինք «հայ», որովհետև նախադասության շարունակության մեջ հանդիպում ենք նման հատվածի «հայ և ֆիրանկ իշխանացն»։

125. Համաձայն Ռաշիդ-ադ-դինի Քեյ-Խաթուն սպանվել է 1295 թ. մարտի 24-ին (էջ 137։ Դյուլորիեի հաշվումներով՝ 1295 թ. ապրիլի 23-ին („Recueil." t. 1er, p. 490, note I), իսկ հաջորդ Բայդու ղանը՝ 1295 թ. հոկտեմբերի 4-ին (էջ 165), որին հաջորդում է Ղազան ղանը։ Դահակալական սույն կռիվները մանրամասնորեն նկարագրում է Ռաշիդ-ադ-դինը։

126. Այս դեպքերի մասին մանրամասն խոսում է Ռաշիդ-ադ-դինը (էջ 170—177)։

127. Խոսքը վերաբերում է 1296 թ. Կուրցոլեի մոտ տեղի ունեցած ծովային ճակատամարտին։ Հեթում Պատմիչի սույն վկայությունը ստույգ չէ, որովհետև համաձայն Պաքիմերի, շարդն այնքան մեծ էր, որ հարկ եղավ մեծ-մեծ փոսեր փորել դիակները թաղելու համար։

128. Ըստ Լեն-Պուլի Ադիլ Զեյ-ադ-դին Քիթբուղային հաջորդել է Մանսուր Հուսամ ադ-դին Լաչին 1296—1299 թ. թ.։ Համաձայն Աբուլ-ֆեդայի և Աբուլ Մեհասիի, Լաչին սուլթան հռչակվել է 1296 թ. նոյեմբերի 14-ին։

Բնագրի «և նստաւ սուլթան Հիւսամատինն Ալչին» հատվածից հետո տարեգրության մյուս բնագրերը շարունակվում են, այդ պատճառով վերջիններս ներկայացնում ենք առանձին, հաջորդ էջերում։

129. Հմմտ. Սամ. Անեցի, էջ 155—156, Սմբատ, էջ 127։

130. Համաձայն Ալիշանի Օշինը մահացել է 1320 թ. հուլիսի 20-ին («Սիսուան», էջ 558)։

131. Օրմանյանը հենվելով Սմբատի «Տարեգրքի» շարունակողի վկայության վրա (էջ 130) Կոստանդին Դ. Լամբրոնացու մահը դնում է 1326 թ. ներքո։ Իսկ Ալիշանը՝ 1327 թ. ներքո («Սիսուան», էջ 558)։ Հմմտ. Սամ. Անեցի, էջ 158։

132. Սամ. Անեցու «Մսրցին եկն ի Կիլիկիայ և էառ զԱյաս» վկայությունը (էջ 168) կարծում ենք միևնույն դեպքերին է վերաբերում։ Հմմտ. Ներսես Պալենցի անթվական հիշատակությունը («Սիսուան», էջ 392), Սմբատ, էջ 129—130։ Կովառա բերդը գտնվում է Ջահան գետի ափին։

133. Նղիր, բերդ Կիլիկիայում։ 1336 թ. գրավեց Հալեպի ամիրա Ալթուն-Բուղան։ Այս մասին հետաքրքիր տեղեկություն գտնում ենք 1336 թ. Սսում ընդօրինակած ավետարանի հիշատակարանում, որտեղ կարդում ենք. «Յայժմ դառն և չար ժամանակիս (1336 թ.— Վ. Հ.) զոր

անուրէն ազգն իսմայէլեաց տունն փարաւոնի ի մեծ նեղութիւն և ի վտանգի կալան զաշխարհս Կի-լիկեցւոց և արշաւեաց զաւրաւք և էառ զամենազարդ և զաստուածապահ բերդն զՆղիրն, նստելով ի վերայ նորա բազում ժամ և աւերեաց. և ապա ելմուտ յերկիրս և ոչ քաղաք և ոչ բերդ և գեղ լեառնային և դաշտային վանաւրէալք և անապատք զամենայն մի ըստ միջոէ և ոչ մնաց տեղ յերկիրս, որ անաւրէնքն թողին, որ չմտան և յոյժ զարս բազ || ումս սրով սպանին և եկեղեցա-կանս՝ յոլովս էրէց և աբեղայս, վարդապետ և եպիսկոպոս, սարկաւագ և դպիր և անբաւ քրիս-տոնեայս արք և կանայք տղայք և կուսանք տարեալ գերիս, զոր աէր աստուած հատուցէ նոցա ըստ իւրեանց գործոցն զփոխարէնն. և այս քաւական էջ» (Ձեռ. № 5786, էջ 339 ա և բ)։

134. Կոռիկոսի իշխան Օշին Գայլը և եղբայրը՝ Կոստանդին Գունդստաբլը, Հեթում Պատմիչի որդիներն էին։ Լևոն Դ-ն նրանց սպանեց 1329 թ. հունվարի 26-ին։ Մանրամասնությունները տես Սմբատի «Տարեգրքի» շարունակության մեջ (էջ 131)։

135. Ջորանը Ղազան զանի զորավարներից էր։ Աբու-Սեյիդը գահ բարձրացավ մանկահա-սակ, 12 տ. հասակում, որի խնամակալն էր Ջոբանը։ 1327 թ. Աբու-Սեյիդը դառնալով ինքնիշ-խան, սպանում է Ջոբանին երկու որդիների հետ միասին (Համմտ. Justi „Iranisches Namenbuch“ Marburg, 189ᵇ p., 469)։ Ջորանի մյուս որդին՝ Թեմուրտաշը, որը Փ. Ասիայի կառավարիչն էր, լուր ստանալով այս մասին, փախչում է Եգիպտոս, որտեղ սպանվում է Աբու-Սեյիդի պահանջով (տես Мюллер „Исюрия ислама“ т. III, стр. 278)։ Համմտ. Ս. Անեցի, էջ 158, 167, Սմբատ, էջ 130—131։

136. Օրմանյանի կարծիքով Հակոբ Անավարղեցին հրաժարվել է կաթողիկոսական գահից։ Մանրամասնությունները պարզ չեն, միայն ենթադրում են, որ այն կրոնական վեճի արդյունք էր և Հակոբ Անավարղեցին դեմ էր Լևոն Դ-ի լատինամոլ քաղաքականությանը։ («Ազգապա-տում», էջ 1558—1559)։

137. Համաձայն Ալիշանի Լևոն Դ-ն մահացել է (ըստ ոմանց սպանվել է) 1342 թ. օգոստո-սի 28-ին («Սիսուան», էջ 559)։

138. Բնագրի «և փլուց զՊրինկէս բերդին» հատվածը մի փոքր անկանոն է։ Այն կարելի է հասկանալ երկու կերպ՝ կամ «բերդին» բառի «ի»-ն ավելորդ է, այն դեպքում «Պրինկէսն»-ը կլինի բերդի անունը և կամ «պրինկէս» բառով կոչել են բերդի որևէ մասը, որն, այսինքն՝ «բերդի պրինկէսը»-ը երկրաշարժից փլվել է։

139. Բնագրում «ումնպէճ» ձևով։ Բառանջատումը կատարեցինք «ու Մնպէճ»։ Այս ձևը գտնում ենք նաև Մ. Ուռհայեցու մոտ (էջ 62)։ Վերջինս հիշելով բյուզանդական կայսր Ռոմա-նոս Դիոգենի 1069 թ. արշավանքը գրում է. «և իջեալ բանակ հարկանէր ի վերայ անուանի քաղաքին՝ որ կոչի Մնպէճ, մերձ ի Հալպ քաղաք, որ էր հռչակաւոր քաղաք Տաճկաց...» (էջ 191)։ Մխ. Ասորու մոտ այդ նույն քաղաքը կոչվել է նաև Երապոլիս, նա գրում է. «Եւ յետ քակելոյն ի Նեքաւովէ Մնբէճ քաղաքի՝ շինեցաւ վերըստին յԱթուրացւոցն. և եդաւ անդ կուռքն Կայնանայ։ Եւ կոչեցաւ Ցարապօլիս, (Ցերապօլիս) որ թարգմանի քահանայից քաղաք վասն բրմացն կախարդացն, որոց աղանդին աշակերտեցաւ յետոյ Բարդեծան» (էջ 62—63)։ Մնպեջ=Երապոլիսը գտնվում է Հալեպից հյուսիս արևելք։ Ըստ Յակուտի Մանբիջը (Մնպեջ) հարուստ և բարեբեր քաղաք է, շրջապատված քարաշեն պարիսպով, Հալեպից հեռու է 10 փար-սաղ, իսկ Եփրատից՝ 3 («Քիտաբ Մոջամ էլ Բոլդան», Լայպցիգ, 1924, հրատ. F. Wüstenfeld-ի, հատոր IV, էջ 654—655)։ Մնպեջ=Երապոլիս քաղաքն ավելի ուշ կոչվեց Ջմշկածագ, բյուզանդական կայսր Հովհաննես Ջմշկիկի ծննդավայրը լինելու պատճառով։

140. Ինչպես այս, այնպես էլ հաջորդ մի քանի վկայությունների մասին որևէ այլ տեղեկո ւ-թյուն մեզ հայտնի չէ։

141. Սրանից հետո, E բնագրում գտնում ենք բժշկական մի փոքրիկ հատված՝ «Թէ մարդ գո-ղարգել լին[ի]»։ Այս հատվածը գրել է ժողովածուի գրիչ՝ Ստեփանոս քահանան։ Այդ հատվա-ծից հետո, գուցե և գրչի կողմից, հետագայում ավելացված է. «ՊԴ (=1355) տէր Մխիթար փոխեցօ ի Քրիստոս ու [աստու]ցին զտէր Յակոբ յաթոռ իւր» հատվածը։

142. Հեթում Պատմիչին վերագրված ժամանակագրության Ավգերյանի հրատարակության բնագիրը վերոհիշյալ հատվածից հետո ընդհատվում է։

143. Խոսքը վերաբերում է Օշին թագավորին, որը գահ է բարձրացել Հեթում Բ-ի և Լևոն Դ-ի 1307 թ. սպանությունից հետո, 1308 թվին («Սիսուան», էջ 271, 557) և մահացել է 1320 թ. հուլիսի 20-ին (ծանոթ. 130)։

144. Հեղինակը նկատի ունի Լևոն Դ-ին, որին ըստ Սմբատի «Տարեգրքի» շարունակողի (էջ

128) թագավոր օծել են 1321 թ. խնամակալությամբ Հեթում Պատմիչի որդի Օշին պայլի։ Լևոն Դ-ի մահվան տարեթիվը տես ծանոթ. 137։

145. Խոսքը վերաբերում է Կոստանդին Գ. թագավորին, որը դահին մնացել է ընդամենը մեկ տարի՝ 1342—43 թ. («Ազգապատում», էջ 1905)։ Ալիշանը սրան հիշում է որպես թագապահ մինչև եղբոր Գվիդոնի գալը, որը թագավոր էր ընտրվել 1342 թ. («Սիսուան» էջ 559)։

146. Խոսքը վերաբերում է Գվիդոն Լուզինյան թագավորին, որն իշխել է ըստ Ալիշանի 1342 թ. մինչև 1344 թ. («Սիսուան», էջ 559)։ Լատինամոլ էր, ուստի հայ իշխանները սպանեցին։ Հմմտ. Կ. Յ. Բասմաջեան «Լեւոն Ե Լուսինեան վերջին թագավոր Հայոց», 1908, Պարիս, էջ 13, 21։

147. Կոստանդին Բ թագավոր, Լևոն Գ-ի ազգականը, համաձայն Ալիշանի իշխել է 1345 թվից («Սիսուան», էջ 559) մինչև 1363 թ. (Նույն տեղ, էջ 560)։ Հմմտ. Բասմաջեան «Լեւոն Ե Լուսինեան...», էջ 21։ Բնագրում Կոստանդինի թագավորության տարիները բաց է թողնված, Այս հատվածից հետո ընդհատվում են տարեգրության BB տարբերակները

148. Սույն դեպքերի մասին 1374 թ. ընդօրինակած ավետարանի հիշատակարանում կարդում ենք. «և դարձեալ ի յամին թուականութեանս Հայոց ՊԻԳ (=1374) առաւ Սիս ի քրիստոնէից և էր յայն ժամանակն կաթողիկոս Հայոց տէր Կոստանդին Լամբրոնացին, այր իմաստուն և հանճարեղ, և էր թագաւոր Հայոց Պարոն Լևոն, որդի Բրինձին, սա թագաւորեաց Հայոց ամիս է (7),սա վարեցաւ գերի յԵգիպտոս, թագուհիւն իւրով և որդովք իւրովք, բայց մեծ թագուհին Հայոց Մարիմ: յԵրուսաղէմ մեծաւ առաքինի ճշմարտութեամբ ամս...? և հանգեաւ ի Քրիստոս ի թուաբերութեան Պ... և ի յուլիս ամսոյ ԺԸ (18)... (անընթեռնելի) վասն զի յոյժ ողորմած էր և աղքատասէր, սա թաղեցաւ առաջի դրան սուրբ Յակոբայ...» (Մկրտիչ եպիսկ. Աղավնունի «Միաբանք և այցելուք հայ Երուսաղէմի», 1929, Երուսաղէմ, էջ 170—171)։ Հմմտ. Ձեռ. № 737, էջ 199բ։

IV.

## ՍԱՐԳԻՍ ՊԻԾԱԿ ՍՍԵՑՈՒՆ ՎԵՐԱԳՐՎԱԾ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XIV Դ.)

*Ղ. Փիրղալեմյանը իր մեծ եռանդի շնորհիվ կորուստից փրկել է պատմության համար մեծ նշանակություն ունեցող շատ վավերագրեր, որոնք իր շրջագայությունների ժամանակ նա ընդօրինակել է, և որոնք ձեռագիր վիճակում գտնվում են Մատենադարանի №№ 4515, 6273, 4442, 6332 ժողովածուներում։ Սակայն, այս մեծ վաստակի հետ, հաճախ կամայական վերաբերմունք է ցուցաբերել բնագրերի հանդեպ․ ոչ միայն կրճատումներով է ընդօրինակել վավերագրերը,[1] այլև իր վերցրած մի շարք ժամանակագրությունների, և ոչ միայն սրանց, այլև այլ նյութերի բնագրերը տարալուծել է, այսինքն՝ մի շարք բնագրերի վկայությունները խառնել է իրար և հաջորդաբար դասավորելով ստացել կոմպիլյատիվ մի շարք ժամանակագրությունների նոր բնագրեր։ Սրանցից մեկը գտնվում է Մատենադարանի № 4442 ժողովածուի 611ա—650բ էջերում, որն ունի «Առձեռն ժամանակագրութիւն» խորագիրը։ Այն սկսվում է 552 թ. վերաբերող մի վկայությամբ և հասնում մինչև 1766 թվականը։*

*Փիրղալեմյանը սույն ժամանակագրությունը կազմել է մի շարք անհայտ հեղինակների, ինչպես և իրեն հայտնի հեղինակների՝ Վարդան և Դավիթ Բաղիշեցիների, Թովմա Մինասենցի, Գր. Վարագեցու, Հով. Արճիշեցու, Հ. Խալֆայանի և այլոց տեղեկություններից։ Բարեբախտաբար Փիրղալեմյանը, հեղինակ ունեցող ժամանակագրություններից վերցրած փաստերի մոտ նշել է նրանց հեղինակների անունները։ Մի շարք վկայությունների տակ դրված է նաև «Սարգիս քահանա», «Սարգիս քահանա պատմիչ», կամ «Սարգիս քահանա Սսեցի պատմիչ» բառերը։ Վերջինիս վերաբերող բոլոր վկայությունները առանձնացնելուց հետո ստացվեց մի ժամանակագրություն, որը սկսվում է 1187 թ. Սալահեդդինի կողմից Երուսաղեմի գրավման փաստով և վերջանում 1310 թ. մայիսի 3-ին Լևոն Դ-ի մայր, Զաբելի մահվան վկայությամբ։ Որպեսզի համոզվենք, թե Փիրղալեմյանը Սագիս քահանայի վկայություններն առել է անփոփոխ— առանց կրճատումների, Առձեռն ժամանակագրության մի շարք վկայությունները համեմատեցինք մեր ձեռքի տակ գտնված այլ հեղինակների՝ Վարդան, Դավիթ Բաղիշեցիների, Գր. Վարագեցու, և այլոց համապատասխան վկայությունների հետ և նկատեցինք, որ ընդհանուր առմամբ այդ վկայությունները այնտեղ մեջ են բերված լրիվ։ Սրանից է, որ եզրակացրինք, թե Սարգիս քահանայի վկայությունները ևս կարող են բերված լինել առանց կըր-*

---

[1] Հմմ. «Դիւան հայոց պատմութեան», գիրք Ժ. էջ ԻՁ, ԾԴ, ԾԵ և այլն։

ճառումների։ Հետևապես մեր կողմից առանձնացված Սարգիս քահանայի ժամանակագրությունը, իրոք ամբողջական է և նրա սկզբնական բնագիրն ընդհանուր առմամբ եղել է այնպես, ինչպես այն այժմ գտնվում է մեր ձեռքի տակ։ Սարգիս քահանայի ժամանակագրության այժմյան բնագիրը թե որքանով է հարազատ իր սկզբնական բնագրին, այդ ցույց ավեց մեր որոնումների ժամանակ հանդիպած հետևյալ փաստը։ Տաշյանի «Ցուցակ հայերէն ձեռագրաց» աշխատության 903—906 էջերում (№ 439) բերվում է Անտիոքի Անսիզների և Սմբատի Դատաստանագրքի XIX դարում ընդօրինակած ձեռագրի նկարագրությունը, որը կատարվել է 1331 թ. ընդօրինակությունից։ XIX դարի ընդօրինակության մեջ պահվել է նաև 1331 թ. ընդօրինակության հիշատակարանը (Ցուցակ, էջ 906)։ Տաշյանը նկարագրելով ձեռագիրը և բերելով նրա բովանդակությունը, այնուհետև ավելացնում է. «4, թղ. 64ա-բ։ Ծայրը կցուած է ժամանակագրական կտոր մը» (էջ 906), և բերում է ողջ ժամանակագրությունը, իսկ այնուհետև 1331 թ. հիշատակարանը։ Սույն ժամանակագրությունը Տաշյանի ցուցակում ունի «ի թվականիս մեծի զփորձութիմսն դրեմք» խորագիրը։ Այս և մեր կողմից առանձնացված Սարգիս քահանայի ժամանակագրությունների համեմատությունը ցույց ավեց, որ քերականական աննշան տարբերությունները բացառելուց հետո այդ երկու բնագրերը ծածկում են իրար։ Միայն Տաշյանի մոտ պահված բնագրի նախավերջին և վերջին վկայությունները չենք գտնում մեր ձեռքի տակ գտնված ժամանակագրության բնագրում։ Այդ երկու վկայություններն էլ Տաշյանի մոտ բերված են թերի, հավանաբար բնագիրը վնասված լինելու պատճառով։ Այսպիսով, Սարգիս քահանայի ժամանակագրության ամբողջական լինելու ենթադրությունը հաստատվում է նաև այս փաստով։ Ի դեպ, չէր կարող պատահել, որ Փիրղալեմյանը Սարգիս քահանայի ժամանակագրությունն առած լինի Տաշյանի բերած օրինակից, որովհետև նա այդ կազմել է 1874 թ. (№ 4442, էջ 611բ, 625բ և այլն), իսկ Տաշյանի Ցուցակը լույս է տեսել 1895 թ.։ Փիրղալեմյանը Վիեննայի մատենադարանի բնագրից էլ չէր կարող վերցնել, որովհետև վերջինիս և մեր ձեռքի տակ գտնված օրինակներում առանձին փոքրիկ շեղումներից բացի, գոյություն ունի մի վկայություն, որը մեզ մոտ ավելի ընդարձակ է քան Տաշյանի ցուցակի վկայությունը, այսպես.

| Տաշյան, Ցուցակ | Առաջարկվող բնագիրը |
| --- | --- |
| էջ 906 «ՉԽՁ(=1297) բռնեց Սմբատ զի[ր] երկու եղբայրն զՀեթումն եւ զպարոն Թորոս ի՝ Բարձրբերդ»։ | «ՉԽՁ(=1297) բռնեց զՍմբատն զիր երկու եղբայրն՝ զՀեթումն և զպարոն Թորոս ու եղիր զՀեթումն ի Մոլովոնն ի զընդան և զպարոն Թորոս՝ ի Բարձրբերդ։ |

Կարծում ենք վերոհիշյալ վկայությունը մեր հավաստիացման ապացույցի պակասություն չի թողնում։

Արդ՝ ո՞վ էր Սարգիս քահանան։

Ինչպես վերևում նշեցինք, Տաշյանն իր «Ցուցակում» բերում է 1331 թ. հիշատակարանը, ուր կարդում ենք. «... Գրեցաւ Անսիզք Անտաքոյն... ի թուաբերութեանս Հայոց ՉՁ. (=1331) ձեռամբ Սարգիս նուաստ և անարժան քահանայի...» (էջ 906)։ Այսպիսով, չնայած Անտիոքի Անսիզները և ժամանակագրությունը 1331 թ. ընդօրինակել է Սարգիս քահանան, սակայն Տաշյանը ակնարկ անգամ չի անում, թե վերոհիշյալ Սարգիս քահանան կարող է ժամանակագրության հեղինակը լինել։

Հիշատակարանում հիշված Սարգիս քահանան միջնադարյան հռչակավոր ու բազմավաստակ մանրանկարիչ Սարգիս Պիծակն է, որի ընդօրինակած և զարդանկար մի շարք ձեռագիր ժողովածուները գտնվում են Վենետիկում,[1] Երուսաղեմում։[2] Իսկ մեր Մատենադարանում գտնվում են 1330—1336 թ. թ. շրջանում նրա կողմից ընդօրինակած, մի ավետարանը,[3] շարականները[4] և մանրուսմունքը։[5]

Ի՞նչ հիման վրա Փիրղալեմյանը սույն ժամանակագրությունը վերագրել է Սարգիս քահանա Սսեցի պատմիչին, մեզ ոչինչ հայտնի չէ։ Սակայն կարծում ենք, որ Փիրղալեմյանի մոտ հիշված Սարգիս քահանա Սսեցի պատմիչն ամենայն հավանականությամբ մեզ հայտնի Սարգիս Պիծակն է։ Փիրղալեմյանը Սարգիս քահանային Սսեցի է կոչում, հավանաբար նկատի ունենալով այն, որ նա մի շարք ձեռագրեր ընդօրինակել է Սսում։[6] Հնարավոր է, որ Սարգիս Պիծակը ձեռագրեր ընդօրինակելուց և զարդանկարելուց զատ կազմել է նաև սույն ժամանակագրությունը։ Սակայն մի հանգամանք մեզ այդ բանը կասկածի է ենթարկում։ Ինչպես ասացինք, սույն ժամանակագրությունը վերջանում է 1310 թ. վկայությամբ, իսկ նրա կարծեցյալ հեղինակի՝ Սարգիս Պիծակի գործունեության մեզ հայտնի ժամանակաշրջանը տևում է մինչև 1335 թ.։[7] Այստեղից հարց է ծագում, եթե Սարգիս Պիծակը լիներ սույն ժամանակագրության հեղինակը, ինչու նա իր ժամանակագրությունն ընդհատել է 1310 թ. վկայությամբ և այն չի շարունակել մինչև իր կյանքի վերջին տարիները։ Ջնայած Տաշյանի տարբերակում ժամանակագրությունն ունի «Ի թվականիս մեծի զփորձութիւնսն գրեմք» խորագիրը, որտեղից պարզ երևում է, որ հեղինակը գրել է իր ժամանակի գլխավոր դեպքերը, սակայն այդ բանը Սարգիս Պիծակը չէր կարող անել, հենց նրա համար, որովհետև ժամանակագրության մեջ, եթե հիշված է Օշին թագավորի կնոջ՝ Ջաբելի և այլոց մահը և Հեթում Ա-ի որդի՝ Լևոնի թագավորությունը և այլ դեպքեր, ապա այնտեղ չենք գտնում իրե̄ն Օշին թագավորի մահվան,[8] վերջինիս որդի՝ Լևոնի թագադրության, եգիպտացիների հերթական արշավանքների մասին որևէ հիշատակություն, որոնք տեղի են ունեցել սույն ժամանակագրության վերջին եղրից տարիներ հետո, և որոնք Սարգիս Պիծակի ժամանակակից դեպքերն են։ Կարծում ենք իրականությանն ավելի մոտ կլինի, եթե ենթադրենք, որ Սարգիս Պիծակը ոչ թե սույն ժամանակագրության հեղինակն է, այլ նրա ընդօրինակողը, որը սույն ժամանակագրությունն Անտիոքի անսիզների և Սմբատի Դատաստանագրքի հետ միասին ընդօրինակել է տվյալ ժողովածուի մեջ։ Հետևապես, ժամանակագրության վկայությունները գերազանցապես ժամանակակից հեղինակի վկայություններ են, ինչպես այդ երևում է Տաշյանի ցուցակի տարբերակի խորագրից, խիստ համառոտ, բայց այնուամենայնիվ արժանահավատ տեղեկություններ։ Առաջարկվող ժամանակագրության Փիրղալեմյանից վերցրած օրինակը (A) ներկա հրատարակության մեջ ընդունեցինք հիմք, իսկ Տաշյանի Ցուցակի՝ (Б) տարբերակի տարընթերցվածքները դրեցինք տողատակ։

---

1 Ալիշան, «Սիսուան», էջ 235—230։

2 Գ. Յովսէփեան «Մի էջ հայ արուեստի և մշակոյթի պատմութիւնից», Հալէպ, 1930, էջ 30։

3 Ձեռ. № 5786։

4 Ձեռ. № 1601։

5 Ձեռ. № 7125։

6 Ձեռ. № 5786, էջ 339բ—340բ։

7 Հմմտ. «Մի էջ հայ արուեստի և մշակոյթի պատմութիւնից», էջ 10—11։

8 Օշինը մահացել է 1320 թ., հուլիսի 20-ին, «Սիսուան», էջ 558։

IV.

1187 ՈԼԶ զՆրուսաղէմ էառ Սալահատին.[1]

1229 ՈՁԸ զԽորազմ կոտորեց Ալաաին ի Ցասիչմաննն։[2]

1236 ՈՁԵ Թաթարն զմեծ Հայքն էառ և ճապաղեցաւ և մէկ ծայրն ի Դարբանդն կայր և մէկ այլն ի Կարնոյ քաղաք.[3]

1243 ՈՂԲ խանգարեց Թաթարն զԽիաթաաինն։[4]

1258 ՉԷ Հոլաւյունն զՊաղտատն աւերեց։

1260 ՉԹ Հոլաւյունն զՀալէպն էառ։

1263 ՉԺԲ Աւագ պարոն մեռաւ։[5]

1266 ՉԺԵ առջի Թուրքն երեկ Սմլմաւթն։[6]

1267 ՉԺԶ մեռաւ տէր Կոստընտին կաթուղիկոսն։[7]

1268 ՉԺԷ մսրցին զՍնտաքն էառ[8] և զտէր Յակոբ գրին կաթուղիկոս։

1270 ՉԺԹ Հեթում Թագաւորն մեռաւ։

1271 ՉԻ զԼևոնն օրհնեցին Թագաւոր։

1275 ՉԻԴ Պնդուխտարն մտաւ ի Կիլիկիէ.[9] և ի յայսմ ամի մեռաւ տէր Բարսեղ.[10] Ցապրիլ ԺԹ (19) մեռաւ տէր Բարսեղ։

1276 ՉԻԵ զտէր Սարգիսն սպանին։[11] Ի յայսմ ամի՝զՍմբատ Գունդուստապլն ի Սարվանդաւ։[12]

1279 ՉԻԸ Ալֆին մտաւ ի Հայք.[13]

1281 ՉԼ Մանդու Տամուրն խանկրեցաւ ի Հէմս։ Եւ ի նոյն ամի մեռաւ ինքն և Ապաղայն և Թագաւորեց Ահմատն։

1284 ՉԼԳ սպան Արղուն զԱհմատն։[14]

1285 ՉԼԴ Կեռան Թագուհին [Հայոց] մեռաւ. և է օգոստոս ամսոյ Թ (9)։[15]

1287 ՉԼԶ Նստաւ տէր Կոստընդին Պրունգործն կաթուղիկոս։[16]

1289 ՉԼԸ փետրվարի վեցն մեռաւ Լևոն Թագվորն։ Եւ աքսորեցաւ տէր Կոստանդին կաթուղիկոսն։ Ի նոյնս մեռաւ տէր Յովհաննէս[17] և Նստաւ տէր Ստեփաննոս Հռոմայեցին կաթուղիկոս։ Եւ զՏրապօլիսն էառ Թուրքն։[18]

1291 ՉԽ զԱքքայ էառ մսրցին.[19] Եւ յայսմ ամի մեռաւ Արղաւնն.[20]

---

1 ՋՃԼԶ փխ. ՈԼԶ, զՆրուսաղէմ, Սալահատինն։ 2 կոտրեց յԱլատին։ 3 ՋՃՁԵ փխ. ՈՁԵ, Հայք, A էառ չիք, ճապղեցաւ ու։ 4 Դարբանանն։ 5 խանգրեց։ 6 զՊաղտաա աւերէց։ 7 զՀալպ։ 8 Աւաք։ 9 երեք։ 10 Կոստնգին կաթողիկոսն։ 11 զԱնաաք։ 12 կաթողիկոս։ 13 Թագվորն։ 14 աւրհնեցին Թագվոր։ 15 Կիլիկէ։ 16 յապրիլ ԺԹ (19) մեռաւ տէր Բարսեղ չիք։ 17 ՉԻԹ փխ. ՉԻԵ, Սարգիս։ 18 Գունդստապլն։ 20 Մանգումատուրն։ 21 ինքն։ 23 յաւգոստոս։ 25 կաթողիկոս։ 29 զՏրապաւլիս։ 30 զԱրքայ։

1292 ՉԽԱ զՀաւռաւմկլայն[21] էառ մսրցին յուլիս ԻԸ (28) և զտէր Ստեփաննոս ծառայ տարաւ։ Ի նոյնս էր ծուռ զատիկ։[22]

1294 ՉԽԳ Նստաւ տէր Գրիգոր կաթուղիկոս։ Ի նոյնս Հեթումն զպարոն Թորոս նստոյց թագաւոր և ինքն միակեց եղև։

1295 ՉԽԴ գնաց Հեթումն ի ղանն Ղազան և ել չար հրաման ի ղանէն՝ աւերել զեկեղեցիք աշխարհին, զոր և աղաչեաց Հեթումն զղանն և լռեցոյց։[23]

1296 ՉԽԵ Հեթումն զՍմբատն եդիր յաթոռն և ինքն էառ զպարոն Թորոս և գնաց ի թագաւորութիւնն։[24]

1297 ՉԽԶ ըռնեց Սմբատն զիր երկու եղբայրն զՀեթումն և զպարոն Թորոս ու եդիր զՀեթումն ի Մոլովոնն[25] ի զնդան և զպարոն Թորոս ի Բարձրբերդ։

1297 ՉԽԶ յուլիս ԻԳ (23) սպանեց Սմբատն զիր աղբայրն զպարոն Թորոս։[26]

1301 ՉԾ Ներսէսն մեռաւ և էր մայիս ԻԶ (26)։[27]

1307 ՉԾԶ սպանեցին զաւագ պարոն զՀեթում, թագւորն զԼևոնն յամսեան նոյեմբերի ԺԵ (15)։[28]

1310 ՉԾԹ մեռաւ Զաբել թագուհին Աւշնին և էր մայիս Գ (3)։[29]

---

1 զՀաւռամկլայն։ 2 A Ստեփանոս չիք, զատիկն։ 3 կաթողիկոս։ 4 միակից։ 8 ինք։ 9 ու փխ. և։ 11—12 զպարոն Թորոս ի Բարձրբերդ փխ. ու եդիր զՀեթումն ի Մոլովոնն ի զնդան և զպարոն Թորոս ի Բարձրբերդ։ 13 սպանանեց, եղբայրն։ 16 զաւաք։ 17 յամսեանն։ 17 և 18-րդ տողերի միջև «ՉԾԸ (1309) մեռաւ||| յաւգոստոս ԻԷ (27)»։ 18 Զապել։ 19 յերեքն փխ. Գ։

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Տես վերևում, էջ 92, ծանոթ. 28։

2. Փիրղալեմյանը սույն հատվածի դիմաց ավելացնում է. «Հուլայուին հետն էր», սակայն խոսքն այստեղ վերաբերում է Խորեզմի սուլթան Ջելալ-ադ-դին Մանգուբերտուն, որն, ըստ Լեն-Պուլի, իշխել է 1220—1231 թ. թ.։ Ջելալ-ադ-դինի սույն արշավանքի մասին տեղեկություններ պահել է նաև Կ. Գանձակեցին. «...չոգաւ և աւերեաց զրաղում գաւառս յիշխանութենէն սուլտանին Հոռոմոց, զոր Ալադինն կոչէին» (էջ 215, հմմտ. Սամ. Անեցի, էջ 149—150, Վ. Արևելցի, էջ 188)։ Վերոհիշյալ արշավանքի ժամանակ Իկոնիայում իշխում էր սուլթան Ալաադ-դին Քայ-Քուբադ I-ը (1219—1236 թ. թ.)։

3. Հեղինակը նկատի ունի մոնղոլների կողմից Հայաստանի գրավումը (տես վերևում, էջ 26)։ Հմմտ. Կ. Գանձակեցի, էջ 217—248, Վ. Արևելցի, էջ 192—193 և այլ հեղինակներ։

4. Խոսքը վերաբերում է Բաչուի արշավանքին դեպի Փ. Ասիա։ Հեղինակը Խիաթատին անվան տակ նկատի ունի Իկոնիայի սուլթան Ղիյաս-ադ-դին Քայ-Խոսրով II-ին, որն իշխել է 1236—1245 թ. թ.։ Սույն արշավանքի մասին տես նաև վերևում էջ 58, ծանոթ. 55։

5. Կ. Գանձակեցին Իվանեի որդի Ավագի մահը նշում է Հայոց ՈՂԸ (=1249) թվականից հետո (էջ 305)։ Արդյո՞ք միևնույն անձնավորություններն են։ Այս մասին տես նաև էջ 58, ծանոթ. 58։

6. Տես վերևում էջ 97, ծանոթ, 95։

7. Կոստանդին Ա Բարձրաբերդցի կաթողիկոսը մահացել է 1267 թ. ապրիլի 9-ին («Ազգապատում», էջ 1665, վերջինս նկատի ունի Վ. Արևելցու տեղեկությունը, էջ 215)։

8. Տես վերևում էջ 83, 97, ծանոթ. 96։

9. Տես վերևում էջ 84։

10. Տեր Բարսեղը Հեթում Ա թագավորի եղբայրն էր և Դրազարկի առաջնորդը։

14. Տեր Սարգիսը Երզնկայի եպիսկոպոսն էր։ Տես վերևում, էջ 61, ծանոթ. 86։

12. Բնագիրը թերի է։ Փիրղալեմյանը փորձում է լրացնել. «Գուցե արգելեցին». այս ճիշտ չէ, որովհետև հենց այդ՝ 1276 թվին, եգիպտացիների դեմ մղված կռվում, Սարվանդաքարի մոտ, Սմբատ Գունդստաբլը վիրավորվում է և մահանում, հետևապես բնագրի «ի Սարվանգա» հատվածին պիտի ավելացնել՝ «քարս վիրաւորեցաւ»։ Սարվանգաքարը գտնվում է Մարաշից հարավ, Ջահան գետի վերին հոսանքի ձախ կողմում։

13. Հեղինակն ակնարկում է եգիպտական սուլթան Մանսուր Սեյֆ-ադ-դին Կալաունի (1279—1290 թ. թ.) Կիլիկիա կատարած արշավանքը։

14. Տես վերևում, էջ 62, ծանոթ. 105։

15. Բնագրում բաց է թողնված «Հայոց» բառը, որն ավելացրել է Փիրղալեմյանը։ Հմմտ. Հեթում Բ-ի տարեգրություն, էջ 85, 98, ծանոթ. 112։

16. Կոստանդին Պրոնագործն անվանվել է նաև Կաաուկեցի, որը կաթողիկոս է օծվել 1286 թ. ապրիլի 13-ին («Ազգապատում», էջ 1698)։

17. Բնագրում Փիրղալեմյանն ավելացնում է. «Գուցե եղբայրն Հեթմոյ թագաւորին»։ Ճիշտ է։ Հովհաննեսը Հեթում Ա թագավորի կրտսեր եղբայրն էր։ Աշխարհական անունն էր Պաղտին, Դռներ վանքի արքեպիսկոպոսը։ Ա. Գավրիժեցու «Պատմության» առընթեր ժամանակագրության մեջ կարդում ենք. «Թուին ՉԼԸ (=1289) մեռաւ Լևոն և աքսորեցաւ Կոստանդին կաթուղիկոսն և մեռաւ Յովհաննէս կաթուղիկոսն, և նստաւ աէր Ստեփաննոս կաթուղիկոսն, և զՏրապօլիս էառ թուրքն» (հրատ. Գ, էջ 624—625)։ Բնագրի «մեռաւ Յովհաննէս կաթողիկոսն» հատվածի առթիվ ճիշտ է պրոֆ. Աճառյանի դիտողությունը, որ «մեր պատմությունը Կոստանդինի և Ստեփաննոսի միջև ոչ մի կաթողիկոս չգիտե»։ («Հայոց անձնանունների բառարան», հատոր Գ.,

էջ 597—598)։ Ըստ երևույթին Ա. Դավրիժեցու ձեռքի տակ ղանվել է սույն ժամանակագրության ամբողջական բնագիրը։

18. Տես վերևում, էջ 98, ծանոթ. 117,

19. Տես վերևում, էջ 98, ծանոթ. 119։

20. Տես վերևում, էջ 98, ծանոթ. 116։

21. Բնագրում Փիրղալեմյանը, փակագծում ավելացնում է «Հոռմկլայն»։ Այս մասին տես վերևում, էջ 99, ծանոթ. 120։

22. Տես վերևում, էջ 86։ «Հայապատում», էջ 519 և այլն։

23. Ղազան ղանի կողմից քրիստոնյաների նկատմամբ կիրառվող սույն հալածանքի և նրան Հեթում Բ-ի այցելության մասին ավելի մանրամասն տեղեկություններ հաղորդում է 1296 թվին ընդօրինակած ավետարանի գրիչ՝ Ծերունը, որը վերոհիշյալ դեպքերը դնում է 1296 թ. ներքո (տես՝ «Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի» Ե. Լալաեան, Թիֆլիս, 1915, էջ 119—122)։ Հմմտ. Ս. Անեցի, էջ 154, Կիրակոս Ռշտունցու ժամանակագրությունը (VI) էջ 120։

24. Բնագրի «Թագաւորութիւնն» բառի առթիվ Փիրղալեմյանը փակագծում ավելացնում է, «այս բառն մութ մնաց ինձ»։ Բնագիրն ինչքան էլ անհաջող լինի, համենայն դեպս հասկանալի է, որ խոսքը վերաբերում է Հեթում Բ-ի Կոստանդինապոլիս մեկնելուն, իր քույր Ռիթա-Մարիամին տեսնելու, որը Բյուզանդական Անդրոնիկոս կայսեր որդու, Միքայելի կինն էր։ Հմմտ. Հեթում Բ-ի տարեգրությունը, էջ 87։

25. Բնագրի «Մոլովոնն» անվան տակ պետք է հասկանալ Մոլևոն (կամ Մլուն) բերդը (նաև դաշտը) (տես էջ 97, ծանոթ. 101)։

26. Ալիշանը Թորոսի սպանությունը և Հեթում Բ-ի կուրացումը մի տեղ նշում է 1299 թ. («Սիսուան», էջ 142), մի այլ տեղ 1298 թ. հուլիսի 23-ին (նույն տեղ, էջ 556)։ Հմմտ. Ս. Անեցի, էջ 154։

27. Լևոն Բ թագավորի 7-րդ որդին, Հեթում Բ-ի եղբայրը, ծնվել է 1279 թ., և եղել է հոգևորական։

28. Հմմտ. Սամ. Անեցի, էջ 155—156, Հեթում Բ-ի տարեգրություն, էջ 88, 89։ Վերջիններիս մոտ ամսաթիվը նշված է ԺԷ (=17)։ Այստեղ գործ ունենք, անշուշտ, Հայոց «Ե» և «Է» տառերի շփոթության հետ։ Փիրղալեմյանը գրում է, որ բնագրի մի բառը վնասված է։ Կարծում ենք այն պետք է լինի «Անազարբա» բառը։

29. Զաբելը Հեթում Պատմիչի դուստրն էր և Օշին թագավորի կինը։ Համաձայն Սմբատի «Տարեգրքի» շարունակողի Զաբելը մահացել է երկունքից, Լևոն Դ թագավորին ծնելիս (էջ 128)։ Հետևապես Ալիշանի կարծիքը, թե Լևոն Դ-ն ծնվել է 1310 թ. մայիսի 26-ին կամ 27-ին («Սիսուան», էջ 557), ճիշտ չէ, որովհետև նրա մայրն, ինչպես մատնացույց է անում սույն վկայությունը, մահացել է մայիսի 3-ին։ Մեր բնագիրն այստեղ վերջանում է, մինչդեռ Տաշյանի տարբերակը վերջանում է «Զ..Դ (13..5) յաւգոստոս ԺԹ մեռաւ տէր Բարսէղ» վկայությամբ։

## V.

## ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ (XIV Դ.)

«Դարձեալ այլ պատմութիւն խաներոյ տանկաց» *խորագիրը կրող ժամանակագրությունը գտնվում է Ձեռ. № 2037-ի 146բ և 7841-ի՝ 306բ էջերում։ Այն սկսվում է 1315 թվականի Մելիտինեի գրավման և վերջանում 1345 թ. Ջանի ղանի կողմից, Կաֆայի գրավման հիշատակությամբ։ Այսպիսով, ժամանակագրությունը ընդգրկում է 30 տարվա անցուդարձ։ Նկատի ունենալով հիշատակված դեպքերի ամսաթվերով վկայությունները, ենթադրում ենք, որ ժամանակագրությունը կազմել է վերոհիշյալ դեպքերին ժամանակակից անձնավորություն։ Սույն ժամանակագրության ընդգրկած տարիները համընկնում են Ներսես Պալենցու ժամանակաշրջանին և այն գտնվում է վերջինիս թարգմանական և ինքնուրույն գործերի, ինչպես նորագույն (№ 7841, XVII դար), այնպես էլ հնագույն (№ 2037, 1421 թ.), ընդօրինակությունների մեջ, բայց և այնպես հաստատ տվյալներ չունենք, այն Ներսես Պալենցուն վերագրելու։ Ժամանակագրության առանձին վկայությունները երբեմն շեղվում են Լեն-Պուլի հաշվումներից։*[1] *Բայց, որովհետև ժամանակագրության հեղինակը, տեղեկությունները հաղորդում է այնպիսի մանրամասնությամբ, որոնց վրա կասկածելու հիմք չունենք, ուստի այս նոր տվյալները, մեզ հնարավորություն են տալիս ոչ միայն լրացնել, այլև որոշ ուղղումներ մտցնել Լեն-Պուլի առանձին հաշվումների մեջ։ Ներկա հրատարակության համար հիմք ընդունել ենք Ձեռ. № 2037 բնագիրը, իսկ մյուսը՝ Ձեռ. № 7841-ի տարընթերցվածքները տվել ենք տողատակ։*

[1] Տես և համեմ. С. Лэн-Пуль „Мус. династии" стр. 183.

V.

## ԴԱՐՁԵԱԼ ԱՅԼ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԽԱՆԵՐՈՅ ՏԱՃԿԱՑ[1] '46r

Ի թվի[ն] ՉԿԴ (1315) ի մայիսին եկն Շամին հեծելն և էառ զՄէլտինի և սպան բազում և տարաւ գերի։[2]

ՉԿԶ (1317) մեռաւ սուլտան Խարբանդտն։[3] Եւ ի սոյն ամի նստաւ Բուսայիդն ղան։

ՉԿԸ (1319) զԵրինջին և զՂոտումչին, զԹօխմախն և զԱ-րասն և զԹարմաթանն։ ի չանկալն զարկին և զխօջայ Ցաղութ նոյն տարին սպանին։

ՉՀԶ (1327) զԴմշ[խ] խօջան սպանեաց Բուսայիտն Ղուբրա-նին զատկի[ն] և Զօպանն ի Հրէ փախեաւ։[4]

ՉՁԴ (1335) մեռաւ Բուսաիդն, նուէմբեր Լ (30). և նստաւ Արբայ ղանն, Զ (6) ամիս թագաւորեաց։[5]

ՉՁԴ (1335) եկն Ալի փաշան սպան զԱ[ր]բա ղանն. և նստոյց զՄուսէ ղանն Ե (5) ամիս։[6]

ՉՁԴ (1335) եկն հաջի Թաղան և մեծ շեխ Հասանն և սպա-նին զԱյի փաշան և զՄուսէ ղանն։[7]

ՉՁԵ (1336) նստաւ Մահմատ ղանն։

ՉՁԶ (1337) եկն սուտ Թամուրթաշն և որդին շէխ Հասան,[8] և սպանին զՄահմատ ղանն և այլ ոչ եղև կատարեալ ղանութիւն։ Ջանի ղանն, որ թախթն նստաւ ՉՂԱ (1342) յունվար Ժ (10).[9] Ջանի ղանս, որ ի վերայ Կաֆաին էրեկ ՉՂԲ (1343) սեպտէմ-բեր ԻԳ (23). տարիուկէս զսարեց և աւագ ուբբաթուն[10] ճանա-պարհն բացաւ։[11]

---

6 զՂուբումչին։ 9 Պուսայիտն Ղուբպանին։ 11 Բուսայիտն, Նուէմբեբի։ 15 հաճի, չի փի. չեխ։ 18 Դամուրտաշ։ 21 Կաֆային։ 22 ճանապարհ։

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Բնագրում վերնագիրը գրված է կարմիր թանաքով։

2. Խոսքը վերաբերում է մամլյուկների և մոնղոլների միջև տեղի ունեցած կռիվներին, որի ժամանակ՝ 1315 թ., մամլյուկները իրոք գրավում են Մելիտենը։ Հմմտ. Ս. Անեցի, էջ 166։ Мюллер „История ислама" т. III, стр. 283:

3. Այս անձնավորությունը ունեցել է տարբեր անուններ։ Մկրտության անունը եղել է Նիկոլա։ Հետագայում հանդիպում ենք նրա «Խարբենդե» մականվանը, «էշի ծառա» նշանակությամբ։ Այդ մասին իմանում ենք 1307 թ. մի հիշատակարանից, որտեղ կարդում ենք. «Ի ժամանակի լրում էր թւականս մեր ՉԾԶ (=1307) ի պակասել արդարութեանց և ի բազմանալ տնօրէնութեանց մերոց առաւել բազմացաւ բարկութիւն և սաստկացաւ չարութիւն ազգին Նետողաց ի վերա[յ] մեր ազգիս քրիստոնէից, քան զի եւ աղայ հասակաւ այր մին ի Խորասանայ միականի, համանման Նեռինն, որ գալոցն է, անուն նորայ Խարբանդա, որ թարգմանի իշու ծառա, որդի Արղունին, որդո[յ] Աբաղային, որդո[յ] Հուլաւունին։ Սա բառնալ կամեցաւ զքրիստոնէութիւն աշխարհէս Հայոց և Վրաց, զոր խափանեաց տէր, և ոչ կատարեցաւ չար խորհուրդ նորայ։ Յետո այլ բանս մտաւածեաց արբանեկն սատանայի, առաքեաց ընդ ամենայն երկիր իշխանութեան իւրոյ դնել նշան խայտառակութեանն քրիստոնէից. և հարկ առնուլ ըստ մարդաթուի Խ (40) արծաթէ մինչ Ժ (10) ըստ կարի»...։ (Ձեռ. № 3074, էջ 80բ)։ Հմմտ. «Խաղաքակեանք կամ Կոռշեանք Հայոց պատմութեան մէջ», հատոր Գ, Նիւ Եորք, 1942/3, էջ 166։

«Խարբենդե» անունը նա հետագայում, իսլամ ընդունելու ժամանակ, իբր փոխել է դարձնելով Խուդաբենդե, «Աստու ծառա» նշանակությամբ։ Ստ. Օրբելյանն այդ մասին այսպես է գրում. «...և մկրտեաց զկրսեր որդի արքային և անուանեց Թէոդոսիոս, զոր ինքեանք Խուդապանդայ (ծառայ աստուծոյ, բնագրում «Խարբանդայ») կոչէին» (էջ 482)։ Սակայն վաղուց նկատված էր, ինչպես ճիշտ նշում է Մյուլլերը, որ «Խարբանդե» հորջորջումը պարսիկների կողմից տրված է որպես ծաղր։

Այս անձնավորությունն ուներ նաև մահմեդական անուն՝ Մուհամմեդ։ Վերջինս ուներ նաև Օլջեյտու մոնղոլական տիտղոսը՝ որը նշանակում է «օրհնված»։ Համաձայն Լեն-Պուլի Օլջեյտուն իշխել է 1304—1316 թ. թ. („Мус. династии" стр. 183), որին հաջորդել է Աբու-Սեյիդն իշխելով 1316—1335 թ. թ. (Հմմտ. Мюллер „История ислама", т. III, стр 227, прим. 1):

4. Տես և հմմտ. էջ 88, 100, ծանոթ. 135։

5. Բնագրի Աբու-Սեյդի մահվան ամսաթիվը՝ 1335 թ. նոյեմբերի 30, միանգամայն ստույգ է (հմմտ. Мюллер „История ислама" т. III, стр. 278): Մինչդեռ ըստ Յուստիի՝ 1334 թ. նոյ. 30 („Iranisches Namenbuch" Marburg, 1895, s.469)։ Աբու-Սեյիդին հաջորդում է Արփա ղանը, որը Հուլաուի եղբոր, Տուլիի շառավիղն էր։ Բայց, որովհետև Արփա ղանն ընտրված չէր պարսկական մոնղոլների բոլոր ցեղերից, ուստի վերջիններս չեն ենթարկվում նրան և շուտով նրան գահազրկելով սպանում են։ (Հմմտ. Мюллер, там же. т. III, стр. 287): Այս մասին տես Սամ. Անեցու մոտ, էջ 158, 168, ըստ որի Արփան իշխել է ընդամենը 6 ամիս։

6. Ժամանակագրության այն վկայությունը, թե Արփա ղանը սպանվել է 1335 թ., ստույգ չէ, հենց իր ժամանակագրության տվյալներից ելնելով. այսպես՝ Աբու-Սեյիդը մահացել է 1335 թ. նոյեմբերի 30-ին, սրա հաջորդ, Արփա ղանն էլ իշխել է 6 ամիս, նշանակում է, վերջինիս սպանությունը պետք է հաշվել 1335 թ. նոյեմբերի 30-ից վեց ամիս, որը կլինի 1336 թ. մայիսը։ Աբու-Սեյիդի քեռին Բաղդադի կառավարիչ՝ Ալի փադիշահը 1336 թ. մայիսին Ղարաբաղում ջախջախում է Արփա ղանի զորքերին և նրան էլ սպանում, որից հետո Ալի փադիշահը

*Արփա ղանի գահը հանձնում է Մուսային։ Վերջինիս իշխանությունը նույնպես կարճ է եղել* (*հմմտ.* Лэн-Пуль, „Мус. династии" стр. 183): *Սամ. Անեցու ժամանակագրության շարունակության մի վկայության համաձայն Մուսան իշխել է 4 ամիս (էջ 168)։*

*7. Համաձայն ժամանակագրության Ալի փադիշահը և Մուսան սպանվում են 1336 թ. հոկտեմբերին (այսպես՝ Աբու-Սեյիդից հետո՝ Արփա ղանն իշխում է 6 ամիս, իսկ Մուսան՝ 5, նշանակում է 1335 թ. նոյեմբերի 30-ից մինչև 1336 թ. հոկտեմբերը կլինի 11 ամիս)։ Սամ. Անեցու շարունակությունը այգ կռիվը նշում է «յաւուրս հնձոցն... ի սահմանս Հերայ քաղաքինս (էջ 159)։ Բնագրի շեխ Հասանը, Ջելաիրների հիմնադիր Հասան Բուզուրուգն (Մեծ) է, Հուսեյին Գուրգանի որդին։ Վերջինս թափուր գահը հանձնում է Հուլաուի Մանկու Թեմուր որդու սերնդից՝ Մուհամմեդին։*

*8. Բնագրի շեխ Հասանը Չոբանի թոռն է, Թամուրտաշի որդին, որը պատմության մեջ հայտնի է Հասան Կուչյուկ (կրտսեր) անունով։ Լեն-Պուլը (էջ 183), ինչպես և Մյուլլերը (էջ 288) Մուհամմեդի իշխանությունը նշում են 1336—1338 թ. թ., իսկ նրա սպանությունը՝ 1338 թվի ներքո։*

*9. Բնագրում հիշված «Ջանի ղանը» Ոսկե Հորդայի ղան Ջանիբեկ-Մահմուդն է, որը Լեն-Պուլի հաշվումների համաձայն իշխել է 1340 թ. մինչև 1357 թ. (էջ 191)։*

*10. Ջանի բեկ Մահմուդը Կաֆան գրավում է 1345 թ. մարտի 25-ին (1345 թ. զատիկն ընկնում է 27-ին, իսկ ավագ ուրբաթը կլինի մարտի 25-ը), և իսկապես, Կաֆայի պաշարումից՝ 1343 թ. սեպտեմբերի 23-ից մինչև նրա գրավումը՝ 1345 թ. մարտի 25-ը կլինի ուղիղ տարի ու կես, ինչպես ճիշտ մատնացույց է անում առաջարկվող ժամանակագրությունը։ 1344 թ. Կաֆայում ընդօրինակած ավետարանի հիշատակարանից իմանում ենք, որ ավետարանի ընդօրինակության տարին Կաֆան տակավին պաշարված էր (տես «Հանդէս Ամսօրեայ», 1926 թ., էջ 237)։*

*11. Երկու տարբերակներում էլ բնագիրն այստեղ ընդհատվում է։*

VI.

## ԿԻՐԱԿՈՍ ՌՇՏՈՒՆՑՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XV Դ.)

*Քննության ենթակա ժամանակագրությունը գտնվում է № 582 ձեռագրի (A տարբերակ) 152բ—153բ էջերում, որը խորագիր չունի։ Ձեռագրի բիբլիոգրաֆիկ քարտում Մատենադարանի աշխատակիցների կողմից գրված է՝ «Կարգ Եղանաց և Գոյունլու իշխանաց Կիրակոս գրչէ» խորագիրը։*

*Ձեռագրի հիմնական մասն ընդօրինակել է Գավիթը (էջ 44բ, 101բ, 112բ և այլն), իսկ ժամանակագրությունը և մի քանի այլ մանր նյութեր՝ Կիրակոս Բանասերը, որը ժամանակագրության հաջորդող՝ 154բ էջում թողել է հիշատակարան, և որից բերում ենք մի փոքր հատված. «Քրիստոս աստուած ողորմեայ Կիրակոս Բանասիրին և իւր ծնօղացն և ամենայն արեան մերձաւորացն, ամէն...»։*

*Կարծում ենք վերոհիշյալ Կիրակոսը և Թովմա Մեծոփեցու կենսագրության հեղինակ՝ Կիրակոս Բանասերը միևնույն անձնավորություններն են։ Եթե ճիշտ է վերոհիշյալ եզրակացությունը, նշանակում է ժամանակագրության տվյալ ընդօրինակությունը Կիրակոս Բանասերի ինքնագիր օրինակն է։*

*Ժամանակագրության A տարբերակը սկսվում է 1249 թ. վերաբերող վկայությամբ և այն շարունակվում է մինչև 1443 թ., այնուհետև սկսվում է մի նոր ժամանակաշրջան, որի առաջին վկայությունը վերաբերում է 1187 թ. և ապա դեպքերի հաջորդական շարադրությունը շարունակվում մինչև 1311 թվականը, որով և վերջանում է ժամանակագրության A տարբերակը։ Նկատի ունենալով ժամանակագրության վերոհիշյալ կառուցվածքը, կարծում ենք, որ այն կազմվել է տարբեր անձնավորությունների կողմից։*

*Ուսումնասիրությունը հեշտացնելու նպատակով ժամանակագրությունը պայմանական կերպով բաժանում ենք երկու մասի՝ առաջին մաս՝ 1249—1443 թվականների և երկրորդ մաս՝ 1187—1311 թվականների դեպքերով։ Ժամանակագրության A տարբերակի առաջին մասի վերջին տարեթվի՝ ՊՂԲ (= 1443), դիմաց կարդում ենք.*

*«Զտէր Կիրակոս կաթողիկոսն փոխեցին, վասն նախանցոյ և Մակուեցին նստաւ ղաքալով և թուրքով։ Եւ զիս և Սարգիս վարդապետն տօգանել տվին, զինչ վատութիւն, որ արարին՝ կաթողիկոսին և Սարգիս վարդապետին և ինձ. աստուած թողոյ նոցա զմեղս իւրոց»։[1] (Ընդգծումը մերն է— Վ. Հ.)։*

---

[1] Վերոհիշյալ հատվածը Փիրղալեմյանը վերցնելով Ա. Դավրիժեցու «Պատմությանը» առընթեր գտնվող ժամանակագրությունից, մեջ է բերում «Նօտարք Հայոց»-ի մեջ և այնուհետև տալիս հետևյալ ծանոթագրությունը. «Սոյն տարեգրութեան հեղինակն՝ ինձ թուի թէ Թոմայ Մեծոփեցին է, որ էր ինքն ժամանակակից Կիրակոսի և էր մինն ի գլխաւոր աշխատող վարդապետացն՝ որք պատճառ եղեն հաստատութեան կաթողիկոսութեան ի սուրբ

Վերոհիշյալ հատվածի «զխս» և «ինձ» բառերի տակ անշուշտ թաքնված է ժամանակագրության հեղինակը, որի ով լինելը հնարավոր է լինում պարզել Թովմա Մեծոփեցու հիշատակարանի համապատասխան դեպքերի նկարագրության միջոցով։ Թ. Մեծոփեցին իր հիշատակարանում խոսելով Կիրակոս Վիրապեցու աքսորման հանգամանքների մասին, ավելացնում է. «Եւ կատարեցին զչար խորհուրդս իւրեանց. և ապա սկսան զսպասաւոր վարդապետք էջմիածնին զվարդապետն Կիրակոս Ռշտունեաց և զրաբունապետն մեր զՍարգիս, ի սուրբ ուխտէն Սալնապատայ մատնել անօրինաց. ի միոյն առին տասներեք հազար դահեկան և ի միւսոյն վեց հազար դահեկան, *մատնութեամբ երկու եպիսկոպոսացն Զաքարէի և Անաօնի»*։[1] (Ընդգծումը մերն է— Վ. Հ.)։

*Ինչպես տեսնում ենք Մեծոփեցու մոտ տուգանված երկու վարդապետներն էլ հիշված են անվանապես՝ Կիրակոս Ռշտունցի և Սարգիս րաբունապետ Սալնապատի ուխտից (վերջինս գտնվում է Վանից 6 կիլոմետր հարավ-արևելք, Վարագի ստորոտում, ձորի մեջ)։ Այստեղից դժվար չէ եզրակացնել, որ Մեծոփեցու հիշատակարանի «զրաբունապետն մեր զՍարգիս ի սուրբ ուխտէն Սալնապատայ» նույն ինքը ժամանակագրության մեջ հիշված Սարգիս վարդապետն է, իսկ հիշատակարանի՝ Կիրակոս Ռշտունյաց վարդապետը նույն ինքը ժամանակագրության համապատասխան մասի հեղինակը։ Այսպիսով, Փիրղալեմյանի այն կարծիքը, թե առաջարկվող ժամանակագրության հեղինակը իբր թե Թ. Մեծոփեցին է, ճիշտ չէ։ Եթե ժամանակագրության A տարբերակի առաջին մասի վերջին եզրն ավարտվում է 1443 թվի՝ հեղինակին վերաբերող վկայությամբ, որով էլ վերջանում է Կ. Ռշտունցու ժամանակագրությունը, ապա նրա առաջին մասն ամբողջությամբ չենք կարող վերագրել Կ. Ռշտունցու հեղինակությանը։ Մեր ուսումնասիրությունը ցույց տվեց, որ A տարբերակի, առաջին մասի 1249—1358 թվականներին և 1381—1443 թվականներին վերաբերող վկայություններն առանձին բնագրեր են և որ Կ. Ռշտունցու գրչին պատկանում է միայն վերջինս։ Այսպիսով ժամանակագրության A տարբերակը կազմված է իրարից անկախ և իրար հետ կապ չունեցող երեք հատվածներից՝ 1249—1358 թ. թ., 1381—1443 թ. թ. և 1187—1311 թ. թ., որոնք հետագայում որևէ մեկի կամ Կիրակոս Բանասերի կողմից մեխանիկորեն միակցվել են իրար։*[2]

*Այս ենթադրությունը մեզ ավելի հավանական է թվում, որովհետև նախ էլղանության վերաբերող առանձին մի ժամանակագրություն իրոք եղել է և*

---

*էջմիածին» (էջ 130, ծանոթ. 1)։ Ինչպես տեսնում ենք, սույն ծանոթագրության մեջ, Փիրղալեմյանը վերոբերյալ վկայությունը համարում է ինչ որ տարեգրության հատված։ Եվ որովհետև այն ժամանակով համընկնում է Թ. Մեծոփեցու ժամանակաշրջանին, ուստի նա եզրակացնում է, որ ամբողջական ժամանակագրության հեղինակը կարող էր Թ. Մեծոփեցին լինել։*

*[1] «Թովմա Մեծոփեցու Յիշատակարանը» հրատ. Կ. Կոստանեանց, Թիֆլիս, 1892 թ., էջ 81-82։*

*[2] Ինչպես հայտնի է, Առ. Դավրիժեցին մի շարք մանր ժամանակագրություններ կորուստից փրկելու նպատակով բերել է իր «Պատմության» վերջին մասում (էջ 620—650), որոնց ավելացրել է նաև իր ժամանակի դեպքերը։ Սակայն նա ենթադրելով, որ այդ ժամանակագրություններն անկարգ են և խառնիխուռն, փորձել է կարգավորել՝ իր ձեռքի տակ գտնվող բոլոր բնագրերի առանձին վկայությունները միացնելով իրար դասավորել է հաջորդաբար, այսպես տարալուծելով յուրաքանչյուր բնագիր։ Սույն երեք բնագրերի նկատմամբ այդպիսի մի բան կարող էր անել նաև Կիրակոս Բանասերը, սակայն նա վարվել է ոչ թե Ա. Դավրիժեցու նման, այլ յուրաքանչյուր բնագիր թողել է այնպես, ինչպես որ կա և ապա մեխանիկորեն կցել իրար։*

պահպանվել № 3189 ժողովածուի 91 թերթում, և որ ավելի կարևոր է, այդ ժամանակագրությունը վերջանում է, ճիշտ այն վկայությամբ (շեյխ Ուվեյսի խան նստելով), որտեղից մեր կարծիքով, սկսվում է Կ. Ուշտունցու կազմած ժամանակագրությունը։ Ճիշտ է, հիշյալ ժամանակագրությունն իր ոճով և հաճախ էլ տարեթվերի վկայությամբ տարբերվում է A տարբերակի առաջին հատվածից, սակայն, սոսկ այն փաստը, որ էլղանության վերաբերող առանձին ժամանակագրություն մեզ արդեն հասել է, ցույց է տալիս, որ հնում կարող էր գոյություն ունենալ նման մի այլ ժամանակագրություն ևս։

Երկրորդ՝ Կիրակոս Ուշտունցու կազմած ժամանակագրության երկու այլ տարբերակ գտնում ենք Նիկոմեդիայում հրատարակվող «Հայրենասէր» երկշաբաթաթերթի 1853 թվի ապրիլի 1-ի (№ 70) համարում (սույն տարբերակը այսուհետև կանվանենք Б) և Մատենադարանի № 519 ժողովածուի 114բ էջում (Г տարբերակ)։ Б տարբերակը սկսվում է 1385 թվի Որոտնի գրավման և Յոհան Որոտնեցու մահվան վկայությամբ և վերջանում ոչ թե 1443 թ. Կիրակոս Վիրապեցու աքսորման և Կիրակոս Ուշտունցու և այլոց տուգանման վկայությամբ, ինչպես A տարբերակում է, այլ 1467 թ. Ջահան շահի սպանության վկայությամբ։ Իսկ Г տարբերակը սկսվում է 1381 թ. Թոխթամիշի Թավրիզ արշավելու և վերջանում է 1429 թ. Շահռուխի Հայաստան արշավելու վկայությամբ։ Г տարբերակը վերջից դժբախտաբար թերի է և մենք հնարավորություն չունենք իմանալու, թե սույն տարբերակի վերջին սահմանն ավարտվում է 1443 թե՞ 1467 թվի վկայությամբ։

Եթե նկատի չունենանք Б տարբերակի Ջահան շահին վերաբերող վերջին երեք վկայությունները, ինչպես նաև Г տարբերակի թերի մասը, ապա այդ երկու տարբերակներն իրենց ծավալով ծածկում են A տարբերակի Կիրակոս Ուշտունցու կազմած ժամանակագրությանը։

Մինչև հիմա հրատարակված էր Կիրակոս Ուշտունցու ժամանակագրության Б տարբերակը, որը Փիրղալեմյանը վերագրել է Մկրտիչ քահանային,[1] իսկ միևնույն ժամանակագրության մի այլ տարբերակի հատվածը, որը գտնըվել է Առ. Դավրիժեցու ձեռքի տակ, նա վերագրել է Թովմա Մեծոփեցուն։[2] Մինչդեռ Փիրղալեմյանը երկու դեպքում էլ սխալվում է։ Որ քննության ենթակա ժամանակագրության A տարբերակի Կիրակոս Ուշտունցու հատվածն իրոք մոտ է նրա սկզբնական բնագրին և որ վերջինս հետագայում կարող էր խմբագրման ենթարկվել, ինչպես Б տարբերակում, այդ իմիջի այլոց երևում է ուշագրավ հետևյալ հանգամանքից։ Բանն այն է, որ Կիրակոս Ուշտունցու

---

1 Սույն ժամանակագրությունը և 1469 թվի մի հիշատակարան գտնվել է. Բյուրականի սուրբ Աստվածածնի եկեղեցու «Յիսուս Որդի» ձեռագրում։ Ամբողջ ձեռագիրն ընդօրինակել է Մկրտիչ քահանան 1469 թ.։ Պողոս Պետրոսյան վարդապետը սույն ձեռագրից 185․ թվին ընդօրինակելով հիշատակարանն ու ժամանակագրությունը, ուղարկել է «Հայրենասէր»-ին, որի էջերում հրատարակվել է 1853 թ.։ Փիրղալեմյանը նկատի ունենալով ժամանակագրության վերջին եզրը, որը վերջանում է 1467 թ. Ջահան շահի սպանության վկայությամբ, մի կողմից և 1469 թվի հիշատակարանը մյուս կողմից, եզրակացրել է, որ ժամանակագրությունը պատկանում է Մկրտիչ քահանային և վերջինիս անունով էլ բազմաթիվ քաղվածքներ բերել «Նոտարք հայոց»-ի էջերում։ Փիրղալեմյանը «Նշխարք պատմութեան հայոց» անտիպ աշխատության Բ հատորում այդ առթիվ գրում է. «Սոյն Յիսուս որդի գրողն Մկրտիչ քահանայ ոճն լեալ է և համառօտ տարեգրութիւն մի՛ ևս ունի, զոր ուրոյն ընդօրինակեալ եմ», էջ 200, Ձեռ. № 4515։

2 «Նոտարք հայոց», էջ 130, ծանոթ. 1։

ժամանակագրությունն ամբողջությամբ, այսինքն՝ սկսած 1381 թվից մինչև 1443 թիվը, Կիրակոս Վիրապեցու աքսորման հանգամանքը և Կիրակոս Ռշտունցու և այլոց տուգանման վկայությունները, գտնում ենք նաև Առ. Դավրիժեցու Պատմության առընթեր ժամանակագրության մեջ (էջ 627—628), իսկ առաջարկվող ժամանակագրության Б տարբերակի միայն 1457—1469 թթ. վերաբերող վերջին երեք վկայություններն այնտեղ չենք գտնում։ Այս փաստերը մեզ բերում են այն ենթադրության, որ Առ. Դավրիժեցուն հասել է Կիրակոս Ռշտունցու ժամանակագրության սկզբնական օրինակը կամ նրան մոտ մի տարբերակ, այդ պատճառով էլ Առ. Դավրիժեցու մոտ գտնում ենք 1443 թվին վերաբերող վերոհիշյալ վկայությունները, բայց չենք գտնում Ջահան շահին վերաբերող վերջին երեք վկայությունները։ Ամենայն հավանականությամբ Մկրտիչ քահանան ժամանակագրության սկզբնական օրինակի 1443 թվին վերաբերող վերոհիշյալ վկայությունները, համարելով ավելորդ բան, դուրս է գցել, փոխարենն ավելացնելով իր ժամանակի կարևոր եղելություններից երեք վկայություն։

Վերոհիշյալ ենթադրությունը ճշտվում է նաև նրանով, որ A տարբերակում Կիրակոս Ռշտունցու ժամանակագրության նախավերջին՝ 1440 թ. վերաբերող վկայությանը հաջորդում է 1443 թ. վերաբերող վկայություն (ժամանակամիջոցը երեք տարի), իսկ Б տարբերակում 1440 թվի միևնույն վկայությանը հաջորդում է 1457 թվին վերաբերող վկայություն (ժամանակամիջոցը տասնյոթ տարի)։ Այստեղից, ինչպես դժվար չէ եզրակացնել, Կիրակոս Ռշտունցու ժամանակագրությունը ենթարկվել է մասնակի խմբագրման, որի հետևանքով էլ այնտեղ ջնջվել են իսկական հեղինակի ով լինելու հետքերը։

Եթե թեական ձևով որոշեցինք Կիրակոս Ռշտունցու կողմից կազմած ժամանակագրության սկզբի եզրը, ապա հաստատ կարելի է ասել, որ վերոհիշյալ ժամանակագրության վերջին եզրը, 1443 թվից այս կողմը չի անցնում։ Սակայն № 582 ժողովածուի մեջ հետաքրքրող ժամանակագրությունը չի վերջանում վերոհիշյալ դեպքով։ Ինչպես ասացինք, ժամանակագրության երկրորդ մասը սկսվում է 1187 թվի դեպքով (Սալահեդդինի կողմից Երուսաղեմի գրավումով) և վերջում 1311 թվականին վերաբերող մի վկայությամբ։ Ժամանակագրության վերոհիշյալ հատվածը, ինչպես դժվար չէ նկատել, ժամանակագրական տեսակետից ընդգրկում է A տարբերակի առաջին մասի միևնույն ժամանակամիջոցում տեղի ունեցած այլ դեպքերի հիշատակությունը, սակայն անիմաստ կլիներ վերոհիշյալ հատվածը վերագրել միևնույն հեղինակին, որովհետև եթե իսկապես, ամբողջ ժամանակագրությունը դուրս եկած լիներ նույն հեղինակի գրչից, ապա այն տարօրինակ ձևով բաժանված չէր լինի երկու միմյանցից անկախ և մերձավորապես միմյանց ծածկող ժամանակաշրջանների վերաբերող դեպքերի շարադրության առանձին հատվածների։ Ավելի հավանական է ենթադրել, որ առաջարկվող ժամանակագրության երկրորդ մասը առանձին ժամանակագրություն է, որևէ մեկի կողմից կազմված, որը հետագայում ավելացվել է Կիրակոս Ռշտունցու կազմած ժամանակագրության և կամ Կիրակոս Ռշտունցու կազմած ժամանակագրությունը Կիրակոս Բանասերը ընդօրինակել է № 582 ժողովածուի մեջ, իսկ այնուհետև վերջինիս շարունակությանն էլ կցել ժամանակագրության երկրորդ մասը։ Այսպիսով, ողջ ժամանակագրությունը, ունենալով ընդօրինակության նույն ձեռագիրը, մեզ ներկայանում է ամբողջական ձևով։ Որ ժամանակագրության երկրորդ

մասը առանձին ժամանակագրություն է և կապ չունի ժամանակագրության առաջին մասի հետ, այդ երևում է իմիջի այլոց նաև նրանից, որ ժամանակագրության առաջին մասում Կիլիկիային վերաբերող ոչ մի վկայության չենք հանդիպում, մինչդեռ երկրորդ մասը բացառապես վերաբերում է Կիլիկիայի XIII—XIV դարերի պատմությանը։

Էլղանության վերաբերող ժամանակագրության վկայությունները, բացառությամբ առանձին մի քանի վկայությունների, ստույգ չեն և չեն հաստատվում ինչպես Ռաշիդ-ադ-դինի[1] վկայություններով, այնպես էլ Հեն-Պուլի հաշվումներով[2]։

Կիրակոս Ռշտունցու տեղեկությունները ժամանակակցի վկայություններ են, որոնք չնայած ունեն առանձին շեղումներ՝ Գրիգոր Խլաթեցու,[3] և Թովմա Մեծոփեցու[4] որոշ վկայություններից, ասենք Հովհան Որոտնեցու մահվան վկայությունը և այլն, բայց մեծ մասամբ հաստատվում են ինչպես վերոհիշյալ, այնպես էլ ուրիշ հեղինակների կողմից։[5] Առաջարկվող ժամանակագրության վերջին մասի՝ Կիլիկիային վերաբերող վկայությունները, ընդհանուր առմամբ ստույգ են և ընդունելի, օրինակ Երուսաղեմի, Բաղդատի, Անտիոքի, Տրապոլիսի, Հռոմկլայի գրավման վկայությունները և այլն։

Ներկա հրատարակության համար հիմք ընդունել ենք առաջարկվող ժամանակագրության А տարբերակը, իսկ Б և Г տարբերակների տարընթերցվածները դրել ենք ստորատակ։

---

1 „Сборник летописей" том III, Моск.—Ленингр. 1946.

2 „Мусульманские династии" СПБ, 1899, стр. 182։ Հմմտ. Հուլաուին, Աբաղային, Արղունին և այլոց վերաբերող վկայությունները։

3 «Յիշատակարան աղէտից», հրատ. Գր. Խալաթեանց, Վաղարշապատ, 1897։

4 «Պատմութիւն Լանկ-Թամուրայ և հաջորդաց իւրոց», Փարիզ, 1860։

5 Զաքարիա կաթողիկոսի սպանության, Շահռուխի դեպի Հայաստան կատարած արշավանքների և այլ վկայությունները հմմտ. «Նոտարք հայոց», էջ 1, 60, Թ. Մեծոփեցի, «Պատմութիւն...», էջ 76, 110—120, Ց. Տաշեան, «Ցուցակ հայերէն ձեռագրաց», Վիեննա, 1895, էջ 872—873, Հ. Աճառեան «Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի» Վիեննա, 1910 թ. էջ 113, Ե. Թոփճեան «Ցուցակ ձեռագրաց Դատեան Խաչիկ վարդապետի» Վաղպատ, 1898, մասն Ա, էջ 27, Ղ. Փիրղալէմեան, «Նշխարք պատմութեան հայոց», անտիպ, Ձեռ. № 4515, էջ 150—153 և այլն։

## VI.

ՌՂԸ (1249) Հուլաուն։[1] 152բ
ՁԺԲ (1263) Աբաղան։[2]
ՁԼ (1281) Ահմատն։[3]
ՁԼԱ (1282) Արղուն։[4]
ՁԽ (1291) Քաղաթուն։[5]
ՁԽԱ (1292) Բայտօղան։[6]
ՁԽԳ (1294) Ղազան։[7]
ՁԽԶ (1297) Մահմաան։[8]
ՁԿԵ (1316) Բուսաիտն։[9]
ՁԿԸ (1319) Էրինջ և Ռումչին նստան։[10]
ՁՀԶ (1327) զԴմշ[խ] խոճէն սպ[ան]ին և Չոպան փախաւ։[11]
ՁՁԵ (1336) Արփաքուն և Մուսին։[12]
ՁՁԶ (1337) Ահմատ ամբարչին։[13]
ՁՁԸ (1339) Սայի բէկն։[14]
ՁՂԳ (1344) Թամուրթաշի որդին շեխ Հասան կին եսպան։[15]
ՊԶ (1357) զԱշրաֆ եսպան Ճանիբէկն[16] և Ցախին նստաւ։[17]
ՊԷ (1358) Վայիսն։[18]

ՊԼ (1381) միւս եղբայրն սուլտան Ահմատն զԲ (2) եղբայրն եսպան և ինքն նստաւ։[19]

ՊԼ (1381) Թուխթամիշ ղան Ղրիմին, առաքեաց զօրս ի Դաւրէժ և Ի (20) բիւր գերի տարաւ։[20]

ՊԼԴ (1385) թուրքն եառ զՈրոտն.[21] և Կախիկն[22] և Մազաքիա[23] վարդապետքն մեռան։

ՊԽԲ (1393) զտէր Թորոսն[24] և զտէր Զաքարայն սպանին։[25]

ՊԼԵ (1386) Թամուրն եկաւ ի Դավրէժ և ի Նախչվան և զՎան. ‖ կոտորեաց աւելի քան ԳՌ (3000) մարդ։[26] 153ա

ՊԽԱ (1392) դարձեալ եկաւ ի Բաղդաա և արար բազում աւերս ի Միջագետս և դարձաւ յաշխարհն իւր։[27] Եւ էր, սուլ[տ]ան Ահմատի որդին, սուլտան Տահիրն[28] ի Ցալնջոյ բերթն. և Վրաց թագաւորն[29] եկն ի վերայ բերթին և էառ, և սուլտան Տահիրն

20—21-րդ տողը Б չիք։ 20Г ի ՊԼ թվին Թուղթամիշն, Ղրիմայ, զաւրս։ 21 Г Թաւրէզ, գերեաց ԲՃՌ հոգի փխ. ՛Ի բիւր գերի տարաւ։ 22—23-րդ տողը Г չիք։ 22 Б ՊԼԴ թուին, էառ։ 24 Б Զաքարիայն։ 25 Б Լե[նկ] Թամուրն, եկավ, Դաւրէժ, Նախչուան, Г եկաւ ի Դավրէժ և ի Նախչվան չիք։ 26 Г կոտորեաց զՎան, Б զԳՌ, Г Վ հոգի փխ. աւելի քան ԳՌ մարդ։ 27 Г Թամուրն փխ. դարձեալ, Б եկավ։ 27—28 Г արար բազում աւերս չիք։ 28 Б Միջագետն, Г Միջագէտս, Г և դարձաւ յաշխարհն իւր չիք։ 28—29 Б սուլթան Ահմաթ։ 29 Б սուլթան, Գայիր, յԱլընջոյ բերդն, Г Ցալընջու բերդն։ 30 Б թագաւոր, БГ բերդին, Г բռնեց փխ. էառ, Б սուլտան փխ. և սուլտան, Г զսուլտան, Б Տայիր։

տարաւ ի Տփխիս։ Եւ Թամուրն իբրև լուաւ զայս, ՊԽԹ (1400) դարձեալ եկաւ ի վերայ Վրացն և էառ շատ գերի և գնաց յաշխարՀ[Ն] իւր և սատակեցաւ ՊԾԳ (1404)։[30]

ՊԾԵ (1406) Ղարա Ուսուֆն, որ ի Թամուրէն փախաւ, և էջ ի Շամբն, և կապանօք տարան ի Մսր.[31] և անդ[ի] եկն ի Կարբոյ երկիրն և գնաց ի Դաւրէժ և եառ մինչև ի Սուլթանիայ։[32]

ՊԾԷ (1408) դարձաւ ի յԱրճէշ և ի յԱրծկէ և Շմեզդին ընկերեալ նմայ, արարին շատ աւեր Վանա և Ոստանայ։[33]

Եւ միւս տարին Շմեզդնի Հեծելն եկին և այրեցին զՇատուտն։[34] Եւ լարկացեալ Ամիր Եզդին գնաց և այրեաց Կ (60) գեղ ի Բաղիշոյ։[35]

Յառաջին գալն ՇաՀռուՀին ՊՀ (1421) և Խոյն տանուտէր, յաղթեաց Թուրքմանին և գնաց։[36]

Ի (2) գալն ՊՀԸ (1429) և աղեղնաւոր[37] տանուտէր, կոտորեաց զԹուրքն ի Սալամաստ[38] և զԲուսախտն զան եղիր և գնաց յաշխաՀ[Ն] իւր։[39] 153ր

Գ (3) գալն ՊՁԵ (1436) և Խեցգետին տանուտէր։[40]

ՊՁԷ (1438) Ղուլն եկաւ ի յԵզընկէն[41] և սպանաւ Սքանդարն ի յորդոյն և նստաւ Ջաանշէն։[42]

ՊՁԹ (1440) Շամշուլտէ առաւ և ԳՌ (3000) կոտորեցաւ և ԹՌ (9000) գերեցաւ։[43]

ՊՂԲ (1443) զտէր Կիրակոս կաթողիկոսն փոխեցին, վասն նախանցոյ և Մակուեցին նստաւ զաբալով և Թուրքով։ Եւ զիս և Սարգիս վարդապետն տօգանել տվին, զինչ վատութիւն, որ արարին՝ կաթողիկոսին և Սարգիս վարդապետին և ինձ աստուած թողոյ նոցա զմեղս իւրեանց։[44]

ՈԼՁ (1187) զԵրուսաղէմ եառ Մսրցին, ՍալաՀադինին։[45]

ՈՁԵ (1236) Թաթար եկաւ։[46]

ՉԷ (1258) Հուլաուն եառ զԲաղդադ։

ՉԹ (1260) Հուլաուն եառ զՀալապ։

ՉԺԷ (1268) Մսրցին էառ զԱնդիոք.[47]

ՉԻ (1271) Լևոն թագաւոր նստաւ։[48]

ՉԼԸ (1289) մեռաւ Լևոն և աքսորեցա[ւ] Կոստանդին կաթողիկոսն և մեռաւ ՅոՀաննէս կաթողիկոս և նստաւ տէր Ս[տե]փանոսն կաթողիկոս։ Եւ զՏրապօլիս եառ Թուրքն։[49]

---

1 Б Տփղիս, Թամուր։ 2 Б գերի արար։ 3 Б ՊԾԳ չիք։ 1—3 Г լուաւ Թամուրն և բարկացաւ եկն ի վերայ Վրաց և գերեաց և գնաց սատակեցաւ փխ. եւ Թամուրն իբրև լուաւ զայս, ՊԽԹ դարձեալ եկաւ ի վերայ Վրացն և էառ շատ գերի և գնաց յաշխարՀՆ իւր և սատակեցաւ ՊԾԳ։ 4 Б Ուսուփ, Г Ուսուփն, փախեաւ ի Թամուրէն։ 5 Б լամբ փխ. Շամբն, Г Շամ, Г տարան չիք, БГ անտի, Б Կարփոյ։ 5—6 Г իԿարբոյ երկիրն և գնաց չիք։ 6 БГ էառ, БГ մինչ, БГ ի չիք, Б Սուլթանիա։ 7 Б Շմզդին, Г Շմըղդին։ 7—8 Б ընկեկեալ նմա, Г ընդ փխ. ընկերեալ։ 8 Г և արարին, Г աւերք, Г ի Վան և յՈստան։ 9 Б ի միւս, Б Շմըժդի, զՇատուվան։ 10 Б Ամուրեզդին։ 9—11-րդ տողը Г չիք, փխ. ՊԾԹ մեծն Գրիգոր Որոտնեցին մեռաւ։ 12 БГ առաջին, Б ՇաՀռուզին, Г Շառուխին, Б էր տանուտէր, Г տանուտէր էր։ 13 յաղթեաց Թուրքմանին և գնաց չիք։ 14 БГ երկրորդ փխ. Բ, Г և չիք, Г աղեղնաւորն, Б էր տանուտէր։ 15 Б Սալամասղ, զԲուսայիզ խան, Б և (գնաց) չիք։ 17 Б երրորդ փխ. Գ, Б էր տանուտէր։ 18 Б ՊՁԵ փխ. ՊՁԷ։ 19 Б յորդւոյն, ՋաՀանշէն։

ՉԽԱ (1292) զՀռոմկլայն եառ Մսրցին և զտէր Ս[տե]փանոսն գերի տարաւ։[50] Ի նոյնս էր ծռազատիկն։[51]

ՉԽԳ (1294) Նստաւ տէր Գրիգորն Անաւարզացին։ Գնաց Հեթում ի դան Ղազան։ Եւ հրամ[ան]ի զանէն աւերել զեկեղեցիս։[52]

Մեռաւ Հեթում ՉԿ (1311)։[53]

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. Հուլաուն իշխել է 1256—1265 թ. թ.։*

*2. Աբաղան իշխել է 1265—1282 թ. թ.։*

*3. Ահմատ, նույն ինքը Թեկուդեր, իշխել է 1282—1284 թ. թ.։*

*4. Արղունն իշխել է 1284—1291 թ. թ.։*

*5. Քեյխատու, որին, համաձայն Ստ. Օրբելյանի կոչել են «Իրնչի Թուրնչի», այսինքն գտար զկորուսեալն» (էջ 482)։ Համտ. Ռաշիդ-ադ-դին* („Сборник летописей", том III, стр. 3'9): *«Իրնչի Թուրնչի» բառերի բացատրությունը տես* К. Патканов „История Монголов по армянским источникам" выпуск I, стр. 98, прим. 60:
*Սա իշխել է 1291—1295 թ. թ.։ Սակայն Ստ. Օրբելյանը վերջինիս իշխանությունը նշում է Խուգաբենդեից հետո (էջ 482)։*

*6. Բայդուն իշխել է 1295 թ. մի քանի ամիս միայն։*

*7. Ղազանն իշխել է 1295—1304 թ. թ.։*

*8. Մուհամմեդ, Խուդաբենդե կամ Ուլջեյտու ղանի իսլամական անունը։ Այս մասին տես վերևում, էջ 111, ծանոթ. 3։*

*9. Տես վերևում, էջ 111, ծանոթ. 3։*

*10. Այս երկու անձնավորությունը մոնղոլական զորավարներ էին։ Սրանց մասին այլ առիթով հաղորդագրություն պահվել է նաև V ժամանակագրության մեջ (էջ 110)։ Բնագրի «Ռումչին» անվանը հանդիպում ենք նաև Ստ. Օրբելյանի մոտ «Խուռումչին» ձևով (էջ 476)։*

*11. Տես և հմմտ. վերևում, էջ 110։ Չորանի մասին տես էջ 100, ծանոթ. 135։*

*12. Հմմտ. վերևում, էջ 110, տես էջ 111, ծանոթ. 6։*

*13. Ռաշիդ-ադ-դինը հիշում է Անբարչի, Մանդու Թեմուրի որդին, որը մահացել է 1294 թ. սեպտեմբերի 24-ին Նախիջևանում (էջ 136)։ Իհարկե խոսքն այստեղ սրա մասին չէ, այլ հավանաբար Մուհամմեդ ղանի, որը գահ բարձրացավ Հասան Բուզուրգի օգնությամբ և իշխեց 1336—1337 թ. թ., ըստ V ժամանակագրության (էջ 110), 1436—1438 թ. թ., ըստ Լեն-Պուլի* („Мусульм. династии", стр. 183) *ու Մյուլլերի* („История ислама", том III, стр. 288)։ *Բնագրի «Ահմատ» անունն արդյո՞ք Մուհամմեդ (Մահմեդ) անվան աղճատումը չէ։*

*14. Իսկական անունը Սաթիբեկ, Աբու-Սեյիդի քույրը, համաձայն Բարտոլդի իշխել է 1339 թ., իսկ Լեն-Պուլի՝ 1338—39 թ. թ. (էջ 183)։*

*15. Խոսքը վերաբերում է Թամուրտաշի որդի Հասան Կուչյուկին, որին սպանեց իր կինը 1343 թ. սիրային հողի վրա։ (Հմմտ.* Мюллер, „История ислама", том III, стр. 308)։

*16. Հեղինակը հավանաբար նկատի ունի Հասան Կուչյուկի եղբայր Աշրաֆին։ Հասան Կուչյուկը Մուհամմեդ շահին սպանելուց հետո (էջ 112, ծանոթ. 8), գրաված ողջ տերիտորիան Հասան Բուզուրգի հետ միասին բաժանում են իրար մեջ։ Հասան Կուչյուկը նստում է Թավրիզում, իսկ Հասան Բուզուրգը՝ Բաղդադում։ Երկու Հասանները Փ. Ասիական հողերն էլ բաժանում են երկու մասի։ Մի մասի կառավարիչ նշանակվում է վերոհիշյալ Աշրաֆը, իսկ մյուսին՝ Արտենին* (Мюллер, „История ислама", том III, стр. 288): *1343 թ. Հասան Կուչյուկի սպանությունից հետո (ծանոթ. 15), վերջինիս եղբայր Աշրաֆը Փ. Ասիայից շտապում է Թավրիզ և իրեն հայտարարում Հասան Կուչյուկի հաջորդ։ Էմիրներից մի մասը դժգոհելով դրանից, բանակցում են Ոսկե Հորդայի խան Ջանիբեկի հետ և վերջինիս օգնությամբ 1356 թ. Ադրբեջանում սպանում Աշրաֆին։*

*17. Խոսքը հավանաբար վերաբերում է Խորասանում իշխող Սերբեդարիդների 7-րդ շահ Ցախյաին, որն իշխել է 1352—1355 թ. թ.։*

*18. Կարծում ենք հեղինակը նկատի ունի Ջելայիրների (Իրաքում) հիմնադիր չեյխ Հասան*

Բուղուրղի որդուն՝ շեյխ Ուվեյսին, որն իշխել է 1356—1374 թ. թ. ըստ Լեն-Պուլի, իսկ ըստ Մյուլլերի՝ 1356—1375 թ. թ. („История ислама", том III. стр. 309):

19. Խոսքը վերաբերում է շեյխ-Ուվեյսի որդու և հաջորդ Հուսեյնի (1374—1382 թ. թ.) սպանությանը։ Հուսեյնը թույլ մարդ էր, այդ պատճառով նրա դեմ իրար ետևից ապստամբեցին իր ազգականները և էմիրները։ Այդ ելույթներին միախառնվեց նաև Մուզաֆֆարիտների (սրանք իշխում էին Ֆարսում, Քերմանում և Քուրդիստանում), Ջելալ-ադ-դին շահ-Շուջի (1359—1384 թ. թ.) հարձակումը Բաղդադի և հյուսիսային Միդիայի վրա, որոնք պատկանում էին Հուսեյնին, իսկ շահ Շուջի եղբայր սուլթան Ահմեդը հարձակվեց Հուսեյնի աթոռանիստ քաղաքի՝ Թավրիզի վրա։ Ահմեդը գրավելով Թավրիզը սպանում է Հուսեյնին և ինքն իշխում Թավրիզում մինչև 1410 թ.։

20. Թոխթամիշ Ղիյաս-ադ-դին, Ոսկե Հորդայի (արևելյան խփչաղների) սուլթան, իշխել է 1376—1391 թ. թ.։ Թոխթամիշի սույն արշավանքի տարեթիվը ստույգ չէ։ Հմմտ. «Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց արարեալ Թովմա վարդապետի Մեծոփեցւոյ», Փարիզ, 1860, էջ 13—14, «Յիշատակարան աղէտից Գրիգոր Խլաթեցւոյ», Վաղպատ, 1897, էջ 2։ Վերջիններս Թոխթամիշի արշավանքը նշում են 1386 թ. ներքո։ Իսկ Գր. Խլաթեցին հիշում է նաև օրը՝ հունվարի 5-ին («Ծրագալույցի աւր Յայտնութեան»)։ Հմմտ. Мюллер, „История ислама", том III. стр. 310, 318:

21. Թ. Մեծոփեցին (էջ 17) և Գր. Խլաթեցին (էջ 5) Լանկ-Թեմուրի կողմից Որոտնի գրավումը նշում են 1387 թ.։ Հմմտ. Սամ. Անեցի, էջ 170։

22. Խոսքը Հովհան Որոտնեցու մասին է, որն ըստ Թ. Մեծոփեցու (էջ 16) մահացել է 1388 թ. հունվարի 13-ին (Նավասարդի 30-ին), իսկ ըստ Գր. Խլաթեցու 1386 թ. հունվարի 7-ին (էջ 1)։ Այս մասին տես Օրմանյանի ժամանակագրական հաշիվները «Ազգապատում», էջ 1979։

23. Մաղաքիա վարդապետ Ղրիմեցի, ունիթոռների կատաղի հակառակորդ, մահացավ 1384 թ.։ Թ. Մեծոփեցու հաղորդմամբ «Դեղակուր եղեալ ի սանամօրէն իւրմէ յաղթարմայէ» (էջ 16)։ Իսկ ունիթոր Մխիթար Ապարանեցին այլ վկայություն է տալիս, ըստ որի, «Մաղաքիա յանկարծ մեռաւ և ի վերայ մեր արկին զյանցանս՝ թէ ունիթօրք սպանին զնա թունով» (Չամչեան, «Պատմութիւն Հայոց», հատոր Գ, էջ 449)։

24. Կարծում ենք խոսքը Սսի կաթողիկոս Թեոդորոս Բ-ի (1382—1392 թ. թ.) մասին է, որին սպանել է Օմարը 16 այլ անձնավորությունների հետ (Թ. Մեծոփեցի, էջ 71)։ Թ. Մեծոփեցին սպանությունը նշում է 1393 թ. տակ, բայց ավելացնելով «յանցեալ ամին», այսինքն՝ 1392 թվին։

25. Զաքարիա Բ. Աղթամարի կաթողիկոս (1378—1393 թ. թ.)։ Սպանվել է քրիստոնեական հավատն ուրանալուց հրաժարվելու պատճառով։ «Նօտարքում» մահը դրված է 1393 թ. հունիսի 26 (էջ 1)։ Հմմտ. Օրմանյանի հաշվումները («Ազգապատում», էջ 1994)։

26. Հմմտ. Սամ. Անեցի, էջ 171, Գր. Խլաթեցի, էջ 9, Թ. Մեծոփեցի, էջ 17—30։ Լենկ-Թեմուրը, համաձայն Ս. Անեցու շարունակողի Վանը գրավել է 1387 թ. սեպտեմբերի 5-ին՝ հինգշաբթի օրը։

27. Հմմտ. Սամ. Անեցի էջ 171։ Թ. Մեծոփեցին այս արշավանքը նշում է 1395 թ. ներքո (էջ 44), իսկ Գր. Խլաթեցին՝ 1393 թ. (էջ 10)։

28. Բնագրի «սուլտան Տահիրն», Բաղդադի իշխող սուլթան Ահմադի որդին էր։ Տես վերևում ծանոթ. 19։

29. Վրաց թագավոր Գեորգի 7-րդը, որն իշխել է 1395—1407 թ. թ.։ Լենկ-Թեմուրի կողմից Երնջակի գրավման մասին եղած տեղեկությունները համառոտ են և հաճախ էլ հակասական։ Համաձայն Zafar nâma-ի Մինորսկին Երնջակի վրա Թեմուրլանի առաջին արշավանքը գնում է 1387 թ. ներքո (M. V. Minorski „Transcaucasica" Paris, 1930, p. 94—95. Հմմտ. Թ. Մեծոփեցի, էջ 17), ըստ երևույթին Երնջակի պաշարումն սկսվել է Թեմուրլանի կողմից 1387 թ. Որոտնի գրավման (ծանոթ. 21) ժամանակվանից։ Գր. Խլաթեցին Թեմուրլանի կողմից Վանի գրավումից հետո նշում է Երնջակի պաշարումը։

Այլ և զամուրն Երնջակին
Թողում ասել զանցս նորին
Որ ի յաւուրց Աւագ Զատկին
Մինչ ի տաւն Սըրբոյ Խաչին ...

Ծանր զաւրաւք պաշարեցին,
Բայց վընասել ոչ կարացին։
Ապա յետոյ դարձ արարին
Յաշխարհն իւրեանց ուստի եկին» (էջ 9—10)։

Եթե ընդունենք, որ այս պաշարումը տեղի է ունեցել Վանի գրավման տարում՝ 1387 թ., նշանակում է Գ. Խլաթեցին ևս հաստատում է վերոհիշյալ տեղեկությունները։

Գր. Խլաթեցին Երնջակի պաշարման տևողությունը նշում է 15 տարի.

«Տասնուհինգ ամ խըսարեցին
Ջբերդն Երնջակ ապա առին» (էջ 11)։

Ալիշանն այս վկայությունն ուղղում է. «Ընդ երկար ամիսս» («Սիսական», էջ 364)։ Սակայն կան նաև օտար աղբյուրներ, որոնք հաստատում են, որ Երնջակի պաշարումը ձգձգվելով տևել է մի քանի տարիներ։ Վրաց աղբյուրներից XV դարի Անանունը վկայում է, որ վրաց Գեորգի 7-րդը 1396 թ. արշավեց Երնջակի վրա և կոտորեց սուլթանի որդու զորքը, որն Ալինջա (Ալինջանի) բերդումն էր կանգնեցրած»... («Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», Հ. Բ, էջ 76), հավանաբար հենց այս ժամանակ էլ վրաց թագավորը պաշարված բերդեց ազատել է Ահմատի որդի Տահիրին։ Մի այլ տեղ վրաց աղբյուրները Երնջակի պաշարումը նշում են 10 տարի (Նույն տեղ, էջ 107—108)։ Սակայն Կլավիխոն այն նշում է 3 տարի (տես «Ուղեգրություններ», Երևան, 1932, հատոր Ա, էջ 116)։

Գր. Խլաթեցու հավաստիացումն այն մասին, թե Երնջակը գրավել են 15 տարի պաշարելուց հետո, իսկ այսչափ տևողությունը պետք է հասկանալ ընդհատումներով, առաջարկվող ժամանակագրությունը ևս հաստատում է, ըստ որի Թեմուրլանի 1400 թ. Վրաստան արշավելու ժամանակ Երնջակը տակավին գրավված չէր։ Հետևապես հիմնավոր է Մինորսկու այն ենթադրությունը, թե Երնջակը «շարունակում էր դիմադրել նույնիսկ Վրաստանի 1400 թ. ավերումից հետո» (Նույն տեղ, էջ 95—96)։

30. Լենկ-Թեմուրը մահացել է 1405 թ. փետրվարի 18-ին, 71 տարեկան հասակում (համաձայն Մյուլլերի 71 մուսուլմանական տարի, որը հավասար է քրիստոնեական 69 տարվան „История ислама", том III, стр. 295, прим. I). Չինաստան արշավելու ճանապարհին, Խոքանա գավառի, Օթրար գյուղում։

31. Հմմտ. Սամ. Անեցի, էջ 173։ Թ. Մեծոփեցի, էջ 70։ Ղարա Յուսուֆը նեղվելով Թեմուրից փախչում է Եգիպտոս, որտեղ սուլթան Նասիր Նասիր-ադ-դին Ֆարաջը (1398—1412 թ. թ.) բանտարկում է նրան։ Թեմուրի մահվան լուրը ստանալուց հետո Ֆարաջը բանտից ազատում է Ղարա-Յուսուֆին և ուղարկում Հայաստան։ (Տես և հմմտ. Петрушевский, „Гос-а Азербайдж. в XV в.", „Сборник статей по истории Азербайджана, "выпуск. I, Баку, 1949, стр. 156):

32. Քաղաք Պարսկաստանում, Ղազվինից հյուսիս-արևմուտք։

33. Հմմտ. Սամ. Անեցի, էջ 172—173։

34. Շատուանը գտնվում է պատմական Ռշտունիքում (այժմյան Գավաշում), Նարեկից հյուսիս-արևմուտք, Մոխրաբերդից արևմուտք և Գանձակից հարավ, կարծում ենք հենց այստեղ է գտնվում նաև Շատուանի ձորը, որի մասին հիշատակում է Թ. Արծրունին («Պատմութիւն տանն Արծրունեաց», Ս. Պետերբուրգ, 1887 թ., դպր. Գ. գլ. Բ, էջ 130)։ Ինճիճյանի կարծիքով Շատուանը Դատուանի աղճատումն է («Ստորագրութիւն հին Հայաստանեաց», Վենետիկ, 1822, էջ 533), որն անշուշտ սխալ է։

35. Հմմտ. Սամ. Անեցի, էջ 173։

36. Հեղինակը նկատի ունի Լենկ-Թեմուրի որդի և հաջորդ Շահռուխի (1405—1447 թ. թ.) պատերազմը Կարա Կոյունլու Յուսուֆի որդի Իսկանդարի հետ։ Ըստ Թ. Մեծոփեցու թշնամի բանակները հանդիպում են «ի Վաղարշակերտ, ի դաշտն Բագրևանդայ...» (այժմյան Ալաշկերտը), որտեղ Իսկանդարը չարաչար պարտվում է և փախչում։ Այս մասին մանրամասնությունները տես Թ. Մեծոփեցու մոտ (էջ 80—81)։

37. Г տարբերակը «աղեղնաւորս» բառից հետո ընդհատվում է։

38. Հմմտ. Թ. Մեծոփեցի, էջ 85—86։

39. Հմմտ. Թ. Մեծոփեցի, էջ 106։

40. Հմմտ. Թ. Մեծոփեցի, էջ 101—102։

41. Վկայությունը վերաբերում է Երզնկայի իշխող Օթմանին։ Վերջինիս և Իսկանդարի միջև տեղի ունեցած կռվում Օթմանը սպանվում է։ Տես Թ. Մեծոփեցի, էջ 102—103։

42. Իսկանդարի սպանման մանրամասնությունները տես Թ. Մեծոփեցի, էջ 106—108, ըստ որի Իսկանդարը սպանվել է 1437 թ. (էջ 108)։

43. Բնագրի սույն հատվածից հետո Б տարբերակը շարունակվում է Կարա Կոյունլու Իսկանդարի հաջորդ Ջհան շահին վերաբերող երեք վկայությամբ.

«ՋԶ (=1457) Ջահանշէն առաւ զԱստարաւ։

ՋԺԵ (=1466) Ջահանշէն զԲաղդատ էառ, սա զորդին սպան։

ՋԺԶ (=1467) Ասան բէկ եսպան զՋհանշէն»։

Շամշուլտեյի (Սամշվիլդե) գրավման սույն վկայությունը հմմտ. Թ. Մեծոփեցի, էջ 119—121։ Շամշուլտեի գրավման մասին բավական ընդարձակ տեղեկություններ պահվել է նաև Լենինգրադի Արևելագիտական ինստիտուտի հայկական ձեռագրերի B—120 ձեռագրում գտնըվող Հայսմավուրի հիշատակարանում (B—120 ձեռագիրը Փիրղալեմյանի կողմից հավաքած «Նշխարք պատմութեան Հայոց» հիշատակարանների ժողովածուի 2 մամուլն է միայն)։ Հիշատակարանը դժբախտաբար նույնությամբ ընդօրինակված չէ, այլ Փիրղալեմյանի սովորության համաձայն, ընդօրինակված է համառոտված, չնայած դրան, այնուամենայնիվ Շամշուլտեի գրավման մասին բավական մանրամասնություններ պահվել են այնտեղ։ Հիշատակարանի հեղինակն է գրիչ Հովհաննեսը, ըստ որի Ջահան շահն «եկն և նստաւ ի վերայ Շամշուլտէ քաղաքին աւուրս քառասուն ի գալստեան ծառազարդարի տօնին մինչ ի մեծահրաշ կիրակէին» (էջ 26)։ Այսինքն մարտի 20-ից մինչև մայիսի 5-ը (մինչև Համբարձման տոնը), սակայն այստեղ կստանանք ոչ թե 40, այլ 46 օր։ Մինչդեռ Թ. Մեծոփեցու համաձայն պաշարումն սկսվում է «յաւուր մեծի Զատկին» և այն տևում է «մինչ ի Պէնտէկոստէի օր գալստեան Հոգւոյն սրբոյ». հմմտ. «Նօտարք», էջ 220)։ Այսինքն պաշարումը տևում է 50 օր։ 1440 թ. զատիկը կլինի մարտի 27-ին, իսկ սուրբ Հոգու գալստյան տոնը՝ մայիսի 15-ին, հետևապես Շամշուլտեի պաշարումը սկսվել է մարտի 27-ից և տևել մինչև մայիսի 15-ը, հենց այդ օրն էլ «առին զՇամշուլտէ խաբէութեամբ և երկիւղիւ» ասում է Թ. Մեծոփեցին։ Վերոհիշյալ երկու վկայությունները քաղաքի պաշարման տևողության և գրավման մասին միմյանցից որոշ շեղումներ ունեն։ Թե դրանցից որն է ստույգ, առայժմս դժվար է որևէ բան ասել։ Մատենադարանի № 4470 ժողովածուի (էջ 236) մեջ գտնվող հիշատակարանում ևս խոսվում է Շամշուլտեի սույն նվաճման մասին, բայց այնտեղ նշված է գրավման տարեթիվը միայն։ № 996 Ճառընտիրի 1442 թ. հիշատակարանը Շամշուլտեի պաշարումը Ջահան շահի կողմից նշում է 4 ամիս (էջ 564ա)։

44. Այս մասին տես ներածության մեջ, էջ 113—114։

45. Տես վերևում, էջ 92, ծանոթ. 28։

46. Հեղինակը նկատի ունի մոնղոլների 1236 թ. արշավանքը, տես վերևում, էջ 30, ծանոթ. 31։

47. Տես վերևում, էջ 83, 97, ծանոթ. 96։

48. Հեղինակը նկատի ունի Լևոն Բ թագավորին։

49. Տես վերևում, էջ 98, ծանոթ. 117։

50. Տես վերևում, էջ 99, ծանոթ. 120։

51. Տես վերևում, էջ 108, ծանոթ. 22։

52. Տես վերևում, էջ 87, հմմտ. Ե. Լալաեանց «Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի», 1915, Թիֆլիս, էջ 119—122։

53. Սույն վկայությունը, եթե վերաբերում է Հեթում Բ-ին, ապա բացահայտ սխալ է։ Հեթում Բ-ն դավադրությամբ սպանվել է 1307 թ. նոյեմբերի 17-ին Անազարբայում։ Տես վերևում՝ էջ 88, 89։ Սակայն մի ավետարանի հիշատակարանում կարդում ենք. «Գրեալ ի ձորս խորնի..... ձեռամբ պիտակ անուն քահանայի Կոստ. և ողորմելի գերւոյ Հեթմընցւոյ թվ. ՉԿ (1311)»։ (Գ. Սրուանձտեան «Թորոս աղբար», մասն Բ, Կ. Պոլիս, 1885, էջ 433)։ Այս և բնագրում հիշված Հեթումն արդյո՞ք միևնույն անձնավորությունները չեն։

## VII.

## ԲԱՐՍԵՂ ԱՐՃԻՇԵՑՈՒ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVI Դ.)

*Բարսեղ և Հովհաննես[1] Արճիշեցիները XVI դարի առաջին կեսի հեղինակներ են, որոնք ժամանակակից են եղել այդ շրջանում տեղի ունեցող պարսկա-օսմանական կռիվներին և իրենց ապրածը, տեսածն ու լսածը գրի են առել սրտաշարժ նկարագրություններով։ Ալիշանն ըստ երևույթին ձեռքի տակ չունենալով վերջիններիս աշխատությունները, միայն հիշում է նրանց անունները, որոնք «...վեշտասաներորդ դարու սկիզբէն ի Շահ-Իսմայէլէ սկսեալ պարսից նոր թագաւորաց գործերը և օսմանեաց հետ ըրած կռիւները գրած են»։[2] Իսկ Խաչիկ վ. Դադյանի ձեռագրերի ցուցակում հիշվում է Բարսեղ Արճիշեցու տարեգրությունը, որը գտնվելիս է եղել Փիրղալեմյանի անտիպ աշխատություններից մեկի մեջ։[3]*

*Բարսեղ Արճիշեցու առաջարկվող աշխատությունը, որը տարեգրություն չէ բառիս նեղ իմաստով, այլ չորս տարվա սպառնակությունների բավական մանրամասն պատմություն, սկսվում է 1501 թ. Սեֆյան դինաստիայի հիմնադիր շահ Իսմայիլի և Աղ-Կոյունլու թուրքմենական ցեղի վերջին ներկայացուցիչներից մեկի՝ Ալվանդի (Էլվենդ) կռիվների հիշատակությամբ։ Այնուհետև նկարագրվում է հետագա մի քանի տարիների ընթացքում Վասպուրականում, Տուրուբերանում և այլ վայրերում տեղի ունեցած կռիվների, ավերումների, թալանի, կամայականությունների, սպանությունների մի սրտաճմլիկ պատմություն, որը վերջանում է 1504 թ. Տարոնի քրդերի Արճեշ կատարած արշավանքի և այլ տեղեկությունների վկայությամբ։*

*Սակայն տարեգրության վերջին եզրը թողնում է բնագրի թերի լինելու տպավորություն։ Այդ տպավորությունը ստացել է նաև Փիրղալեմյանը, որը տարեգրության ընդօրինակությունը վերջացնելուց հետո գրում է. «Ուրիշ թուղթ չկայր ևս թուի թէ թերի մնաց բանս Բարսեղ քահանայ տարեգրին Արճիշեցւոյ»։[4]*

*Բարսեղ Արճիշեցու տեղեկությունները, մասամբ որպես ականատեսի վկայություններ, հավաստի են և շատ արժեքավոր։ Փակագծերի մեջ առած բնագրի ուղղումները կամ լրացումները պատկանում են Փիրղալեմյանին։*

---

[1] Հովհաննես քահանա Արճիշեցու հիշատակարանը գտնվում է «Դիւան հայոց պատմութեան» Ժ գրքի 19–30 էջերում։

[2] «Հայապատում», էջ 129։

[3] Ց. Թոփճեան «Ցուցակ ձեռագրաց Դպրեան Խաչիկ վարդապետի» մասն Բ, Վաղարշապատ, 1900, էջ 59։ Թոփչյանի վկայությամբ Բարսեղ Արճիշեցու սույն աշխատությունը գտնվել է Փիրղալեմյանի ժամանակագրությունների ժողովածուի մեջ։ Մեզ չհաջողվեց գտնել այդ ժողովածուն. տարեգրությունը վերցրել ենք Փիրղալեմյանի մի այլ անտիպ աշխատությունից, որը կոչվում է «Նշխարք պատմութեան հայոց» և Մատենադարանում գրանցված է 4515 համարի տակ։

[4] № 4515, էջ 252։

VII.

## ՏԱՐԵԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՐ ԲԱՐՍԵՂԻ

Ցայսմ ամի, որ էր Թուականն Հայոց ՋԾ (1501) եղև բա- 246
ղում ոճիր պատերազմի, զի դարձեալ զօրացան ազգն Դանիշմա-
նաց, որ Իմամայիք կոչին, ի յաշխարհէն Արտաւիլու, որ Կար-
միր գլուխ Սօֆիք [կոչին]։ Եւ ելեալ բազում զօրօք յարևելից և
եկեալ մտին յԵկեղեաց գաւառն, որ է Եզընկայն և մնացին ի
Վարդավառէն մինչ ի յաշուն։[1] Եւ անտի ելեալ դի ‖ մեցին դար- 247
ձեալ յարևելս ի յաշխարհն Աղուանից, որ է Շաք և Շամախի և
առին զԹապաւորն, և զերկիրն և բազում աւար արարին, և Թա-
գաւորեցին, և նստան բոլոր տարի մի։[2] Եւ գնացին մինչև ի
դուռն Ալանաց և անտի դարձան և եկին պատերազմել ընդդէմ
Ալվանդ փաթշինհին (փաթշահին), առ ափն Երասխայ ի մէջ
(մերձ ի)Նախչըւանու։[3] Եւ եկեալ բանակեցան ճակատ առ ճակատ
ընդդէմ իրերաց, որ է Արտազ գաւառն։ Եւ խմբել պատերազմին
հնարք արարին Կարմիր գլուխ Սօֆիքն, զի դերեսանեակ երի-
վարացն կապեցին յիրար և միաբան դիմեցին ի պատերազմ, որ
և զբազումս կոտորեցին և զայլս փախստական արարին և ինք-
եանք դարձան ի Թավրէզ։ Եւ նստաւ շահ Իսմայիլն ի Թաղան.
և առաքեաց յամենայն տեղ և գաւառ տեսուչ և տառուղայ, որ
և յիսուն ոգի եկին յերկիրս Քաջբերունւոյ, որ է Արճէշ. և տե-
սին, զի ոմն յազգէն նետողաց, որդին Հասան Ալուն (էր սա որդի
Ջհանշահի.) Բարիաք իմիրզայն բազում հեծելօք առեալ էր զեր-
կիր և զքաղաք և նստեալ ի բերդն։ Իբրև լուան ի յետս չոգան
և գաղտագողի գնացեալ ամրացան առ ստորոտով լերինն Ծաղ-
կէոյ, որ Ալատաղ կոչի՝ հանդէպ Ուռընկարու սուրբ Նշանին. և
կացեալ մնացին անդ երկու ամիս և գաղտագողի սպասէին մի-
մեանց գիշերով։ Եւ յաւուրս Ցայտնութեան ութօրէիցն[4] ելեալ
Բարիաք իմիրզայն ի ձի չորս հարիւր ձիաւորօք և գնաց խրոխ-
տալով ի վերայ նոցա և նոքա այլ յուսալով ի զօրութիւն սուրբ
Նշանին (Ուռընկարու) յարուցեալ եկին ընդդէմ նոցա յիսուն
ոգիք։ Եւ նոյն ժամայն հնչեաց հողմն ի զօրութենէ սուրբ Նշա-
‖ նին և եղեմնատարափ սաստիւ ընդդէմ երեսաց Բարիաքին, 248
որ չի գիտէին թէ զինչ առնէին և անզօրացեալ տկարացան. և
նոքա Սօֆիքն զօրացան յոյժ զամենեսեան ի սպառ կոտորեցին,
առին և զԲարիաք իմիրզայն և զգլուխն կտրեալ ի շահն յղար-
կեցին։ Եւ այլ մնացեալ հեծելն մազապուրծ եղեալ փախստական

զնացին մտան ի Բրդըստան։ Եւ Սօֆիքն եկեալ առին զքաղաքն
և զերկիր և նստան. և բազում և անթիւ մալ առին ի քրիստո-
նէից, արբենակութեամբ և մատնութեամբ ումեմն սուտ քրիս-
տոնէի ուրացողի, որ Ջանազիզ ասեն։ Զի շատ տներ էտուր ի
թալան և շատ մարդ տուզանել երետ, որպէս զանիծեալն Վասակ
եղև ի մէջ քրիստոնէից։ Որ և յելանել զարնան այլ ոչ կարա-
ցին ընդդիմանալ չարեաց նորա, վասն որոյ ամենայն ժողովուրդ
թողին զտունս իւրեանց և զամենայն վար և զվաստակս և փա-
խան ի Վան և յՈստան, յԱրծկէ և ի Բաղէշ, և այնպէս անտէ-
րունջ մնաց երկիր և քաղաք երեք ամիս՝ մինչև ի Վարդավառն։[5]
Իսկ ի յանցեալ պատերազմին, որ եղև յանուն դաշտին Նախ-
չուանայ փախուցեալ եղև Ալվանդ փաթշահն, եօթն պարոնով և
բազում հեծելով, գնաց փախստական և իջեալ բնակեցաւ յԵղըն-
կայն և մնայ անդ մինչև յամառնային ժամանակն։ Իբրև լուաւ
շահ Իսմայիլն զլինելն Ալվանդ փաթշահին յԵղընկայն, ելեալ ի
Թավրիզու բազում հեծելով և գնաց ի վերայ նորա։ Իբրև իմա-
ցաւ Ալվանդն զգնալն շահին, աճապարեաց անտի և ի ներքոյ
հարաւ կուսէ խոյս տուեալ և յահէ և յերկիւղէ շահին եկեալ
փախստական ի գաւառն Տարօնոյ, այլ որպէս ի դժնեայ ոստխէ
փախստական գնաց մինչ ի քաղաքն շահաստան, որ է Թավրէզ.
և դադարեաց անդ ‖ ամիս երիս մինչև յաշուն։[6] Եւ Դովլաթիար 219
պարոնն, որդին ամիր Ալպանին, որ Դուլղադար կոչին, նա եկաց
յԱրճէշ այս չորս ամիսս։ Եւ ապա ցըրուեալ և վատնեալ ըռիաթն
դարձեալ ժողովեցան յիւրաքանչիւր տուն իւր և տեղիս և փոքր
մի խաղաղացաւ երկիրս։ Եւ դարձեալ յանկարծակի եղեալ համ-
բաւ թէ Կարմիր գլուխ շահ Իսմայէլն եկաւ. և Դօլվաթիարն
ելեալ փախստական և շատ դրամ և տաւար, ձի և ջորի, զոր ի
ձեռն անկաւ, զամէն առեց և փախեաւ։ Եւ յետ տասն աւուր
եկեալ շահն և անցաւ Վաղաշկերտոյն և գունդ մի հեծել ջոկե-
ցան և եկին ի վերայ Առճիշոյ, որ Վարսաղ կոչին, և զմնացեալն
ի Դօլվաթիարէն թալանեց և այլ բազում հարկ և մալ ձգեց էառ
և գնաց։ Եւ յետ նորա դարձեալ եկին քրդերն Սևանայ[7] թէ՝
անտէրունջ է Արճէշ. և նոքա այլ եկին բազում հեծելօք. և շատ
առ և թալան արարին՝ ՌՄԺ (1210) թւն հաց բ[ե]ռնակիր տաւա-
րով տարան, թող զփարթալն և զայլ րօզակն։ Եւ յետ այսր ամե-
նայնի, ապա եկին ԵՃ (500) տուն Կարմիր գլուխ Սօֆիք, Ծ (50)
խալֆայ և Ժ (տասն),[10] բանակ արարին զքաղաքն և զերկիրն և
բաժանեցան ի վերայ (նոցա) և նստան։
Եւ գնացին բազում հեծելօք ի վերայ վայելուչ քաղաքին
Արծկոյ, որ և լուան ազգն Մարաց, որ նստեալ էին ի բերդն,
թողին զամենայն և փախան. և զաղիքն[8] առին և նստան շաբաթ
մի։ Եւ յանկարծ ի վրդովման համբաւ ելաւ, վասն շահին, և նոքա
այլ թողին զամենայն և փախեան։ Եւ նենգժոտ ազգն քրդաց
դարձեալ առին զբերդն և զԱրծկէ[9] և նստան։ Եւ եղև շատ աղ-
մուկ և կոծ և արեան հեղութիւն, և ո՞վ կարէ պատմել զանհուն
փորձութիւն, որ եղև ի մէջ քրիստոնէիցն։ Եւ քրդերն օրըստօրէ.‖ 250

խոցոտէին զաղիքն, վասն որոյ բարկացան ղաղիքն և բազում հարկապահանջութիւն ձգեցին ի վերայ քրիստոնէիցն. և եկին յերկիրն Արճիշոյ սալաւով և պարտով փոքր մի եաուն և զինչ որ տան և տղոցկնկան կայր պահած հոգւոյ և մարմնոյ, զամէն եաուն և զեռ ոչ կարացին ազատիլ։ Եւ յետոյ յելանելն բազում կին և հարսն գերի վերուցին, և զամենայն տաւար և զոչխար սուրգուն արարին յԱրճէշ։ Եւ ի հասանել ի պահս առաջնաւորաց[10] դարձեալ միաբանեալ արարին խորհուրդ և գնացին ասպատակաւ ի գաւառն Մանծկերտու, որ Բուլանուխ ասեն. և անդ է (եօթն) գշլախ (Թափարիկ գեղք քրդաց) զամէն ի սուր քաշեցին՝ զայր և զկին, զծեր և զտղայ, մինչև յորորոցի տղայն թուով ԷՃ (700) ոգի։ Եւ զոչխարն ամէն և զաւարն առին և բերին յԱրճէշ։ Եւ դարձեալ նոր ոճիր գործեցին ի յԱրճէշ, զինչ որ (գործեցին) յԱրծկէ, և այլ աւելի. ԴՃ (400) բիւր մալ ուղեցին, յաւուր բարիկենդանին,[11] որ և անկաւ յամէն զլուխ ԴՌ (4000) դեկան, և յամէն զութան[12] ԺՌ (10000) դեկան։ Եւ ողորմելի քրիստոնեայքն (հայք) ոչ գիտէին թէ զ՞ինչ արասցեն։ Եւ զիմեցին չար կատաղիքն ի վերայ Բ (2) տան, մէկ հանօլայ (փոխանակագրով դրամ պահանջող) և բազում տանջանօք չարչարէին՝ կախէին, ծեծէին և ոչ գտանէր դրամ. վասն որոյ թէ հոգւոյ էր և թէ մարմնոյ, թէ ի վերայ հողոյ և թէ ի ներքև հողոյ, թէ զինդ է, թէ մատանի է, թէ լանջանոց է, թէ ոսկի է, թէ արպաջան է, թէ արծաթ է և թէ հանդիստ է (հանդերձ), և թէ զումաշ է, զամէն զինչ ունէին, առին և զեռ ոչ կարացին ազատիլ։ Եւ անողորմ իմամացիքն մտանէին ի աներն, զինչ որ զրաստ կայր և զէր տաւար, զամէն առին և քաշեցին։ ‖ 251 Եւ այնու ոչ շատացան, յետոյ ի գնալու ժամանակն, ի մեծ պահոց առաջին երկուշաբթին,[13] ցրւեցան զօրքն ի գեղ և ի քաղաք և ուր որ գտանէին զեղնցիկ հարսն և աղջիկ և տղայք զայն առ և գերի արարին. թւով ԴՃ (400) մարդ և տաւար այլևս հազար։ Յորէն և ալուր բարձին և ելեալ գնացին անդ. ուստի եկեալ էին (մի տող մաշեալ էր ի հնութենէն) և յաւար, և գերիք առնէին և ողորմելի հարքն ի հետ երթային և դրամ տալով ապա ազատէին։ Մեզ մեծ փորձութիւն հասաւ Փաջրերունւոյ, որ էր թվական ՋԾԳ (1504). զի զօրքն Քրդաց և Թուրքաց, որ բնակեալ էին ի յերկիրն Տարոնոյ դաշտին, միաբանեալ ժողովեցան և յանկարծակի հասին ասպատակաւ ի վերայ Արճիշու, յաւուրս ամառնային, որ էր արեգի չորս,[14] հինգ հարիւր ձիաւոր հեծեալ և զամենայն գաւառս զգեղ և զքաղաք թալանեցին զառն և զաւարն, զգրաստն և զանասուն և զամենայն չորկոտանիք, զէգ և զործ, զնախիր և զորթեր, զգօթան և զգեհեան (թերևս անուն հողագործական ինչ գործեաց) և զամենայն տուն և զտեղ թալանեցին և բազում արիւնք արարին և շատ սրախոց արարին և առին զամենայն զառ և զաւար և գնացին ի տեղիս իւրեանց։ Եւ մնաց երկիրս այս ամայի և խպան, անշնորհ և անվայելուչ, զի որպէս որ ծառն, որ ճղերովն և տերևովն վայելուչ երևի, այս-

պէս և ղաշտն անասնօք և չորքոտանեօք, զի մերկացաւ ի վա-
յելուչ զարղուց իւրոց ավիաս այս. և զրկեցան ի հալալ վաստա-
կոց իւրեանց։ Եւ հեռացան իւրեանց քաղցրիկ անասունքն ի
սովորական տեղեացն և յարօտիցն, բաժանեցան նորածին մայրքն
ի ձագուցն, և աղիողորմ գոռալով և բայելով, որոնէին զձագս
իւրեանց և ոչ գտանէին։ Եւ խղճալի մնացեալ որբ ձագերն և
որթերն ի ‖ շուրջգային և ձայնելով գոչէին և աղաղակելով յու- 252
զէին զմայրքն, զի երկու երեք օրական էին, վասն որոյ շատք
լերզացամաք աղաղակելով մեռան։ Եւ այսպէս անտէրունջ (մնաց)
գաւառս մինչ ի յԱստուածածին,[15] երեք ամիս։ Իսկ զաղիքն, որ
զայն ամենայն արենգին հարկն, որ առին և գնացին ի (առ)
շահն, ի Թավրէզ։ Եւ նոյնժամայն ելեալ ի Թաւրիզու և դիմե-
ցին յարևելս, ի վերայ Մուրատ խանին, ի Պարսկաստան, որ է
Արաղ։[16] Եւ գնացին հասան մինչ ի Շոշ քաղաքն, որ է Ասպա-
հան. և անդ պատերազմեցան ընդ իրարս, յաւուրս Թամուզ ամ-
սոյ։[17] Եւ բազում կոտորումն և արիւնհեղութիւն եղաւ յերկուց
կողմանցն. և զի Մուրատ խանի հեծելն վաթսուն հազար էր և
շահին՝ քսան հազար։ Խմբեցան ի պատերազմ յառաւօտէ մինչև
ի ժամ երրորդ ժամու աւուրն. և ապա խպառ կոտորեցաւ Մու-
րատ խանն, ինքն ելեալ ի միջոյ փախեաւ տասն հազարաւ, և
զմնացած ուլուսն, զկին և զողայ զամէն ի սուրն քաշեցին, և
զմալ և զըռզակ առ և թալան արարին, և էին սպանեալքն հա-
մարով յիսուն հազար հոգի, թող զայն որ ի համար չեկաւ։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Շահ-Իսմայիլի կողմից Երզնկայի գրավման մասին հիշում է Վրթանես երեցը, 1502 թ. ընդօրինակած շարականի հիշատակարանում, որտեղ, ի միջի այլոց, կարդում ենք. «... որ եմք պանդուխտ ի գաւառս Կողոնիոյ վասն աւերման չարին Սոֆոյ, որ անբնակ արար զաշխարհն մեր, յազգէ մարդոյ, զգաւառն ասացեալ Եկեղեաց և այժմ Եզնկայ կոչեցելոյ...»։ Ձեռ № 4515, էջ 241։ Համաձայն տարեգրության վկայության շահ Իսմայիլը Երզնկայում մնացել է 1501 թ. հուլիսի 18-ից (1501 թ. վարդավառը համընկնում է հուլիսի 18-ին) մինչև աշուն։ Պետրուշևսկու հաշվումներով շահ Իսմայիլը Երզնկայում անցկացրել է 1499/1500 թ. թ. ձմեռը (տես Сборник статей, вып.I, էջ 229)։ Եթե այստեղ չկան դեպքերի շփոթում, նշանակում է շահ Իսմայիլն երկրորդ անգամ Երզնկայում լինում է 1501 թ. կեսերին։

2. Շահ Իսմայիլի կողմից Շաքիի և Շամախիի գրավման մանրամասնությունները տես Петрушевский, „Азербайджан в XVI—XVII веках" (Сборник статей, выпуск, I, стр. 230 - 231)։

3. Շահ Իսմայիլի և Ալվենդի ճակատամարտը, ուրիշ աղբյուրներ մատնացույց են անում Շարուրում (տես Ներքևում, XIII ժամանակագրությունը, Петрушевский, նույն տեղ, էջ 233, Ձեռ. № 4515, էջ 241—242)։

4. «Յաւուրս Յայտնութեան ութօրէիցն» կհամապատասխանի հունվարի 13-ին, 1502 թ.։

5. 1502 թ. վարդավառը կընկնի հուլիսի 3-ին, նշանակում է հայ բնակչության փախուստը Արճեշից տեղի է ունեցել մարտին։

6. Խոսքը վերաբերում է 1502 թ. ամռանը Ալվենդի կողմից Թավրիզի կրկին գրավմանը։

7. Այստեղ հիշված Սևանը Գեղարքունիին չէ, այլ Վասպուրականի Արճակ լճի հարավ-արևելքում գտնվող գյուղը։

7ա. Մի բառ պակաս է մնում։

8. «Ղազի» բառացի նշանակում է «հավատի համար պայքարող»։ Այսպես էին կոչվել շահ-Իսմայիլի զինվորները։

9.1501 թ. ընդօրինակած ավետարանի հիշատակարանում գրիչը հաղորդում է, որ Արծկեի վրա արշավել են Բաղեշի քրդերը 1501 թ.։ Բերում ենք հիշատակարանի մեզ հետաքրքրող հատվածը. «Փառք... յամի ՋԾ (=1501) ի հայրապետութեան տեառն տէր Սարգսի ի դառն և ի դժար ժամանակի, որ ելաւ կարմիր գլուխ Սօֆին և զԱզօղլու ազգն կորոյս և աշխարհս եղաւ յերերմանի. և եկաւ քուրդն Բաղիշու և էառ զԱրծկէ, և շատ աւերք և առ թալան արար և բազում Նորաշէն տներ այրեաց և աւերեաց, զոր․յուսամք յաստուած որ յայսմ վշտէս փրկէ զմեզ և զամենայն ազգն քրիստոնէից ի զիս զանարժան գրիչս զՅակոբ...» (Ձեռ. № 4515, էջ 240—241)։

10. 1503 թ. առաշավորաց պահքն ընկնում է փետրվարի 6—11-ը։

11. 1503 թ. բուն բարեկենդանն ընկնում է փետրվարի 26-ին։

12. Բնակչության վրա հարկ բաժանել են երկու կերպ, նախ՝ մարդագլխի և երկրորդ՝ ըստ գութանի, այսինքն այն ընտանիքները, որոնք կարողացել են իրենց սեփական ուժերով գութան լծել։

13. 1503 թ. «Ի մեծ պահոց առաջին երկուշաբթին» ընկնում է փետրվարի 27-ին։

14. Այսինքն՝ 1504 թ. հունիսի 16-ին։

15. Այսինքն՝ 1504 թ. մայիսի կեսերից մինչև օգոստոսի 18-ը։

16. Տես և հմմտ. Ջիովան Մարիա Անջիոլելլո («Ուղեգրություններ», հ. Ա, էջ 278)։

17. Կարծում ենք խոսքը վերաբերում է արաբա-թուրքական (և ոչ հրեական) «Թեմմուզ» ամսուն, որը նրանց 5-րդ ամիսն է. (Թուրքերը իրենց տարեսկիզբը հաշվում էին մարտից)։ 1504 թ. Թամուզ ամիսը կընկնի հունիս—հուլիս ամիսների միջև։

VIII

# ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ (XVI դ.)

1551 թվականին Վալախիայում (Ռումինիայում), Սուչավա քաղաքում և մի քանի այլ վայրերում հայերի դեմ կազմակերպված հալածանքների մասին Մինաս Թոխաթեցու «Ողբ ի վերայ Օլախաց երկրի հայերոյն» բանաստեղծությունից բացի,[1] մեզ հասել են նաև մի քանի համառոտ այլ վկայություններ։ Ջամչյանը 1551 թ. դեպի Հայաստան կատարած շահ Թահմազի արշավանքի և ավերածությունների մասին գրելուց հետո ավելացնում է, որ նույն ժամանակ Մոլդավիայի Ստեփան իշխանը հալածանք սկսեց իր երկրում բնակվող հայերի դեմ։ Տեղեկությունը Ջամչյանը քաղել է մի հիշատակարանից,[2] սակայն աղբյուրը չի նշել։ Այս հիշատակարանի առթիվ Պըլըքյանը գրում է. «Այս անծանօթ ձեռքէ գրուած յիշատակարանը կերեւայ թէ Մինաս սարկաւագին ողբերգութիւնն ի քաղ առնելով՝ Հայոց քով մի միակն եղած ըլլա, որ Ստեփան Ռարէշին անագորոյնութեան վերայ կը խօսի»։[3]

Սույն դեպքերի մասին «Տարէգիրք Կամենիցայ»-ի մեջ 1551 թվականի տակ նույնպես կարդում ենք. «Ի թվին Ռ (1551) Օլախի երկրին Շտեֆան պարոնն՝ Օլախի երկրին զհայերն եհան ի հաւատէ, և զեկեղեցեստան քակեց զամէն բովանդակ»։[4]

Ալիշանը վերոհիշյալ հատվածին որպես լրացում տողատակ գրում է. «Այս ծանօթ պժգալի գիպուածին վրայօք՝ դար մի վերջը Երեմիա չէլէպի Քէօմիւրճեան, եղբայր Երան. Կոմիտասայ, գրէ այսչափս. «Ի թուականութեանս Հայոց Ռ-ին ի Սէչով քաղաք երկիր Ուլախին, Թագաւորն Ստեփան՝ դաւանութեամբ Յունաց, բռնութեամբ կալաւ հազար տուն ի Հայոց ազգէ, գրով, դարձուցանել յաղանդս իւր, որք ընդ նորա իշխանութեամբ էին, և որք ոչ դարձան՝ նահատակեցան։ Յորոց մինն ,ի բազմաց Խաչատուր քահանայ ոմն, որ զերկու աչսն եհան, և զերկու ձեռսն և զոտսն և զլեզուս և զհոտոտելիս և զշրթունսն՝

---

[1] Սույն բանաստեղծությունը գտնվում է մեզ հայտնի հետևյալ հրատարակություններում՝ Ք. Պ[ատկանեան] «Նշխարք մատենագրութեան Հայոց», Ս. Պետերբուրգ, 1884 թ., 53– 58 էջերում «Մինասայ Թոխատեցւոյ ողբ ի վերայ Հայոց աշխարհին Ուլախաց» խորագրով։ Բանաստեղծությունը ոկզբից թերի է։ Գ. Գովրիկյանը բանաստեղծության ամբողջական բնագիրը հրատարակել է «Հանդէս Ամսօրեայ» ամսագրում, 1888 թ., էջ 39, 62. «Ողբ ի վերայ Օլախաց երկրի հայերուն ի Թախաթցի Մինաս սարկաւագէ ասացեալ» խորագրով։ Մի փոքր ավելի ուշ՝ 1896 թ. Ալիշանը սույն բանաստեղծությունը զետեղել է «Կամենից» աշխատության 20—27 էջերում։

[2] Ջամչեան. «Պատմութիւն Հայոց», հատոր Գ, էջ 515։

[3] Պըլըքեան, «Մ. Թոխաթեցւոյ ողբ ի վերայ Հայոց աշխարհին Ուլախաց» («Հանդէս Ամսօրեայ», 1895 թ., էջ 100)։

[4] Վենետիկ, 1896, էջ 18։

նման Յակովկայ արար։ Եւ Պալքոյ անուն ումեմն զճակատն քերթեցին, և այլ պէսպէս կոտտամահ սպանին և զբաղումս։ Դահիճք նոցա քահանայք էին Ուլախաց ազգէ, և գլխաւորք սոցա զեպիսկոպոսն իւրեանց, հրամանաւ պիղծ թագաւորին Ստեփանի. յորմէ էառ... (պակասէ)»։[1]

Շատ հավանական է, որ Ջամչյանի օգտագործած հիշատակարանը վերոհիշյալ վկայությունը լինի։[2]

1551 թվականի Վալախիայի հայերի հալածանքի և այլ իրադարձությունների մասին բավական ընդարձակ վկայության ենք հանդիպում № 7584 ժողովածուի 684—686 էջերում գտնվող «Նախ վասն խոնթքարի և շահին և զկնի պղծին Ստեֆանի Օլախաց թագաւորի և չարեաց նորին որ առ ազգս Հայոց» խորագիրը կրող ժամանակագրության մեջ։ Սրա միայն երկրորդ մասը պահվել է նաև № 3079 ժողովածուի 254ա էջում, որի տարընթերցվածքները բերում ենք հրատարակվող բնագրի տողատակում։

Ժամանակագրությունը սկսվում է 1546 թվականի շահ Թահմազի եղբոր՝ Ալխասի Կ. Պոլիս փախչելու, փախուստին հաջորդող պարսկա-օսմանական կռիվների վկայությամբ և վերջանում 1556 թվականի սուլթան Սուլեյման 1-ի հետ կապված մի դեպքի հիշատակությամբ։ Այսպիսով, ժամանակագրությունը ընդգրկում է 10 տարվա՝ 1546—1556 թ. թ. անցուդարձ, որի մեծագույն մասը նվիրված է 1551 թվականի Վալախիայի հայերի հալածանքին։

Թե ո՞վ է եղել առաջարկվող ժամանակագրության հեղինակը, հնարավոր չէ պարզել, սակայն պարզ է, որ այն կազմել է դեպքերին ժամանակակից մի անձնավորություն։ Այդ երևում է ժամանակագրության վերջին հատվածից, որտեղ կարդում ենք. «Ի ժամանակիս այսմիկ, որ է թիւ Հայոց ՌԵ (=1556) կամի խոնդքարն և ի միտս եղեալ է ձեռն արկանել զքրիստոնէից թագաւորօքն, զոր անյաջող եղեցի»։

Մեզ զբաղեցնող ժամանակագրության 1551 թվականի Վալախիայի հայերի հալածանքին վերաբերող հատվածը և նույն դեպքերի մասին Քեոմուրճյանի օգտագործած վկայությունը, որը մեջ է բերել Ալիշանը «Կամենից» աշխատության 18-րդ և 19-րդ էջերում, համեմատելիս կարելի է նկատել երկու բնագրերի համապատասխան հատվածների նույնությունը։ Այս բանը մեզ ենթադրել է տալիս, թե Կ. Քեոմուրճյանի օգտագործած վերոհիշյալ բնագիրը հավանորեն ծագել է ստորև հրապարակվող բնագրից։ Սակայն հնարավոր է նաև այն, որ վերոհիշյալ երկու հատվածները ժամանակակից տարբեր հեղինակների են պատկանում, բայց մեզ հավանական թվում է առաջինը։

Այս ժամանակագրության մի շարք տեղեկությունները թեև հայտնի են Մինաս Թոխաթեցու միջոցով, ինչպես եկեղեցիների ավերում, թալան, գրքերի այրում, խոշտանգումներ, սպանություններ և այլն, սակայն հանդիպում են նաև այնպիսի փաստեր, որոնք կարող են նոր լույս սփռել հալածանքի պատճառների լուսաբանության վրա։ Որոշ վկայություններ էլ կամ շեղվում են Մինաս Թոխաթեցու տեղեկություններից, կամ չեն նշված նրա կողմից։

[1] Կամենից, Վենետիկ, 1896, էջ 18—19։

[2] Վերոհիշյալ հալածանքների մասին որոշ ակնարկություններ պահել են նաև ռումինական տարեգիրներ Գ. Ուրեքյան և Ն. Կոստին («Հանդէս Ամսօրեայ», 1895 թ., էջ 100—101)։

*Պատմագրության մեջ վերոհիշյալ հալածանքի պատճառների մասին գոյություն ունեն հակասական կարծիքներ։*[1]

*Առաջարկվող ժամանակագրության որոշ տվյալների ուշադիր քննումը ցույց է տալիս, որ վերոհիշյալ հալածանքի պատճառներն ավելի խոր արմատներ ունեին և որ դավանափոխության հարցը խնդրի արտաքին կողմն է միայն։ Ժամանակագրության առանձին նկարագրությունները և Մինաս Թոխաթեցու հեռավոր ակնարկները ի մի բերելով, կարելի է հանգել այն եզրակացության, որ հայերի հալածելու գլխավոր պատճառը ոչ թե հայերի դավանափոխության հարցն էր, այլ նրանց տնտեսապես թուլացնելու, ունեցվածքը զավթելու և իրավական ու քաղաքական որոշ արտոնությունները սահմանափակելու հարցն էր։*

*Մասամբ այս տեսանկյունով մեկնաբանելու երկչոտ փորձեր է կատարել պատմաբան Դեմետրիոս Տանը, հայերի հալածանքի պատճառների մասին գրելով. «Դարձընելու (խոսքը վերաբերում է հայերի դավանափոխությանը— Վ. Հ.) այս փորձերու պատճառն էր այն յեղափոխական ժամանակին հոգին, կամ թերևս ճշտագոյնս, Ստեփան իշխանին անագորոյն բնութիւնն կամ* **ճարուստ ճայերու դրամը կորզելու դիտավորութիւնն»:** *(Ընդգծումը մերն է— Վ. Հ.):*

*Ինչպես տեսնում ենք, հեղինակը հայերի հալածանքի պատճառը կապում է երեք հնարավոր հանգամանքների հետ։ Մինչդեռ երբ նկատի ենք ունենում Վալախիայի հայերի վիճակը և նրանց խաղացած դերը Վալախիայի տնտեսական կյանքում մի կողմից և առաջարկվող ժամանակագրության տեղեկությունները ու Մինաս Թոխաթեցու որոշ ակնարկները մյուս կողմից, ապա դըժվար չի լինի հետևեցնել, որ հայերի հալածանքի բուն պատճառը պետք է փնտրել տնտեսական, որոշ առումով նաև քաղաքական, հողի վրա։*

*Դ. Տանը բազմաթիվ փաստերով ցույց է տալիս, որ հայ գաղթականները Վալախիայում նշանակալի արտոնություններ ունենալու շնորհիվ, տնտեսական իրենց գործունեությամբ կարողացել էին ահագին հարստություններ կուտակել և մեծ դեր խաղալ Վալախիայի տնտեսական կյանքում։ Նվիրատվությունների ու այլ գործարքների շնորհիվ հայկական եկեղեցիները նույնպես մեծ հարստությունների տեր էին դարձել։*[3] *Այս հանգամանքները հասկանալի են*

---

[1] *Մինաս Թոխաթեցու կարծիքով դրանց պատճառը հայերի աստվածային պատվիրանի մեջ թերանալն է (58—60-րդ քառյակները)։ Ռումինական տարեգիրներ Ուրեխյան և Քոստեն, նշում են դավանափոխության նկատառումները («Հանդէս Ամսօրեայ», 1895 թ. էջ 100—101)։ Ռումինական խոշոր պատմաբան Հաշդեուն սկզբում կարծում էր, թե հայերին հալածող Ստ. Ռարեշը ամուսնացած լինելով կաթոլիկ դարձած, մոլեռանդ և հայատյաց մի հայ կնոջ՝ Սերբեկայի հետ, վերջինիս դրդմամբ էլ նա դիմել է այդ հալածանքին, որը «...կընայ մեկնուիլ հոգեբանապէս եթէ ոչ իշխանին անմտութեամբն ու յիմարութեամբ, գոնեայ յունադաւանութեան դարձած կնոջ մը մոլեռանդութեամբ» («Հանդէս Ամսօրեայ», 1895, էջ 101)։ Սակայն, հետագայում Հաշդեուն երբ պարզում է, որ ինքը մի փոքր թյուրիմացության մեջ է, այսինքն՝ վերոհիշյալ Սերբեկայի ամուսինն եղել է ոչ թե հայերին հալածող Ստեփան Ռարեշը, Պետրոս Ռարեշի որդին, այլ վերջինիս՝ Պետրոս Ռարեշի եղբայր Աստվածատուր Միխալնու որդի Ստեփան կրտսերը, նա փոխում է իր նախորդ կարծիքը և նոր եզրակացության հանգում. «...աւելի ծանրակշիռ է քաղաքական տեսակէտով՝ այն մեծ առաւելութիւնը, զոր մեր նախնիք չէին դանդաղած շնորհել այս Կաւկասի զաւառներէն եկած աշխատասէր հիւրերուն...» («Հ. Ամսօրեայ», 1895 թ., էջ 134)։*

[2] *Դ. Տան, «Արևելեան Հայք ի Պուքովինա», Վիեննա, 1891, էջ 27—29։ Հմմտ. Մ. Թոխաթեցու ողբի 4-րդ, 5-րդ և 70-րդ քառյակները։*

[3] *Նույն տեղ, էջ 14—17։*

դարձնում, թե ինչու ռումինական իշխողները, ձգտել են հայերի դավանափոխության պատրվակի տակ հարուստ հայերի և եկեղեցիների ունեցվածքը բռնագրավելով, թուլացնել տնտեսապես, դրանով իսկ սահմանափակել նրանց տնտեսական ազատ գործունեությունը։ Հենց այն փաստը, որ հայերի դավանափոխությունից հետո նրանց, հատկապես առևտրական կապիտալի ներկայացուցիչներին, շարունակել են կողոպտել և հալածել, ցույց է տալիս, որ 1551 թվականի հալածանքի պատճառները դուրս են եկել կրոնական ոլորտից։ Այս կապակցությամբ թանկարժեք վկայություն է տալիս առաջարկվող ժամանակագրությունը, «Ապա գիտացիր եղբայր, որ յոյնք ջնա դարձուցանելոյ զհայք ի դաւանութիւն իւրեանց, չար հրաման հանին ընդ ամենայն երկիր, որք էին ընդ իշխանութեամբ իւրեանց, ըմբռնել զվաճառականս ամենայն զճայ և զտաճիկսն. և սպանին անթիւ վաճառականք ի Հայոց և ի Տաճկաց, որոց մինն ի բազմացն էր մեծ վաճառականն Կարապետ Կաֆայեցին և այլոց ոչ գոյր թիւ» (ընդգծումը մերն է—Վ. Հ.)։

Ինչպես տեսնում ենք, դավանափոխությունը հարցը չի լուծել և, որ կարևորն է, այժմ բռնագրավում են ոչ միայն հայ, այլև թուրք վաճառականների ունեցվածքը։ Հարվածը առաջին հերթին իջել է ունևորների և եկեղեցու վրա։ Այս դմասին Մինաս Թոխաթեցին գրում է.

«Խիստ փառաւոր հայեր կային.
Հանկարծ փորձանք եկավ նոցին»։ (15-րդ քառյակ)։

Եվ եթե եկեղեցին նույնպես կրել է առաջին հարվածը, այդ բացատրվում է ոչ թե հայերի դավանանքի ոգեշնչող կենտրոն հանդիսանալու պատճառով, այլ նրանով, որ եկեղեցին ևս մեծ հարստություններ է ունեցել և ձգտել են այն ևս բռնագրավել։ Եվ իսկապես, եթե հարցը վերաբերվեր հայերի դավանափոխությանը, ապա այդ հրամանը պետք է հայերին հայտնվեր նախքան հալածանքները, որպեսզի մերժելու դեպքում նոր միայն սկսվեր հալածանքը. մինչդեռ իրականում հայերին առաջարկում են դավանափոխ լինել կողոպուտը, բռնագրավումը, խոշտանգումները և սպանությունները չորս օր կատարելուց հետո։ Այդ մասին հետաքրքիր վկայություն է տալիս Մինաս Թոխաթեցին իր «Ողբի» մեջ.

«Ի լուսանալ չորեքշաբթին՝ (պետք է նկատի ունենալ, որ հալածանքը սկսվել է 1551 թ. օգոստոսի 16-ին կիրակի օրը)...

. . . . . . .

Այն վոյվոտային պեղծ Շտեֆան
Որ ինքն եղաւ դիւաց զարան,
Ասաց. հայեր դուք միաբան,
Ունկըն դըրեք ամենեքեան.

Այդ ի՞նչ հաւատք որ կու պաշտէք,
Ամէն ազգէ դուք ի դուրս էք,
Որ դուք ամէնքըդ մոլար էք,
Եկէք ի մեր հաւատն մտէք»։
(27-րդ, 37-րդ և 38-րդ քառյակները)։

Եկեղեցիների ոսկեղենի, արծաթեղենի և այլ իրերի կողոպուտի մասին ժամանակագրության մեջ կարդում ենք. «Զսպասք և զինչք զխաչ և զակիհքն, զի զոսկին և զարծաթն առին և ձիու թամք և նալ շինեցին և միմեանց օժիտս առաքէին, զշուրջառն և զուրարն և զշապիքն և զայլ ամէնն անկողին և տօշակ շինեցին»։ Իսկ Մինաս Թոխաթեցին նկարագրելով հալածանքից մի փոքր առաջ, թերևս օգոստոսի լույս 16-ի գիշերը Սուչավա բերդում տեղի ունեցած Ստեփան Ռարեսի մասնակցությամբ, քաղաքի ազդեցիկ մարդկանց և բարձր հոգևորականության խնճույքը, գրում է.

*«Խորհուրդ արին իւրեանց միջին,*
*Զարիք բազում սերմանեցին.*
**Շատոց ոխ կայր իւրեանց սրտին**
*Սուրբ հաւատոց Լուսաւորչին» (11-րդ քառյակ)։*

Ընդգծված բառերը արդյո՞ք խուլ ակնարկ չեն հայերի (հարուստների և հայկական եկեղեցու) նկատմամբ անբարեհամբույր վերաբերմունքի մասին, որը կարող էր արդյունք լինել հայերի տնտեսական եռանդուն գործունեության, նրանց ունեցած որոշ արտոնությունների։ Հետևաբար, հենց այդ էր ոխի պատճառը, որը Վալախիայի ունևոր դասակարգի մեջ կուտակել էր ատելություն դեպի հայ գաղութի ունևոր շերտերի դավանությունը, սովորությունները և կենցաղը։ Ուստի այս վերջիններս միահյուսվել են հալածանքի գլխավոր պատճառին և գերազանցապես քողարկել այն։

Ժամանակագրության որոշ տվյալները չեն հաստատում Մինաս Թոխաթեցու համապատասխան վկայությունները, ինչպես այն փաստը, որ Խաչատուր քահանան ծանր խոշտանգումներից հետո ստիպված է դավանափոխ լինել, որովհետև սպառնում էին նաև նրա զավակներին, ուստի

*«Ընտրողական գութն շարժեցաւ*
*Եւ իւր տըղոց ողորմեցաւ,*
*Եւ ակամայ մըկըրտեցաւ*
*Եւ յՕլախի հաւատ մըտաւ»,*

գրում է Մինաս Թոխաթեցին։

Մինչդեռ ժամանակագրությունը հաստատելով Խաչատուր քահանայի կրած տառապանքները, ավելացնում է, որ նա նահատակվեց։ Ումն Պալքոյի և Խաչատուր Կաֆայեցու սպանության, ինչպես նաև Ստեփան Ռարեսի հաջորդ Ալեքսանդրի հայերի նկատմամբ վարած մեղմ քաղաքականության մասին Մինաս Թոխաթեցին որևէ հիշատակություն չի պահել։ Այդ տեղեկություններն իմանում ենք ժամանակագրության միջոցով, ինչպես նաև պարսկա-թուրքական պատերազմներին վերաբերող վկայությունները, որոնք հետաքրքիր են նրանով, որ մի փոքր շեղվում են Զաքարիա Սարկավագի տեղեկություններից։[1] Օրինակ, Զաքարիան չի նշում Ալխասի փախուստի տարեթիվը, մինչդեռ ժամանակագրությունը սույն դեպքը դնում է ՋՂԵ (1546) թվականի տակ։ Ըստ ժամանակագրության Ալխասի հարձակումը իր եղբոր դեմ տեղի է ունեցել ոչ թե ՋՂԷ (1548) թվականին, ինչպես հաղորդում է Զաքարիան, այլ ՋՂԶ (1547) թվականին և այլն։

[1] Հմմտ. «Պատմագրութիւն» հատոր առաջին, էջ 10—11։ Չամչյանն Ալխասի փախուստը դնում է 1548 թվականի տակ, իսկ Սուլեյման I-ի և շահ Թահմազի կռիվները՝ 1549 թվականի տակ («Պատմութիւն Հայոց», հատոր Գ, էջ 513)։

VIII

## ՆԱԽ ՎԱՍՆ ԽՕՆԹՔԱՐԻ ԵՎ ՇԱՀԻՆ ԵՎ ՉԿՆԻ ՊՂԾԻՆ ՍՏԵՓԱՆԻ ՕՂԱԽԱՑ ԹԱԳԱՒՈՐԻ ԵՎ ՉԱՐԵԱՑ ՆՈՐԻՆ ՈՐ ԱՌ ԱԶԳՍ ՀԱՅՈՑ՝ 684

*Ի թվիս Հայոց ՋՂԵ (1546) փախուցեալ շահի որդին եղբօրէն իւրմէ և գնաց ի Սաամպօլ։*[2]

*Եւ ի ՋՂԶ (1547) թվին առեալ զխօնթքեարն բազում զօրօք և գնաց ի վերայ իւր եղբօրն, շահ Թամաղին. և ոչ ինչ կարաց առնել նմա, բայց զՎանա բերդն և զԱրճէշ առեալ, և զազգս Հայոց զոմն գերեցին և զոմն ղողացեալ դարձան ի Սաամպօլ։*[3]

*Եւ ՋՂԷ (1548)-ին եկեալ շահն զհետ նորա և աւերեալ ի Վանա մինչև ի Եղնկան. և զորոց և հասանէին ի վերայ կոտորէին ի քրիստոնէից և ի Թուրքաց։*

*Իսկ ի ՌԲ (1553) թվին դարձեալ խունթքարն ի Ստամպօլու և գնաց ի Ամասիա և եսպան զաւաղ որդին իւր, որ էր թագաւորեցուցեալ ի Ամասիա. ԼՌ (30000) հեծելազօրօք և անցեալ գնաց ի վերայ շահին և ոչ ինչ կարաց առնել, բայց հաշտեցան ընդ միմեանս և դարձաւ խօնթքարն ի Սաամպօլ։*[4] *Եւ ապա շահի հեծեալքն շատք ի Հայոց ազգաց սպանին՝ քահանայք, եպիսկոպոսք, և վարդապետք և յաշխարհականաց անթիւ անձինս կոտորեցին։*

*Ի Ռ (1551) թվիս Հայոց անօրէն թագաւորն Ստեփան,*[5] *որ էր ազգաւ Օլախ, դաւանութեամբ հռոմ և թագաւոր Սէչօվ քաղաքին և Օլախ ազգին։ Սա դարձոյց ի դաւանութիւն իւր Ռ (1000) տուն ի Հայոց ազգէն և արար զամենեսեան ընդ դաւանութեամբ հռոմին, որք էին ընդ իշխանութեամբ իւր։ Եւ որք ոչ դառնային ի դաւանութիւն իւր, ի սուր սուսերի մաշէր զնոսա. և բազումք նահատակեցան, յորոց մինն ի բազմաց || էր տէր* 685 *Խաչատուր քահանայն, որ չարաչար տանջեցին՝ զԲ (2) աչքն հանին, զԲ (2) ձեռքն և զԲ (2) ոտքն կտրեցին, զՊալքոյ ոմն հայ ազգաւ զերեսն և զճակատն քերթեցին և սպանին։ Բայց զհալածումն քահանայից, և սարկաւագաց, և ժողովրդեան, և զաւերումն սուրբ եկեղեցեաց և զխորտակումն սուրբ խաչերաց, և զայրումն սուրբ գրոց, և հեղումն սուրբ մեռոնին, և զանարգումն սուրբ աւազանին, և զցրքումն սուրբ խորհրդոյն, և զբաժանումն սպասուց սրբութեան, և զհայհոյումն պատկերաց տէրունական և որբոց նորա, և զլաց, և զհառաչ, և զաղաղակ մարց, և զճիչ տղայոց. և զսուգք ծերոց, և զսարսափ երիտասարդաց, և զղողումն կուսանաց աղջկանաց, և զթաքչումն մանկանց, և զհառաչանաց*

նոցա, ով կարէ պատմել և կամ ընդ գրով արկանել։ Զսպառք և. զինչք զխաչ և զսկիհքն, զի զոսկին և զարծաթն առին ե ձիութամք և նալ շինեցին, և միմեանց օժիտս առաքէին, զշուրՋառն և զուրարն և զշապիքն և. զայլ ամէնն անկողին և աօշակ շինեցին։ Բայց ոչ եթող աստուած յանօրին այն, որ պարծէր յանօրէնութեան իւրում, զի ինքն աստուած եղև վրէժխնդիր արեան անպարտ սպանելոցն և մատնեաց զչար թագաւորն Ստիֆանէ ի ձեռն զօրաց իւրոց, որ չարաչար սպանին զնա և այնպէս՝ չարն չարեաւ կորեաւ և բարձաւ ի միջոյ ի խաւարն արտաքին։ Եւ յարեաւ այլ թագաւոր, երկիւղած յաստուծոյ, բարեպաշտ և խաղաղարար առ ամենեսեան, Աղէքսանդր անուն, զոր ետ հրաման Հայոց ազգիս պահել զզաւանութիւնս Լուսաւորչին ի վերայ նորան առաքելոց և մարգարէից, և զամենայն կապեալս արձակեաց, և զփախուցեալսն և զաքսորեալսն դարձոյց, և զնեղեալսն զիւրացոյց։ Եւ հրաման ետ շինել զեկեղեցիս և զվանօրայսն. և սպասք սրբութեան շնորհեաց արքունուստ ոսկոյ և արծաթոյ և ի պատկերացն։ Եւ հրաման ետ Հայոց, թէ ուր գտանիցէք զսպասք եկեղեցեաց ձերոց բանիւ և հրամանաւ իմով առէք աներկիւղ և զդաւանութիւն ձեր պինդ պահեցէք, բայց դդույշ լերուք, ասէր թագաւորն, ի չար ազգէն Օլախաց, որ կուրախան ընդդէմ ձեր։ Ապա գիտացիր եղբայր, որ յոյնք լետ դարցուցանելոյ զհայք ի զաւանութիւն իւրեանց չար հրաման հանին ընդ ամենայն երկիր, որք էին ընդ իշխանութեամբ իւրեանց, ըմբռնել զվաճառականս ամենայն զհայ և զտաճիկսն և սպանին անթիւ վաճառականք ի Հայոց և ի Տաճկաց, սրոց մինն ի բազմացն էր մեծ վաճառականն Կարապետ Կաֆայեցին և այլոց ոչ գոյր թիւ։ Բայց դյունաց ազգն, որք էին վաճառական ոչ սպանանէին, այլ ընչիւք իւրեանց արձակէր զնոսա, գնալ ի տունս իւրեանց։ Բայց նման Յուլիանոսի մանկամեռ. կարճ օրաց եղեալ, սատակեցաւ ի զօրաց իւրոց, չար թագաւորն այն՝ պիղծ Ստէֆան, ըստ հրամանի տեառն՝ թէ «զչարն չարեաւ ‖ 686 կորուսցէ և զայգին տացէ այլոց մշակացն»։ Սա՝ պիղծս Ստեֆաննոս ոչ միայն զհայս այլև զՖռանկաց ազգն ևս գարձոյց ի դաւանութիւն իւր։ Ցետ Զ (6) ամաց և զկնի Ա[1]ամ և Ա[1]ամիս թագաւորեաց չարն և անօրէնն։ Եւ ի թագաւորեալն Աղեքսանդրու Օլախաց թագաւորին և սոքա ևս դարձան ի դաւանութիւն իւրեանց, հրամանաւ բարեպաշտ թագաւորին Աղէքսանդրու։ Եւ զայս գիտացիր եղբայր, որ գահիճ պղծին չքահանայքն էին Օլախաց ազգէն և զլխաւորք սոցա չեպիսկոպոսն իւրեանց ընդ

9 ի (խաւարն) չիք։ 11 ամենեսեանսն։ 13 վերայ չիք։ 18 հրամանով։ 20 զգուշ։ 26 Քաֆայեցին։ 27 այլոցն որոց, վաճառականք։ 28 սպանէին։ 29 իւրեանց չիք։ 31 պիղծն, թէ չիք։ 34 մէկ փխ. Ա, ամ չիք։ 35 Աղէկսանդրու։ 38 պիղծին։

թագաւորին համահրաման և յորդորօղ չարեացս։ Ի ժամանակիս այսմիկ, որ է թիվ Հայոց ՌԵ (1556) կամի խոնգքարն և ի միտս եղեալ է ձեռն արկանել գքրիստոնէից զթագաւորօքն, զոր անյաջող եղիցի։

2 հինգքարն։ 3 արկել։ 3—4 յաջող* փխ. անյաջող։

* Ճիշտ է «անյաջող» ձեռ., որովհետև № 3079 ձեռագրի մեջ «յաջող» բառից առաջ մինչև «զոր» բառը կա դատարկ տարածություն, այդ հանգամանքը ցույց է տալիս, որ ընդօրինակողը «ան» նախդիրը հավանաբար չի կարողացել կարդալ և տեղը բաց է թողել, գրելով շարունակությունը՝ «յաջող» բառը։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. *Բնագրում վերնագիրը գրված է կարմիր թանաքով։*

2. *Հմմտ. «Զաքարեայ Սարկաւագի Պատմագրութիւն», հ. Ա, Վաղարշապատ, 1870, էջ 10—11։*

3. *Սուլթան Սուլեյմանի և շահ Թահմազի սույն կռիվների մասին տես նաև* Петрушевский, „Азербайджан в XVI—XVII веках“, Сборник статей. стр. 267:

4. *Հմմտ. X ժամանակագրություն, «Կամենից», էջ 19։*

5. *Խոսքը վերաբերում է Վալախիայի իշխան Ստեփան Ռարէշ 7-րդին, որն իշխել է շատ կարճ՝ 1551—1552 թ. թ.։ Նա զոհ դարձավ իշխանների ապստամբության ու դավադրությամբ սպանվեց 1552 թ. (Հմմտ. Դեմետրիոս Տանի «Արևելեան Հայք ի Պուքովինա», Վիեննա, 1891, էջ 20—21)։*

6. *Մատ. ԻԱ, 41։*

IX

# ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ (XVI Դ.?)

Մատենադարանի №№ 1737[1] (А տարբերակ), 3695[2] (Б տարբերակ) ժողովածուներում գտնվում են միևնույն ժամանակագրության երկու տարբերակները։ А-ն, որ ունի «Դուրս գալն Թաթարաց» խորագիրը, Б տարբերակը այն չունի։

Ժամանակագրության երկու տարբերակները եթե սկսվում են միևնույն դեպքի՝ 1221 թ. դեպի Հայաստան մոնղոլների կատարած արշավանքի հիշատակությամբ, ապա վերջանում են տարբեր եղելությունների վկայությամբ։ Այս փաստը մեզ ենթադրել է տալիս, որ նրանք հայտնի սահմանից հետո շարունակվել են տարբեր անձնավորությունների կողմից։ Եվ իսկապես, ժամանակագրության երկու տարբերակների համեմատությունը ցույց տվեց, որ եթե մի քանի տեղեկությունների մեջ նկատի չունենանք նրանց աննշան շեղումները և մանրամասնությունները, ապա երկու տարբերակները սկզբից մինչև 1549 թվի վկայությունը ներառյալ, ընդհանուր առմամբ զուգահեռ դնում են և ծածկում միմյանց։ Այնուհետև երկու տարբերակներում էլ շարունակությունները զանազանվում են։ Ճիշտ է, այստեղ մի քանի վկայություններ կրկնվում են, սակայն այդ դեպքերը երկու տարբերակում էլ դրված են տարբեր տարեթվերի ներքո, տարբեր ծավալով և մանրամասնությամբ։ Վերոհիշյալ փաստերը մեզ ենթադրել են տալիս, որ ժամանակագրության սկզբնական բնագիրն ընդգրկել է 1221 թվից մինչև 1549 թվականի՝ շուրջ 330 տարվա եղելությունների համառոտ տեղեկություններ։ Իսկ մնացած մասն ավելացրել են ուրիշները։ Եթե ճիշտ է վերոհիշյալ մեր ենթադրությունը, նշանակում է ժամանակագրության սկզբնական բնագրի հեղինակը XVI դարի առաջին կեսի անձնավորություն է։

Սակայն զարմանալին այն է, որ հեղինակն իր մասին ոչ միայն հիշատակություն չի թողել, այլև ոչ մի տեղ չի ակնարկել, թե ինքը որևէ եղելության ժամանակակից է։ Այդ և ժամանակագրության համառոտ լինելու պատճառով հնարավոր չէ նրա հեղինակի կամ աղբյուրների մասին որևէ բան ասել։

Ժամանակագրության տեղեկությունների մեջ կան այնպիսիները, որոնք բացահայտ սխալ են, ինչպես Հուլաուի կողմից Բաղդադի գրավման, այնպես էլ Արղունի, Քեղաթուի, Բաթուի և այլոց գահակալության տեղեկությունները և այլն։

Ներկա հրատարակության համար հիմք ընդունել ենք Б տարբերակը, իսկ А-ի տարընթերցվածները նշել ենք տողատակ։

---

[1] էջ 185ա—186բ։

[2] էջ 6բ—9բ։

Բ. Մատենադարանի №№ 7040,[1] 8509[2] և 1127[3] ժողովածուներում գտնըվում է միևնույն ժամանակագրության երեք տարբերակները։ Առաջարկվող ժամանակագրության առաջին մասը, սկզբից մինչև մոնղոլների կողմից Անիի և Լոռիի գրավման վկայությունը թողնում է I ժամանակագրության համառոտման տպավորությունը, իսկ երկրորդ մասը համապատասխանում է վերևում նշված ժամանակագրության առաջին՝ Ա. մասին։ Այսպիսով, չնայած առաջարկվող ժամանակագրությունը կարծես թե կրկնում է I և IX (Ա) ժամանակագրության տեղեկությունները, սակայն նրա բնագիրը չտարալուծելու, ավելորդ բարդություններ ու թյուրիմացություններ չառաջացնելու նկատառումներով, որոշեցինք ներկա հրատարակության մեջ այն ներկայացնել ամբողջական, ինչպես բնագրում է։

Ենթադրությունների մեջ չդեգերելու համար, թե սույն ժամանակագրությունն ինչպե՞ս կարող էր առաջ գալ, կամ նրա հեղինակն ի՞նչ աղբյուրներ է օգտագործել, բավարարվենք միայն մի քանի տեղեկություններով։ Վերջինիս խորագիրը՝ «Թվականք առ հասարակ մինչև առ մեզ», պահվել է միայն А և Б բնագրերում։[4] Երեք տարբերակում էլ պատմական մասին նախորդում է, նահապետների ու նրանց սերունդների, տիեզերական ժողովների և վերջիններիս միջև ընկած տարիների ու այլ և այլ դեպքերի հաջորդական թվարկումը և այլն։ А և Б տարբերակների այս մասը ծածկում են իրար, իսկ Г տարբերակում այն բավական ընդարձակ է։ Հնարավոր է, որ ժամանակագրության նախասկզբնական օրինակում նահապետներին և այլոց վերաբերող տրադիցիոն պատմությունը եղել է այնպես, ինչպես А և Б տարբերակներում, իսկ հետագայում ընդօրինակողներից որևէ մեկը չհավանելով դրան, սկզբնական մասն ինքն է կազմել ավելի ընդարձակ ձևով։ Սակայն հնարավոր է և հակառակը՝ А և Б տարբերակների վերոհիշյալ մասը համառոտվել է Г տարբերակի որևէ բնագրից։

Երեք տարբերակներում էլ պատմական մասը սկզբից ծածկում են միմյանց, մինչդեռ նրանք միևնույն տեղեկություններով չեն վերջանում։ А տարբերակը վերջանում է 1418 թվականին, Б տարբերակը՝ 1010 թվականին, իսկ Г տարբերակը՝ 1302 թվականին վերաբերող վկայություններով։ Այստեղից դըժվար չէ եզրակացնել, որ Б և Г տարբերակներում ժամանակագրությունը մնացել է թերի, որպիսի հանգամանքն ակնառու կերպով երևում է Г տարբերակի բնագրից։ Սակայն կարծում ենք, որ թերի է նաև А տարբերակը։ Հենց այն հանգամանքը, որ հեղինակը խորագրում խոստանում է տեղեկությունները հասցնել «մինչև առ մեզ»՝ իր ժամանակաշրջանը մի կողմից և IX ժամանակագրության Ա մասն էլ այդ դեպքից հետո շարունակվում է մյուս կողմից, ցույց է տալիս մեր ենթադրության հավանականությունը։

Հեղինակի օգտագործած սկզբնաղբյուրներից որոշակիորեն կարելի է նշել միայն Աստվածաշունչը. նա հենց այդպես էլ գրում է. «որոց (Ադամի և հաջորդների տարիների քանակը— Վ. Հ.) շարադրութիւնք լինի ըստ եւթանասնիցն ամք՝ ՐԾՂԸ (5198)»։ Ներկա հրատարակության մեջ առաջարկվող ժամանակագրության А տարբերակը դարձրել ենք հիմք, իսկ Б և Г տարբերակների տարընթերցվածները տվել ենք տողատակ։

---

[1] Էջ 287ա—290ա, А տարբերակ։

[2] Էջ 121ա—123ա, Б տարբերակ։

[3] Էջ 40ա—44բ, Г տարբերակ։

[4] Г տարբերակում խորագրի տեղը բաց է թողնված։

IX

# Ա

## ԳՈՒՐՍ ԳԱԼՆ ԹԱԹԱՐԱՑ[1]

Ի ՈՀ (1221) թուականին Հայոց առաջին թաթարն երեկ աշխարհէն Բուլղարա, էառ զաշխարհս Հայոց, որ Խորազմ կոչիւր։[2] 6ր

ԷԾ (1251)[3] թուին Մանկու խանն նստաւ թագաւոր։

ՉԳ (1254) թուին առաջին Արղունն նստաւ թագաւոր։[4]

ՉԷ (1258) թվին Հուլաւ[ու] խանն նստաւ։[5]

ՉԺ (1261) թվին և զԲաղդատ աւերեաց։[6]

ՉԺԱ (1262) թվին Ղուլ խանն նստաւ։[7]

ՉԺԴ (1265) թվին Արուղա խանն նստաւ։[8]

ՉԺԶ (1267) թվին Արղուն խանն նստաւ, որ Ճալալ պէկն սպանաւ ի Ղազվին։[9]

ՉԼԳ (1284) թվին Քեղա խանն նստաւ։[10]

ՉԼԱ (1282) թվին Ահմատ խանն նստաւ։[11]

ՉԼԴ (1285) թվին Բահուդին խանն նստաւ։[12]

ՉԽԶ (1297) թվին Շամ Ղազա[ն] խանն նստաւ։[13]

ՉԾԲ (1303) թվին Խարպանտա խանն նստաւ։[14]

ՉԿԶ (1317) թվին սուլթան Բուսայիդն նստաւ։[15]

ՉՂ (1341) թվին Սորապէկն նստաւ։[16]

ՉՂԳ (1344) թվին շիխ Հասան Բասրնին նստաւ։[17]

ՉՂԶ (1347) թվին Աշրաֆն նստաւ։[18]

ՊԸ (1359) թվին Վայիս խանն նստաւ։[19]

ՊԾԷ (1408) Ջօպան խանն նստաւ։[20]

ՊԼԵ (1386) թվին Թամուր խանն նստաւ. գնաց մինչև ի Դմիշխ և անդ արարեալ բազում կոտորած և անդի եկն ի Հայս ԺԷ (17) տար[ի] եկաց։[21] 7ա

ՊԾԳ (1404) թվին Ղարա Ուսուփն երեկ և նստաւ ի Թավրէզ. ԺԷ (17) տարի թագաւորեաց։[22]

---

2—3 Թուին Առոն թաթարն երեկ աշխարհս Հայոց, որ է Խորազմն։ 4 Զ փխ. ԷԾ, Մանկուն, թագաւոր չիք։ 5 թվին, առաջին չիք, Արղուն խանն նստաւ։ 6 Հուլաւու։ 7 և չիք. Պաղտատ այրեաց։ 8 Ջոհալ փխ. Ղուլ։ 9 Ցապաղու։ 10 Արղուխան։ 10—11 որ Ճալալ պէկն սպանաւ ի Ղազվին չիք։ 12 ՉԻԳ փխ. ՉԼԳ, Քէղաթու։ 14 ՉԽԲ փխ. ՉԼԳ, Բահատին։ 15 թվին Շամ չիք, Ղազան։ 16 ՉԾԳ փխ. ՉԾԲ, Ղարբանտա։ 17 Բուսայիթն։ 18 Ցուսուֆբէկն փխ. Սորապէկն։ 10 Հասանն, Բասրնին չիք։ 20 խան նստաւ։ 22 ՊԺԾ թվին փխ. ՊԾԷ։ 23 ՊԼԷ փխ. ՊԼԵ, Լանկ Թամուրն եկաւ փխ. Թամուր խանն նստաւ։ 21 Դամասկոս փխ. Դմիշխ, անտ։ 24—25 ամիսս ԺԷ և ապա գնաց ի Խորասան փխ. բազում կոտորած և անդի եկն ի Հայս ԺԷ տար[ի] եկաց։ 26 և չիք։ 26—27 Թախտն Թավրէզ։

ՊԾԶ (1407) Թվին Էղալին Մսրա երեկ Առճէշ և շինեաց գէթ կոռխանա իւր։

ՊԿԷ (1418) Թվին մեռաւ Ուսուփն, թագաւորեաց Իսկանդար իմրզէն։[23]

ՊՀ (1421) Թվին Ծաղաթէն եկեկ աշխարհս Հայոց։[24] Եւ Իսկանդարն փախեաւ Արզռոմ և զՕթմանն [սպ]ան[եաց][25] և դարձեալ անդի եկն ի Արաղաստան։

ՊՀԵ (1426) Թվին Ջօնկա խանն եկեկ։

ՊՁԴ (1435) Թվին Շախռուխն եկեկ և [Ջ]այնշէն թագաւորեաց և ինքն գնաց ճանապարհի մեռաւ։ Եւ միւս[ամին] Իսկանդարն սպանաւ որդոյ իւրոյ Շաղուպանէն։[26]

ՊՂԷ (1448) Թվին Իսկանդարի որդի Նուրալվանդն եկեալ Թալանեաց զԱրճէշ և գնաց ի Գեղի Նսաաւ։

ՊՂԸ (1449) Թվին Ջհանշէն Բաղդաա գնաց։

ՋԷ (1458) Թվին Ջհանշէն ի Հերի գնաց։[28] Հասան ‖ Ալին 7բ եկաւ Արճէշ։ Ղլիճ Ասլանն եկաւ զՎան գերեաց։[29]

ՋԺ (1461) Թվին Զաքարիա կաթողիկոս նստաւ Էջմիածինն։ Լուսաւորչի աջն յԱղթամարա եբեր խաչալամով։[22] Ի նոյն ամին Հասան Ալին Մանծկերտ շինեաց, Արճիշու եկեղեցւոյ գլուխն նորոգեաց։

ՋԺԲ(1463) Թվին Զաքարիա կաթողիկոսն դեղեցին՝ մեռաւ։[30]

ՋԺԴ (1465) Թվին Ջաղաթէն զՓիրպուտաղն սպանէց։

ՋԺԶ (1467) Թվին Ջաղաթէն սպանաւ։[31] Հասան Ալին եկաւ ի Մակու. Է (7) ամիս թագաւորեաց՝ ի Նաւասարդէն մինչև ի Վարդավառն.[32] Հասան պէկն սպանէց զՀասան Ալին, ինքն թագաւորեաց ի Թարվէզ Թ (9) տարի։[33]

ՋԻ (1471) Թվին Հասան պէկն զԲաղէշ ու զՂլաթ էառ։

ՋԻԲ (1473) Թվին եկն ի վերայ Ջիթաղին և մազապրծուկ փախստական եղև,[34] որ և զՍտեփաննոս վարդապետն սպանեցին Մեծոբա վանքն։

ՋԻԵ (1476) Թվին Հասան պէկն Վրաց տուն գնաց և բազում դերիս արար, թուով ԿՌ (60000)։[35]

ՋԻԶ (1477) Թվին դարձեալ գնաց Վրաց տուն ‖ եւ սրահեղ 8ա եղև ի սրբոյն Գէորգա և եկեալ մեռաւ։[36] Եւ թագաւորեաց Սօլիանն։ Եւ Եաղուպն գնաց ի Համիթ և եկաց անգ ժամանակ ինչ

1—2-րդ տողերը չկք։ 3 ՊԿԹ փխ. ՊԿԷ, մեռաւ Ուսուփն չկք, Իսկանտարն թագաւորեաց։ 4 իմրզէն չկք։ 5 Ջրղաթէն։ 6 Արզրում, և (զՕօթմանն) չկք։ 7 անդի չկք. Թախտն Թաւրէզ փխ. Արաղաստան։ 8 ՊՀԷ փխ. ՊՀԵ, Ճօնկէն, խանն չկք։ 9 Շաղռուխն, Ջըհանշէն։ 10 ճանապարհ և, ի միւս ամին։ 11 յորդոյ յիւրմէ, ի Շահղուպաթէն։ 12 ՊՂԸ փխ. ՊՂԷ, Իսկանտարի, Նուրալըանտն։ 13 զԱռճէշ, տեղին փխ. Գեղի։ 14 ՊՂԹ փխ. ՊՂԸ, ի Բաղտատու։ 15 ՋԷ Թվին Ջհանշէն ի Հերի գնաց չկք, և Հասան։ 16 Առճէշ և Մակու, Ասլան Ղլիճն, եկաւ չկք, Վան։ 17—21 տողերը չկք։ 22 Ջրղաթէն, զՓիրպուտախն սպանեաց։ 23 և Հասան Ալին։ 24—25 ի Նաւասարդէն մինչև ի Վարդավառն չկք։ 25 Եւ Հասան բէկն սպանեաց, և ինքն։ 26 Թաւրէզ, Ը փխ. Թ։ 27-րդ տողը չկք։ 28 29 ՋԻԹ Թվին Հասան բէկն ի վերայ Ջիթախին գնաց և մազապուրծ եղաւ։ 29—30-րդ տողը (որ և . Մեծոբա վանքն) չկք։ 31 ՋԽԵ փխ. ՋԻԵ, բէկն, ի Վրաց։ 33 ՋԻԷ փխ. ՋԻԶ, ի Վրաց, սրահար եղեալ։ 34 Գէորգայ, մեծ որդին Սուլթանն փխ. Սօլիան։ 35 ի չկք, և եկաց անդ ժամանակ ինչ չկք։

և դարձեալ եկն ի պատերազմ հետ Խոյա սուլթանին և էառ Եազուպ փաշան։[37]

ՋԼ (1481) թվին գնաց Սուլէման և Բայանտուրն ի վերայ Շամա և պատերազմեցաւ Ուրհա և առին զփաշայն։[38]

ՋԼԵ (1486) թվին խօճա Միրաքն սպանաւ ի Թարվէզ։[39]

ՋԼԷ (1488) թվին Սուլէման պէկն զկարմրագլուխ շիխ Հայտարն էառ բազում զօրօք։ Ի նոյն ամի Սարգիս կաթողիկոսն այն Լուսաւորչին տարաւ առ Հէդար պէկն։

ՋԽ (1491) թվին Եաղուպ փատշահ մեռաւ, ի մէջ ձմեռան. և Սոֆի Խալիլն թագաւորեցոյց զՊայոանդուրն։[40]

Յաւուր ամառնամտին գնաց ի վերայ Վանա և Թալանեաց. և ամիս մի նստաւ անդ. զոր լուեալ Սուլէման պէկն յարուցեալ եկն ի վերայ Համթա, էառ զԹալաա նորին և նստաւ
տարի մի[41] և ապա որդի Մագսուտին, Ըռստամն.եկեալ || ի զնտանէն 8r
էառ զԹախտն և նստաւ Է (7) տարի։[42]

ՋԽԶ (1497) թվին որդի Եւգլուին, Ահմատ խանն եկեալ ի Հոռմոց էառ զՌստամն և նստաւ Ը (8) ամիս։[43]

ՋԽԷ (1498) թվին Ալվանդն եկաւ Արճիշոյ գնաց ի Թարվէզ։[44] Գնաց Իբա սուլթան միւս Իբայ սուլթանն սպանաւ։[45]

ՋԾ (1501) թվին շահ Իսմայէլն էառ զՇամախի։[46]

ՋԾԱ (1502) թվին փախեաւ Ալվանդն։[47]

ՋԿԳ (1514) թվին [փաշ]չէն զօրս շահին կոտորեաց և դարձեալ թագաւորեաց շահն։[48]

ՋՀԳ (1524) թվին մեռաւ շահն և թագաւորեաց շահ Թամազն։

ՋՂԳ (1544) թվին շահն էառ զԹիփղիս և կոտորեաց։

ՋՂԴ (1545) թվին Հոմային եկեկ առ շահն։

ՋՂԸ (1549) թվին մահն եկեկ աշխարհս։[49]

ՌԳ (1554) թվին շահն ի Նախջըւան նստաւ։ Խոնդքարն Սահաթն աւերեաց։[50] Շահն գնաց Վրաց տուն, բերդն էառ. և դարձեալ գնաց ի Ղազվին։ Որդի շահին, Իսմայէլ գնաց ի Խորասան։

ՌԳ (1554) թվին զՀաւաըսափն[51] էառ Շահվէրտի || սուլթանն 9ա
և եկն ինքն փախստական ի Գանձայ։

1 ի չիք, պատերազմեցաւ, սուլթանին ի Խոյ։ 1–2 գնա և նստաւ Եաղուպ փաճահն։ 3—5 տողերը չիք։ 6 ՋԼԵ փխ. ՋԼԷ, Սիլէման բէկն, զԿարմիր գլուխն։ 7 Հէտարն, սպանեցաւ փխ. էառ։ 7—8-րդ տողը (ի նոյն ամի...առ Հէդար պէկն) չիք։ 9 փատիշահն, ի մէջ ձմեռան չիք։ 10 և չիք, Օրէ փխ. Սոֆի, թագաւորեաց, զՊայստնդուրն չիք։ 11—15-րդ տողերը չիք։ 16 Ուղուրլուին փխ. Եւգլուին։ 16—17 Ահմատ խանն եկեալ ի Հոռոմոց էառ զՌստամն չիք։ 17 Նստաւ թախտն փխ. և նստաւ։ 18 Ալվանդ խանն նստաւ Թավրէզ փխ. Ալվանդն եկաւ Արճիշոյ գնաց ի Թարվէզ։ 19 գնաց Իբա սուլթան միւս Իբա սուլթանն սպանաւ չիք։ 20—21 Կարմիր գլուխ շահ Իսմայիլն պատերազմեցաւ ընդ Ալվանդին և փախոյց զնա և ինքն էառ զթախտն և նստաւ։ 22—23 շահ Իսմայիլն հեծեալն կոտորեաց այլև թագաւորեաց ինքն։ փխ. չէն զօրս շահին կոտորեաց և դարձեալ թագաւորեաց շահն։ 24 Շահ Իսմայիլն փխ. շահն։ 24—25 որդին շահ Թամազն։. 26 ՋՂ թվին շահ Թամազն ի Վրաց տուն գնաց և աւերեաց Տփխիս և զամենայն յերկիրն և անթիւ գերիս արար փխ. ՋՂԳ թվին շահն էառ զԹիփղիս և կոտորեաց։ 27 ՋՂԳ փխ. ՋՂԴ, Հումիոյի փատիշահն եկաւ առն շահ Թամազին և գնաց։ 28 խիստ մահ եկաւ։

*ՌՁ (1557) թվին զԻոմայէլ միրզէն եդին ի Ղազղա գալէն։ Խոնդքարին տղայն, սուլթան Պայազիթն սպանաւ։*

*ՌԺԶ (1567) թվին զՍիմէոն խանն ձեր[բ]ակալ արարին։*[52]

*ՌԺԸ (1569) թվին մարախն երեկ աշխարհս։*

*ՌԻԴ (1575) թվին շահ Թահմազն մեռաւ։*[53]

*ՌԻԵ (1576) թվին շահ Իսմայէլն մեռաւ։*[54]

*ՌԻԹ (1580) թվին Ղայթազն որ եկաւ։*

*ՌԻԼ (1578) թվին Լալա փաշէն զՇամախի էառ։*

*ՌԾԳ (1604) թվին շահ Աբասն զԹարվէզ և զԵրևան էառ։*

*ՌԾԵ (1606) թվին զԳանձայ էառ։*

*ՌԾԶ (1607) թվին զՇամախի էառ։*

*ՌԾԸ (1609) թվին շահն Ղարաղաճին զըշլամիշ եղաւ։*

*ՌԿԴ (1615) թվին շահն զՎրաց տուն էառ։*

*ՌՀԱ (1622) թվին շահն զՂանտահար էառ։*

*ՌՀԳ (1624) թվին զԲաղդատ էառ։*

*ՌՀԴ (1625) թվին զՂարչղայ խանն և Ուսուփ խանն Մօվ-րովն սպանէց։ Եւ ի սոյն տարի Մօվրովն ու Թամրազն եկին ի Գանձայ և աւերեալ գերեցին զերկիրն ‖ ամենայն։*[55] *Եւ ի սոյն* 9բ
*ամին շահն զՂօրչիպաշին սարաար եղեալ, առաքեաց ի Վրաց տուն։ զՂազախ խանն, Շրուանա և զՇահպանտա խանն Թարվի-զու ձերպակալ արարին։*

*ՌՁԴ (1635) թվին սուլթան Մուրատ խոնդքարն զԵրևան էառ։*[56]

*ՌՁԵ (1636) թվին շահ Սաֆին եկեալ էառ բազում յաղ-թութեամբ։*[57]

*ՌՀԸ (1629) թվին շահ Սաֆին թագաւորեաց։*[58]

*ՌՀԷ (1628) թվին Դօուտ խանն տօնմիշ եղաւ։ Եւ զԹամ-րազ խանն երեր ի Գանձայ և աւերեցին զբազում տեղիս։*[59]

*Լալա փաշէն, որ Երևան զերեցոյց թւին ՌԻԷ (1578) էր։*

*Փարհատ փաշէն, որ Երևան առաւ թւին ՌԼԳ (1584) էր։*

*Օսման փաշէն, որ Թարվէզ առաւ թւին ՌԼԵ (1586) էր։*

*Փարհատ փաշէն, որ Գանձայ առաւ թւին ՌԼԸ (1589) էր։*

*Մուրատ փաշէն, որ սարտար երեկ Թարվէզ թւին ՌԾԸ (1609) էր։*

*Օքուզ Ահմաա փաշէն, որ սարաար երեկ Երևանա վերայ թւին ՌԿԵ (1616) էր։*

*Խալիլ փաշէն, որ սաըաար երեկ Թարվէզ, թւին ՌԿԷ (1618) էր։*

*ՌԿԸ (1619) թվին մորեխն եկն մինչ ի Գ (3) տարին կերաւ։*

## A ՏԱՐԲԵՐԱԿԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*ՌԴ (1554) թվին խոնդկարն երեկ ի վերայ շահ Թամազին և նստաւ ի Նախջվան և զՍահաթն ‖ աւերեաց և բազում* 186ա
*գերիս արար։*[60]

*ՌԸ (1559) թվին սուլթանն Պայազիթն երեկ ի շահ Թամազի մօտն։*

ՌԺ (1561) թվին խօնդկարն մարգ յըղարկեց Գայադիթն սպանիլ երետ։

ՌԺԵ (1566) թվին խան Ահմատ փաշէն բռնեց Գիլան առաւ։

ՌԺԸ (1569) թվին Լովասափի որդին՝ Սիմոն խանն բռնել իրետ, տարաւ իւր ոտքն։

ՌԻԱ (1572) թվին շահ Թահմազն Դեղարքունու. ծովս քանտել ետուր։

ՌԻԶ (1577) թվին շահ Թահմազն մեռաւ։ Շահ Իսմայիլն թագաւորեաց Զ (6) ամիս։[61] Եւ զկնի թագաւորեաց շահ Խուտարանտին։

ՌԼԵ (1586) թվին մեռաւ Խուտարանտին.[61] և թագաւորեաց շահ Ապազն։

ՌԾԲ (1603) թվին շահ Ապ[ազ]ն Երևան առաւ։

ՌԾԴ (1605) թվին Դանջա առաւ։

ՌԿԳ (1614) թվին գնաց Վրաց տուն աւար էառ, սուրղուն արաւ, տարաւ Փահրապատ և զայլսն գերի արար անթիւ։

ՌԾԳ (1604) թվին Ջղալօղլին եբեկ Երէվանայ վերայ. շահ Ապազն Սհաթն քշեց, Ջուղա քշեց, տարաւ ի Սպահան։

ՌԿԶ (1617) թվին Օգուզ Ահմատ փաշէն եբեկ Երէվանայ վերայ անթիւ զօրօք։ Շահ Ապազն Վրաց տուն գնաց նոյն տարին. անտի եկն Ակոխճէն եայլամիշ ելաւ։ Օգուզ Ահմտտ փաշէն առանց պատերազմի դարձաւ յետս։

ՌՀԲ (1623) ամին մահ եկաւ խիստ սաստիկ։

ՌՀԴ (1625) թվին Մովրաւն ղօնմիշ ելաւ. շահէն. խաներն կոտորեց. Ղարապազն գերավարեց։

ՌՀԵ (1626) թվին Ղօրչիպաշին եբեկ Վրաց տուն քանտեց, կոտորեց։ Մովրովն փախաւ գնաց Օսմանլուն։

ՌՀէ (1628) թվին շահ Ապազն մեռաւ և թագաւորեաց շահ Սաֆին։

ՌՁԱ (1632) թվին Դաւութ խանն ղօնմիշ ելաւ գնաց, Թամրազի մօտ, Ղաճարի պարնէքն ‖ կոտորեաց. Թամրազն առաւ եբեկ Գանճա թալանէց։ 186բ

ՌՁԲ (1633) թվին Ըռըստում խանն իբեկ Վրաց տուն քանտեց։ Դաւութ խանն փախաւ գնաց խոնթկարի մօտն։

ՌՁԳ (1634) թվին սաստիկ մահ՝ եկաւ։

ՌՁԴ (1635) թվին խոնդկարն սուլթան Մուրատն անհուն զօրօք եկն ի վերայ Էրէվանայ։ Գ (3) օրն առաւ ղբերթն[62] և գնաց մինչ ի Թավրէզ. Բաղաատ առաւ և մեռաւ։

ՌՁԵ (1636) թվին շահ Սէֆին եկեալ էառ ղբերթն բըռնութեամբ ապա բազումք ի զօրաց իւրեանց կոտորեցան։

ՌՂԱ (1642) թվին մեռաւ շահ Սաֆին և թագաւորեաց որդին, փոքրն՝ շահ Ապազն և սա արար խաղաղութեամբ թագաւորութիւն ԻԵ (25) ամ։

ՌՃԺԵ (1666) թվին մեռաւ շահ Ապազն և թագաւորեաց որդի նորա շահ Սուլէմանն ամռան եղանակին, սուրբ Աստուածածնին։[68]

*Թվին ՌՃԽԵ (1696) շահ Սուլէմանն մեռաւ*[64]
*ՌՃԽԵ (1696)-ումն շահ սուլթան Հուսէինն թագաւորեաց։*
*ՌՃԽԶ (1697) արեգակն խաւարեցաւ։*

Բ

ԹՎԱԿԱՆՔ ԱՌ ՀԱՄԱՌԱԿ ՄԻՆՉԵՎ ԱՌ ՄԵԶ[1]

*Ադամա մինչև ի ջրհեղեղն՝ ամք ՍՄԽԲ (2242).* 287ա

*Ջրհեղեղէն ի յաշտարակն՝ ամք ՇԻԵ (525)։*

*Յաշտարակէն ի Յաբրահամ՝ ամք ՆԺԷ (417)։*

*Յաբրահամէն մինչև ի Մովսէս յելսն յԵգիպտոսէ՝ ամք ՇԵ (505)։*

*Յելիցն մինչև ի Սողոմոն յառաջին շինուած տաճարին՝ ամք ՆՁ (480)։*

*Յառաջին շինուածոյն մինչև ի Զօրաբաբելի յերկրորդ շինումն՝ ամ.ք ՇԺԱ (511)։*

*Եւ անտի մինչև ի ծնունդն Քրիստոսի՝ ամք ‖ ՇԺԸ (518).* 287բ
*որոց շարադրութիւնք լինի ըստ եւթանասնիցն՝ ամք ՐՃՂԸ (5198).*

*Ի Ցառաքելոյն Թադէոսի մինչև ի սուրբն Գրիգոր՝ ամք ՅԺԲ (312)։*

*Զամս ծնընդեանն Քրիստոսի այսպէս արա՝ կալ ՇԾԳ (553) զհտյ թվականն ի վերայ բեր և այն է։*

*Զամս Լուսաւորչին այսպէս արա՝ կալ ՄԽԱ (241) զհայ թվական[ն] ի վերայ բեր և այն է*[2]*։*

*Ի սուրբ Գրիգորէ ի Սահակ Պարթևն՝ ամք ՃԸ (108)։*

*[Ի] Գրիգորէ [ի հայ] թվականն՝ ամք ՄԾԲ (252)։*

*Ի Գրիգորէ մինչև ի տէր Մովսէսն ԻԴ (24). կաթուղիկոս է։*

*Ի սորա Ժ (10) ամին եղաւ թվականն Հայոց ի ձեռն Անանիայ Շիրակացոյն մեծի իմաստասիրի։*

*Ի ծնընդենէն Քրիստոսի մինչև ի ժողովն Նիկիայ՝ ամք ՅԻԲ (322)։*

*Անդի մինչև ի Կոստանդնուպօլսին՝ ամք ՀԳ (73)։*

*Անդի ի ժողովն Եփեսոսի՝ ա[մք] Ծ (50)։*

*Անդի մինչև ի պիղծ ժողովն Քաղ ‖ քեդոնի՝ ամք ԻԷ (27).* 288ա

*Անդի մինչև ի ժողովն Դվնայ ի Հայք՝ ամք (ԼՋ)։*

*Անդի ի ժողովն էջմիածին Ղ (90) ամ էր, որոշեցին զԾոհան.*

*Անդի կորացան, որ Հայոց թվականին ՀԳ (624) ի բաց կացին Վրացիքն ի միաբանութենէ Հայոց. ի ձեռն Կիւրոնի [և] Գոբրիէլի Վրաց առաջնորդի։*

---

*6* Б *ի ջրհեղեղէն, ՇԻէ փխ. ՇԻԵ։ 7* Б *յԱբրահամն։ 8* Б *յԱբրահամու, յելսն Մովսէսի, ՇԷ փխ. ՇԵ։ 10* Б *Ցելիցն Մովսէսի, Սողոմոնի։ 12* Б *ի Զօրաբաբելի չիք. երկ[րո]րդ։ 15* Б *շարագրութիւնն, եօթանասնիցն։ 17* Б *մինչև չիք։ 19* Б *ծրնընդեան, արայ։ 21* Б *արայ։ 22* Б *թուականն։ 23* Б *Գրիգորէն։ 24* Б *ի Գրիգորէ մինչև,* Г *թվական։ 25* Б *կաթուղիկոսն։ 26* Г *թվական։ 27* Б *իմաստասիրին,* Г *իմաստնասիրի մեծի։ 30* БГ *Անտի,* Б *Կոստանդնուպօլսի ժողովն։ 31* Г *մինչև ի ժողովն Եփեսոսի։ 32* БГ *Անտի,* Г *Քաղկեդոնի։ 33* БГ *Անտի,* Г *Դովնայ։ 34* БГ *Անտի մինչև ի ժողովն,* Б *էջմիածնին,* Г *Ջ փխ. Ղ,* Б *որ 'որոշեցին։ 35* БГ *Անտի,* Б *թվական,* Г *թվականէն։ 36* Г *Վիրքն։*

ՀԶ (627) թվականի[ն] տէր Կոմիտաս շինեաց զսրբոյն Հոեփսիմէի վանքն։

ՁԸ (639) թվականին ելն տաճկաց ի Հայս։[3]

ՃԲ (653) թվականին շինեաց Ներսէս հայրապետն զսուրբն Սարգիս ի Դվին և զՎիրապն սուրբ [Գրիգոր]։

ՃԺԸ (669) թվին հայրապետն Անաստաս կոչէ առ ինքն զմեծն Անանիա, անշարժ կարգել զտոմարս մեր. և արարեալ մեծաւ ջանիւ, և իբրև կամեցան ժ[ո]ղ[ո]վս առնել վաղճանաւ սուրբն Անաստաս։

ԾԻԳ (674) թվին երևեցաւ խաչն ‖ Վարաղայ։ 288բ

ՃՀԱ (722) թվին Յոհան Օձնեցին պայծառացաւ ի Հայս։

ՄԻԳ (774) թվին շրջի տէր Եեսային մուրացիկ։

ՄԼԵ (786) տէր Սողոմոն շինէ զՄաքենի։

ՄԽԷ (798) թվին Սահակ և Յովսէփ կատարեցան ի Կարնոյ քաղաքն։

ՅԽԱ (892) թվին տէր Մաշտոց Ժ (10) ճգնաւորաւ պայծառանայր։

ՅՂԸ (949) թվին Սմպատ Տիեզերակ[ա]լն հիմնարկեաց զկաթուղիկէն Հանի։

ՆԽԲ (993) թվին կատարեաց Կատրամիտէ զսոյն կաթուղիկէ։

ՆԺԴ (965) թվին շինեցաւ Յաղբատ քան զՍանահին, ԺԱ (11) ամաւ յառաջ։

ՆԻԸ (979) թվին թագաւորն Սըմպատ պարըսպէ զՀանի։

ՆՁԹ (1040) թվին Սըմպատ Մաքրիստոսն զԲզնայրն Դունայ շինեաց։[4]

ՇՀԱ (1122) թվին թագաւորն Դաւիթ էառ զՏփխիս։

ՇՀԳ (1124) թվին թագաւորն [Դաւիթ] էառ զՅանի ի տաճ-
կէն և մեռաւ ‖ և թագաւորեաց որդի նորա Դեմետրէ։ 289ա

ՈԷ (1158) թվին փոխեցաւ առ Քրիստոս թագաւորն Դեմետրէ. և նստաւ աթոռ նորա Դաւիթ։

ՈԺ (1161) թվին թագաւորեաց մեծն Գուրգի և եհար զՇահիարմէն սաստիկ պատերազմաւ։

---

1 Б Եօթանասուն և Զ փխ. ՀԶ, Կոմիտասն, БГ զսուրբն։ 2 Б Հռիփսիմէ, Г Հոեփսիմէ, Б վանք, Г վասն (պետք է լինի վանս)։ 3 Б սաճացք 4 Г տէր Ներսէս։ 4—5 Б և Սարգիս զսուրբ Վիրապն փխ. զսուրբն Սարգիս ի Դվին։ 4 Г զսուրբ։ 5 Г ի Վիրապն փխ. զՎիրապն։ 6—9-րդ տողերը БГ չիք։ 10 БГ ԾԺԴ փխ. ԾԻԴ, թվականին, Г սուրբ խաչն։ 11 БГ թվականին, Г Աւձնեցին։ 12 БГ թվականին, Г շրջի չիք, Б Եսային, Г Յեսայի, Б մուրացիկ չիք, Г մուրացիկն։ 13 Б ՄԼԱ փխ. ՄԼԵ, БГ թվականին (տէր), Б զՄաքենիս, Г զՄաքենին։ 14 БГ թվականին, Г Կարգնո քաղաք։ 16 БГ թվականին։ 18 БГ 8ՂԹ փխ. ՅՂԸ, Г [թ]վականի, Б Եզերակալն, Г Եզրակալն։ 19 БГ Յանի փխ. Հանի։ 20 Б ՆԽԹ փխ. ՆԽԲ, Г թվականի[ն], Կորամիտէ, Б զայն փխ. սոյն, БГ Կաթուղիկէն։ 21 Г թվականի[ն], Б Հախպատ, Г Հաղբատ։ 21—22 Б և Սանահին ի կնոջէն Աշոտոյ Շահինշի (sic) Ժ ամաւ յառաջ շինեցաւ Հաղպատ, քան զՍանահին փխ. քան զՍանհաին ԺԱ ամաւ յառաջ։ 21 Г Սանահին, 21—22 Г ԺԱ ամաւ յառաջ չիք։ 23 Г թվականի[ն[, БГ Սմպատ, Б պարսպեաց, БГ զԱնի։ 24 Б ՆԾԹ փխ. ՆՁԹ, Г թվականի[ն], Սմպատ, Б Մաքիստրոսն, Г զԲզնայր, Б Տունայ փխ. Դունայ։ 25 Б շինեաց չիք։ 26 թվականի[ն], զՏփխիսա։ 22 թվականի[ն], զԱնի։ 29 թվականի[ն], Դեմեարէ։ 30 յաթոռ նորայ։ 31 թվականի[ն]։

ՌԺԲ (1163) Թվին Եղ[դ]կուզ աթափակն ի Ցանի ի մեծն Գորգէ էառ զնա։

ՌԽԵ (1196) Թվին Թագաւորեաց Հայոց Լևոն։

ՌԽԹ (1200) Թվին խանկարումն զատկին և սուտ գտան Վիրք և Ցոյնք, բայց ի Հայոց։

ՌԾԲ (1203) Թվին Թռանդն էառ զԹագաւորութիւն Հռոմինի։[5]

ՌԾԹ (1210) Թվին զԻւանէ աթապակն կալան ի Խլաթ։[6]

ՌՀԱ (1222) Թվին մեռաւ Թագաւորն Լևոն։

ՌՀԷ (1228) Թվին Խորազն եկ ի Հայս,[7] որ հայրն Ցոհանու հաւատաց ի Քրիստոս։

ՌՁ (1231) Թվին Թաթարն ը[զ]Խ[որ]ազմ կոտորեաց և զԳանձակ էառ։

ՌՁԷ (1238) Թվին էառ Թագաւորն զԼօռէ ‖ և զՑանի։[8] 289բ

ՌՁԸ (1239) Թվին խաւարեցաւ արեգակն. ի սոյն ամի մեռաւ Աւագն։[9]

Ձ (1251) Թվին Վանական վարդապետն մեռաւ[10]. և Մանկուն խանն Թագաւորեաց։[11]

ՁԳ (1254) Թվին Արղուն խանն նստաւ։

ՁԸ (1259) Թվին Դաւիթ Թագաւորն Վրաց Ցափխազք եմուտ։[12]

ՁԺ (1261) Թվին սպանաւ Զաքա[ր]իայ և Պազտատ աւերաց։[13]

ՁԺԱ (1262) Թվին Հուլայուն խանն նստաւ։

ՁԺԳ (1265) Թվին Արաղայ խանն նստաւ։

ՁԺՁ (1267) Թվին Արղուն խանն նստաւ։

ՁԼԳ (1284) Թվին Քեզաթու խանն նստաւ։

ՁԼԱ (1282) Թվին Ահմատ խանն նստաւ։

ՁԽԲ (1293) Թվին Բահատին խանն նստաւ։

ՁԽՁ (1297) Թվին Ղազան խանն նստաւ։

ՁԾԲ (1303) Թվին Խարբանդա խանն նստաւ։

ՁԿՁ (1317) Թվին սուլթան Բուսաիթն նստաւ։[14]

ՁՂ (1341) Թվին Սոթի բէկն նստաւ։

‖ ՁՂԳ (1344) Թվին շխի Հասան նստաւ։ 290ա

ՁՂՁ (1347) Թվին Աշրափն նստաւ։

ՊԾԵ (1406) Թվին Զօպան խան նստաւ։[15]

ՊԼԵ (1386) Թվին Թամուր խանն նստաւ և գնաց մինչև ի Գրմըշխ և եկն ի Հայս. եկաց ամս ԺԷ (17) ի Սամարղանդ մեռաւ։

ՊԾԳ (1404) Թվին Ղարա[16] Ցուսուփն նստաւ։ Մսրա եկն ի Թարվէզ ԺԵ (15) տարի Թագաւորեաց։

ՊԾՁ (1407) Թվին Էզ Ալին Մսրա եկն, զԱրճէշ շինեաց զգումրէԹն ըռազին։

ՊԿԷ (1418) Թվին Իսկանդար[17] միրզան Թագաւորեաց։

---

1 Թվականի[ն[, ի մեծն չիք։ 2 Գուրգի, գնայ։ 3 Թվականի[ն]։ 4 Թվականի[ն], զատիկն։ 5 և Վիրքն, Ցոյնքն։ 6 Թվականի[ն], զԹագաւորութիւնն, Հռոմին։ 7 Թվականի[ն]։ 8 Թվականի[ն[։ 9 Թվականի[ն], հայն փխ. հայրն, Ցոհաննու։ 11 Թվականի[ն], զԽորազն։ 12 էառ զԳանձակն։ 13 Թվականի[ն], գգաւոէ փխ. զլօռէ, զԱնի։ 14. Թվականի[ն]։ 15 Թվականի[ն]։ 16—17 Մանուկ փխ. Մանկուն։ 18 Թվականի[ն], Արղխուն։ 18 և 19 տողերի արանքում՝ ՁԷ Թվականի[ն[ Հուլաուն խանն նստաւ։ 19 Թվականի[ն]։ 20 Թվի, աւերեաց։ 21 Թվի, Հուլայու։ 22 Թվի Արայխան, խանն չիք։ 23 Թվի։ 24 Քեզայոյ։ 25 Թվականի[ն], Ահմաթ։ 26 Թվի. խան։ 27 Թվի, խան։ 28-րդ տողը չիք։ 29 ՁԾԱ փխ. ՁԿՁ, Թվականի[ն], Բուսաիթն չիք, խան նստաւ։

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## Ա

1. Սույն խորագիրը վերցրել ենք A տարբերակից։

2. Խոսքը վերաբերում է դեպի Անդրկովկաս մոնղոլների առաջին արշավանքին, որը տեղի է ունեցել 1220 թ.։ Այս մասին տես I ժամանակագրություն, էջ 26, 29, ծանոթ. 28։

3. Բնագրում «էՋ» ձևով։ Եվ իրոք Մանկու (Մունկէ) ղանը գահը ստանձնել է 1251 թ. (տես Лэн-Пуль „Мусуль. династии" стр. 117)։ Թագավորելով մինչև 1257 թ. ըստ Լեն-Պուլի (նույն տեղ, էջ 177), 1259 թ. ըստ Բարտոլդի (նույն տեղ, էջ 177, ծանոթ. 1)։

4. Հեղինակը նկատի ունի Հայաստանում և այլուր աշխարհագիր անցկացնող Արղունին, որին Կ. Գանձակեցին կոչում է «Մեծ ոստիկանն Արղունն», էջ 374։

5. Տես էջ 121, ծանոթ. 1։

6. Հուլաուն Բաղդադը գրավել է 1258 թ.։

7. Խոսքն արդյո՞ք Հուլաուի մասին է, որն իշխել է 1256—1265 թ. թ.։

8. Տես էջ 121, ծանոթ. 2։

9. Տես էջ 121, ծանոթ. 4։ Խոսքը վերաբերում է Խաչենի իշխան Հասան Ջալալի սպանությանը։ Հմմտ. Կ. Գանձակեցի, էջ 373—376։

10. Տես էջ 121, ծանոթ. 5։

11. Տես էջ 121, ծանոթ. 3։

12. Տես էջ 121, ծանոթ. 6։

13. Տես էջ 121, ծանոթ. 7։

14. Տես էջ 111, ծանոթ. 3։

15. Տես էջ 111, ծանոթ. 3։

16. Տես էջ 121, ծանոթ. 14։

17. Եթե խոսքը վերաբերում է Ջելաիրների հիմնադիր չեյխ Հասան Բուզուրգին, ապա նա իշխել է 1336—1356 թ. թ. (Лэн-Пуль „Мусуль. династии" стр. 207) իսկ Հասան Կուչյուկը տակավին սպանվել էր 1343 թ.։

18. Տես էջ 121, ծանոթ. 16։

19. Տես էջ 121, ծանոթ. 18։

20. Տես էջ 100, ծանոթ. 135։

21. Լենկ-Թեմուրն իշխել է 1370—1405 թ. թ.։ Տես էջ 123, ծանոթ. 30։

22. Հեղինակը նկատի ունի Ղարա Յուսուֆի (Կարա-Կոյունլու թուրքմեն ցեղից) երկրորդ անգամ գահ բարձրանալը, սակայն այդ լինում է Լենկ-Թեմուրի մահից (1405 թ.) հետո և տևում է մինչև 1420 թ.։ (Տես և հմմտ. «Այրարատ», էջ 328)։

23. Ղարա-Յուսուֆի մահն ընդունված է նշել 1420 թ. (տես և հմմտ. Լեն-Պուլ „Мусуль. династии" էջ 214, Ալիշան «Այրարատ», էջ 328)։

24. Խոսքը վերաբերում է Շահռուխի արշավանքին։

25. Տես և հմմտ. էջ 123, ծանոթ. 41։

26. Հմմտ. Թ. Մեծոփեցի, էջ 107։

27. Հմմտ. Հ. Աճառեան «Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի», Վիեննա, 1910, էջ 103, Ե. Լալայեան «Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի», էջ 428, և "A catalogue of the Armenian manuscripts in the Britisch Museum" London, 1913, p. 95։

28. Այս արշավանքը տեղի է ունեցել 1459 թ.։ Այդ մասին տես Ոստանում ընդօրինակված

ճաշոցի հիշատակարանը, Ակինեան «Գաւաղանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ», Վիեննա, 1920, էջ 98—99։

29. 1466 թ. ընդօրինակած Հայսմաւուրի հիշատակարանում Զաքարիայի հաջորդ Ստեփանոսի մասին գրված է. «և ի հայրապետութեան նորընծայ տէր Ստեփաննոսին Աղթամարայ...» («Նստարք», էջ 225)։ Այս հիման վրա կարծում են, որ Զաքարիան մահացել է 1465 թ. վերջերին («Ազգապատում», էջ 2170)։ Մինչդեռ Ակինյանը Զաքարիայի կաթողիկոսական տարիները նշում է 1434—1464 թ. թ. («Գաւաղանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ», էջ 85)։

30. Համա. Ն. Ակինեան «Գաւաղանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ», Վիեննա, 1920, էջ 85—108։

31. Խոսքը վերաբերում է Ջհանշահի սպանությանը, այդ մասին տես ներքևում՝ էջ 168, 175, ծանոթ. 14, էջ 194։

32. Համա ներքևում էջ 168։ 1468 թ. նավասարդ ամիսը կսկսվի 1467 թ. նոյեմբերի 24-ին, իսկ նույն տարվա մարգավառը կընկնի հուլիսի 24-ին. այսպիսով բնագրի «ի նաւասարդէն մինչև ի մարգավառն» վկայությունը կհամապատասխանի 1467 թ. դեկտեմբերից մինչև 1468 թ. հուլիսի 24-ը։ Նշանակում է Հասան Ալու իշխանությունը տևել է 7 ամսից մի քիչ ավելի Համա. Ներքևում, էջ 194։

33. Հասան Ալին ջախջախվեց 1468 թ. հուլիսի վերջին Մարանդում տեղի ունեցած ճակատամարտում (տես XI ժամանակագրություն, ծանոթ. 15), որից հետո Կարա-Կոյունլուների տիրույթներն անցան Հասան բեկին։ Բնագրի այն վկայությունը, թե Ուզուն Հասանը Թավրիզում թագավորել է 9 տարի, ստույգ է, որովհետև Ուզուն Հասանը մահացել է 1478 թ. հունվարի 5-ին։ (Տես XI ժամանակագրություն, ծանոթ. 23)։

34. Հեղինակը նկատի ունի Ուզուն Հասանի և օսմանական սուլթան Մուհամմեդ II-ի միջև 1472—1473 թ. թ. տեղի ունեցած կռիվները, որի ժամանակ 1473 թ. օգոստոսին, Դերջանի մոտ Ուզուն Հասանը պարտվեց օսմանցիներից և փախավ։ Տես XI ժամանակագրություն, ծանոթ. 21)։

35. Համա. XIII ժամանակագրություն, ծանոթ. 5։

36. Սույն վկայությունը հաստատում են Ջ. Բարբարոն և Ջ. Անջիոլելլոն (տես «Ուղեգրություններ», հ. Ա, էջ 204—205, 267—269), իսկ Ուզուն Հասանի մահվան մասին տես վերևում, ծանոթ. 33։

37. Տես XIII ժամանակագրություն, ծանոթ. 7։

38. Խոսքը վերաբերում է Յաղուբի քաջ զորավար Սուլեյման բեկ Բիժան օղլու և Բայանդուր բեկի վարած կռիվներին՝ Եգիպտոսի և Սիրիայի սուլթան Աշրաֆ Սեյֆ-ադ-դին Կաիտ բեյի դեմ (1468—1495 թ. թ.)։ Սակայն երկու բանակների ճակատամարտը տեղի է ունեցել 1480 թ. Ռուխի մոտ, որտեղ մամլյուկները պարտվել են (տես Петрушевский" Гос а Азербайджана в XV в." (Сборник статей... выпуск I, стр 17'):

39. Խոջա Միրաքի նահատակությունը Թավրիզում տեղի է ունեցել 1486 թ. մարտի 24-ին, ուրբաթ օրը։ Տես «Հայոց նոր վկաներ», էջ 322, Ձեռ. № 6273, էջ 199ա—202ա։ Խոջա Միրաքի նահատակության մասին խոսում է նաև Ջ. Բարբարոն (տես «Ուղեգրություններ», հ. Ա, էջ 213—214)։։

40. Համա. XIII ժամանակագրություն, ծանոթ. 10։

41. Համա. XIII ժամանակագրություն, ծանոթ. 13։

42. Համա. նույն տեղ։

43. Համա. նույն տեղ։

44. Համա. նույն տեղ։

45. Համա. նույն տեղ։

46. Համա. նույն տեղ, ծանոթ. 22։

47. Համա. նույն տեղ, ծանոթ. 23։

48. Սույն հատվածի առաջին բառն աղավաղված է։ Խոսքն արդյո՞ք չի վերաբերում սուլթան Սելիմ I-ի և շահ Իսմայիլի 1514 թ. Չալդրանի ճակատամարտին։

49. Այնուհետև երկու բնագրերի շարունակությունը տարբերվում են միմյանցից, ուստի վերջիններս ներկայացնում ենք առանձին-առանձին։

50. Հեղինակը նկատի ունի Սուլեյման I-ի և շահ Թահմազի 1550—1554 թ. թ. պատերազմները։ Բնագրի «ՋՍահաթՆ» երկիրը ընկնում է պատմական Երասխաձորի մեջ (Արշարունիքում), Արաքսի աջ ափին, Կողբի մոտ, «... յերկիրն Սահաթոյ որ է յայնկոյս գետոյն Երաս-

խայ ի կողմն Կողբայ...» (Ա. Դավրիժեցի, էջ 228, տես նաև 81, համտ. Ալիշան «Տեղագիր Հայոց Մեծաց», էջ 65)։ Այս երկրի մի մասը՝ Երևանը Սուրմարիով կոչվում էր նաև Սահաթաչփոս կամ Սահաթ-Չուխուր (պարս. երջանիկ հովիտ-փոս)։

51. Վրաց թագավոր Լուարսաբ I-ը, թագավորել է 1534—1558 թ. թ.։

52. Վրաց թագավոր Սիմեոն I-ը թագավորել է 1558—1600 թ. թ.։

53. Իրականում 1576 թ.։

54. Իսմայիլ II, ըստ Լեն-Պուլի 1578 թ.։

55. Մանրամասն տես Ա. Դավրիժեցու մոտ, էջ 115—142։

56. Տես XIII ժամանակագրությունը, ծանոթ. 36։

57. Խոսքը Երևանի հետ գրավման մասին է։ Տես և համտ. XIII ժամանակագրություն, ծանոթ. 39։

58. Շահ Սեֆի I, թագավորել է 1628—1642 թ. թ.։

59. Այս հատվածից հետո բնագիրը շարունակել է այլ անձնավորություն, այգ երևում է շարագրության ոճից։ Հետևապես Б տարբերակում առաջարկվող ժամանակագրության սկզբնական բնագիրը շարունակվել է երկու անձնավորության կողմից։

60. Համտ. վերևում, էջ 151, ծանոթ. 50։

61. Ընդգծված հատվածը գրված է աջ լուսանցքում։

62. Համտ. XIII ժամանակագրություն։

63. Այսինքն՝ օգոստոսի 12-ին։

64. Իրականում 1694 թ.։

## Բ

1. Բնագրում վերնագիրը գրված է կարմիր թանաքով։

2. Առաջարկվող ժամանակագրության A և Б տարբերակների աշխարհի արարչագործության ու եկեղեցական տրադիցիոն պատմության վերաբերող հատվածներն իրար ծածկում են, իսկ Г-ն բավական ընդարձակ է, որովհետև վերջինս պատմական արժեք չի ներկայացնում, ուստի այդ հատվածի տարընթերցվածքները բաց թողինք։

3. Տես վերևում, էջ 28, ծանոթ. 3։

Ինչպես արդեն նշել ենք (էջ 141), սույն ժամանակագրության առաջին հատվածը I ժամանակագրությանը շատ մոտ է, ուստի բնագրին անհրաժեշտ ծանոթագրություններ չենք տա, այդպիսիք տես էջ 28—29։

4. Ժամանակագրության Б տարբերակն այստեղ ընդհատվում է։ Տողատակի մնացած տարընթերցվածքները վերաբերում են Г տարբերակին։

5. Տես և համտ. էջ 37, էջ 53, ծանոթ. 15։

6. Տես և համտ. էջ 38, էջ 54, ծանոթ. 18։

7. Խոսքը վերաբերում է Ջալալ-ադ-դինի դեպի Հայաստան կատարած արշավանքին։ Սկզբնական օրինակում եղել է «ՈՀԵ» փոխանակ «ՈՀԷ»։

8. Բնագրի «ՈՁԷ» նշումն անշուշտ գրչագրական սխալ է և պետք է լինի «ՈՁԵ»։

9. Համտ. Կ. Գանձակեցի, էջ 305, վերևում, էջ 42, 105։

10. Տես վերևում, էջ 58, ծանոթ. 59։

11. Տես վերևում, էջ 150, ծանոթ. 3։ Ինչպես արդեն նշել ենք, այստեղից սկսած սույն ժամանակագրության տեղեկությունները, ծածկում են IX ժամանակագրության Ա մասի համապատասխան հատվածին, ուստի անհրաժեշտ ծանոթագրությունները չենք կրկնի, այդպիսիք տես վերևում, էջ 150—151։

12. Համտ. Կ. Գանձակեցի, էջ 373։

13. Կ. Գանձակեցին Զաքարեի սպանությանը հատուկ գլուխ է նվիրում (էջ 377), բայց սպանության տարեթիվը չհիշելով, այն նշում է Խաչենի իշխան Հասան Ջալալի սպանությունից՝ 1261 թվից, հետո։ Բնագրի Բաղդատի ավերման վկայությունը վերաբերում է 1258 թ. Հուլաուի կողմից Բաղդատի գրավմանը, որը այստեղ նշված է իրականից երեք տարի ուշ։

14. Г տարբերակն այստեղ ընդհատվում է։ Սույն դեպքը նույն տարբերակում դրված է ՉՄԱ (=1302) թվականի դիմաց։

15. Եթե խոսքը վերաբերում է Թամուրտաշի հորը՝ Չոբանին, ապա նա սպանվել է 1327 թ.

Աբու-Սեյիդի կողմից (տես էջ 100, ծանոթ. 135)։ Սույն ժամանակաշրջանում Ջոքան անունով կառավարիչ հայտնի չէ։

16. Բնագրում «Ղուտաս» ձևով։

17. Բնագրում «Իսկանդ» ձևով։ Խոսքը վերաբերում է Ղարա Յուսուֆի որդի Իսկանդարին, որն իշխել է 1420—1437 թ. թ. ըստ Լեն-Պուլի („Мус. династии". стр. 214) և 1421—1438 թ. թ. ըստ Ալիշանի («Այրարատ», էջ 328)։ Սույն հատվածից հետո A տարբերակում բնագիրը վերջանում է։ Ինչպես արդեն նշել ենք, սույն բնագիրը վերջից նույնպես թերի է։

## X

## ԱՆԴՐԵԱՍ ՍԱՐԿԱՎԱԳ ԵՎԴՈԿԵՑՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVI Դ.)

*Անդրեաս սարկավագի խորագիր չունեցող ժամանակագրությունը գտնըվում է Մատենադարանի № 1869 ժողովածուի 395ա—400բ էջերում։ Առաջին անգամ հրատարակել է անվանի հայագետ Ք. Պատկանյանը, 1884 թ., Պետերբուրգում։[1]*

*Ժողովածուն ընդօրինակել է Անդրեաս սարկավագը, 1585 թվից մինչև 1589 թիվը։ Ժամանակագրության մեջ հեղինակը մի քանի անգամ հիշում է իր մասին, որից իմանում ենք, թե ժամանակագրության հեղինակը, հենց ժողովածուն ընդօրինակող Անդրեաս սարկավագն է, և այդ գիրքը նրա ինքնագիր օրինակն է։*

*Ժողովածուն սկզբից մինչև 392ա էջը ընդօրինակել է Անդրեասը 1585—1589 թվերի ընթացքում, իսկ ժամանակագրությունն էլ սկսվում է 395ա էջից, (մինչև 399ա էջը), այսինքն Անդրեասի ընդօրինակած նյութերից հետո և վերջանում է 1590 թվի դեպքով։*

*Ժամանակագրության մեջ տեղ գտած փաստերից պարզվում է, որ Անդրեասը ծնվել է ՋՂ (1541) թ. նոյեմբերի 27-ին։ Նրա հայրը՝ խոջա Միրաքը ոսկերիչ է եղել։ Հիշվում է նաև հեղինակի ամուսնության (ՌԺ—1561 թ.), ծնողների և բարեկամների մահվան և այլ մասնավոր դեպքերի մասին։*

*Անդրեասի կազմած ինը էջանոց ժամանակագրությունն սկսվում է Կ. Պոլսի գրավումով[3] և վերջանում է 1590 թվին իր որդիներից մեկի մահվան առթիվ գրված փոքրիկ ողբով։ Սրանից հետո ժամանակագրությունը շարունակվել է ուրիշների կողմից մինչև 1668 թիվը։ Անդրեասը իր կազմած ժամանակագրության սկզբի մասի համար՝ մինչև XVI դարի 40-ական թվերը, հավանաբար օգտագործել է գրավոր աղբյուրներ, որից հետո, որպես ժամանակակից, կազմել է իր ժամանակի անցուդարձին վերաբերող դեպքերը։ Եթե նկատի ունենանք ժամանակագրության մեջ տեղ գտած մի շարք մանր դեպքերի հիշատակությունը, օրինակ «Ի թվին ՋՂՋ. խոճայ Միրաքն գշարտախն շինեց», և նման այլ դեպքեր, թերևս հավանական լինի ենթադրել, որ հեղինակը նախօրոք կազմած է եղել ժամանակագրությունը և ապա 1589 թ. № 1869 ժողովածուն ընդօրինակելուց հետո, այն մտցրել ժողովածուի մեջ։*

*Ժամանակագրությունը, բացի մասնավոր դեպքերի վկայություններից,*

---

[1] *«Նշխարք մատենագրութեան հայոց»։ վերջինիս 41—49 էջերում գտնվում է մեզ հետաքրքրող ժամանակագրությունը։*

[2] *Տես հիշատակարաններ էջ 1ր, 392ա—393ր։*

[3] *Վերոհիշյալ դեպքը ըստ հեղինակի տեղի է ունեցել հայոց Ջ (900) թվին։ Հեղինակը հավանաբար հայոց թվականը հաշվում է 553 թվից։*

XVI դարին վերաբերող բավական հետաքրքիր տեղեկություններ է պահել, որոնք վերաբերում են թուրքական սուլթանների գահակալություններին, վերջիններիս և Սեֆյան Պարսկաստանի միջև մղված պատերազմներին ու նրանց փոփոխակի հաջողություններին և այլն։

Առաջարկվող ժամանակագրության վկայություններն ընդհանուր առմամբ վստահելի են, թեև կան և առանձին վկայություններ, որոնք չեն հաստատվում այլ աղբյուրներով։ Այսպես, ժամանակագրության մեջ կարդում ենք. «Ի թվին ՋԿԴ. ելաւ սուլտան Սէլիմն ի վերայ Սոֆուն բազում զաւրաւք և էառ զնայ, որ ասեն Չալտրանի կռիւ ... և ի սոյն ամի առաւ Կամխայ բերդն այս թագաւորս»։

Ինչպես տեսնում ենք, Չալտրանի ճակատամարտը և Կամախի գրավումը կատարվել են միևնույն տարում՝ 1515 թվին։ Մինչդեռ Ղ. Փիրղալեմյանի հավաքած հիշատակարանների մեջ գտնում ենք վկայություն, ըստ որի ՋԿԳ (1514) թվին տեղի է ունենում պատերազմ. «և կոտորեցան սաստիկ յոյժ... և ոչ ոք յաղթահարեցաւ... և ի գալ տարիոյն (ՋԿԴ—1515) էառ զբերդն Կամախայ»։[1] Իրականում Չալտրանի ճակատամարտը, որտեղ Սելիմ I-ը ջարդեց շահ Իսմայիլի քանակներին, տեղի է ունեցել 1514 թ. օգոստոսի 22-ին, իսկ Կամախը գրավել են 1515 թ.։ Արժեքավոր փաստեր կան նաև ժամանակագրության շարունակության մեջ, որոնք արձանագրվել են տարբեր մարդկանց կողմից, տարբեր ժամանակներում տեղի ունեցած անցքերի թարմ ազդեցության տակ։ Օրինակ՝ բավական մանրամասը նկարագրված է ջալալի Ղարա Եազճու կողմից 1601 թ. Թոխաթում, ապա Սեբաստիայում, Զիլայում, Ամասիայում, Մարզվանում կատարված ավերումներն ու կողոպուտը։ Սակայն ավելի հետաքրքիր է ռուս կազակներին վերաբերող երկու վկայությունները, որոնցից մեկը վերաբերում է 1614 թվին Սինոպի, իսկ մյուսը՝ 1616 թ. Կաֆայի գրավմանը և ավերումներին, և որոնց ստույգ տարեթվերը հայտնի չէին։[2]

---

[1] Ղ. Փիրղալեմյան «Նշխարք պատմութեան Հայոց» ձեռագիր № 4515, էջ 258։ Հմմտ. նաև ժամանակագրության Կարս քաղաքի կառուցման վկայությունը № 4515 ձեռագիր, էջ 312, վկայության հետ, ինչպես նաև Գ. Սրվանձտյանի «Թորոս Աղբար» մասն Բ էջ 268։ Ե. Լալաեան «Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի», Թիֆլիս, 1915 թ. էջ 9—10։

[2] Հմմտ. С. М. Соловьев „История России с древнейших времен" СПБ, 1896, том. 9, стр. 1097—1098. Н. Костомаров „Русская история" т. II. стр. 3—18.

## X

Ի թվին Ջ (1451) առաւ սուլտան Մուհամմատն զԿոստան- 395ա
զինուպոլիս, այսինքն զՍտամբուլ, որ է Իսլամպուլ։[1]

Ի թվին ՋԼԳ (1484) մեռաւ սուլտան Մուհամմատն և թագաւորեաց որդի նորա սուլտան Պայազիտն։[2]

Ի թվին ՋԾԸ (1509) ի Ըստամբաւլ շարժ եղաւ և բազում վնաս եղաւ և Խ (40) աւր երեցաւ։

Ի թվին ՋԿԱ (1512) մեռաւ սուլտան Պայազիտն, որ էր խոնթքարն. և թագաւորեաց որդի նորա սուլտան Սէլիմն.[3] և եղև խռովութիւն ի մէջ եղբարցն։ Զոր և գնացեալ աւագ եղբայր նորին՝ սուլտան Ահմատն մինչև առ ծովն Ովկիանոս և ամաւթալից ի յետս դարձաւ, վասն ոչ թագաւորելոյն։ Եւ եղև որդի նորա սուլտան Մուրատն Սոֆի։ Եւ յետ նորա եկեալ յարևելից չար և անաւրէն և արիւնարբու Նուր Ալին և բազում աւար առին ի Հայոց և ի Տաճկաց և հեղին դարիւն անմեղաց։ Եւ յետոյ եկեալ Սինան փաշան և գնացեալ մարտեաւ ընդ նոսա և դարձաւ փախըստական. և անկեալ շատք ի ղաւրացն Հայոց և Տաճկաց արևամբ թաւալեալ. զոր տէր աստուած փրկեսցէ ի յանաւրինաց և ազատեսցէ և յանիրաւ պահանջողաց. ամէն։

Ի թվին ՋԿԴ (1515) ելաւ սուլտան Սէլիմն ի ‖ վերայ Սո- 395բ
ֆուն բազում ղաւրաւք և էառ զնայ, որ ասեն Զալտրանի կռիւ։[4] Եւ եղև մահ աղայոց. և կարկուտ անկեալ յերկնից հիանալի. և եղև սղութիւն հացի, որ քիլակն եղև Լ (30) օթմանի։ Եւ ի սոյն ամի առաւ Կամխայ բերդն այս թագաւորս։

Ի թվին ՋԿԹ (1520) Ջալալին ելաւ և եկաւ ի Թոխաթու վերայ սուրբ Թորոսու տաւնին։[5]

Ի թվին ՋՀ (1521) մեռաւ սուլտան Սէլիմն և թագաւորեաց որդի նորա սուլտան Սուլայմանն։[6]

Ի թվին ՋՀԵ (1526) ելաւ շեխ Ղալանտարն և եկաւ ի Ծինճիֆայ գեղին առջև իջաւ և եկաւ բազում հեծել և Բ (2) փաշայ և կոտրեց զԼՌ (3000) հոգին և զԱ (1) փաշան սպաննեց. և բերին մօյտանին յիմարաթն թաղեցին. և այլքն փախեան. և ինքեանք էին Կ (60) հոգի։

Ի թվին ՋՁ (1531) եղաւ սկիզբն տղայ ժողովի։

Ի թվին ՋՁԲ (1533) սուլտան Սուլայմանն բազում ղաւրաւք գնաց ի վերայ Կարմիր գլխուն. և նայ փախեաւ ի Խորասան. և զի ղաւրքն բազում էին խոնթքարին, և ձմեռն էր, և սղութիւն յոյժ, վասն որոյ ոչ կաբաց երթալ զհետ նորա, այլ

եկեալ ի Պաղտատ ձմերեաց ի Նմայ և առաւ զնայ, և գարունն նլեալ գնաց ի տեղի իւր։

Ի թվին ՋՁԵ (1536) սուլտան Սուլայմանն զԻպրէհիմ փաշան սպաննեց ի փառս սատանայի. զի այս փաշան եղեր է պատճառ տղայ ժողովելոյ. ‖ իսկ ի միւս տղայ ժողովելն եղև Թվին ՋՁԶ (1537)։ 396ա

Իսկ ի Թվին ՋՁԴ (1535) ծնաւ տէր Մինասն,[8] որդին խոճայ Միրաքին։

Ի Թվին ՋԿԴ (1515) տէր Ստեփաննոսն ծնաւ փետրվարի ԺԹ (19)։[9]

Ի Թվին ՋՁԸ (1539) մոլորեցան ազգն Ցունաց և արարին ծռազատիկ ապրիլի Զ (6)-ըն. աստուած փրկէ ղհայ ազգն։

Ի Թվին ՋՂ (1541) սուլտան Մուստաֆան ի Ցամասխայ եկաւ և Թագաւորեաց անգ ամս ԺԳ (13) և սպանաւ ի հօրէն։[10]

Ի Թվին ՋՂ (1541) նոյեմբերի ԻԷ (27), աւրն կիրակի, ծնաւ Անդրէասն,[11] տղայ խոճայ Միրաքին, ի Ճանփաշայ մաւրէն, ի յիսնակին յեկն։

Ի Թվին ՋՂԱ (1542) հոկտեմբերի Ը (8) եղև ձեռնադրութիւն տէր Ստեփաննոսին, Քաչկակ էրէցն։

Ի Թվին ՋՂԲ (1543) և ապրիլի Դ (4), աւրն չորեքշաբթի, ի լուսանալ աւուրն Ա [1] ժամն, սաստիկ շարժ եղաւ, Ողորմեայ փոխին ասելու չաք եղաւ,[12] որ երերաց և շատ աւեր արաւ։

Ի Թվին ՋՂԲ (1543) Թոխաթու եկեղեցիքն աւերեցին Թուրք ազգն Ը (8) նիհետրաց,[13] ապրիլի Թ (9) սև երկուշաբթի լուսացաւ մեզ. վասն ծովացեալ մեղաց մերոց ի վերայ մեր եկն այս պատուհասս։

Ի Թվին ՋՂԶ (1547) խոճայ Միրաքն զչարտախն շինեց։

Ի Թվին ՋՂԷ (1548) եկաւ շահին ախբարն՝ Ալխասն և հնազանդեցաւ խոնթքարին.. և մէկալ տարին խոնթքարն գնաց ի վերայ շահին։[14]

‖ Ի Թվին Ռ (1551) փետըրվարի Ա (1) ծնաւ աղբարս Խաչատուրն։ 396բ

Դարձեալ Թվին ՌԺԴ (1565) փետրվարի Ի (20) առ աստուած փոխեցաւ այս Խաչատուրս։

Ի Թվին Ռ (1551) յինանցն ոսկերչերն ի նոր չարսուն գնացին։ Զաւփլին և մղտեսցի Ցափուկն արին.[14] աստուած ողորմի իւրեանց հոգուն. ամէն։

Ի Թվին ՌԳ (1554) յունիսի ԻԲ (22), աւրն ուրբաթ, ծնաւ Աննան, և մղտեցի Կօկճան Երուսաղէմայ եկաւ և նոյեմբեր[ի] ԻԴ (24) առ աստուած փոխեցաւ։

Դարձեալ Թվին ՌԻԷ (1578) մայիսի ԻԸ (28), աւրն չորեքշաբթի, մեռաւ այս Աննան ի փառս աստուծոյ։

Ի Թվին ՌԳ (1554) սուլտան Սուլայմանն սաֆար արաւ ի վերայ Կարմիր գլխին. և զՑերևան և զՆախչուան զամենայն գերի բերին։[15]

Ի թվին ՌԵ (1556) յուլիսի Դ (4), աւրն շաբաթ, մեռաւ Ծտնփաշան, մայրն Անդրիասին։

Ի թվին Ռ և Է (1558) եկաւ սուլտան Պայազիտն ի Ցամասիայ, դարձեալ գնաց ի Կօնեայ, աղբօրն ի վերայ ի պատերազմն և յաղթվեցաւ յեղբաւրէն և փոխեաւ գնաց ի Ղզըլպաշն ի Ղազպին, և մեռաւ ի ձեռն շահին, հրամանաւ հաւրն իւրոյ՝ սուլտան Սուլայմանին։

Ի թվին Ռ ե Ժ (1561) փեարրվարի Բ (2), սուրբ Սարդըսին կիրակին ես՝ Անդրէասըս կարգըւեցայ։

Ի թվին Ռ և ԺԲ (1563) յունիսի ԻԲ (22), աւրն երեքշաբթի, ծնաւ Ովանէսն, տղայ Անդրէասին։

‖ Դարձեալ թվին Ռ և ԻԸ (1579) աւգոստոսի ԻԸ (28), օրն 397ա ուրբաթ, խիստ աղեբսալի բան մի եղև, զի վաղճանեցաւ այս Յովաննէսն սարկաւագս, որդի մեղաւուր Անդրէասին. խիստ ուսաց և կատարեալ և ուսուցիչ աշակերտաց. մեռաւ և աշակերտքն անկատար մնացին։ Եւ ինքն էր խիստ հեզ և հանդարտ և խելաց տէր և ամաց ԺԶ (16)-ից. յորժամ կարդայք զսակաւ գիրս յիշեցէք զՅովաննէս սարկաւագն և զծնաւղսն իւր, զմեղաւոր Անդրէասն, որ ի յիւր բազում մեղացն՝ զիւր սիրուն սարկաւագ որդոյն զաղէտն աչօք տեսաւ. վայ իւր մեղացն, յիշեցէք և ասէք հայր մեր, որ յերկինս։

Ի թվին Ռ և ԺԴ (1565) աւգոստոսի Լ (30), օրն հինգշաբթի, ծնաւ Ծանփաշան։

Դարձեալ թվին ՌԺԸ (1569) ապրիլ Լ (30), աւրն շաբաթ, մեռաւ այս Ծանփաշան։

Ի թվին Ռ և ԺԵ (1566) մեռաւ սուլաան Սուլայմանն և թագաւորեաց որդի նորա սուլտան Սէլիմն։[15] Ի սոյն ամի Ալի փաշին նոր բաղնիքն ի բան հանին։

Ի թվին Ռ և ի ԺԸ (1569) աւգոստոսի ԻԶ (26), աւրն ուրբաթ, ծնաւ Աստուածատուրն։ Ի սոյն ամի ջհտնուն պազասաանն զուգեցին, կատարեցին։

Ի թվին Ռ և ԺԹ (1570) զԱլի փաշին նոր իմարաթն շինեցին, կատարեցին։ Եւ զկնի Ը (8) ամի՝ զմինարան։

Ի թվին Ռ և Ի (1571) զԿիպրոս առին այլազգիքն ի ձեռաց Ֆռանկին։

‖ Ի թվին Ռ և ԻԱ (1572) մեռաւ Ալի փաշան ի Ցարգըրում 397բ և բերին ի Թոխաթ յիւր իմարաթն դրին։

Ի թվին ՌԻԲ (1573) աւգոստոսի ԺԴ (14), աւրն ուրբաթ, ծնաւ Ցայտին պալին։ Աստուած պահէ։

Ի թվին Ռ և ԻԴ (1574) սեպտեմբերի ԺԴ (13), աւրն երկուշաբթի, Թոխաթ խիստ երեցաւ։

Ի թվին Ռ և ԻԴ (1575) աւգոստոսի ԺԳ (13), աւրն երեքշաբթի, դարձեալ Թոխաթ խիստ երեցաւ. Թ (9) խան և Ե (5) մզկիթ, որ միայն Նոր խանն և Սուլու խանն մնաց, և ամէն խանութնին երեցաւ։

Ի թվին Ռ և ԻԴ (1575) մեռաւ սուլտան Սէլիմ յունվար ամսին և թաղաւորեաց որդի նորա սուլտան Մուրատն.[17]

Ի թվին Ռ և ԻԵ (1576) սեպտեմբերի Է (7) մեռաւ հորքուրըս, Ղանին։ Ի սոյն ամի սեպտեմբերի ԺԵ (15), աւրն շաբաթ, մեռաւ հօրեղբարըս, Պալին։

Ի թվին Ռ և ԻԶ (1577) սեպտեմբերի ԺԶ (16), աւրն երկուշաբթի, վաղճանեցաւ աներս, տէր Ստեփաննոսն. աստուած ողորմի իւր հոգոյն և ընդ սուրբ քահանայիցն դասի։

Ի թվին Ռ և ԻԵ (1576) աղուհացիցն, մարտի ամսոյն աղեոր աստղ երևեցաւ. և Ի (20) աւր կեցաւ, և ագին ընդ արևելս էր։ Եւ հեծուլ խաղաց ի վերայ Ղզըլպաշին, որ զՂարսն քաղաքն շինեցին։

Ի թվին Ռ և ԻԶ (1577) եղև սկիզբն պատերազմին սուլտան Մուրատին հետ Կարմիր գլխին. յառաջին տարին ըզՇրվան առին։[18]

Ի թվի[ն] ՌԻԸ (1579) զՏամուր—ղաբուն առին.

Ի թվին ՌԻԹ (1580) յունիսի ԻԴ (23), աւրն հինգշաբթի, ծնաւ Ալէքսանոսն, աստուած մնացական այնէ իւր հօրն ու մօրն. ամէն։ Ի սոյն ամի դեկտ || եմբերի ԺԸ (18), որ է աւր ծմեռնա- 398ա մտին, եկաւ ի Թոխաթ հրաման ի սուլտան Մուրատէն ի մեր մեղացն. և առին ղալաճայ գոտին ի գլխընուս և գտակ մորթի դնել տվին։[19]

Ի թվին ՌԼ (1581) մարտի ԺԲ (12), աւրն կիրակի, մեռաւ մղտեցի ոսկերիչ խոճայ Միրաքն։[20] Աստուած ողորմի իւր հոգոյն, յիշէք և ասէք հայր մեր, որ։

Ի թվին ՌԼԲ (1583) զՅերևան առին և գերեցին,[21]

Ի թվին ՌԼԳ (1584) դեկտեմբերի Բ (2), աւրն չորեքշաբթի, ծնաւ Ստեփաննոսն, ծառայն սրբոյն Ստեփաննոսի Նախավկային։ Աստուած մնացական այնէ, բարեխօսութեամբ նորին պահէ անփորձ։

Ի թվին ՌԼԴ (1585) ապրիլի Դ (4), աւրն կիրակի երեկոյին, Ծաղկազարդին, անարժան Անդրէասիս ի բազում մեղացս մեռաւ Աստուածատուրն, այն իմ ծաղկազարդ որդին, որ աստուածային ուսմամբ զարդարեալ էր զե՛կեղեցիս մեր։ Ի սոյն ամի Օսման փաշան զԹավրէզ առօ և ջարդեց։[22]

Ի թվին ՌԼԵ (1586) դեկտեմբեր ԼԱ (31) մեռօ Ալթուն փեսան։

Ի թվին ՌԼԶ (1587) յուլիս Ը (8), աւրն շաբաթ, վաղճանեցաւ տէր Գրիգորն, աշխարհալոյս արեգակն տիեզերաց և վարդապետն ազգիս Հայոց, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի։ Ի սոյն ամի հոկտեմբերի ԻԵ (25), աւրն չորեքշաբթի, մեռաւ Յռայենց էրէցն՝ տէր Ովանէսն, աստուած ողորմի։ Ի սոյն ամի յունվարի ԻԵ (25), աւրն չորեքշաբթի, ծնաւ Ճանփաշան, աստուած պահէ զինքն։

|| Ի թվին ՌԼէ (1588) մայիսի ԻԸ (28), Եղիային պահոցն 398բ երեքշաբթին, այս չարագործ Անդրէասիս մեռաւ կենակիցն իմ Յասմաման, և տրտմեցոյց զիս և զողայքն իմ հաւասար մինչև

դման. աստուած ողորմի իւր հոգոյն։ Զսայ յիշողն և հայր մեղայ
ասողն ողջ Ցեայ ի կեանս։ Ի սոյն ամի սուլտանայ բաղնիքն
շինեցին, և դեկտեմբերին ի բանի հանին։
Ի թվին ՌԼԸ (1589) յուլիսի ԺԶ (16), աւրն չորեքշաբթի,
ծնաւ Խաճայմիրաքն, աստուած Ցեացական անէ հօրով և մօրով
և ազբրացմով և հօրեղբայր տէր Մինասով։ Ի սոյն ամի Աղա-
ճուխին բաղնիքն շինեցին։ Եւ ի թվին միւս ամին ՌԼԸ (1689),
դեկտ[ե]մբերի ամիսն ի բանին հանին։
Ի թվին ՌԻԶ (1577) եղև ձեռնադրութիւն Խոճայմիրաքին,
որդոյն տէր Մինասին, Ղայեայ մահլան, յունիս Լ (30), աւրըն
կիրակի, տանուտէրն Խոյն և գիրն Զայ. աստուած կարգով ծե-
րացնէ։
Ի թվին Ռ և ԼԹ (1590) նոյեմբերի Բ (2), աւրն երկուշաբ-
թի, փոխեցաւ առ Քրիստոս սարկաւագն արին և շնորհաւքն իլ-
լին, լուսափայլ ծաղիկն, Այտին շնորհալին, յիշէք և ասէք զաստ-
ւած ողորմին,[23] Ժամ ւ ի յատենին, գրակարդացին,[24] ‖ քա՜ ըն- 399ա
թերցողին հին և նոր կտակ[արան]ին. ծաղիկ էր մահլին, զարդ
էր Սիոնին, սուրբ Նիկողոսին, քաջ հայրապետին, պարծանք
ամենին թէ յեկեղեցին, դպրոցն դասին, մանկանց Սիոնին։ Թէ
վասն էր եկին այս պատուհասին ձեր հարցանելին, ՚ւ այս պա-
տասխանին՝ «Հայրքն որ ճաշեցին զլեղի ղաղոխին՝ զատամունքն
առին որդոցն նորին». ի նորին ծնողին պիղծ և ժանդ հոգին
ժիր մեղաւորին, գործող չար բանին և ծոյլն ի բարին։ Տէր սաս-
տեաց ի ժ[ա]մին այս մեղապարտին՝ պեղծ Անդրէասին, ծնողաց
արդարին. թէ ՙնչ արժան քոյին, քեզ այնպէս որդին, չես գոր-
ծեր ընաւին զկամս քո արարչին։ Ոչ թէ այս էր մին բարկու-
թիւն վերին. այլ երրորդ անգամ այս պատուհասին. ԺԸ (18)-
ական ամ, որ լնուին, ժամանեալ հասանէր սաստն աստուածա-
յին։ Զսայ յիշեցէք ձեր սուրբ յաղաւթին, թէ քահանայ կամ
սարկաւագին և կամ թէ դպիրք կամ ժողովրդին. լսէք և ասէք
հայր մեր, որ յերկինս. և ողորմիս տայք այս սարկաւագին, զի
և դուք յիշիք ի ժամ սոսկալին, բարեխաւսութեամբ սուրբ Աստ-
ւածածնին։ Թէ եհար մի անգամ, գիտեմ, զի կարող է բժշկել բա-
զում անգամ. ըստ Յոբայ՝ տէր ետ և տէր էառ. եղիցի [անուն]
տեառն աւրհնեալ, զի ի փառս աստուծոյ է։[25]
Թվին ՌԽԶ (1597) հոկտեմբերի Է (7), աւրն ուրբաթ, Թո- 399բ
խաթ կրկին խիստ երեցաւ, քան զառաջիքն։
Թվին ՌԾ (1601) եկօ Ղարայ Եազիճին ի Սեաստ, երեց,
աւերեց և բազում մարդիք ջարդեց։ Եւ անտի եկօ թվին ՌԾԱ
(1602) ի Թոխաթ, ի Զիլայ, յԱմասիայ, և ի Մարզուան և յա-
մենայն Հոռմաց տունս՝ ի Յուրհայու մինչև ի Յուսկուտարն,
ծովեզերօք և գեղօրէիւքն հանդերձ. Ղ (90) օր ի Թոխաթ նստօ,
և քաղաքացիքն թողին զամենայն տունս և զտեղս, զմալ և զապ-
րանք և փախեան, և նայ ժառանդեաց զամենայն, տարօ զդե-
ղեցիկ տղայք և զեկեղեցայց զարդարանս, զխաչ և զօետարան,
զբսկիհ և զշուրջառ և զայլ ամենայն կահս և զանօթս, վայ ինձ
հազար բերան։[26]

Եւ դարձեալ թվին ՌԿ (1611) աւգոստոս ամիս ԺԶ (16), աւրն ուրբաթ, բաղում բոլորակք և բակք և ծիրանի գօտիք երեւեցան ի բոլորս արեգականն ի Գ (3) ժամ աւուրն։[27]

Թվին ՌԿ (1611) օգոստոսի Ի (20) Մարգարէն և իւր մարն և Փիրուզն գնացին Երուսաղէմ։

Թվին ՌԿԱ (1612) Կաֆային Զարսու—պաղարն այրեցաւ յունիս ամսոյն ԻԱ (21)։

Թվին ՌԿԳ (1614) ուռուսին ղազախներն ըզՍրնապ քաղաքն կոխեցին, այրեցին և մրկեցին, ղապրանքն թալանեցին և զրադումս դերի տարան։

‖ Թվին ՌԿԴ (1615) մայիսի ԻԶ (26)։ աւրն ուրբաթ, ի 400ա Կաֆան մեծ շարժ եղօ. ի Դ (4) ժամ աւուրն, ԼԵ (35) ղուլայ փլօ. և ԴՃԿ (360) պէտան.

Թվին ՌԿԵ (1616) յուլիս ամսոյի Ի (20), աւրն կիրակի, Գ (3) ժամ էր անցեր գիշերն, եկին Դօռելու ղազախներն Ճ (100) ղայխայով[28] և մտին ի Կաֆան, ղաներն և գշուկայսն թալանեցին և այրեցին։

Թվին ՌԿԶ (1617) թագաւորեաց սուլթան Մուստաֆան։[29]

Թվին ՋԺԶ (1467) նոյեմբերի ԺԶ (16) Կաֆային Նոր բերդ ու պարիսպն շինեցօ և կատարեցօ։ Եւ ելեալ ֆռանկն և հայ և հոռոմն եպիսկոպոսաւք և քահանայիւք, խաչիւ և աւետարանաւ շուրջ եկին զըոլորն և աւրհնեցին զքաղաքն։

Թվին ՋԻԴ (1475) տաճիկք առին զԿաֆան։[30]

Թվին ՌՂԴ. (1645) օգոստոսի ԻԵ (25) զԿիրիտ առին Տաճիկք։[31]

Թվին ՌՂԵ (1646) մեծ շարժ եղև ի Թավրէզ. և ի սոյն ամին ի շարժմանէ մեծ մասն բերդին Վայնայ փլաւ։

Ի թվին ՌՂԷ (1648) Իփշիր փաշան Վառվառ Ալի փաշային վերան եկաւ և առաւ զնայ։

Թվին ՌՂԸ (1649) Ապ Ալին Սոխտանին ամբ բերին ապրիլի ԻԸ (28) և շուրջ եկին զքաղաքն ամենայն և զաւբացան և այլայկերպեցան։

Թվին ՌՃԷ (1658) սուրբ Յակոբ առին։ Ի սայն ամի Զաթալին որդին Ղարիպ | | | Երուսաղէմ գնաց, տառաւսն ձեզի։[32] 400բ

Ի թվին ՌԽԱ (1592) եղաւ Աննան։

Ի թվին ՌԽԴ (1595) ծնաւ Ղուտսին։

Թվին ՌՃ (1651) ղիլայցի Մահայմատ փաշան եկաւ ի Թոխաթ, ՌՃՂԶ (1196) ղուրուշ առաւ ի սուրբ Նիկողայոսու ժամն շինելուն համար։

Թվին ՌՃ (1651) Փիլիպոս կաթուղիկոսն եկաւ ի Թոխաթ։

Թվին ՌՃ (1651) տէր Կարապետն գնաց Ըստամպաւլ ամրն բերելու համար։

Թվին ՌՃԲ (1653) ամին ջրհեղեղ եղաւ ի Թոխաթ, յուլիս ամսոյ ինն, աւրն շաբաթ, յետի ժամին, շատ տուն աւերեաց և շատ մարդ տարօ։

Թվին ՌՃԻԶ (1677) նոյեմբեր ամսոյն եկն բեռնով կեռաս,



504—11

ծիրան և սալոր տիմորթու ի Թօխաթ քաղաք, նմանեցա դաղտաղողի և ծախուեցաւ, զի ղրաղում չարս մաքսեցի։[33]

Թվին ՌՃԳ (1654) ամին տէր Սահակն զսուրբ Քառասունք շինեաց։

Թվին ՌՃԻԴ (1675) հոկտեմբերի Է (7) այնչափ ձիւն և փոթնայ եղաւ և ցուրտ, մինչ որ Նայլաճուխին լեռան Դ (4) մարդ և ԺԹ (19) էշ փատցաւ։

Թվին ՌՃԺէ (1668) յօգոստոսի Է (7), օրն ուրբաթ, Դ (4) ժամուն խիստ մեծ և ահաղին շարժ եղև, որ ոչ տեսեալ էր և լուեալ ընաւ, զի բաղում քաղաք և գիւղք կործանեցան, տունք և յապարանք, որ ոչ լեզուաւ ճառի, և յայսմ շա[ր]ժմանէ փլաւ բերդին Արլիք Թամին պարսպոփն ի վերայ քարին, և Լ (30) տեղ այլ պուռճ և պատան և զուլայ փլաւ, և Տաշխանն բոլոր փլաւ, և Ուլուճամուն մինարին գլուխն թռաւ, և մէյտնին իմարէթն քրքրեցաւ. Պէհիզատին ճամուն սրահքն փլան և այլ ճամիքն ամէնն խախտեցան, բայց եկեղեցիքն հաստատ մնացին շնորհօքն Քրիստոսի մինչ զի և քար մի ոչ անկանի։[34] Եւ մինչ ի Զ (6) ամիս շարժ չի կարեցաւ և Բ (2) շաբաթ ի տուն չի կարացաք մտնուլ, ոմանք յայգին, ոմանք գերեզմանս կեցան և ապա սակաւ սակաւ եկան տուն մտան։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Ք. Պատկանյանի հրատարակության բնագիրը սկսվում է հետևյալ երեք վկայությամբ. «Թվին ՊԻԶ Լանկթամուրն եկև շաներք (?)։

Թվին ՊՀԲ. Աւթամանլուն ղըրղնկան առաւ։

Թվին ՋԺ Չիթախն զՏրապիզոն առաւ» (էջ 41)։ Նկատի ունենալով, որ սույն վկայությունները գրված են ժողովածուի 394ր էջում, մինչդեռ բուն ժամանակագրությունը սկսվում է 395ա էջից, և որ սույն վկայությունների գրության ձեռը չի պատկանում Անդրեաս սարկավագի գրության ձեռին, և այն կապ չուներ բուն ժամանակագրության հետ, ուստի այն չվերցրինք։ Լանկթամուրին վերաբերող հատվածը Պատկանյանի հրատարակության մեջ դրված է ոչ ճիշտ ընթերցմամբ, մինչդեռ բնագրում հնարավոր է կարդալ հետևյալը. «Թվին ՊԻԶ (1377 թ.) Լանկթամուրն եկաւ և շա[տ] ծերք արօռ։

2. Ինչպես հայտնի է սուլթան Մուհամմեդ II-ը մահացել է 1481 թ., նրան հաջորդել է Բայազիտ II-ը, որն իշխել է 1481—1512 թ. թ.։

3. Սելիմ I-ը կոչվել է նաև Յավուզ (Ահեղ), իշխել է 1512—1520 թ. թ.։

4. Չալդրանի գտնվում է Մակուի մոտ։ Թուրքերի և պարսիկների միջև ճակատամարտը տեղի է ունեցել 1514 թ. օգոստոսի 23-ին (մանրամասնությունները տես J. Hammer „Geschichte des Osmanischen Rei hes“ erster Band, 1835, S. 716): Որոիշները ճակատամարտի օրը նշում են օգոստոսի 22-ին (հմմտ. Смирнов „Крымское ханство“ СПБ. 1887, стр. 386, Петрушевский "Азербайджан в XVI—XVII веках", Сборник статей..." выпуск I, стр. 239—242):

5. Խոսքը վերաբերում է ջալալիների շարժման առաջին ելույթին։ Այս շարժման վաղ շրջանի ղեկավար շեյխ Ջալալի (Թոխաթի շրջանում) անունով շարժումը կոչվեց «ջալալիներ» (ապստամբ, խռովարար» նշանակությամբ)։ Ջալալիների շարժումը տարերային էր, ուներ հակաօսմանյան և հակաֆեոդալական բնույթ։ Սրանցից էր նաև հայնրահայտնի Քյոռ Օղլին (հմմտ. Ա. Դավրիժեցի, էջ 87)։ Սույն վկայության համաձայն Ջալալին ապստամբել է 1520 թ., իսկ Թոխաթը գրավել է «սուրբ Թորոսու տանինն», այսինքն՝ փետրվարի 24-ին, շաբաթ օրը։ Պետրուշևսկու կարծիքով շեխ Ջալալի առաջին ելույթը տեղի է ունեցել 1518 թ. „Азербайджан в XVI—XVII веках“ տես „Сборник статей“ էջ 275)։

6. Սուլեյմանն իշխել է 1520—1566 թ. թ.։

7. Սուլեյմանի և շահ Թահմազի սույն կռիվների մանրամասնությունները տես Հով. Արճիշեցու հիշատակարանում («Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, Թիֆլիս, 1912 թ., էջ 19—30)։

8. Հեղինակի ավագ եղբայրը։

9. Հեղինակի աները։

10. Հմմտ. VIII ժամանակագրություն, էջ 136։

11. Ինքը հեղինակը։

12. Ժամանակի տևողության հասկացություն, ուզում է ասել, որ երկրաշարժի ցնցումը տևել է այնքան ժամանակ, որքան կպահանջվեր «ողորմեայ փոխին» ասելու համար։

13. Ք. Պատկանյանն իր հրատարակության բնագրում վերոհիշյալ հատվածը դրել է «Ընդ նիհետրացս» ձևով (էջ 43), սակայն ձեռագիր բնագրում «Ընդ» բառը գրված է ոչ թե հապավված, այլ ուղղակի «Ը» ձևով, որն ավելի շատ նման է 8-ի (=Ը) քան «ընդ» բառին։

14. Հմմտ. վերևում, էջ 136, տես էջ 139, ծանոթ. 2։

14ա. Այսինքն սպանեցին։

15. Խոսքը վերաբերում է շահ Թահմազի 1551 թ. արշավանքի պատասխանին։ Սուլեյմանը

1554 թ. հարձակվեց Գարսկաստանի վրա։ Կարսի վրայով անցավ Արարատյան դաշտը, ավերեց Երևանը, Նախիջևանը և ապա Սյունիքը։

16. Սելիմ II-ն իշխել է 1566—1574 թ. թ.։

17. Մուրադ III-ն իշխել է 1574—1595 թ. թ.։

18. Խոսքը վերաբերում է թուրք-պարսկական հերթական կռիվներին, որոնք փոփոխակի հաջողություններով տևեցին 11 տարի (1578—1590 թ. թ.)։ Այս կռիվների մասին տես ժամանակակիցների հիշատակարանները՝ Գ. Սրուանձտեան «Թորոս աղբար», մասն Բ, Կ. Պոլիս, 1885 թ., էջ 268, «Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի կազմեց Ե. Լալաեան», Թիֆլիս, 1915, էջ 9—10։ «Հայապատում», էջ 598, Հովհաննիկ վարդապետ (տես Ս. Անեցու 1893 թ. հրատարակության հավելվածը, էջ 185—199)։ Петрушевский „Азербайджан в XVI—XVII веках" („Сборник статей", стр. 271—274):

19. Հեղինակը նկատի ունի քրիստոնյաների տարբերանշանի փոփոխումը։ Տես և համտ. Ձեռ. № 4515, էջ 219—220։

20. Հեղինակի հայրը։

21. Տես ծանոթ. 18։

22. Բնագրի աջ լուսանցքում, այդ դեպքի դիմաց գրված է. «Ասման փաշան ՌԼԴ (=1585)»։ Համտ. «Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ», Երուսաղէմ, 1915, էջ 7։ Խոսքը վերաբերում է թուրքական Օսման Ցուղդեմիր փաշային, որը Թավրիզը գրավեց 1585 թ.։

23. Վերջին հատվածը բնագրում գրված է՝ ներքևի լուսանցքում։

24. Բնագրում սույն հատվածի տակ մեկ ուրիշն ավելացրել է «Թվին ՌԽԲ (=1593) սաֆար եղօ ի վերայ Մաճարին»։

25. Այստեղ վերջանում է Անդրեաս սարկավագի կազմած ժամանակագրությունը. շարունակությունը կազմել են ուրիշները։

26. Համտ. «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», Վաղարշապատ, 1896 թ., էջ Ծ6։ Բնագրում «Ռ բերան» ձևով։

27. Սույն հատվածի դիմաց, աջ լուսանցքում, միևնույն ձեռագրով ավելացված է. «Կաֆան եղօ»։

28. Պատկանյանը սույն բառը ընթերցում է «շայխա» և դրա տակ հասկանում մակույք («Նշխարք մատենագրութեան Հայոց», էջ III)։ Պետք է լինի ղայղա-ղայըղ=մակույկ։

29. Մուստաֆա I սուլթանը թագավորել է 1617—1618 թ. թ., երկրորդ անգամ՝ 1622—1623 թ. թ.։

30. Տես ներքևում, XXIV ժամանակագրություն, ծանոթ. 5։

31. Համտ. նույն տեղը։

32. Սույն վկայությունը գրված է շագանակագույն մատիտով ժողովածուի 400ա էջի տողատակ և 400բ էջի վերևի լուսանցքում, հազիվ ընթեռնելի. նշված հատվածում մի բառ չկարողացանք ընթերցել և բաց թողինք։

33. Սույն հատվածը Պատկանյանի հրատարակության բնագրում գտնում ենք համառոտ ձևով (տես և համտ. էջ 48)։

34. «Մինչ զի և քար մի ոչ անկանի» հատվածը բնագրում գտնվում է ձախ լուսանցքում։

## XI

## ԱՆԱՆՈՒՆ ՍԵԲԱՍՏԱՑՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVI Դ.)

*Մատենադարանի № 3425 ձեռագրում ի թիվս զանազան քարոզների, տաղերի և այլ նյութերի գտնվում են նաև երկու ժամանակագրություն. առաջինը, որ բռնում է ժողովածուի 1ա—20ա էջերը, արդեն հրատարակված է,[1] իսկ երկրորդը՝ առաջարկվող ժամանակագրությունն է. «Եւ Հոռմաց թագաւորաց կարգն այս է զոր ոմանցիք վերայկոչեն նոցայ անուն. այս է պորտէ պորտ ազգ նոցա մինչև ի մեզ, ի մերում ժամանակիս» խորագրով։*

*Ժամանակագրությունը գտնվում է ժողովածուի 101ա—111ա էջերում և սկսվում է 1384 թվից, հասնում մինչև 1596 թիվը՝ Մուհամմեդ III-ի կողմից Ակրի գրավումը։ Թեև վերջից պակասում են թերթեր, բայց հաստատ կարելի է պնդել, որ այն չի անցնում Մուհամմեդ III-ի մահից այս կողմ, նույնիսկ հեղինակը չի տալիս Մուհամմեդ III-ի մահը։ Այդ երևում է նրանից, որ նախքան ժողովածուն սկսելը 101ա էջի առաջին կեսում կա շատ բնորոշ մի սիմվոլիկ նկար, որտեղ պատկերում է գալարվող օձ, որի մարմնի զանազան մասերում դուրս են ցցված 2—4 ճիրաններ ունեցող վիշապի գլուխներ։ Յուրաքանչյուր գլխի մոտ գծած է փոքրիկ շրջանակ, որտեղ հաջորդաբար դրված է օսմանական սուլթաններից մեկի անունը, սկսած Օսմանից մինչև Մուհամմեդ III-ը (13 սուլթան)։ Որ ժամանակագրության հեղինակի վկայությունները չպետք է անցնեն Մուհամմեդ III-ից այս կողմ, այդ երևում է նաև ժամանակագրության փոքրիկ ներածությունից, որի մեջ նույնպես բերված է սուլթանների հաջորդական կարգը՝ Օսմանից մինչև Մուհամմեդ III-ը։ Վերջինիս անվան մոտ, բնագրի 102ա էջում, մեկ ուրիշը ավելացրել է «Եւ յետ նորա թագաւորեաց Ահմատ»։ Այս նախադասությունից պետք է եզրակացնել, որ մինչև Ահմադի թագավորության առաջին տարին ժամանակագրությունը ոչ միայն պատրաստ է եղել, այլև ընդօրինակած տվյալ (№ 3425) ձեռագրում։ Նշանակում է, թե ժամանակագրությունից պակասում է նրա մի չնչին մասը, և որ այն կազմվել է Մուհամմեդ III-ի կենդանության օրոք։ Հեղինակը ժամանակագրության վերջին եղելությունների ժամանակակից է։ Այդ երևում է Կոստանդնուպոլսում 1572 թ. տեղի ունեցած մի հրաշքի նկարագրությունից, որի վերջում հեղինակն ավելացնում է. «տեսողքն եկեալ պատմեցին մեզ»։*

*Ինչպես ասացինք, բուն ժամանակագրությունը սկսվում է 1384 թվից և հասնում մինչև 1596 թիվը ներառյալ։ Կարծում ենք մինչև 1482 թիվը՝ Մուհամատ II-ի մահը, հեղինակը վերցրել է իրենից առաջ կազմված, մեզ հայտնի մի ժամանակագրությունից, որը գտնվում է № 2151 ժողովածուի 170ա—*

---

[1] *Հրատարակել է Մատենադարանը 1940 թ. «Անանուն ժամանակագրություն» խորագրով։*

174ա էջերում։[1] Վերջինիս երկրորդ և առաջարկվող բնագրի առաջին մասի համեմատությունից երևում է, որ այս երկու բնագրերի համապատասխան տեղեկությունները թե ծավալով և թե նկարագրական մանրամասնություններով ծածկում են իրար։ Այստեղից եզրակացնում ենք, որ № 2151 ձեռագրի ժամանակագրության որևէ տարբերակ իր ձեռքի տակ ունեցել է մեր ժամանակագրության հեղինակը և այն շարունակել է իր ժամանակի, ըստ հեղինակի, ամենակարևոր դեպքերով։ Հավանական է կարծել, որ ներկա ժամանակագրության հեղինակը իր ձեռքի տակ ունեցած պատրաստի բնագիրը շարունակել է ՋԿ (1511) թվից։ Այս թիվը սահման ենք ընդունում, որովհետև այստեղից սկսվում է 30 տարվա ընդհատում, որպիսի փաստ չկա ողջ ժամանակագրության մեջ։ Հեղինակը ՋԿ (1511) թվից գրի է առել ուրիշներից լսած, իրենից առաջ մոտակա տարիներին վերաբերող դեպքերը, իսկ այնուհետև ինքը շարունակել որպես ժամանակակից։

Ժամանակագրության մեջ շատ հաճախ խոսվում է Սեբաստիայում տեղի ունեցած մանր դեպքերի մասին՝ 1521 թվին քաղնիսի կառուցման, 1535 թվին ուժեղ հողմի պատճառած վնասների մասին, կամ ասում է՝ 1541 թ. տղաժողովը «Ի Սեւաստ չեկաւ» և այլն. այս փաստերը մեզ ենթադրել են տալիս, թե ժամանակագրության հեղինակը Սեբաստիայի բնակիչ է։

Փիրղալեմյանը ժամանակագրության մի քանի վկայությունները վերցնելով Առ. Դավրիժեցու «Պատմութիւն» աշխատությունից և մեջ բերելով «Յիշատակարանք կամ նշխարք պատմութեան Հայոց» անտիպ իր աշխատության մեջ,[2] ոչ այնքան էլ համոզիչ կարծիք է հայտնում, թե սույն ժամանակագրության հեղինակը Սեբաստացի Թադեոս վարդապետն է, որի 1551 թ. հիշատակարանից ընդարձակ հատված մեջ է բերել Չամչյանը։[3]

Առաջարկվող ժամանակագրության առաջին մասի առանձին դեպքերը տարբեր ծավալով և մանրամասնություններով հանդիպում ենք նաև IX, XIII ժամանակագրություններում, սակայն նկատենք, որ վերջիններիս տեղեկությունները կապ չունեն ներկա ժամանակագրության համապատասխան դեպքերի նկարագրության հետ և կազմվել են բոլորովին տարբեր մարդկանց կողմից։

Այս ժամանակագրության վկայություններից շատերը հետագայում տեղ են գտել այլ ձեռագրերի ժամանակագրություններում (№№ 7273, 3078, 605, 1771, 3276 և այլն)։

Մատենադարանի № 3881 ձեռագրի 1 և 2 էջերում պահվել է Օսմանին վերաբերող մի այլ վկայություն, որը պատմական առանձին արժեք չունի, ուստի նրա մասին կբավականանանք հիշատակելով միայն։

---

[1] Որոշ նկատառումով այդ ժամանակագրությունը մտցնելու ենք սույն ժողովածուի երկրորդ հատորում։

[2] Տես. № 6273, էջ 422։

[3] «Պատմութիւն Հայոց», հատ. Գ, էջ 514 - 515։

XI

## ԵՒ ՀՌՈՄԱՑ ԹԱԳԱՒՈՐԱՑ ԿԱՐԳՆ ԱՅՍ Է, ԶՈՐ ՈՄԱՆՑԻՔ ՎԵՐԱՑ- 101ա ԿՈՉԵՆ ՆՈՑԱՑ ԱՆՈՒՆ։[1] ԱՅՍ Է ՊՈՐՏԷ ՊՈՐՏ ԱԶԳ ՆՈՑԱ ՄԻՆՉԵՒ Ի ՄԵԶ, Ի ՄԵՐՈՒՄ ԺԱՄԱՆԱԿՍ։[2]

*Առաջինն Ոսման անուն մէկ շինական հողագործ տաճիկմ, ‖* 101բ *թողեալ զհողագործութիւնն, ժամանակ մի հարամի եղև և սակաւ սակաւ զաւրացաւ։ Ասեն թէ սուլտան Ալատինն իշխանութիւն է աւեր, ապստամբել և նայ զօրացեալ ելեալ էառ զԳուռսայ։ Մեռաւ Ոսմանն և թագաւորեաց որդի նորա Որհան և նայ էառ զԾնկիշարն։ Յետ նորա ելեալ սուլթան Մուհամատն։ Եւ յետ սուլթան Մուհամատին, սուլթան Մուրատ անուն թագաւորեաց։ Եւ յետ սուլտան Մուրատէն Իլտրում Գայազիան թագաւորեաց, որ Լանկ Թամուրն գնայ յերկթէ ղաֆասն եղիր։ Եւ յետ սորայ միւս սուլթան Մուրատն։ Եւ յետ սորայ միւս սուլթան Մուհամմատն, որ էառ զՍտամբաւլ թվին ՋԲ (1453)։ Եւ յետ նորա սուլտան Գայազիտն։ Եւ Մաթոս վարդապետն ի յայսոր ժամանակն էր ի Սևառտ Հրեշտակապետու վանքն։*

*‖ Եւ յետ սուլգան Գայազիտին որդին Սէլիմն, որ զտղա* 102ա *ժողւեալն հանճարեց։ Եւ յետ սորայ որդին Սուլաման խոնտքարն, որ շատ թագաւորեաց։ Յետ սորայ թագաւորեաց Սելիմն այլ, որ ասին, թէ ճհտի աղի հետ փոխել են ի տղայ ժամին հետ աղջիկ տղի։ Եւ յետ Սելիմին թագաւորեաց սուլթան Մուրատն, որ զտուլպանտն եասաղ արաւ, որ քրիստոնէքն այլև գլխնին տուլպանտ չգնեն։ Եւ յետ սորայ թագաւորեաց որդին սուլթան Մուհամմատն մի այլ։* Եւ յետ նորա թագաւորեաց Աճմատ։[3]

*Ի թվին ՊԼԳ (1384) Բուրհանատին ղատին եսպան զտէրն Սեբաստիոյ և նստաւ յաթոռ իշխանութեանն։ Եւ զՍտեփանոս արհեպիսկոպոսն Սեբաստիւ նահատակեց, և զսուրբ Քառասնից մանքն քակեց, և բազում չարիս գործեց։*

*Ի թվին ՊԼԶ (1387) ելեալ Լանկ Թամուրն անթիւ զօրօք յարևելից ի Սմրղանդայ և եկեալ բազում աւերմունս արար։ ‖* 102բ *Աւերեց զՍևաստ, գնաց մինչև յԱնկուռիայ և ըռնեց զխոնդքարին որդին զԻլտրում Գայազիտն ի ղաֆասն. և գնաց մինչև ի Շամպ։ Մորեխ ելաւ ի դէմ և շատ վնաս արար և նոքա դարձան յետս։*

*Ի թվին ՊՂ (1441) նահատակեցին զԹորշան հրով ի Մարզուան քաղաք։[4] Ի սմին ամին նստին Ծիհանշան ի Թավրէզ։[5] և*

առնու զօրօք զտունն Յերազու ի Ճաղաթայէն[6] մինչև ի Սարի[7] և ի Սրաւայ,[8] մինչև ի դուռն Հէրէո խասարէայ։ Եւ որդի Ճիհանշային, Փիրպուտաղն և ֆէլով զհայրն փախուց և նայ գնաց ի Գաղտատ թագաւորեաց։ Եւ հայր[ն] նեղացաւ որդոյն և խասրեց Բ (2) տարի։ Եւ յետոյ խաբմամբ և սուտ երդմամբ առին և սպանին զՓիրպուտախն և զեղբայրն։[9]

Ի թվին ՋԱ (1452) երեկ Ճիհանշա խանն Դ (4) ա·միս խասրեց զԵզնկայ և էառ։ Եւ առաքեաց զԹարխանօղլին || ի վերայ 103ա
Գայընաուրաց, որ էր պարոն նոցա Հասան պակն, խասրեց զԱմիթ և չկարաց առնուլ, կոտրեցաւ և փախեաւ։ Յետ Գ (3) ամսու դարձեալ առաքեաց ի վերայ Հասան պակին։ Եւ Հասան պակն ժողովեց ԴՌ (4000) մարդ, կռվեցաւ, կոտրեց. և ըմպռնեց զԹտրխանօղլին և սպանին։ Եւ բազում և անչափ զանձ և կումաշ առին, ձի և ջորի։[10]

Ի թվին ՋԲ (1453) առաւ սուլթան Մուհամաան զՍտ[ա]մբօլ. ի Գուռսայուս

Ի թվին ՋԺԲ (1463) գնաց Հաստն պակն ի Ղարաման մինչև ի Ղարաաանկիզն սիրով, գնոցա Թշնամեաց տեղիքն աւարեաց։[11]

Ի թվին ՋԺԴ (1465) խասրեց Հասան պակն զԽարբերդ, որ էր Տուլղատրցուն և ոչ կտրաց առնուլ։ Եւ երեկ Մելիք Ասլանն բազում զօրօք ի վերայ Հասան պակին մինչև ի Մելտենի. և ետես զի հեծելն ծռեցան, շուտով ի յետ դարձաւ։ Եւ Հասան պակն բազում զօրօք մինչև Ապլստան.[12] և անտի ի մէջ անկան և գնեցին զԽարբերդ ԺԲՌ (12000) ֆլորի։

|| Ի թվին ՋԺԷ (1468) երեկ Ճիհանշան ի վերայ Հասան 103բ
պակին. և Ճիհանշան ել ի լեառն, որ կոչի Սանճախ. և առաքեաց զզօրսն դեպ Աղճայղալան և ինքն իւր մեծամեծօքն յուտել և ի խմել նստաւ Դ (4) օր։ Հասան պակն եկեալ ի Ճապաղջուրն էառ զառաջքն և ԺԲ (12) հազար հոգով[13] բոլորեց. բռնեցին զՃիհանշան Բ (2) որդովն և սպանին և այլ ի հետ ԳՃ (300) պարոնայք, էառ զԹաղթանն, և ով կարէ պատմել։ Եւ ձմեռն էր։[14] Ե[ւ] զայ Ճիհանշին որդին՝ Հասանալի պակն ՃՌ (100000) աւ ի Մարանտ կուեցաւ և առաւ Հասան պակն զաւարն և մտանէ ի Թավրէզ։[15] Եւ յայն տարին գայ Ապուսէյիտն ի Հրէո և ասէ՝ «իմ է Թավրէզ մի անցանիր ընդ այս». և եղև կռիւ մեծ և Հասան պակն յաղթեց և եսպան զնա և առեալ այնչափ աւար և քաղաք մինչև ի Սարի և ի Սրաւայ։[16]

Ի սոյն ամի || բլաւ Եզնկան, ԺԲՌ (12000) հոգի մեռան։ 104ա

Ի թվին ՋԺԸ (1469) մահ անկաւ յամենայն աշխարհ առաւել ի Մերտին։ Նաղաշ վարդապետ ողբ ասաց։[17]

Ի թվին ՋԻԲ (1473) առաքեաց Հասան փատշահն զԱմիր պակն ՀԲՌ (72000) հոգով, գնացեալ մինչև ի Թոխաթ աւարեաց և գերեաց։[18] Ի թվին ՋԻԳ (1474) շարժեցաւ բազում զօրօք և գնաց ի Շամբ։ էառ զՄէլտէնի, խասրեց զԳէրիայ[19] Գ (3) ամիս, նազմեց և չկարաց առնուլ։ Երեկ Շամայ հեծելն ի դէմ, բայց տրին

հաշտեսութիւն և դարձաւ յԱշմուշատ։[20] Եկն Խոնդքարին որդին և Գ·ՃՌ (300000) հոգով ի վերայ Հասան պակին կոտրեց զհեծելն, և սպանաւ մէկ որդին, և ինքն փախաւ մինչև ի Թավրէզ։[21] Ետ զորդին իւր զՄուհամատ պակն ի Միջագետս և իջեալ գնաց որդին առ եղբայր իւր Պաղտատ։[22]

Ի թվին ՋԻԴ (1474) գնաց Մուհամատ պակն ի Շիրազ ի հօրեղբօրն ի տեղն։ || Եւ հայրն բարկացաւ փախուցին անտի 104բ մինչև ի Խարբերդ և գնաց ի Հալապ։ Եւ սուլտանն Մսրայ ետ նմայ բազում ինչ։ Եւ ի միւս տարին գնաց ի Հոռոմք և ընկալաւ զնայ Հոռմաց տանն տէրն ետ նմա զՍևաստ։

Ի թվին ՋԻԶ (1477) ել գնաց յԵզնկան և խաբմամբ սպանաւ ի մարզբոջմէն, ի ձեռն Պայընտուրին, եհաս սուգ ոչ սակաւ։[23]

Ի թվին ՋԻԷ (1478) մտանէ Հասան պակն ի Կուռճիստան և աւերէ զՏփխիս։[24] Զի Մելիքն գնացել է ի կոխւ ի գլխի բացն։ Եւ գերեաց և եղ զզօրն ի Տփխիս և եկեղեցիս բազում քակեաց և ի նոցանէ խոցեալ մեռաւ։ Եւ Կորիզու (sic) մելիքնին եկին ջարդեցին և առին զՏփխիսն ի տաճկնուն։

Ի թվին ՋԼԱ (1482) մեռաւ սուլտան Մուհամմատն և նստաւ ի տեղն որդին՝ սուլտան Պայազիտ։

Ի սոյն ամի ժաժ եղաւ յԵզնկան ԼԲՌ (32000) հոգի Թաց ներքև հողին։[25]

Ի թվին ՋԿ (1511) հեծել ժողուեց ի Թաթարէն ս[ու]լղան || 105ա Պայազատին որդին՝ Սէլիմն և գնաց ի վերայ հօր իւր՝ Պայազիտին։ Դեղեցին զհայրն զՊայազիտ և նստաւ ի տեղն։ Ցայս ժամանակս էր Մաթոս վարդապետն ի Սևաստ ի Հրեշտակապետսւ վանքն, զոր Քոսաէլիմճի աւէրին։[26]

Ի թվին ՋԿԴ (1515) եկաւ սուլթան Սելիմն անթիւ զօրօք գնաց ի Չալտրանն կուեցաւ, կոտրեց զշահն և զշլայեց յԱմասիայ։[27] Մեկալ տարին առաւ զԿամախ և զԱնատօլայն և գնաց ի Թախտն։

Ի թվին ՋԿԶ (1517) սուլթան Սելիմն գնաց առաւ զՇամպ և զՄսր և զմեծամեծսն յամէն տեղաց վերուց։

Ի թվին ՋԿԸ (1519) բարկութիւնն աստուծոյ սաստկաւ և սուլղան Սէլիմն տղայ ժողուեց ի քրիստոնէից։

Ի թվին ՋՀ (1521) մեռաւ Սելիմն և նստաւ որդին՝ Սուլայման խոնդքարն։[28] Ի Սևաստ բաղնիք շինեցին։

Թվին ՋՀԱ (1522) այրեցին ի Սևաստ զՊեխի որդին զՍաֆարն։

Ի թվին ՋՀԷ (1˘28) եկաւ Սոֆին, զոր Աթ || 105բ մաճայ խալիֆայ ասէին, Սևաստու փաշան գնաց ի վրան կոտրւեցաւ. և անկաւ ի Սևաս[տ], և մեռաւ, և յետոյ քուրդն կոտրեց։

Ի թվին ՋՀԶ (1527) գնաց Հուսէին փաշան ի Տոխիլ և ի Կուկւան ի Հոռմին վերայ, որ գլուխ էին քաշել, շատ ջարդեց և գերեց ԺԲՌ (12000) հոգի։

Ի թվին ՋՀԹ (1530) շինեցին զՁոնտբու վանքն ի Սևաստ։

Ի թվին ՋՁ (1531) տղայ ժողուեցին ի քրիստոնէից, ահ և

փախ, լաց և աղաղակ և խեղճ բաներ շատ եղև։ Ի սոյն ամի
ագեոր աստղ երևեցաւ յարևել[ք] յօղոստոսին։
Ի թվին ՋՁԱ (1532) ագևոր աստղ երևեցաւ ի սեպտեմբե-
րին։ Եւ գնաց Սուլայման խոնդքարն և Ֆռանկին վերայ մինչև
ի Փուլիա, չկարց առնուլ և շատ պակասութեամբ դարձաւ. Ալա-
մանսաֆարի ասէին։ Ղասում վոյվոտան ԿՌ (60000) հոգով գնաց,
Է (7) հոգի եկաւ ի խոնտքարն խաղ[ա]ր բեր։
Ի թվին ՋՁԲ (1533) եր || եցին ի Սևաստ ի Տևոցու վանացն 106ա
դՀա[յ]րապետ հարեղան։[29] Եւ կրկին ագևոր աստղ երևեցաւ ի
սեպտեմբեր։
Ի թվին ՋՁԳ (1534) լուսին խաւարեցաւ յարևմտից կողմէն։
Եւ եւ Սուլայման խոնդքարն անթիւ զօրօք գնաց խառ զԹավրէզ,
զՍուլտանիա. դշլայեց ի Գաղատա և ապա եկ ի Թախտն։ Ի սոյն
ամի կրակ անկաւ յՍա[ա]մրօլ ԺԲՌ (12000) տուն այրեցաւ։
Ի թվին ՋՁԴ (1535) ի Սևասա ի Շնքուռկայ դեղէն տղա
քահանայ[30] մի այրեցին։ Հողմ եկաւ սաստիկ և բաղում ծառ կո-
տորեց։
Ի թվին ՋՁԵ (1536) Սուլէյմանն զիր մեծ ւաղիրն սպան-
նեց, զԻբրղէհիմ[31] փաշան, որ չարախօսեցին թէ, Ֆռանկաց հետ լե-
զու ունի և հայ կու կենայ։ Ի սոյն ամի ծանր ձմէռ եղաւ, որ Թ (9)
թիզ ձուն չափեցին։ Եւ զՍռճտ Կոկճան բռնեցին, զլեզուն կտրե-
ցին և բերնէն ի ցից զարկին, վասն Քրիստոսի հաւատոյն. և
մեծ մին[ա]րանն[32] մի կործեցօ։ || Ի սոյն ամի տղայ ժողւեցին 106բ
դարձեալ։ Ի սոյն ամի Կարմիր գլխոյն Մհամտտ խանն ի Վրաց
տունն եմուտ և բազում աւար եհար։
Ի թվին ՋՁԶ (1537) լուսինն բոլոր խաւարեցաւ, որ իսկի
չերևէր։ Սուլէյման խոնդքարն Թիւոր հանեց յամէն աշխարհէ.
ԷՃ (700) նաւ զրկեց ի Ֆռանկին վերայ և ինքն ցամաքով գնաց
և շատ զեն եղաւ իւրենն և երեր Թախտան։ Ի սոյն ամի դար-
ձեալ եմուտ Մուհամմտտ խանն ի Վրաց տուն և անթիւ ջարդ
արաւ, ԺԲՌ (12000) այլ աւելի գերի հանեց. իւրեանք մէկ զմէկ
մատնեցին։ Ի սոյն ամի նոյեմբեր ԺԷ (17) դարձեալ խաւա-
րեցօ լուսինն։
Ի թվին ՋՁէ[33] (1538) Սուլայման խոնդքարն ԲՃ (200) նաւ
զրկեց փաշանիք ի Հրմուզու և ի Տէվ քաղաքին վերայ։ Ցետ Բ
(2) տարու Է (7) եկաւ և այլն ոչ։
Ի սոյն ամի յունվար, ագևոր աստղ եկաւ հարաւ և յետև
յարևմուտս, մառախուղ եղաւ Ե (5) օր, և ի նոյեմբերի Զ (6)
լուսին խաւարեցաւ։ || Սուլէյման խոնդքարն գնաց ի Ֆռանկն և 107ա
Վանատիկ եաղի եղաւ և քօհրօզ և զճանպնին կտրեցին և շատ
պակասութիւն արարին և ինքն եկաւ զիւր աշխարհին Ֆռանկն
տուԹսախ արաւ։ Եւ յԵրուսաղէմ զՖռանկին վանքն Թալնեցին։
Ի սոյն ամի էառ Կարմիր գլուխն զՇիրւան և Թագաւորեց։
Ի թվին ՋՁԸ (1539) ծռազատիկ արին Հոռոմին ի Ծառ-
զարզարին, յապրիլի Զ (6) և այլ ամենայն ազգ ուղիղ արարին
զզատիկն՝ յապրիլի ԺԳ (13)։ Ի սոյն ամի արեգակն խաւարեցաւ,

և վախճանեցաւ Սիմէոն արհեպիսկոպոս[ն] Սեբաստիու։ Դարձեալ ադեոր աստղ ելու. ի մայիս ի կողմն հիւսուսոյ գլուխն յարևմուտք։ Ի սոյն ամի կրակ անկաւ յՍտմբօլ և ԾՌ (50000) տուն այրեցաւ։ ՒԾ (700) մարդ ի դնտանտունն այրեցաւ. և շատ ռոտ էղաւ։ Ցետոյ մահ տարածեցաւ յամենայն աշխարհ ի Հոռոմք, ի Շամ և ի Շարիւ և յամենայն տեղ։ Կորճի։

Ի թվին ՋՋԹ (1540) ծանր ձմէռ եղաւ Թ (9) թիզ ձուն է 107բ ասին. Աւագ ուրբաթ[34] չկարաց մարդ ի գերեզմներնէր գնացեր։ Եւ ի դաակին խաւարեցաւ արեգակն։

Ի թվին ՋՂ (1541) դարձեալ եմուտ Կարմիր գլուխն ի Կուճխս[ա]ան և բաղում Ջորղում եղեալ, գերի աարեալ ի քրիստոնէից ԽՌ (40000)։ Ի սոյն ամի դնաց խոնդքարն ի Ֆռանկին վերայ, պատճառաւ էլչուն և շատ պակասութեամբ դարձաւ։

Ի թվին ՋՂԲ (1543) դարձեալ տղայ ժողւեցին։

Ի թվին ՋՂԲ (1543) յԱմասիայ քաղաք ջհուա մեծ հէքիմ մի Բ (2) քրիստոնէ երղատ է բռնել, տարել ի տուն թէ՝ կու բանեցնեմ, յԱւաք շաբթուն աւրերն։ Եւ այլ ի դուրս չեն ելել. Նայ անոնց ընկերմ այլ կու եղեր, կոահեր է և մեկալ օրն գնացեր սուպաշուն ասեր է թէ. Զամ թէ սպաննեցին, դի ունին ղաղանդն յիւրեանց դատկին։ Եւ խոնդքարին որդոյն իմաց ‖ ուցին սուլթան Մուստաֆին, որ շահզատայ էր յԱմասիայ։ Եւ առաքեց բաղում մարդ դրէհով, սլէհով կոտրեցին դդուռն մտան ի տուն ջհտին և գտան դքրիստոնէքն կամած ի տախտակի, որպէս դխաչ, դպողողն ծակել են և շիշայ էին խօթել և դարունն առել, վասն խմորի և ըմպռնեցին դջհուտն և սքանճայեցին։ Նայ ասաց թէ ունիմ Գ (3) ընկեր[35] դԱ (1) էրեցին, դԳ (3) կախեցին և արզ արարին մեծ խոնդարքին։ Ի սոյն ամի գնաց խոնդքարն ի վերայ Ֆռանկին, բերդ մի առին և ԺԲ (12) հազար մարդ դրին, յետև նաղմով կրակեցին և ջարդեցին զմարդն. և շատ պակասութեամբ դարձօ։ 108ա

Ի թվին ՋՂԳ (1544) յունվար շարժ եղև։ Զէյթուն փլաւ և Ապլստան կէսն ընկղեցաւ. Զէյթուն ներքև լեռանն մնաց։ Ներքև գետնոյն զոռոյն գայր ի պատուածոյն. մինչև ի Զ (6) ամիսն դողայր։

Ի թվին ՋՂԲ (1543) Վրացին դԱյազ փաշան կոտրեց և իառ։

‖ Ի թվին ՋՂԵ (1546) մարտի[ն] կարմիր ձուն եկօ։ Ի սոյն 108բ ամի ի Կոստանդինուպօլիս Գ (3) ազգի պատրիա[ր]գ վախճանեցաւ[36] Հայոյն, Հոռմին և Ֆռանկին։

Ի թվին ՋՂԶ[37] (1547) դարձեալ տղայ ժողւող ելաւ, բայց ի Սևաստ չեկաւ։ Ի սոյն ամի ահագին ամպ որոտ եղև, Լ (30) օր անձրև տեղեաց։ Հոկտեմբեր[ի] Ը (8) խաւարեցաւ լուսինն։ Նոյեմբերի ԺԲ (12) արեգակն խաւարեցաւ։ Ի սոյն ամի շահ Ալխասն ապստամբէ յեղբօրէն ի շահ Դահմանէն. գա ի խոնդքարն, ի սուլթան Սուլէյմանն յՍտմբօլու, առնու երթա ի վերայ եղբօրն անհուն զօրօք աւերեց զԹավրէզ և դարձաւ ի Ցամիս։[38]

Ի թվին ՋՂէ (1548) և տէրն Թավրիզին, բարկանայ շահ

Դահմանն զայ աւիրէ զԽնուզ, զՙասեն, զԱրզրում, զԴերջան, զԿեղի, զՊիթլիզ և բազում չարիս արարին։ Եւ իմացեալ խոնդքարն և անթիւ հեծել սփռեց և ջանացին ըմբռնել նայ, փախ‖եաւ նա և հեռացաւ ե խրոխտայր խոնդքարն ի դալոյ տարին։ 109ա Եւ ի գալ տարոյն անցաւ գնաց ի տեղի իւր և ոչ կուեց։[39]

Ի թվին ՋՂԹ (1550) տղայ ժողուղ ելաւ դարձեալ, յամենայն աշխարհս Ոսմանին։

Ի թվին ՌԴ (1554) մահ տարածեցաւ յամենայն երկիր։

Ի թվին ՌԸ (1559) խոնդքարին որդիքն կռվեցան ի Կօնիայ ե Սելիմն կոտրեց զՊայազիտն և փախուց մինչ ի Բառեն։ Եւ նա գնաց ի շահ Դահմանն և անտ սպանել տւին Գ (3) որդովն։

Ի թվին [Ռ]ԺԲ (1563) մահ տարածեցաւ դարձեալ։

Ի թվին ՌԺԴ (1565) Թիաւոր հանեցին յամենայն աշխարհէ և գնաց խոնդքարն ի վերայ բերդին Մալթայու և նոքա ելեալ կոտորեցին և փախուցին։[40] Ի սոյն ամի չարացան Սեստու տաճկընին և զՍեստու Լուսաւորչին ժամատունն քակեցին։

Ի թվին ՌԺԵ (1566) գնաց խոնդքարն ի վերայ Փէչայ. զՍախզ ե. այլ բերդեր ‖ առին և ի վերայ Փէչու անկաւ։[41] 109բ

Ի թվին ՌԺԶ (1567) նստաւ ի տեղ Սուլէյման խոնդքարին որդին իւր՝ Սելիմն Տկռածն, ասին թէ. հետ ճհտի աղի փոխել են զաղտ։ Եւ յառաջի ամին տղա ժողուղ ենան, դարձեալ յաշխարհ իւր։ Եւ պասմա զրդեր բերին։

Ի թվին ՌԻ (1571) Բ (2) ամաւ խսարեցին և առին զԿիպրոզ կղզին։ ՃՌ (100000) դերի հանին և զբազումս կոտորեցին։

Ի թվին ՌԻԱ (1572) գնաց զօրքն Օսմանցուն ի վերայ Ֆռանկին ե. նոքա ելեալ զՈսմանցուն զՃԾ (150) նավն զարկուտար արարին։[42]

Ի սոյն ամի ի Կոստանդինուպօլիս, ի սուրբ Սափի եկեղեցոյ գմբէթին վերայ խաչ լուսոյ երևէր, զոր ելեալ առնել կամէին կամ զարկել ե ընկենուլնայ բարձրանայր և երբ չմերձենային իջնոյր դարձեալ ի վերայ գմպէթին. տեսողքն եկեալ պատմեցին մեզ։

Ի թվին ՌԻԴ (1575) մեռաւ սուլդան ‖ Սէլիմն և նստաւ ի 110ա Թախտն սուլտան Մուրատ, որդի իւր։[43]

Ի սոյն ամի մեռաւ շահ Դահմանն[44] ի Թավրէզ, որ Կարմիր գլուխ յազգէն էր։

Ի սոյն ամի յամենայն տեղ հեղեղ ելաւ. ե. շատ զեն արար։

Ի թվին ՌԻԶ (1577) ազևոր աստղ ելաւ յարևմուտ, ծա[յ]րն յարևելք, մեծ ե. յերկտն և բազում աւուրք երևէր յարեմտի ցժամանակն։

Ի թվին ՌԻԸ (1579) գնաց Հռոմաց լաշքարն բազումք և ձմոնեցին յարևելք։ զԾերևան քաղաք գերեցին ԺԸ (18) գեղով, և ցրւեցին զկին և զտղայ յամենայն աշխարհ։[45]

Ի թվին ՌԼ (1581) ել չար հրաման ի սուլտան Մուրատէն, որ քրիստոնէքն այլ տուլպանգ չդնեն ի գլխնին։

Ի սոյն ամի Կարմիր գլուխն, զՈսման փաշան ի Տամուրղափուս փախուս։[46]

Ի թվին [ՌԼԳ][47] (1584) դարձեալ շարժ եղաւ Եզնկայն և կործանեց։

Ի թվին ՌԼԴ (1585) Ոսման փաշան[48] անթիւ հեծելով գնաց իառ զԹավրէզ, շատ ջարդում եղև և շատ գերի և շատ թալան արարին։ Յետոյ ինքն այլ ուռեցաւ և մեռաւ, Ոսման փաշան ‖, 110բ
և տիրեց Հոռմցին բազում տեղեաց, զի առին զՑէրևան, զՆախչւան, զԿանճա, զՇիրւան, զՇամախի, զԹավրէզ, զՏամուրղափուն, զԿորի՝ զԹախիան Սիմաւոնին և զԹիֆլիս։

Թվին ՌԽԱ (1592) տաճիկքն առին զԼուսաւորիչ եկեղեցին[49] ի Սեբաստ և արարին ուրբաթ մզկիթ. և զԱստուածածին տաճարն, որ ի մօտն կայր քակեցին ւ ի տեղն մինարայ շինեցին։ Զդերեզմանքն քակեցին և զոսկերսն ի դուրս լցին և յամենայն տեղ շատ ռոտ արարին և ասէին թէ, մեր թւիսն Ռ (1000) լցաւ։

Ի թվին ՌԽԲ (1593) Ոսմանցին եկաւ և զԳուտուն ու զՄաճարին և զամենայն ըխտաւորն գերեցուց մինչև ՁՌ (80000) ոգին, և թալնեց զմալ և զռզակն։

Ի թվին ՌԽԳ (1594) ծանր հեծելութիւն եղաւ ի վերայ
Մաճ ‖ արին։ 111ա

Ի թվին ՌԽԴ (1595) մեռաւ սուլտան Մուրատն և նստաւ ի տեղն սուլտան Մուհամմատն։[50]

Ի սոյն ամի պախրէք խիստ անաչար չարդեցան յամենայն աշխարհ, հանց, որ լուծքն ի գետինն մնաց և կալն կամնելու մնաց շատ, ի յանամին շառէն։

Ի թվին ՌԽԵ (1596) սուլթան Մուհամմատն գնաց անթիւ հեծելով և անհամար լաշքարով ի վերայ Ֆռանկին,[51] խորհելով թէ մինչև ի Ղզլալման երթայ և ոչ գնաց, այլ էառ զԱկրի բերդն. Ջարդեցան և Ջարդեցին։ Ի դառնալն աօնանմայ արարին և ուրախութիւն և պատերազմն անխափան մնաց։ Եւ յետ այնմ Ջալալնի եղաւ յիւր աշխարհն ահ և փախ ի գեղ և ի գաւառ, և թալան շատ գո[րծեցաւ]...[52]

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. Բնագրում նշված նախադասության դիմաց, ձախ լուսանցքում, քառակուսի շրջագծի մեջ գրված է «Ոսմանճուխ գէղչէ»։*

*2. Բնագրում վերնագիրը գրված է կարմիր թանաքով։*

*3. Ընդգծված հատվածի գրության ձևը տարբերվում է բնագրի գրության ձևից, այդ ցույց է տալիս, որ այն ավելացվել է հետագայում, ուրիշի կողմից։*

*4. Խորշայի նահատակությունը դնում են նաև 1541 թ.։ Ճիշտ է 1441 թ.։ Նրա նահատակության մասին մի բանաստեղծություն գտնվում է «Հայոց նոր վկաներ»-ի մեջ (Վաղարշապատ, 1903, էջ 376—382), տես և հմմտ. նաև* „A. catalogue of the Armenian manuscripts in the British Museum" *էջ* 284։

*5. Հեղինակը Ջհանշահի իշխանության գլուխ անցնելը համարում է 1437 թ. Նրա եղբոր՝ Իսկենդերի սպանությունից հետո, մինչդեռ Ջհանշահը Կարա-Կոյունլուների իշխանությունը ստանձնում է ավելի շուտ, Իսկենդերի կենդանության ժամանակ, 1435 թ.։ Այս առթիվ 1435 թ. ընդօրինակած ավետարանի հիշատակարանում կարդում ենք. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ սուտ գրչի և անարժան քահանայի Կարապետի, ի թուին Հայոց ՊՁԴ (=1435)... ի դառն և ի վշտաշատ ժամանակիս, որ վասն ծովացեալ մեղաց մերոց բացաւ դուռն կորուսանա և եկեալ որդի Թամուրին Շահռուհն ի յաշխարհն Հայոց և որդիք Ղարայ Ուսուֆին Իսքանդարն փախստական գնաց ի ներքին աշխարհն... և միւս եղբայրն Ջհանշայն գնաց հնազանդութեամբ մօտ ի Շահռուհն և նստաւ նորին հրամանաւ ի Թաւրէզ և եղէն երկու եղբարքն թշնամիք միմեանց և ոչ գիտեմք թէ զինչ լինելոց եմք»։ Ձեռ. № 6273, թերթ 139։ Հմմտ. Թ. Մեծոփեցի, էջ 106,* Петрушевский „Государства Азербайджана в XV веке" (Сборник статей по истории Азербайджана, выпуск I, Баку. 1949, стр. 165 166): *Ջհանշահը Կարակոյունլու թուրքմենների վերջին ամենախոշոր ներկայացուցիչն էր, իշխել է 1435—1467 թ. թ.։*

*6. Ճաղաթա=Ջաղաթա=Չաղաթայ Չինգիզ խանի երկրորդ որդու Չաղաթայի անունով, Չաղաթայի ուլուս կոչվել է այն տերիտորիան (և բնակչությունը), որն ընկած էր Ամուդարիայի և Սիրդարիայի ավազանում ու հասնում էր մինչև Իլի գետը և Բալխաշ լճի հարավային ափերը։ Հետագայում, XIV—XV դարերում Լենկ Թեմուրը Չաղաթայի ուլուսը նվաճելուց հետո, նրա հետնորդներին ևս կոչեցին Չաղաթայ։ Բնագրի «զտուն Արաղայ» հատվածի տակ պետք է հասկանալ Իրաքը։*

*7. Սարի, քաղաք Պարսկաստանում, գտնվում է Կասպից ծովի հարավային ափից 18 կիլոմետր հարավ, Տեջան գետի ափին։*

*8. Բնագրի «Սքօա» անունը կարծում ենք «Սավա» անվան աղճատումն է։ Սավան գտնըվում է Թեհրանից հարավ-արևմուտք։ Այս քաղաքները, 1460 թ. ընդօրինակած ավետարանի հիշատակարանի համաձայն, Ջհանշահը գրավել է 1460 թ. (Ձեռ. № 6273, էջ 168ա)։ Հմմտ. Հ. Աճառեան «Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի», Վիեննա, 1910, էջ 101—105։ Պետրուշևսկին այդ նույն մարզերի նվաճումը դնում է 1453 թ. ներքո (նույն տեղ, էջ 166)։*

*9. 1465 թ. ընդօրինակած Հայսմավուրի հիշատակարանում, Բաղդատի պաշարումը նշված է 1463 թվից, այնտեղ կարդում ենք. «... ի թագաւորութեան Ջհանշային, որ այս երկու ամ է, որ նստեր է ի վերայ Բաղդադ քաղաքին և խսարեր է զորդին իւր զՓիրապուտախն...»։ (Ձեռ. № 6273, էջ 176բ—177ա)։ Սակայն, դարձյալ նույն թվին ընդօրինակած, մի այլ ավետարանի հիշատակարանում կարդում ենք. «Յայսմ ամի սպան չարաչար Ջհանշահ փատշահն զորդին իւր զՓիրպուտախ խանն ի Բաղտատ, և եկն ի Թավրէզ ի թախթն»։ («Էջմիածին», 1950 թ., սեպտ.-հոկտ., էջ 85)։*

*10. Հեղինակը նկատի ունի Ջհանշահի և Ակ Կոյունլու սուլթան Ուզուն Հասանի 1450-ական*

*թվերի պատերազմները, որի ժամանակ Ջհանշահը կորցրեց Ֆրդստանի և Հայաստանի մի մասը։*

*11. Կարամանիա (—Ղարամնա) երկիրը գտնվում է Փ. Ասիայում, (տես էջ 96, ծանոթ. 88)։ Սույն վկայությամբ հեղինակը նկատի ունի օսմանական սուլթան Մուհամմեդ II-ի և Ուզուն Հասանի միջև Կարամանիայի համար տեղի ունեցած կռիվների առաջին շրջանը։ Սակայն այդ կռիվները տեղի են ունեցել ոչ թե 1463 թ., այլ 1471 թ.։ 1471 թ. երբ օսմանական բանակը գրավում է Ղարամանիան, վերջինիս իշխան Փիր Ահմեդը փախչում է Ուզուն Հասանի մոտ, հենց նույն տարում էլ Ուզուն Հասանը կարողանում է պարտության մատնել օսմանական բանակին։ Գրավելով Ղարամանիան, Ուզուն Հասանը այստեղ թողնում է մի զորաբանակ 10.000 հոգուց բաղկացած, իսկ ինքը վերադառնում Թավրիզ (Տես* Мюллер „История ислама", т. III, стр. 368,*Չամչեան «Պատմութիւն Հայոց», հ. Գ, էջ 510)։ Հմմտ. Կատերինո Զենոի, Ջոզեֆա Բարբարոի և Ջիովան Անջիոլելլոի վկայությունների հետ («Ուղեգրություններ», հ. Ա, էջ 160—166, 175—177, 255—256)։*

*12. Ուղիղ ձևը Ալպիստան, քաղաք համանուն գավառում, Մարաշի հյուսիս արևելյան մասում, Ջհան գետի ափին։*

*13. Բնագրում նախքան «հողով» բառը, գրված է նաև «ոգով», պահեցինք միայն վերջինը։*

*14. Հեղինակը Ջհանշահի և Ուզուն Հասանի միջև տեղի ունեցած կռիվը նշում է 1468 թ. «և ձմեռն էր»։ № 2151 ժամանակագրության վկայությամբ այդ դեպքերը տեղի են ունեցել 1468 թ. «և ժամանակն այն ձմեռնամտին էր» (էջ 173բ), այլ խոսքով 1468 թ. վերջերին։ Մինչդեռ Մ. Արծկեցու չափածո ժամանակագրությունը և IX ժամանակագրությունը նշում են 1467 թ. ները։ Անշուշտ 1468 թ. ստույգ չէ։ Պետրուշևսկին* „Гос-а Азербайджана в XV веке" *իր աշխատության մեջ Ջհանշահի ջախջախման հարցին նվիրում է հատուկ էջեր (էջ 168—169), ըստ որի 1467 թ. մայիսին Ջհանշահը իր էմիր Կասիմ Փարվանաչու հետ արշավում է Ուզուն Հասանի վրա։ Մշո դաշտում Ջհանշահը Ուզուն Հասանից կրում է առաջին լուրջ պարտությունը և նահանջում, որին այնուհետև հետապնդում է Ուզուն Հասանը։ Վերջինս իմանալով, որ Ճապաղջրի մոտ Ջհանշահը մնացել է արիերգարդային փոքրաթիվ զորքով հանգստանալու, իսկ նրա հիմնական ուժերը բավական հեռու են, հանկարծակի հարձակվում է և ջախջախում Ջհանշահի զորքին (նույն տեղ, էջ 168)։ Պետրուշևսկին այս կռիվները գնում է նոյեմբերի սկզբներին։ Ճակատամարտի վայրը ժամանակակից Կատերինո Զենոն այլ տեղ է մատնացույց անում, նա գրում է, որ Ուզուն Հասանը «մտածված կերպով Ջհանշահին քաշեց Երզնկայի դաշտերի մեջ, որտեղ ընդհարվելով հաղթեց...* (էջ 7 „A Narrative of italian travels in Persia in the XV and XVI centuries trans by Cnarles Crey" 1873, London): *Մինչդեռ մեր ժամանակագրությունը մատնացույց է անում Ճապաղջուրը (հմմտ. Պետրուշևսկի, նույն տեղ, էջ 168)։ Վերջինս այժմյան Գյունեկսուի ստորին հոսանքն է, որը սկիզբ է առնում Բինգյոլի արևմտյան լանջերից և թափվում Արածանիի մեջ. Ճապաղջուր կոչվել է նաև Կենչից մինչև Բալու ընկած տերիտորիան, որը վերջերս վերանվանվել է Բինգյոլի սանճախ։ (Տես և հմմտ. Բ. Գուշակեան, «Ցուցակ հայերէն ձեռագրաց Ս. Նշանի Վանուց ի Սեբաստիա», «Հանդէս Ամսօրեայ», 1925 թ., էջ 269։ Ձեռ. 6273, թերթ 182)։*

*15. Խոսքը վերաբերում է Ջհանշահի որդի Հասան Ալուն, որը հոր ջախջախումից և սպանությունից հետո իրեն հռչակեց հոր հաջորդ և պատրաստվեց կռվելու Ուզուն Հասանի դեմ։ Երկու բանակները հանդիպեցին 1468 թ. հուլիսի վերջերին, Մարանդում (հարավ. Ադրբեջան), որտեղ Հասան Ալին չարաչար պարտվեց, իսկ մինչ այդ Ուզուն Հասանը գրավել էր Կարակոյունլուների համարյա ողջ տիրապետությունները և մայրաքաղաքն էլ տեղափոխել Թավրիզ։ Հմմտ. Սրուանձտեան «Թորոս աղբար», մասն Բ, Կ. Պոլիս, 1885, էջ 377, ձեռ. № 6273, էջ 185, վերևում էջ 151, ծանոթ. 32, ներքևում էջ 194։*

*16. Հեղինակը նկատի ունի Ուզուն Հասանի և Լենկ Թեմուրի թոռ Աբու-Սեյիդի 1468 թ. կռիվները։ Այս կռիվներին, Պետրուշևսկին վերոհիշյալ իր աշխատության մեջ, նվիրում է հատուկ գլուխ (նույն տեղ, էջ 169—171), որտեղ ցույց է տալիս, թե Աբու-Սեյիդը Խորասանից դուրս է գալիս 1468 թ. հուլիսին և աշնանը հասնում հարավային Ադրբեջան, այնուհետև առանց պատերազմելու քաշվում է Մուղան 1468—1469 թ. թ. ձմեռը անցկացնելու։ Աբու-Սեյիդը այստեղ ենթարկվում է պաշարման և 1469 թ. սկզբներին ջախջախվում ու գերվում։ Լեն-Պուլը Աբու-Սեյիդի իշխանությունը նշում է 1452—1469 թ. թ., իսկ Բարտոլդը վերջին թիվը ուղղում է՝ 1468 թ. (տես* „Мус. династий" стр. 227, прим. 2): *Այս կռվի մասին վերհիշում է նաև*

Ամբրոսիոս Կոնտարինին («Ուղեգրություններ», հատոր Ա, էջ 128)։ Տես և համտ. Мюллер „История ислама" т. III, стр. 353—354):

17. Համտ. «Մ. Նաղաշ և իր տաղերը», Կ. Կոստանեանց, Վաղարշապատ, 1898, էջ 11—12։

18. Համտ. Կատերինո Զենո «Ուղեգրություններ», հատ. Ա, էջ 165։

19. Այսինքն Հալեպ, բայց սույն ժամանակագրության № 2151 տարբերակում պահվել է «Պիրայ» ձևով (էջ 173բ)։ Եթե ճիշտ է վերջինս, նշանակում է խոսքը վերաբերում է ոչ թե Հալեպին, այլ հին Ապամեա քաղաքին, Եփրատի վրա, Մերգինի և Ուրֆայի միջև, Հալեպ—Թավրիզ առևտրական ճանապարհի վրա։

20. Աշմուշատը պատմական Արշամոշատն է, որի հիմնադրումը վերագրում են Ծոփքի թագավոր Արշամին։ Արշամոշատի տեղագրությունը ստույգ հայտնի չէ։ Անտիկ հեղինակներից Պոլիբեոսը Արշամաշատը տեղագրում է «այսպէս կոչված գեղեցիկ հովտում Եփրատի և Տիգրիսի միջև» (Полибий „Всеобщая история в 40 книга, перевод Ф. Т. Мищенко, т. I—III Москва, VIII, 25): Պլինիոսի համաձայն Արշամոշատը գտնվում է Արածանիին շատ մոտ („Histoire naturell de Pline" t. I—II, Paris, 1883, VI, 10); Հայ հեղինակներից Մ. Ուռհայեցին Աշմուշատը (Արշամոշատ) դնում է Արածանիի վրա Ճապաղջրի մոտերքում («Ժամանակագրութ.», էջ 207—208)։ Ուսումնասիրողներից Հոֆֆմանը այն տեղադրում է Ցարմչիկ գյուղի մոտերքում, Արածանիի աջ ափին, իսկ Տոմաշեկը՝ Ցարմչիկից հարավ, Արածանիի ձախ ափին, այժմյան Խարաբա գյուղի ավերակների մոտ։ Սակայն Մարկվարտը՝ տեղադրում է այժմյան Նաչարտնում, ոչ հեռու Խարաբա գյուղից (Արշամոշատի տեղադրության հարցը մանրամասն քննում է Մարկվարտը „Südarmenien und Tigrisquellen" իր աշխատության մեջ, ծանոթ. 3, տես «Հանդէս Ամսօրեայ», 1915, էջ 102—115, և այլն. Մանանդյանը „О торговле и городах Армении" Ереван, 1930, стр. 27—29): Ն. Ադոնցը Արշամոշատը տեղադրում է Խարբերդի հովտում այժմյան Շամուշին գյուղի շրջակայքում („Армения в эпоху Юстиниана" стр 35): Այսպիսով պետք է ենթադրել, որ Ծոփքի կենտրոն Արշամոշատը (Աշմուշատ) գտնվել է Արածանիի ձախ ափին, այժմյան Խարբերդի և Բալուի միջև(Манандян „О торговле и городах Армении" стр. 28): Աշմուշատը XI դարում գտնվում էր Սասունի իշխան Թոռնիկի ձեռքում, որը, ըստ Մ. Ուռհայեցու, 1072 թ. Ալելուա դաշտում ջախջախեց Փիլարտոսին («Ժամանակագրութիւն», էջ 207—208)։

21. Թուրքիան չհաշտվեց 1471 թ. Կարամանիայի կորուստի հետ (տես ծանոթ. 11) և 1472 թ. օգոստոսին Մուհամմեդ II-ի որդի Մուստաֆան Բեյշեր դյոլի մոտ (գտնվում է Իկոնիայում, հնում կոչվել է Կորալիս) պարտության է մատնում Ուզուն Հասանին, բայց վերջինս չվհատվեց և 1473 թ. Մալաթիայի մոտ հաղթեց թուրքական բանակին։ Սակայն այս ճակատամարտերում չորոշվեց պատերազմի ելքը։ Մի փոքր ուշ՝ 1473 թ. օգոստոսին Ուզուն Հասանը Բաբերդից ոչ հեռու, Դերջանի մոտ թուրքերից չարաչար պարտվելով փախավ Թավրիզ։ Այս կռիվների մասին մանրամասն պատմում են Վենետիկի դեսպանները, որոնք գտնվել են Ուզուն Հասանի արքունիքում, Կատերինո Զենո, Ջոզեֆա Բարբարո, Ջիովան Մարիա Անջիոլելլո («Ուղեգրություններ», հատ. Ա, էջ 166—167, 177, 257—265։ Համտ. Պետրուշևսկի „Гос-а Азербайджана в XV веке" նույն տեղ, էջ 174, Мюллер „История ислама" т. III, стр. 369—370):

22. Խոսքը վերաբերում է Ուզուն Հասանի որդի Ուղուրլու Մուհամմեդի ապստամբությանը, որ սկսեց 1473/4 թվերին իր հոր դեմ։ Այս մասին հաղորդում են նաև Ջ. Բարբարոն, Ա. Կոնտարին և Ջ. Մ. Անջիոլելլոն (տես «Ուղեգրություններ», հ. Ա, էջ 188, 229—230, 265—266)։ Համտ. Петрушевский „Гос-а Азербайджана в XV в." նույն տեղ, էջ 171—172։

23. Կարծում ենք խոսքը վերաբերում է Ուզուն Հասանի մահվան, սակայն նա մահացել է 1478 թ. հունվարի 5-ին։ Համտ. Ջ. Բարբարո, Ջ. Մ. Անջիոլելլո («Ուղեգրություններ», հատ. Ա, էջ 208, 269)։

24. Տես և համտ. XIII ժամանակագրություն, ծանոթ. 5։

25. Այս երկրաշարժի մասին մի բանաստեղծություն ունի Զաքարիա երեցը։ Այն գտնըվում է. „A Catalogue of the Armenian manuscripts in the British Museum" էջ 284:

26. Համտ. Հովհաննես Սեբաստացի պատմիչ («Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, Թիֆլիս, 1912, էջ 393—394)։

27. Տես վերևում էջ 156, 163, ծանոթ. 4։

28. Սելիմ I-ը իշխել է 1512—1520 թ. թ., իսկ նրա հաջորդ Սուլեյման I-ը՝ 1520—1566 թ. թ.։

29. Հմմտ. Հով. Սեբաստացի («Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 395)։

30. Բնագրում գրված է հապավված՝ «քհ» ձևով կարդացինք «քահանա», Հմմտ. «Դիւան Հայոց պատմշւթեան», գիրք Ժ, էջ 395։

31. Իմա՝ Իբրահիմ, սուլթանի մեծ վեզիրը, որին պատկանում էր օսմանական բանակի վերակառուցման պլանը՝ ենիչերիների ստեղծումը։

32. Բնագրում սույն բառը համարյա անընթեռնելի է։

33. Բնագրում սխալմամբ գրված է «ՋՀԷ»։ Խոսքը վերաբերում է 1538 թ. Պրեվեզի ծովային նշանավոր ճակատամարտին, որտեղ թուրքերը ջախջախեցին դաշնակիցների ուժերը։

34. Այսինքն 1540 թ. մարտի 26-ին։

35. Պետք է լինի «Դ ընկեր», որովհետև շարունակության մեջ հիշվում է, որ մեկին այրել են, իսկ երեքին կախել։

36. Բնագրում «վաճխանեցաւ» ձևով։

37. Բնագրում սխալմամբ գրված է «ՋԼՋ»։

38. Հմմտ. Զաքարիա Սարկաւագի պատմագրութիւն», հ. Ա, էջ 10—11, VIII ժամանակագրություն, էջ 136։ Սույն կռիվների մասին տես նաև Петрушевский „Азербайджан в XVI —XVII веках" (Сборник статей.. " выпуск I, стр. 267):

39. Տես ծանոթ. էջ 38։

40. Այլ տվյալներով թուրքերի կողմից Մալթա կղզու բլոկադան և անհաջողությունը տեղի է ունեցել 1564 թ.։

41. Հեղինակը նկատի ունի Սուլեյման I-ի 1566 թ. արշավանքը դեպի Ավստրիա, որտեղ Ցյունֆկիրխեն քաղաքի մոտ (թուրքերը այդ քաղաքին կոչում"են Պեչ) նա մահացավ 1566 թ. սեպտեմբերի 25-ին։ (Հմմտ. Ալիշան «Կամենից», էջ 37)։

42. Հեղինակը, հավանաբար, նկատի ունի Լեպանտոյի ծովային ճակատամարտը, սակայն այն տեղի է ունեցել 1571 թ. հոկտեմբերի 7-ին, որտեղ թուրքական նավատորմը գլխովին ջախջախվեց և կապուտան փաշան (ադմիրալ) իր շտաբի հետ գերվեց։

43. Սելիմ II-ն իշխել է 1566—1574 թ. թ., իսկ սրա՝ հաջորդ Մուրադ III-ը 1574—1595 թ. թ.։

44. Թահմազ շահը մահացել է 1576 թ.։

45. Խոսքը վերաբերում է Թահմազ շահի մահից հետո տեղի ունեցած գահակալական կռիվներին հաջորդող պարսկա-թուրքական կռիվներին, որը տևեց 1578—1590 թ. թ., փոփոխակի հաջողություններով։

46. Խոսքը վերաբերում է Շիրվանում թուրքական բանակի հրամանատար Օսման Յուզդեմիրի դեպի Դերբենդ կատարած նահանջին։

47. Բնադրում տարեթիվը բաց է թողնված, կարծում ենք խոսքը վերաբերում է 1584 (ՌԼԳ) թվի երկրաշարժին։ Հմմտ. Սամ. Անեցի, էջ 176։ Ա. Դավրիժեցի, էջ 631։

48. Օսման Յուզդեմիր։

49. Բնագրում «ԵԿեղեցին» բառին անմիջապես հաջորդում է «դարձուցին» բառը և որովհետև վերջինս խանգարում էր իմաստը, ուստի չվերցրինք այն։

50. Մուհամմեդ III-ն իշխել է 1595—1603 թ. թ.։

51. Հեղինակը հավանաբար նկատի ունի ավստրիացիների 1596 թ. պարտությունը Կերեստի մոտ։

52. Բնագիրն այստեղ ընդհատվում է։

XII

# ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ (XVII Դ.)

*Սաորև հրատարակվող նյութը ժամանակագրություն չէ բառի նեղ իմաստով, այլ մի քանի տարում, 1604—1608 թվերին տեղի ունեցած պատերազմների, ասպատակությունների, գաղթեցումների, սովի ու տարաժամ մահվան սրտաճմլիկ պատմություն։ Ո՞վ է եղել սրա հեղինակը, հնարավոր չեղավ պարզել, բայց անկասկած է, որ հեղինակը ականատես է եղել իր նկարագրած մի շարք դեպքերին, որի շնորհիվ էլ նկարագրությունը վերին աստիճանի անմիջական է և սրտառուչ։ Ժամանակագրությունը վերաբերում է շահ Աբասի և տաճկական զորավար Ջղալ Օղլի Սինան փաշայի (նույն ինքը Ջիկալա) մղած կռիվներին, սրանց և շալալիների ասպատակություններին, շահ Աբասի կազմակերպած հայերի բռնի գաղթեցմանը և 1604—1608 թվականներին հայ ժողովրդի կրած տառապանքներին։ Սակայն ժամանակագրությունը, որը գտնըվում է № 519 ժողովածուի 74ա—79ա էջերում, անմիջապես պատմական դեպքերի նկարագրությամբ չի սկսվում, այլ մի էջ բռնող մաղթանքով, որի էությունն այն է, թե՝*

> *«Աղօթիւք և պաղատանօք ի նմանէ խնդրեսցուք, զի զխաղաղութիւն պարգևեսցէ...» և այլն։*

*Վերոհիշյալ դեպքերի նկարագրությունը մինչև հիմա մեզ հասել է Գր. Կամախեցու ժամանակագրության,[1] Ա. Դավրիժեցու «Պատմության»,[2] Օգոստինոս Բաջեցու ճանապարհորդության,[3] դեպքերին ժամանակակից օտարազգի ճանապարհորդ՝ Անտոն Գուվեայի տեղեկությունների,[4] ինչպես նաև առանձին հիշատակարանների[5] և չափածո ստեղծագործությունների[6] շնորհիվ, որոնք չնայած երբեմն տարբեր դեպքեր են նկարագրում, սակայն ըստ էության որոշ մանրամասնություններով լրացնում են իրար։ Մատենադարա-*

---

[1] *«Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղցւոյ», Երուսաղէմ, 1915, էջ 14—56 և այլն։*

[2] *Ա. Դավրիժեցի «Պատմութիւն», Վաղարշապատ, 1896 թ., էջ 16—92։ Վերջինս օգտագործել է մասամբ Զաքարիա Սարկավագը «Պատմագրութիւն», Վաղարշապատ, 1870 թ., հ. 1-ին, էջ 18—20։*

[3] *«Նշխարք մատենագրութեան հայոց» Ք. Պատկանյանի, Ս. Պետերբուրգ, 1884 թ., էջ 5—23։*

[4] Г. А. Эзов. „Сношения Петра великого с армянским народом“ С. Петербург, 1898 г., стр. 46[illegible]—474.

[5] *Ե. Լալայան «Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի» էջ 256—258, 523—524, 611—612, 812—822 և այլն։ Գ. Սրուանձտեան «Թորոս աղբար» մասն Բ. էջ 266—268։ Ղ. Փիրղալէմեան «Նշխարք պատմութեան հայոց» № 4515. էջ 363, 374 և այլն։*

[6] *«Բազմավէպ» 1874 թ., էջ 94, 95։ Ալիշան «Այրարատ», էջ 101—303։*

նում մեզ հանդիպեց նաև վերոհիշյալ դեպքերին վերաբերող մի այլ նկարագրություն, որը հավանաբար հեղինակի ինքնագիր օրինակն է։

Ժամանակագրությունը տալիս է ոչ միայն արդեն հայտնի դեպքերի մինչ այժմ անհայտ նոր մանրամասնություններ, ասենք Գառնիի քարայրներում պատսպարվողների, հայ գաղթականների Արաքսի անցման մասին և այլն, այլև կատարում է պատմական որոշ փաստերի ճշտումներ։ Այսպես. Ա. Դավրիժեցու հաղորդման համաձայն Արարատյան և այլ գավառների բնակչության գաղթեցումից հետո, թալանի նպատակով վերոհիշյալ գավառներն են մըտնում ջալալիները։ Վերջիններս որոշում են գնալ «... յերկիրն Գեղամայ՝ որ է Գեղարքունի, քանզի դիտէին թէ անդ են համպարք ցորենոյ և գարւոյ, և ջոկք ոչխարաց և անդէոց, որ է պախրէք՝ յոլովք գոն»։[1]

Դրանից հետո նրանք մտնում են Գեղարքունի, ասպատակում, թալանում և վերադառնում։[2]

Մինչդեռ առաջարկվող ժամանակագրությունը բոլորովին այլ փաստեր է տալիս այս դեպքերի մասին։ Ըստ ժամանակագրության, ջալալիները առաջին անգամ 1605 թվին փորձում են գնալ Գեղարքունի, վերջինիս իշխան Շահնազարը իր որդի Զավրիթեկի ղեկավարությամբ, ջալալիների դեմ բավական զինված ուժ է հանում, այնքան, որ Զավրիթեկին հաջողվում է ջարդել ջալալիներին։ Գեղարքունին այս անգամ ազատվում է ջալալիների ասպատակություններից։ Հավանաբար շահ Աբասին դուր գալու նկատառումով, հաղթողները սպանված ջալալիների (թերևս ղեկավարների) գլուխները կտրում են և ուղարկում շահ Աբասին։ Դարձյալ 1605 թվին ջալալիները փորձում են երկրորդ անգամ մտնել Գեղարքունի։ Այս անգամ նրանց այդ հաջողվում է։ Սկսվում է թալանը և ասպատակությունները, գերեվարությունը...։ «Եւ ո՞վ կարէ պատմել,— բացականչում է հեղինակը,— զչարիք, զոր նոքա գործեցին...»։ Դավրիժեցու վկայությունն ըստ երևույթին վերաբերում է ջալալիների Գեղարքունի կատարած երկրորդ արշավանքին, իսկ առաջինի մասին նա ոչինչ չի հայտնում, մինչդեռ ժամանակագրությունը այդ դեպքը ավելի մանրամասն է հաղորդում։

Այնուհետև, ըստ Չամչյանի շահ Աբասը 1604 թ. Երևանը գրավել է 9 ամիս պաշարելուց հետո։[3] Մինչդեռ ժամանակագրությունը Երևանի պաշարման տևողությունը համարում է 8 ամիս, որ հաստատվում է նաև 1604 թ. ընդօրինակված մի ավետարանի ընդարձակ հիշատակարանի վկայությամբ։[4]

---

1 «Պատմութիւն», էջ 83—84։

2 «Պատմութիւն», էջ 84։

3 Չամչեան «Պատմութիւն հայոց», հատոր Գ., էջ 543։ Հմմտ. նաև Լեո «Հայոց Պատմություն», Երևան, 1946 թ. հատոր Գ., էջ 243։

4 Ղ. Փիրղալէմեան «Նշխարք պատմութեան հայոց» № 4515, էջ 366 (հիշատակարանը բռնում է ժողովածուի 365—368 էջերը)։ Նույն ժողովածուի 365-րդ էջի մի այլ վկայության համաձայն «...Զորս կողմն վրան դրին զաւազ բերդն (Երևանի. Վ. Հ.) պաշարեցին եօթն ամիս սխլաթ տուին և եօթն օր վէր անցուցին...» հմմտ. նույն ողբի մի այլ տարբերակի հետ, որը հայտնի է Յով. Մակուեցու անվամբ։ Վերոհիշյալ հատվածը այստեղ մի փոքր տարբեր է.

«Զորս կողմն վրան դրին,
Զբերդաքաղաքն պաշարեցին
. . . . . . . . . . . . . . .
Եօթն ամիս հասարակաւ
Եւ եօթն վերայ աւելի...»

Ալիշան, «Այրարատ», էջ 301—302։

Ժամանակագրությունը հետաքրքիր և սրտաճմլիկ ձևով է նկարագրում Գառնիի քարայրներում ապաստան գտած հայերի կոտորածը, մի նկարագրություն, որը չենք գտնում մեզ հասած աղբյուրների մեջ։

Պատահում է, որ ժամանակագրի վկայությունը չի համընկնում Ա. Դավրիժեցու գրածին. այսպես՝ ըստ Ա. Դավրիժեցու՝ 1606 թ. Գանձան, Թբիլիսին և այլ վայրեր գրավելուց հետո շահ Աբասը բանակով գնում է Գեղարքունիք, Շահը իջևանում է Մազրա գյուղում մելիք Շահնազարի տանը։ Վերջինս շահ Աբասին ցույց է տալիս թագավորին վայել հյուրասիրություն. «Վասն որոյ և թագաւորն պատուական և ազնիւ զգեստուք շքեղացուցեալ խիլայեաց, և պարգևեց նման զիշխանութիւն մէլիքութեան գաւառին և այլ ևս դաստակերտս և գեղօրայս ետ նմա և եղբարց նմա»։[1]

Շահ Աբասի կողմից, մելիք Շահնազարին գավառի իշխանության պարգևումը, ժամանակագրության համաձայն այլ առիթով է լինում՝ երբ 1605 թ. շալալիների առաջին արշավանքի ժամանակ մելիք Շահնազարի որդին՝ Ջավրիբեկը իր զորքով «...կոտորեաց զնոսա մեծաւ քաջութեամբ և տարեալ զգլուխս նոցա եդ առաջի պարսից արքային, յորմէ ուրախացաւ արքայն, և **ետ նմա իշխանութիւն տիրել ի վերայ գաւառին իւրոյ**»: (Երկու տեղումն էլ ընդգծումը մերն է—Վ. Հ.): Նման շեղումները եզակի չեն։

[1] «Պատմութիւն», էջ 96։

## XII

Փառք պատիւ և գոհութիւն զԹածին, ողորմածին և մարդա- 74ա
սիրին աստուծոյ, հօր և որդոյ և հոգոյն սրբոյ եռանձնեայ, եզա-
կի, համակամ համապատիւ, միաշար, անորիշ, անքակ և անքա-
նակ զուգահաւասար, անբաժանելի, միասնական սուրբ երրոր-
դութեան, ամենազօր տէրութեանց, միահեծան և միահամուռ իշ-
խանութեան, որ տիրէ մասանց և բոլորից կենդանեաց և ան-
կենդանից, իմանալեաց և զգալեաց և ամենայն արարածոցս
ամէն։ Արդ՝ յըսկիզըն բանիս պարգեօք սուրբ հոգոյն զմայլեալք,
շնորհօք և ողորմութեամբ նորին զօրացեալք և ուրախացեալք,
պարտական եմք զձեռս և զմիտս ի վեր համբառնալ հանդերձ
զգայարանօք և զամենայն գովութեան պատճառն արարչին տա-
ցուք և դրաշխօղն բանի բանականաց սեռի զաւրհնեալն ի բնա-
ւից ամենայն գոյից, բանականաց, շնչականաց ե համօրէն տար-
րեղինաց անեզրական ձայնիւ ե անհանգիստ բարբառով, աւրհ-
նեսցուք, գովեսցուք, բաբերանեսցուք և փառս մատուսցուք։
Աղօթիւք ե պաղատանօք ի նմանէ խնդրեսցուք, զի զխաղաղու-
թիւն պարգեեսցէ և հաշտեսցի դարձեալ յարարածս իւր մանա-
ւանդ ի վայրավատնեալ ե ի ցրուեալ յանդամս իւր յազգս Հա-
յոց. մի Թեալ ի նոյն, որպէս և եմք և կեամք ի մէջ վեցեկի պա-
տուհասի, որ է՝ սով, սուր, գերութիւն, տարաժամ մահ, անօրի-
նաց զրկանքն և սաստիկ հարկապահանջողութիւն։ Եւ վերջինն
է այս, զի Թէ ոք կամի փախչել և խնդրել զխախաղութիւն ոչ
ուրեք գտանէ, զի պակասեալ է ի յերկրէ ըստ մարգարէին, Թէ
անօրէնքն իբրև զծով ծփեսցին ե հանգիստ մի գտցեն և ոչ գոյ
խաղաղութիւն ամբարըշտաց։

Արդ՝ ի Թվականութեան տումարիս հայկազան ցեղիս ՌԾԳ
(1604) Թագաւորն Պարսից Աբաս անուն, զօրացեալ և յառաջ
եկեալ, էառ զՌավրէժ քաղաքն, որ ի վաղուց հետէ հանեալ էր
ի նոցանէ, ոՌ ոստիկան Օսման անուն ‖, հրամանաւ սուլտան 74բ
Մուրատ Թագաւորին Տաճկաց։ Եւ անդէն չու արարեալ մեծ ե.
լայն բանակաւ և բազում զօրօք եկեալ յամենագով երկիրն Այ-
րարատեան, պաշարեաց զզղեակն նոցա ութ ամիս ե էառ զնայ.
քանզի ոչ ոք եկն ի յօգնականութիւն խսարեւոցն, վասն երկ-
պառակութեան և անմիաբանութեան զօրաց սուլտանին Տաճկաց.
զի վասն չարութեան նոցա յարոյց տէր սատան նոցա, որ ընդ
ամենայն տեղիս ելուզակ էին եղեալ իշխանքն և զաշխարհն

աւերէին, սով և նեղութիւն ի յիւրեանց երկիրն էին ձգեալ։ Իբրև յաջողեցաւ գործ թագաւորին Պարսից, նստաւ անդէն մինչև ի գարնանային եղանակն. և ի շնչել հողմոյն հարաւոյ, և ապայ ելեալ ի հովանոց լերինք Գեղամայ և Գանձակայ, որ է Գանջայոյ, զամառնային եղանակն անդէն անցոյց։ Իսկ ի մերձենալ աշնանային աւուրց, զաւրավարն տաճկաց Ջղալօղլի անուն, որ էր ի զարմէ թագաւորաց Ֆռանկաց, հրամանաւ Ահմատ սուլտանին, որ էր հասակաւ յոյժ մանուկ և տղայ, գումարեաց զօրս բազում և դիմեաց առիւծաբար ի վերայ շահ Աբասին ի յԱյրարատ գաւառն։ Իբրև ետես նա, թէ ոչ կարէ դգէմ ունել նորա պատերազմաւ, հանդրուանէ ի հանդրուանս փախչէր և զվայրքն հրձիգ առնէր, զի մի օթևան լիցի զօրացն Տաճկաց կամ զրաստուց նոցա կերակուր և դարման։ Այլև հրաման ետ անօրէն զաւրաց իւրոց, թէ զազգն Հայոց վարեցէք յերկիր Պարսից, որպէս ի հնումն Նաբուգոդոնոսոր զհինն Իսրահէլ ի Բաբելոն։ Որք սկսան գառն հարուածով և սաստիկ ճեպով ի յերկրէն Շիրակուանայ և Կարսայ մինչև ի Գողթան գաւառն, զայնքան միջոցն ամայի զարձուցին ի բնակչաց։ Ի ձմռնային աւուրքն հանէին ի տանց և ի բնակութեանց, զգեօղ և զքաղաք, զվանք և զանապատ, զվարդապետ և զեպիսկոպոս, զքահանայ և զժողովուրդ, զազատորդի և զգռեհիկ արկեալ առաջի ‖ երիվարաց մեծաւ տագնապաւ 75ա սուր ի վերայ շողացուցեալ սաստիկ ստիպով ճեպէին, զի թշնամին զկնի էր նոցա, այսինքն զօրքն Տաճկաց։ Աւաղ աղէտիս, ո՜հ տառապանացս, եղուկ դառնութեանս, զի յորժամ ի տանէն ի դուրս վարէին զմարդիկ, հուր լուցեալ այրէին զտունն լի ստացուածով, իսկ տերանց յետս հայեցեալ զբոցն բարձրացեալ տեսանէին, յայնժամ ճիչ բարձեալ լային, գոռային և հող զգլխով արկանէին, օգնել ինչ ոչ կարէին, զի սաստիկ էր հրաման թագաւորին։ Այլև ի ճանապարհին զոմանս սպանանէին, զոմանս ջլատէին, ի գրկաց մարց առեալ զմանկունս զքարի հարկանէին, զի թեթև լիցին ի գնալն, որպէս պատմեաց մեզ ոմն քրիստոնեայ, մշակ գոլով ի բանակէն Տաճկաց, այնր ճանապարհին հետևող, թէ «հանդիպեցանք ի հովիտ մի, բազում կանայք սպանեալ էին անօրէն զօրքն Պարսից, մանուկ մի ստընդիայ անգանէր ի վերայ մեռեալ մօրն, առեալ ի բերան զըստինս դիէր և յետս դառնայր և լայր ի յաճախ ծըծելոյն կաթն յարին էր փոխեալ, զոր տեսեալ ամենայն բանակին աղիողորմ արտասուեցին և զմանուկն բերեալ ապրեցուցի ես», ասէր։ Այսպէս դառն տանջանօք հասուցին ի Ջուղայ. և ապայ զբնակիչս Ջուղայոյ հանին ի գեղեցկաշէն և ի բազմածախ յարկաց իւրեանց, մեծաւ հառաչանօք, վայ և եղուկ կարդալով, անդ էր տեսանել զողբս և զարտասուս նոցա, զի ի յանկարծ և յեղակարծ ժամու եղեն անտուն և անտեղ, անյարկ և անօթևան ուտար և պանդուխտ, նժդեհ և տնանկ։ Մանաւանդ, զի առաջի աչաց իւրեանց տեսին զբազում ծախիւք շինեալ և զարդարեալ ապարանս իւրեանց այրեցեալ և հրդեհեալ ըստ մարգարէին, թէ «քաղաք ձեր

հրձիգ, երկիր ձեր աւերակ, զաշխարհ ձեր առաջի ձեր օտարք կերիցեն»․ դարձեալ, թէ «շինեսցեն տունս և մի բնակեսցեն ի նմայ. տնկեսցեն այգիս և մի կերիցեն զպտուղ նորա և մի ուրախասցին գինով նորա»։ Այլև դասք քահանայից ողբալով ընթանային ի ղըրունս եկեղեցեաց և տային դ՝րաժարական ողջոյնն և արտ || ասուօք թանային բղսէմս ասելով՝ կացիր ի բարի 75բ և ի խաղաղութիւն մայր մեր սուրբ եկեղեցի, ծնօղ հոգևոր, զի որդիքն Ելամայ և Քեւուրայ, դայլքն գիշախանձ ցրուեցին և քայքայեցին զզաւակս քո։ Դժուարին է բաժանիլ մանկանց ի ծնօղաց, այլ բուռն է հարկն բռնաւորաց, այսպիսի գրկախառնեալ ողբային մինչ ի ձայնէ նոցա քարանձաւքն հնչէին և որոտային։ Եւ իբր բարառնաբար բերանացեալ մօրն լուսոյ, որպէս երբեմն հինն Սիոն տայր պատասխանի և ասէր, «գնացէք որդեակք իմ գնացէք, զի ես մնացի աւերակ»։[3] Եւ ապայ զինուորացն զամենեսեան ժողովեցին ի յափն Երասխայ և զի սակաւ էր նաւն ի յանցուցանելն, քեցեցին զամբոխն աշխարհաժողով և ի գետն մղեցին, և սկսաւ ջուրն լինել նոցա գերեզման և յուղարկաւոր։ Իսկ զինուորացն տեսեալ թէ ի ջուր մեռանին, իբր թէ մարդասիրութիւն, ցուցեալ առնել զգեղեցկատես տղայս քրիստոնէից յերիվարս իւրեանց, խաբելով զծնօղս, թէ զգետն անցուցանենք, գնային յո և գնային և ի յետս ոչ հայէին, զոր անսեալ ծնօղացն ուշաթափեալ և յերկիր անկեալ թաւալէին, գլուխն զգետնի հարկանէին, սաստիկ կսկծմամբ աղաղակէին և ոչ լինէր օգուտ, զի գետն ի միջի էր։ Եւ էր, որ ծնօղքն մեծաւ աշխատութեամբ ի գետն անցուցանէին զտղայն և ի վերայ այլոցն դարձեալ և միջագետ եղեալ, զինուորացն, որ յայնկոյս իբրև զգայլ ի վերայ յարձակեալ յափըշտակեալ ի ձիս իւրեանց փախչէին ոչ կրելով երկիւղ ի թաղաւորէն, զի չփոթումն մեծ էր ի մէջ նոցա, ի յահէ թշնամեաց, յորմէ փախչէին զառնացեալ ողով։ Ապայ յուսահատեալ հարց և մարց մանկանց ասէին լերանց, թէ «անկերուք ի վերայ մեր և բլրոց թէ ծածկեցէք զմեզ»։

Բարձեալ երանին սրովանին, որ ոչ յղացաւ և ստեանց, որ ոչ դիեցոյց և մինչ զանցանելն վճարեցին, զբէթէ ի հարիւրէն և ի հազարէն մինն հազիւ կիսահեղձ ապրեցաւ. զնոսա առաջի արկեալ փութանակի խաղաղուցին ի Շօշ || քաղաք, որ էր Ասպահան, յերկիրն Ելամայ, որք արտասուօք ոոոգանէին զճանապարհն և գնային։ Ծերքն հիւանդաքայլ ոտիւք տարակոյս տկարութեամբ ի հնութենէ ժամանակին, երիտասարդք փոխանակ ուրախութեան և ձայնիւ երգոյն, ՝ի մորնչիւն լալոյ հեծեծէին. Նորասէր առագաստի հարսն և փեսայն փոխանակ ցնծութեան և խրախութեան, դգուժիւ զգածեալ և ծանրացեալ ծաղրասէր և սրնգորասէր. ամրածածուկ, քօղաձիգ պարկեշտ կուսանքն և օրիորդքն հոլանի եղեալ զիւղաթոր մի ցցունս և վարսս յանդգնաբար մերկացեալ և խայաառակեալ, հովասնունդ և փափկասուն գեղամօթզած և ոզջախոհ կանանց առաջի տնօրինացն բացեալ և ծանակեալ տապով արևուն և արեգական սևացեալ և ի փոշոյ յուղոյն այլագունեալ. լեզու դիեցիկ մանկանց ի քիմս կցեալ և շրթունք 76ա

պատանեկաց ի քաղցոյ և ի ծարաւոյ երիթամածեալ։ Զարթէր, զարթէր Երեմիայ յաւրինեալ կազմեայ զերախան լալոյն, կըրկ- նեայ զվտզընջուց ողըն. Թէ «տղայքն հաց խնդրէին և ոչ ոք էր, որ ըրգէր նոցա».[4] և ի զիրկս մարց հանէին զոգիս. ընկեցեալ և ցրուեալ ի մէջ յանցս ճանապարհաց, Ոստի սիրտն ոխակալ և անձն նախանձալից յանընդել դիպուածն հայեցեալ արտասուս քամէր։ Իբրև այս այսպէս եղև, և ազգն Հայոց ցրուեցան ի մէջ Պարսից, ոմանք փախըստեայ լեալ յամուր տեղիս Թաքչէին, յորմէ ծանուցեալ անօրինաց հետամուտ եղեն նոցա խաբկանօք ի վայր բերեալ և անողորմ կոտորեցին, յորոց միջի նոցայ էր՝ Մանուէլ եպիսկոպոս Հայոց Թառայ[6] և Աստուածատուր ի Դե- զարդեան վանից և տէր Եզիայ ի Ցերևան քաղաքէ, այր բարի և առաքինի և այլ բազումք ընդ նոսա, զոր մեր ոչ գիտելով ի յանուանէ ոչ գրեցաք, բայց միայն տեառն աստուծոյ են գիտելի և ի գիրս նորա ամենեքեան գրեցան։

Դարձեալ պատմեմ ձեզ և այլ բան աղէտի և ողբերգութեան ի յամուր լերինք Դառնոյ և Այրիվանայ և Վանաստանայ բա- զում ժողովուրդ դաւղեալ և Թաքուցեալ էին, մինչ դեռ ի միում բարձրաբերձ այրի ամրացեալ ‖ յապահով և անհոգ նստէր մասն 76բ ինչ ի ժողովրզենէն. յանկարծ տեսին, որ անօրէն զօրքն Պար- սից սուսերամերկ ի մէջ նոցա Թափեցան. և սկսան զպարս- կական սուրն ի գործ ածել, իսկ քրիստոնէիցն ի յահէ սրոյն կամաւ զինքեանս ի վայր արկին յանհուն բարձրութենէն՝ արք և կանայք, ծերք և տղայք։ Ցայնժամ մի ոմն ի միջի նոցա երաժիշտ և քաջ փողահար աղաչեաց զզինուորքն դադարել ի կո- տորելոյն և ինքն եղեալ ի բերան ըզզուռնայն ողորմ ձայնիւ երգեաց զղամբանական և զգերեզմանական ողըն ի վերայ նոր մեռելոցն, որ ի յատակ քարանձաւին, ոմանք մեռեալք և ոմանք ի յելս հոգոյն ի յարեան ճապաղիս Թաւալեալք ջուր խնդրէին և ոչ ոք էր, որ արբուցանէր նոցա, զոր տեսեալ անօրինաց, ձեռն ի ծնօտի եղեալ աղիողորմ լացին, մանաւանդ, զի ձայն փողոյն զնոսա ի յարտասուս շարժեաց։ Եղև ի նոսա զղջումն մեծ յոյժ, սարջացան ի միտս իւրեանց և ասացին, Թէ զինչ բարութիւն գործենք, որ ի յայս խղճէս և յարենէս ազատէ զմեզ աստուած։ Իսկ քրիստոնեայք մարտիրոսական մահուամբ ի Քրիստոս կա- տարեցան և պսակակից եղեն սրբոց մարտիրոսաց։

Դարձեալ յորժամ Այրարատեան երկիրն անտիրացաւ, գունդ մի եղուզակ, զոր Ջալալի ասեն ի Տաճկաց կողմանէն, եկեալ բնակեցան անդ և բազում ոճիրս չարեաց գործեցին ի սակաւ մնացեալս. զիշերագնաց եղեալ զնէին և որոնէին, եթէ ուր ու- րեք գտանի մարդ ի վերայ հասեալ կոտորէին և զտղայս գերէին, զտունս և զեկեղեցիս աւար հարկանէին մինչև զոմն ի յերկիր ձգեցին. ապայ եղեն մարդակեր, կալեալ եպիսկոպոս մի ի Մօղ- նոյ վանից խորովեցին և կերան։

Դարձեալ զօրքն Տաճկաց, որ ի Ցայրարատ կամեցան գիշե- րագնաց լինել և յաւարի առնուլ զերկիրն Դեղամայ և կոտորել

զորգիս մելիք Շահնազարին, զոր իմացեալ ծերն Շահնազար
առաքեաց զորդին իւր Ջաւրիբէկն քրիստոնեայ զօրօք ի վերայ
նոցա և կոտորեաց զնոսա մեծաւ քաջութեամբ և տարեալ զգը-
լուխս նոցա եդ առաջի Պարսից արքային, յորմէ ուրախացաւ
արքայն, ե ետ նմա իշխանութիւն, տիրել ի վերայ գաւառին
իւրոյ։ Իսկ Տաճկաց կրկին զրոհ տուեալ գնացին ի վերայ Գե-
ղամայ, յորմէ ոչ զանգիտեալ քրիստոնէից ետուն պատերազմ
ընդ նոսա, բայց յաղթեցան ե փախեան, վասն ծովացեալ մեղաց
մերոց. և մտին տաճիկքն ի յերկիրն բազում անմեղաց արիւն
հեղին։[7] Եւ ո՞վ կարէ պատմել զչա[րի]ք, զոր նոքա գործեցին ի
յողն կանանց դնէին ծանր շալակ և յոչ տանել ջլատէին ե սպա-
նէին։[8] Այլև ոմանք ի Պարսից կողմանէն աւար առու դարձան
ի նոյն երկիրն Այր[ար]ատեան և ոչ զերծաւ ի նոցանէ զարանք
վանորէից, քանզի ի ձեռ. ածեալ զքրիստոնեայս չարչարէին և
նոքայ ցուցանէին որպէս զդարան Աղջոց վանից յայտնեցին
ու ‖ ստի հանին զաջն որբոյն Արիստակիսի հայրապետին և տա- 77ա
րան ի շահաստան՝ Թաւրէզ, յորմէ հանդիպեալ ոմն վաճառական
բաղիշեցի, այր մեծահաւատ, ետ գինս և թափեաց ի յանօրի-
նաց և եբեր ի քաղաքն իւր ի Բաղէշ, յորմէ տուաւ աշխարհին
մերոյ զանձ անկողոպտելի։ Եւ թէպէտ այս միայն արժանացան
քրիստոնեաք, այլ բազում այն, ինչ էր որ կրեաւ ի սրբութեանց
այս ամենայն եկն ի վերայ մեր վասն անուղղայ գործոց և գնա-
ցից առաջնորդաց ե քահանայից մերոց, որպէս ասաց աստուած
ի ձեռն Երեմիայի թէ. «սկիզբն աւերման ի տանէ իմմէ արա-
րից»։ Այս գործ առաջին ամին, զոր սակաւ մի համառօտ գրեցաք։

Այսուհետև եկեսցուք ի յերկրորդ ամ։ Դարձեալ ի գալ երկ-
րորդ ամին, զօրավարն Տաճկաց, իբրև ետես եթէ հալածեաց
զթագաւորն Պարսից. սրտապնդեալ կրկին զօրս ժողովեաց գնալ
յինքն կորզել զՊարսկաստան. իբրև եհաս ի սահմանս Ատրպա-
տականի ընդ առաջ եղև նմայ Արաս թագաւորն Պարսից անհուն
բանւակաւ։ Եւ հարին զմիմեանս զօրքն Պարսից և Տաճկաց ահա-
ւոր պատերազմաւ ի դաշտն Թաւրիզոյ։[9] Ուստի պարտեցաւ
Ջըզալօղլին և եղև փախըստական ի գիշերի, թողեալ զբանակն
հանդերձ կահիւք և կարասիւք, մազապուրծ ամօթալի յետս դար-
ձաւ, լքեալ և թողեալ ի խնամոցն աստուծոյ։ Փոխանակ զի յիւ-
րեանց երկիրն ոչ խընայեցին, այլ քանդեցին և աւերեցին ի
գնալն և ի դառնալն։ Վայ այն աշխարհին, որ նոցա ոտն կո-
խեաց, զի զտառապեալ քրիստոնեայս յորս այս արկանէն և
գերանս ծամէին, թէ մեզ ինչք ե ապրանք ցուցէք և այնպէս
դառն մահուամբ սպանանէին. և զայլ ազգի ազգի դժընդակ
տանջանս զոր նոքայ ընդ քրիստոնեայս անցուցին, ո՞վ կարէ
պատմել կամ ընդ գրով արկանել, զի ըստ հրամանին Յիսուսի,
թէ «թագաւորութիւն բաժանեալ յանձն աւերի»։[10] ‖ Այնպէս եղև 77բ
թագաւորութեան Տաճկաց, որք անապատ արարին զաշխարհս
ամենայն։ Եւ եղև սով սաստիկ ընդ ամենայն տեղիս, մինչ զի
զմեռեալս ի գերեզմանաց հանեալ ուտէին, ծնօղք զծնունդս իւր-

եանց ուտէին, ըստ մարգարէին, թէ «Ձեռք կանանց ողորմածաց եփեցին զմանկունս իւրեանց և կերան»։[11] Զշուն և զկատու և զամենայն պիղծ կենդանի ուտէին յաւուրս պահոց, մոլութիւն և կաապղութիւն որովայնին ետ մոռանալ զըրանականութիւն, և եղեն որպէս զգազան ի զարան մտեալ զմիմեանս ուտային. յորժամ մայրն ի տանէն ելանէր ընդանիքն զտղայն զենէին, եկեալ մայրն զեփեալ միսն առաջի դնէին և նա ուտէր յանգէտս և ապա ելեալ զտղայն որոնէր և խնդրէր. ի կարի տագնապէն ուտէին ընդանիք ոչ ապաքէն այն էր, որ զմիս կերար։ Զփտեալ ոսկր գտեալ ի փողոցի շփէին ընդ ափ և ուտէին և ապայ մեռանէին։ Սուգ առ երկին և ողբայ երկիր, ճիչ բարձէք լերինք և բլուրք հանդերձ ղտզանօք և անասնօք և ամենայն թռչնաւք, զի ոչ է լեալ այսպիսի սով, զոր մեք տեսաք. քանզի լիտր ալիւր Գ (3) ղրուշ է. ի Ցարղրում քաղաք զմարդոյ միս և զիւղ վաճառէին, մինչև իմացաւ իշխան քաղաքին խեղդեաց զարսն, որ զայս առնէին, բայց ոչ կարաց խափանել։ Եւ ապայ յետ այնորիկ ցրուեցաւ ազգս Հայոց յերեսաց սովուն ի Պարսկաստան, ի Ցասորեստան, ի Գուրջըստան մինչև հասին ի Ճորճէն, ի Ցափխազ, ի Կաֆայ։ Արհամարհեաց հայր զորդի, մայր զդուստր, եղբայր զեղբայր, թողին այրք զկանայս, կանայք մոռացան զազէտ ծնընդոց իւրեանց։ Ոչ թէ մասնաւոր մի երկիր կամ երկու, այլ ընդհանրական, սկսեալ ի դրանէն Հոնաց և Ալանաց և ի լեռնէն Կովկասու մինչև ի Պոնտոս և յԵփեսոս, և ի Կապադովկիայ և մինչև ի Դամասկոս և ի Սիս և ի Միջագետս, բոլոր Հայաստան ամենայն ցիր և ցան եղեն։[12] Ոմանք բըքահեղձ, ոմանք գետատար, ոմանք սովամահ, ոմանք գազանակեր, ոմանք սրով փողոտեալ, օրինօք ոչ խնկեալ և պատանեալ քահանայիւք և սարկաւագօք ոչ հազորդեալ և ամփոփ || եալ, այլ զթաղումն իշոյ 78ա առին, իբրև զգէշ գազանաց ի փողոցի անկեալ ըստ մարգարէին.[13] «Եւ տեսցեն զոսկերս արանցն յանցուցելոցն առ իս»։ Ասորեստան և Պարսկաստան և երկիրն այլ ազգեաց եղեն հայոց գերեզմանք։ Ո՞ տայր գլխոյ իմոյ ջուր և աչաց իմոց աղբերս արտասուաց, զի լայի և սգայի զբեկումն ժողովրդեան իմոյ, որք ի մեղս մեռան և որք գերի վարեցան և ի հաւատոցն ուրացան. և եղեն յարկ բնակութեան Նոցա աւերակ, ըստ մարգարէին թէ «եղիցի բնակութիւն Նոցա աւերակ»[14] և այլն, որպէս ի ժամանակս Երեմիայ մարգարէին երկիրն Հրէաստանի խոպանացաւ։ Եւ ի վերայ այսր ամենայնի ոչ է շիջեալ բարկութիւն աստուծոյ, այլ տակաւին ձեռն տեառն բարձրացեալ է, ի հարկանել զմեզ, վասն բազում յանցանաց մերոց, քանզի որպէս Երեմիայի ասաց ասաւած, թէ «չորիւք յեղանակօք տանջեցից զձեզ, այսինքն՝ սրով, սովով, մահուամբ և գազանաւք». այսպէս մեզ է պատահեալ, զի այն որ ի սուր՝ ի սուր, այն որ ի մահ՝ ի մահ, այն որ ի սով՝ ի սով, այն որ ի գերութիւն՝ ի գերութիւն[15] և զայլ մնացեալ սինլիքորք, գազանք կերան, զի ընդ ամենայն տեղիս մարդախանձ գայլ է ի դուրս անկեր, անասնոց ոչ նենգէայլ ի մարդիք սո-

վորեալ խողխողէ, ուստի ոչ դիտեմք զթիւ մանկանց և տղայոց և կատարելոց արանց և կանանց, որ գազանակուր եղեն։ Այս գործ երկրորդ ամին։

Դարձեալ ի գալ երրորդ ամին իբրև ետես թագաւորն Պարսից թէ ջախջախեալ եղէգնէ թագաւորութիւն Տաճկաց, զօրք ժողովեաց պաշարեաց զԳանջայ և էառ զնայ։ Եւ կոտորեաց զզօրս սուլտանին և անդի չուեալ եմուտ ի Վրաց տուն, էառ զՓայտակարան քաղաք, որ է Տպղիս և զԴումանիս և զԼօռի և ոչ կոտորեաց զնոսա, զի կամաւ հնազանդեցան. և յայժ ուրախացաւ թագաւորն Վրաց Գօրգի,[16] զի կարի նեղութիւն էր ի ձեռս Տաճկաց, քանզի զծերացեալ հայրն նորա ըմբռնեցին և տարան ի Կոստանդինուպօլիս և այլ ոչ ել || անտի։ Արին և յաղթող շահ 78բ Աբասն քինախնդիր եղև աներոյն իւրոյ, զի էր փեսայ Սիմոնի արքային Վրաց։[17]

Դարձեալ ի գալ չորրորդ ամին անցաւ զԿուր գետն թագաւորն Պարսից անհուն զօրօք ե եմուտ ի յերկիրն Ալանաց և Գուգարաց և Ուտէացոց և խսարեաց զամուր գղեակն Շամախոյ և էառ զնայ և կոտորեաց ըզզօրս, որ անդ էին թվով մետասան հազար։ Զմուզրիսն էարկ առաջի մարդակեր շանց և լափեցին իւրաքանչիւր զիրք ի դիրկս իւր։[18] Զիշխան բերդին ետ ի ձեռս մարդակեր արանց, զոր չիկիան ձայնեն և ցտեալ ատամօք կրծեցին զոսկերս նորա. վասն զի զբազումս սպանեալ էր ի զօրացն արքունի, զորոց ունէր զխէթն ի մտի և յայժ զայրացեալ էր արքայն։ Եւ տիրեաց բոլոր աշխարհին մինչև ի Դարբանդ քաղաքն և ի ծովն Կասրից, զոր ի վաղուց հետէ հանեալ էր ի նոցանէ զաւրավարն Տաճկաց Լալա փաշայ անուն, հրամանաւ սուլտան Մուրատին, զոր վերոյ գրեցաք։ Բայց ի յայս խռանս և աղմկիս բազում քրիստոնեայք մեռան ի յաշխարհին այնմիկ սրովն անօրինաց, որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի։[19]

Դարձեալ ի հազար յիսուներեւթ (1608) թվականին Հայոց արբանեակն սատանաի Ամիրգունա խան առաքեաց զաւրս դաղտագողի ի վերայ ծովու բոլորիս, և գերեցոյց զԲզնունիս[20] և զբազումս կոտորեաց զքահանայս և զժողովուրդս. աւաղ թէ քանի գետք անմեղ արեան խաղացոյց, կամ քանի հայր անորդի արար և մայր անզաւակ, որքան մեծատուն մուրացիք դրանէ ի դրունս շրջին, մանաւանդ ի մէջ այլազգաց, այն որ ունէր ապարան գեղեցկաշէն և բարձրաբերց ցանկարնակիլ, յախուռս անասնոց, այն, որ, ունէր սեղան || հացալից և էր ապրնջական հիւ- 79ա րոց և աւաարաց, այժմ զեգերեալ սպասէ այլոց սեղանօ փշրանաց, այն, որ բաղում մերկոց ծածկոյթ էր և զգեստ, այժմ եղեալ մերկ արևակէզ և ցրտասառոյց։ Այսմ ամենայնի պատճառ եղև մեղքն մեր և թագաւորն Պարսից և ելուզակքն Տաճկաց, այլև անաւրէն իշխանն Շարաֆ, որ է ազգաւ մար, տէրն Ծըգիրայու, որ սրով և հրով և աւարառութեամբ աւերեաց զԳըրդստան և զքրիստոնեայս արար ընչաթափ և սովալլուկ։ Արդ՝ ի յայս բազմավրդով սասանութեան, դառն և դժար և անբարի ժամանակիս եղև գրաւ աստուածաշունչս հին և նոր կտակարանիս։

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Եսայ. Ա. 7։

2. Բ. Օրենք, ԻԸ. 30։

3. Թուղթ Բարուքայ, Դ. 19։

4. Ողբք Երեմիայ, Դ. 4։

5. Պետք է լինի «Հաւուց Թառայ», տես և հմմտ. Ա. Դավրիժեցի, էջ 47, 298, 405։

6. Հմմտ. Ա. Դավրիժեցի, էջ 88—92։

7. Հմմտ. Ա. Դավրիժեցի, էջ 83—84։

8. «Դարձեալ զօրքն տաճկաց, որ ի յԱյրարատ կամեցան գիշերագնաց լինել...» հատվածից մինչև «չլատէին և սպանէին» հատվածը բնագրում գրված է 76ր և 77ա էջերի լուսանցքներում։

9. Հմմտ. «Ժամանակագրութիւն Գրիգոր վ-ի Կամախեցւոյ», էջ 45, «Ա. Վ. Դաւրիժեցւոյ Պատմութիւն», էջ 75։ Դավրիժեցու համաձայն երկու բանակների ճակատամարտը տեղի է ունեցել Թավրիզի շրջակայքում, Սոֆիան գյուղի դաշտերում (էջ 75), 1605 թ. հոկտեմբերի 25-ին (էջ 78)։ Սոֆիան գյուղը գտնվում է Ակ-չայ գետի ափին, վերջինս թափվում է Արաքսի մեջ։

10. Մատ. ԺԲ, 25։

11. Ողբք Երեմիայ, Դ. 10։

12. Հմմտ. «Ա. վ. Դաւրիժեցւոյ Պատմութիւն», էջ 88։

13. Հմմտ. Երեմ. ԻԲ. 19։

14. Գործք Առաքելոց, Ա. 20։

15. Հմմտ. Երեմ. ԺԵ, 2—3։

16. Գեորգի X, իշխել է 1600—1605 թ. թ.։

17. Հմմտ. «Ա. վ. Դաւրիժեցւոյ Պատմութիւն», էջ 618։ Պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկ «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», հ. Բ, էջ 139։

18. «Իւրաքանչիւր գիրք ի կիրս իւր» հատվածը գրված է 78ր էջի ձախ լուսանցքում։

19. Այստեղ վերջանում է բնագիրը, սակայն շարունակությունը կազմում է մեկ ուրիշի կողմից գրված հիշատակարան։

20. Հմմտ. «Զաքարեայ Սարկաւագի պատմագրութիւն», հ. Ա, էջ 45։

## XIII

## ՀԱԿՈԲ ՀԻՍՈՒՍԻԻՆ ՎԵՐԱԳՐՎԱԾ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XV, XVII դդ.)

Առաջարկվող ժամանակագրությունը և Մատթեոս Հովհաննիսեցու հիշատակարանը, որոնք գտնվում են № 7841 ձեռագրում, հրատարակել է Աշ. Հովհաննիսյանը «Արարատ» ամսագրում (1914 թ., էջ 1108—1114, 1915 թ., էջ 61—69), «Նոր նյութեր հայ ունիթորական պատմագրությունից» խորագրով։

Ժամանակագրությունը սկսվում է 1420 թվականին Սամսոն քաղաքում տեղի ունեցած հրդեհի և վերջանում է 1636 թվականին մի շարք եղելությունների հիշատակությամբ։ Հրատարակիչը ժամանակագրությունը վերագրել է Նար Ազիզի որդի, Հիսուսյան միաբանության անդամ Հակոբին, վերջինս իրեն այդպես էլ կոչվում է, «Ես տէր [Յ]ակոբ Յիսուսի, որդի Նար Ազիզի, ազգաւ Դարբնեցի ի գեղէն Կէծկո...»։ Սակայն ժամանակագրության քննությունը մեզ բերեց այն եզրակացության, որ այն տարբեր՝ իրենց ժամանակի դեպքերը միմյանցից անկախ շարադրած հեղինակների տեղեկություններ են, որ հետագայում միացվել են և կազմել ներկա ժամանակագրությունը։ Սա բաղկացած է հետևյալ, միմյանցից անկախ, հատվածներից։

Ա. Հատվածը ընդգրկում է 1420—1545 թվականի դեպքերի հիշատակությունը.

Բ. հատվածը՝ 1467—1501 թվականների.

Գ. հատվածը՝ 1575—1636 թվականների։

Նար Ազիզի որդի Հակոբ Հիսուսյանի գրչին է պատկանում միայն երրորդ հատվածը (1575—1636 թ. թ.)։ Ի՞նչ փաստեր են բերում այս համոզման։

Առաջին՝ ժամանակագրության մեր բաժանման երեք հատվածումն էլ հանդիպում ենք այնպիսի հիշատակությունների կամ ակնարկների, որոնք պարզ ցույց են տալիս, որ հեղինակները ժամանակակից են հիշատակված դեպքերին և որովհետև ողջ ժամանակագրությունն ընդգրկում է 216 տարվա՝ 1420—1636 թվականների անցքերը, հետևապես միևնույն հեղինակը չէր կարող իր հիշատակած բոլոր դեպքերին ժամանակակից լինել։ Այսպես, ժամանակագրության Ա հատվածում (1420—1545 թ. թ.), երբեմն ամսաթվերը նշելու մանրամասնությամբ, հիշված են անգամ կարկուտ տեղալու, խիստ ցրտեր անելու և այլ նման փաստեր։ Միայն ժամանակակից մարդը կարող էր նման մանրուքներ գրի առնել։ Բ հատվածի (1467—1501 թ. թ.) հեղինակը գրում է, որ Կարա-Կոյունլու փադիշահ Ջհանշահի սպանությունից հետո, որդին՝ «Հասան Ալին Մակուայ քերդումն քանդի էր դուռ էրեկ և թագաւորեաց **մեր աշխարհիս** մինչև Ը (8) ամիս, յետ էնդոր Հասան փատիշահն էրէկ Հասան Ալին սպանէց, **զմեր աշխարհս** էառ և թագաւորեաց [ԹՆ]ԿԸ (=1468)»։ Ինչպես դժվար չէ նկատել ընդգծված բառերից, վերոհիշյալ դեպքերին էլ ժամանակա-

ժից է այս հեղինակը։ Իսկ Գ հատվածում հեղինակը, Հիսուսյան միաբան Հակոբը դեպքեր է գրանցում գերազանցապես իր կյանքից։ Այսպիսով, վերոհիշյալ երեք հատվածներում էլ հանդիպում ենք ժամանակակից անձնավորությունների վկայությունների, որոնք ժամանակով իրարից բավական հեռու են։

Երկրորդ՝ դեռ ընկ. Աշ. Հովհաննիսյանն իր հոդվածի ներածականում նկատել էր, որ «Այստեղ նա (հեղինակը— Վ. Հ.) ժամանակագրական կարգով ի մի է հավաքում մի շարք կցկտուր տեղեկություններ...»։ Այդ ճիշտ է, սակայն ժամանակագրությունն ամբողջապես վերցված ժամանակագրական կարգով չի կազմված. այսպես, ժամանակագրությունը սկսվելով 1420 թ. Սամսուն քաղաքի հրդեհի հիշատակությամբ հասնում է մինչև 1545 թ., որից հետո դեպքերի հիշատակությունը փոխանակ շարունակվելու 1545 թվականից այս կողմ, ետ է գնում և նորից սկսվում 1467 թվականին կատարված դեպքի հիշատակությամբ, ապա դեպքերի ժամանակագրական կարգը հասցնում մինչև 1501 թվականը։ Գ. հատվածը սկսվում է 74 տարի ընդմիջումից հետո՝ շահ Թահմազի մահվան հիշատակությամբ և հասնում մինչև 1636 թվականը։ Այստեղ դժվար չէ նկատել, որ դեպքերի ժամանակագրական կարգը պահվել է մեր նշած երեք տարբեր հատվածներում, բայց ոչ ամբողջ ժամանակագրության մեջ։

Երրորդ՝ ժամանակագրության Ա հատվածն, ինչպես ասացինք, ընդգրկում է 1420—1545 թվերի, իսկ Բ-ն 1457—1501 թվերի ժամանակամիջոցը, հետևապես Ա. հատվածը ժամանակագրական տեսակետից ընդգրկում է Բ հատվածն ամբողջովին, ուրեմն հասկանալի է, որ միևնույն հեղինակը չէր կարող Ա հատվածի ժամանակամիջոցից առանձնացնել 1467—1501 թվերի դեպքերը (Բ հատված) և առանձին ժամանակագրություն կազմեր, որպեսզի հետո էլ այդ երկուսը մեխանիկորեն միացներ միմյանց, չնկատելով, որ ժամանակագրության տարբեր հատվածներում, իր իսկ կողմից, միևնույն տարեթվի տակ, հիշատակված են տարբեր դեպքեր ու իրողություններ։ Դեմ առ դեմ դնում ենք նույն տարեթվին վերաբերող տարբեր երկու հիշատակարաններ ժամանակագրության Ա և Բ հատվածներից

Ա հատված

1. «ՌԴԺԿԸ (1468) թվին տալբիլ Ժէ զատիկ գիշերն ցուրտ արար զայգիսն տարաւ զմատըն և զճառն։

2. «ՌԴԺ|ՋԱ (1481) թվին զարձեալ ցուրտ արար զայգիսն տարաւ»։

Բ հատված

1. «... Հասան փատիշահն էրէկ Հասան Ալին սպանէց, զմեր աշխարհս էառ և թագաւորեաց (ՌԴԺ|ԿԸ (1468) թվին։

2. «ՌԴԺ|ՋԱ (1481) թվին Յաղուպ բէկն կըռուեցաւ զՍօլտանն սպանէց և ինքն թագաւորէց»։

Եթե այս հատվածները միևնույն հեղինակին պատկանեին, բնական է, որ նա միևնույն տարեթվի տակ կնշեր հիշատակարժան իրեն հայտնի բոլոր դեպքերը և նոր միայն կանցներ հաշորդ տարիների անցուդարձի շարադրությանը։

Չորրորդ՝ ժամանակագրության երրորդ՝ Հակոբ Հիսուսյանի գրչին պատկանող հատվածը, որպես ինքնուրույն ժամանակագրություն, պահպանվել է № 2037 ժողովածուի 78-րդ բ էջում։[1] Դժբախտաբար ժամանակագրությունից պահպանվել է միայն մեկ էջ, որը վերջանում է. «Այս ամի (1636 թ.) Լէհաց

[1] Պետ. Մատենադարանի № 2637 ժողովածուն ընդօրինակել է Հովասափ Ապարանեցին 1421 թ., Կաֆայում (էջ 187ա)։ Ժողովածուի դատարկ թերթերում (երկուսում) Հակոբ Հիսուսին արձանագրել է իր ժամանակի (1575—1636 թթ.) կարևոր դեպքերը։

Թագաւորն գէսպան առաքեաց մօտ շահ Սաֆուին։ Շահ Սաֆուին պարոնտէր Օգոստինոս արքեպիսկոպոսն» հատվածով, հենց այստեղ էլ վերջանում է 78-րդ էջը (գրված է նույնիսկ ներքևի լուսանցքը), հաջորդ էջը, որի վրա պետք է լիներ ժամանակագրության շարունակությունը, ընկել է։ Կորուստի փաստը հաստատվում է նրանով, որ նախ՝ № 2037 ժողովածուի համապատասխան մասում նկատելի է կորած թերթի հետքը։ Երկրորդ՝ ժողովածուի մամուլները գերազանցապես բաղկացած են 12 թերթից (միայն երկուսն ունեն 14-ական թերթեր), սակայն 7-րդ մամուլը, որի 10-րդ թերթում էլ գտնվել է մեզ հետաքրքրող ժամանակագրության մնացած մասը, այժմ բաղկացած է ընդամենը 11 թերթից (10-րդ թերթն ընկած է)։ Այսպիսով, տվյալ ժամանակագրությունը Հիսուսյան միաբանության անդամ Հակոբի ինքնագիր օրինակն է, ուստի և հաստատվում է մեր ենթադրությունն այն մասին, որ Հակոբը եղել է ոչ թե ամբողջ ժամանակագրության, այլ միայն նրա Գ հատվածի հեղինակը։ Բայց դուցե Հակոբն այդ երեք հատվածների միակցողն է եղել։ Սակայն փաստերը ժխտում են անգամ նրան այդպիսի դեր վերագրելը։ Այսպես, եթե Հակոբի ժամանակագրության ինքնագիր օրինակում (№ 2037), 1636 թվականի մի դեպքի կապակցությամբ հեղինակը գործ է ածել դեկտեմբեր ամսանունը լատինական արտասանությամբ «դեցեմբեր» ձևով, ապա № 7841 ձեռագրի համապատասխան հատվածում ամսանունը բերված է հայկական արտասանությամբ՝ «դեկտեմբեր»։

Բացի այդ, Հակոբի ինքնագիր օրինակում, 1576—1585 թվականների կապակցությամբ, հեղինակը գրում է. «... ապրիլն Ը (8) կարմիր կիրակին ցուրտ արար, այգին, ծառն տու[ն]կն զամէն զամէն տարաւ։ Ձենք գիտիլ թէ մեր ճարս ինչ կնէր, սերմն գձեցինք ցուրտ ձմեռն կտրէց, խիստ դժվար ժամանակ էր։ Մեք տեսանք՝ մորեխ արեկ, հասոյն զամէն կերաւ» (№ 2037, էջ 78բ)։

Այս ընդարձակ հատվածը № 7841 ձեռագրի ժամանակագրության մեջ կրճատվել է և պահվել միայն սկզբի մասը. «... ապրիլի Ը (8) կարմիր կիրակի ցուրտ արար, այգին ծառն, տունկն զամէն տարաւ». (էջ 195—196)։

Հավանալի է, որ եթե ժամանակագրության վերոհիշյալ երեք հատվածների միմյանց կցողը կամ խմբագրողը Հակոբը լիներ, ապա նա նույնությամբ կպահպաներ ինչպես դեկտեմբեր ամսանվան իր լատինական ուղղագրությունը, այնպես էլ չէր համառոտի 1376—1585 թվականների վերաբերյալ իր հաղորդած տեղեկությունները։ Ժամանակագրական այս երեք անկախ հատվածների միացնողն ու խմբագրողը, ամենայն հավանականությամբ եղել է № 7841 ձեռագրի գրիչ Բաղդասարը։ Նա անկասկած ծանոթ է եղել № 2037 ձեռագրին և իր ընդօրինակած ձեռագրի նյութերի մեծագույն մասը հավանորեն վերցրել է հենց նույն ձեռագրից։[1] Նա ոչ միայն օտագործել է Հակոբի կազմած ժամանակագրության ինքնագիր օրինակը, այլև ժամանակագրության Ա հատվածում գրել է մի տեղեկություն՝ 1420/21 թվականին Սամսուն քաղաքում տեղի ունեցած հրդեհի և տաճկա-հունգարական պատերազմի մասին, քաղելով այն № 2037 ձեռագրի գրիչ Հովասափ Ապարանեցու հիշատակարանից։ Հ. Ապարանցին իր հիշատակարանում ի միջի այլոց գրել է.

«Ի սոյն ամի (1421) ի Սամխոն քաղաք կրա[կ անկաւ] և զամենեսան առ հասարակ կիզեաց ||| և զամենայն հասակ։ Ի սոյն ամի ո[ւնկարաց] ||| զթուրքն կոտորեաց, և կոտոր[եաց] ||| իբրև ՀՌ (70 000) մարդ» (էջ 187ա)։

[1] Բացառությամբ երկու փոքրիկ գրությունից։

ժամանակագրության Ա հատվածի համապատասխան մասում կարդում ենք. «Յամի տեառն ՌՆԻ (1420) ի Սամսոն քաղաք, որ է մերձ ծովին Պոնգոսի, կրակ անկաւ և զքաղաքն առ հասարակ այրեաց ծայրէ ի ծայր։ Դարձեալ ի նոյն ամին Ոմկարաց կայսրն կոտ[ո]րեաց զԹուրքն, որ է Քրիշչին և կոտորեաց ի զօրաց Թուրքին ՀՌ (70 000) մարդ»։

Եթե մի կողմ թողնենք տարեթվի մեկ տարվա տարբերությունը և որոշ ծանուցումները (ինչպես օրինակ «որ է մերձ ծովին Պոնդոսի» և այլն), որոնք ամենայն հավանականությամբ գրչի ուղղումները կամ լրացումները կարող են լինել, ապա վերջինիս աղբյուրը Հ. Ապարանեցու հիշատակարանն է անշուշտ։

Այսպիսով Հիստայան միաբանության անդամ, Եար Ազիզի որդի՝ Հակոբի անունով 1914 թ. «Արարատ» ամսագրում հրապարակված ժամանակագրությունը քաղկացած է եղել անկախ հատվածներից, իսկ Հակոբը ժամանակագրության միայն Գ հատվածի հեղինակն է։ Իսկ ամբողջ ժամանակագրության կազմողն ու խմբագրողը եղել է, ամենայն հավանականությամբ № 7841 ձեռագրի գրիչ Բաղդասարը, որը ժամանակագրությունը կազմել է 1670-ական թվերին[1] ձեռքի տակ ունենալով ինչպես ժամանակագրության Հակոբի ինքնագիր հատվածը և Հովասափ Ապարանեցու № 2037 ձեռագրի հիշատակարանը, այնպես էլ ուրիշ աղբյուրներ։

Եթե բացառենք ժամանակագրության Ա հատվածում առաջին երկու հիշատակությունը, ապա մնացած մասը կարելի է ասել, պատմական առանձին նշանակություն չունի։ Բավական հետաքրքիր տեղեկություններ կան Բ հատվածում։ Այդ տեղեկությունները վերաբերում են Ակ-Կոյունլու Ուզուն Հասանի և հաջորդների պատերազմներին և ապստամբություններին։ Պատմական այդ շրջանի վերաբերյալ մեր աղբյուրները շատ քիչ տեղեկություններ են տալիս։

Համաձայն Լեն-Պուլի, Ջհանշահի սպանությունից հետո, հաջորդում է ՀասանԱլին 1467—1469 թ. թ.։[2] Իսկ Ալիշանը Հասան Ալու շրջանը որոշում է 1467—68 թ. թ. ժամանակաշրջանում[3] Ժամանակագրությունը հետաքրքիր տեղեկություն է տալիս այդ առթիվ. «Հասան Ալին Մակուայ բերդումն բանդի էր, դուս էրեկ (հոր՝ Ջահան շահի սպանությունից հետո— Վ. Հ.) և թագաւորեաց մեր աշխարհիս մինչև Ը (8) ամիս; յետ էնդոր Հասան փատիշահն էրէկ Հասան Ալին սպանեց, զմեր աշխարհս էառ և թագաւորեաց (ՌԺԷ) ԿԸ. (1468) թվին»։[4]

[1] № 7841 ձեռագրի գրիչը Բաղդասարն է (էջ 88ա) և եթե ինչպես ճիշտ նկատել է ընկ. Ա. Հովհաննիսյանը, «ենթադրենք, որ ձեռագրիս «գծողը» և p 55 V. հիշվող «Փրա Բաղդասար... դեղջէն Կեծկոյ, նոր ընծայ,» որ այժմէ ի միասին Գրիգոր վարդապետին» նույն անձնավորություններն են, ապա կարող ենք եզրակացնել, որ ձեռագիրը գրվել է «ի վանս Կեծկոյ» 1670-ական թվականներին» («Արարատ» 1914 թ., էջ 1160)։ Եթե նույնիսկ կասկածանքի ենթարկենք վերոհիշյալ ենթադրությունը, համենայն դեպս փաստ է, որ Մատթեոս Հովհաննիսյանց հիշատակարանում արձանագրված են 1669—1673 թթ. տեղի ունեցած դեպքերը, նշանակում է՝ գրիչը՝ Բաղդասարը № 7841 ձեռագիրը ընդօրինակել է 1673 թ. հետո, եթե նկատի ունենանք, որ ժամանակագրությունը գտնվում է ձեռագրի վերջին երկու (316բ—318բ) էջերի վրա, ապա կարելի է ենթադրել, որ ձեռագրի ընդօրինակելուց հետո գրիչը կազմել է առաջարկվող ժամանակագրությունը։

[2] Лэн-Пуль „Мус. династии“ էջ 214։

[3] Ալիշան, «Այրարատ», էջ 328։

[4] Հմմտ. Ներքև հրատարակություն, էջ 143, 151, ծանոթ. 32, 33։

Ինչպես հիմա է պարզ դառնում, Հասան Ալին իշխել է մոտավորապես 8 ամիս, և եթե նկատի ունենանք IX ժամանակագրության վկայությունը, որ Ջհանշահը սպանվել է Ճապաղջրի ճակատամարտում ձմռանը,[1] կնշանակի Ջհանշահից հետո Հասան Ալին իշխել է 1467 թ. ձմեռվա սկզբից մինչև 1468 թվականի հուլիս ամիսը։ Հետևապես Հասան Ալու իշխանության Լեն-Պուլի նշած սահմանները ճիշտ չեն։ Որ ժամանակագրության վերոհիշյալ վկայությունը ճիշտ է, հաստատվում են այլ սկզբնաղբյուրների տեղեկություններով։[2] Այսպես՝ 1471 թվին ընդօրինակած Ճառընտիրի հիշատակարանում կարդում ենք. «Արդ գրեցաւ ճառս ի թագաւորութեան Հասան Պար[ո]նին, ի շրջագայութեան տօմարիս ՋԻ (1471)։ Արդ՝ Հասան բէկս այս, երեք տարի է, որ թագաւորեաց ի Պարս և յարևելս, և ի Միջագետս՝ ի հարաւ, և հիւսիս խաղաղութեամբ կամաւն աստուծոյ»։[3]

Հօգուտ վերոհիշյալ հիշատակարանի վկայության, խոսում է նաև 1468 թ. ընդօրինակած Հայսմավուրքի մի հիշատակարանը, այնտեղ կարդում ենք.

«... Գրեցաւ սուրբ մատեանս ի ձեռն Մարգարէ կրօնաւորի ի գաւառիս Մենծկերտու, ի յանապատն որ կոչի Սիրունքարի, ընդ հովանեաւ ս. Յակոբայ, ի թվ. Հայոց ՋԺԷ (=1468 թ.) յաշխարհակալութեան Հասան բէկին... Եւ վասն ծովացեալ մեղաց մերոց ելաւ Թավրիզու խանն եւ եկաւ յաշխարհս մեր...»։[4]

Ինչպես դժվար չէ նկատել, վերոհիշյալ հիշատակարաններն Ակ-Կոյունլու Ուզուն Հասանի թագավորության սկզբնական եզրը որոշում են 1468 թվականից, հետևապես Կարա-Կոյունլու Ջհանշահի որդի Հասան Ալու իշխանության վերջին եզրը ընկնում է 1468 թվականի մեջ։

Հետաքրքիր և բավական մանրամասն վկայություններ կան Ակ-Կոյունլու Յաղուպ փադիշահի սպանությունից հետո տեղի ունեցած փահակալական կռիվների և զանազան ապստամբությունների մասին։ Բ հատվածում մի շարք հայտնի դեպքերի՝ Հասան բեկի 1476 թվականի Վրաստան արշավելու և գերեվարելու,[5] ինչպես նաև 1500—1501 թվականներին շահ Իսմայիլի և Ակ-Կոյունլու վերջին ներկայացուցիչ Նուր Ալվանդի միջև տեղի ունեցած կռիվների մասին,[6] նույնպես գտնում ենք ստույգ վկայություններ։

Իսկ ժամանակագրության Հակոբ Հիսուսիի հատվածն ընդգրկում է հեղինակի ժամանակակից անցուդարձի հիշատակությունները, որոնց երբեմն ինքը, հեղինակը մասնակցել է, ասենք 1631 թվականին որպես նվիրակ Հնդկաստան գնալը և այլն։ Սակայն կան առանձին վկայություններ, որոնք երբեմն նշված են իրականից մեկ տարվա տարբերությամբ, օրինակ Հասան բեկի սպանությունը 1478 թվականի փոխարեն նշված է 1477 թ.։ Շահ Թահմազի սպանությունը 1576 թ. փոխարեն՝ 1575 թ. կամ տաճիկների կողմից 1635 թ. Երևանի գրավումը հիշված է 1636 թվին։

Տողատակ տրված է Հակոբ Հիսուսիի ինքնագիր օրինակի տարընթերցվածքները։

---

1 Տես ներկա հրատարակության 143 էջում.

2 Հմմտ. Ալիշանի «Այրարատ», էջ 328։

3 № 6273, էջ 185բ։

4 Գ. Սրուանձտեան, «Թորոս աղբար», մասն Բ, էջ 377։

5 Հմմտ. 1476 թ. ընդօրինակած Հայսմաւուրքի հիշատակարանի հետ։ (№ 4515, էջ 216—217)։

6 Հմմտ. Բաբսեղ Արճիշեցու ժամանակագրության հետ (տես՝ ներկա հրատարակության 126—129 էջերը)։

## XIII

*Ցամի տեառն ՌՆԻ (1420) ի Սամիսոն քաղաք, որ է մերձ ծովին* 316բ *Պոնդոսի, կրակ անկաւ և զքաղաքն առ հասարակ այրեաց ծայրէ ի ծայր։*[1]

*Դարձեալ ի նոյն ամին Ունկարաց կայսրն կոտ[ո]րեաց զԹուրքն, որ է Մրիշչին, և կոտորեաց ի զօրաց Թուրքին ՀՌ (70000) մարդ։*[2]

*ՌԴԺԿԸ (1468) Թվին, ապրիլ ԺԷ (17), զատիկ գիշերն ցուրտ արար զայգիսն տարաւ զմատն և զծառն։*

*[ՌԴԺ]ՀԹ (1479) Թվին կարկուտ եկեկ մայիս ամսոյ ի ԻԴ (24) կայգի և զցորեան դամէնն ընաջինջ արար։*

*[ՌԴԺ]ՂԱ (1481) Թվին դարձեալ ցուրտ արար, զայգիսն տարաւ։*

*ՌՇԽԵ (1545) Թվին Թոթուռն երեկ, մորեխն երեկ, ղուշն վերայ էր, մահն երեկ պատեաց, ժանկ երեկ զախլն փչացոյց։*

*Ցամի տեառն ՌԴԺԿԷ (1467) Թվին Ջանհանշայ իմիրզէն, գնաց ի Հասան բէկին յաշխարհն և սպանաւ ի ձեռն Հասան բէ-կին։*[3] *Հասան Ալին Մակուայ բերդումն բանդի էր ‖ դուս էրեկ և* 17ա *Թագաւորեաց մեր աշխարհիս մինչև Ը (8) ամիս, յետ էնդոր Հասան փատիշահն էրէկ Հասան Ալին սպանէց, զմեր աշխարհս էառ և Թագաւորեաց [ՌԴԺ]ԿԸ (1468) Թվին։*[4]

*[ՌԴԺ]ՀԶ (1476) Թւին Հասան բէկին գնաց զՎրաստուն, Թալանէց ու անԹիւ անձինք կոտորէց և գերի արար։*[5]

*[ՌԴԺ]ՀԷ (1477) Թւին մեռաւ իւր մահուամբ.*[6] *Սօլտանն Թագաւորէց։*[7]

*[ՌԴԺ]ՂԱ (1481) Թվին Ցաղուպ բէկն կըռուեցաւ զՍօլտանն սպանէց և ինքն Թագաւորէց։*[8]

*[ՌԺԴ]Ղ (1490) Թվին գնաց ի Ղարապաղն, մայրն և իւր եղբայրն մահադեղ արբուցին Ցաղուբ բէկին, նա իմացաւ մօրն և իւր եղբօրն՝ Ցուսայի բէկին մահադեղէն խմեցոյց, ի միասին մեռան, ի Ղարարաղն։*[9] *Սովի Խալիլն էառ զՑաղուփ բէ[կ]ի որ-դին ղՒայնսանդուրն և Թաղաւորեցոյց, և բազումք ի Թագաւո-րական ցեղիցն սպենէց։*[10] *Նուէմբեր ամսոյ ի վերջքն, մեծամեծ պարրնէքն յամէն յաղացան, Խալիլ բէկին։ Նա գարունքն գնաց ի յե*[11] *Փոռակ*[12] *Շահալին վերայ, սպանէց զնա և զՈւղուալու Մահմատի որդին։*

*[ՌԴԺ]ՂԱ (1491) Թվին անդի դարձաւ ի Վանայ աշխարհն Սուլէյման բէկին վերայ, Սուլէյմանն սպանէց զնա, օգոստոս*

ամսոյ ի մուտն էառ զԲայնսաղուրն և դարձաւ ի Թօրէզ։[13] Ռըստամ իմիրզէն բերդումս բանդի էր։

[ՌԴԺ] ՂԲ (1492) թվին Իբրահիմ իմիրզէն[14] բազում զօրօք էրեկ, մայիս ա[մս]ոյ ի ԺԵ (15), զՌոստամ իմիրզէն հանեց և գնաց Սուլէյման բէկին վերայ։ Ս[ու]լէյմանն փախաւ ի Քուրդստան, և ըսպանաւ ի ձեռն Դանայ Խալիլ որդոյն, Նուրալի բէկին։[15] Հուսէին Ալի բէկն էառ ըղԲայնսաղուր իմիրզէն, գնաց ի Շրվան, ձմեռն եկաց ի տեղն, գարունքն ելաւ ի Շրվանա և էրեկ ի Բազարչայն, Սախա Ալի բէկն գնաց կռվեցաւ, յաղթէց ու զԲայնսաղուրն բռնէց ՌԴԺՂԳ (1493) թվին ‖ տարաւ ի Թարվէզ 317բ խեղդեցին։[16]

ՌԴԺՂԷ (1497) թվին Ուղուրլու Մահմատին որդին, սոլթան Ահմատն Սարմբօլ էր դուս էրեկ, Ռըստամն գնաց դէմ, կուիլչկարաց, եթող փախեաւ Ախլցխայ, անդից երեկ ի Ղաճարին հեծէլն ժողվէց, սոլթան Ահմատն էրեկ ի Թարվէզ, Ըոստամն էրեկ ի վերայ Ջուղու դաշտումն կռվեցան, Ըոստամն յ[աղ]թվեցաւ, սպանաւ բազում զօրօք։[17] Ահմատն գնաց ի Թարվէզ սկսաւ մեծ պարնէքն բոնիլ, Իպայ սոլթանն փախեաւ, գիմաց էր աղատունն, Ահմատն հետևն գնաց, Իպէն յետ դարձաւ Ահմատն ըսպանէց[18] ձմեռն։ ՋՈւռուստամի որդին, զԱլւանդ իմիրզէն[19] երեր ի Թարվէզ թագաւոր եղիր. գարունն որ ելաւ ՌԴԺՂԸ (1498) թվին, Ցաղուպ բէկին որդին՝ Մուրատ խանն Շամախի էր, հեծել արար, էրեկ Ալւանդին վերայ, Նախչւանայ գեառումն կռւեցան, Ալւանդին զՄուրատ խանն բռնէց իդիր բերդում, զԳայանդուր Ղաթիւ բէկն իւր որդօքն իդիր ի մեր բերդումս. մին տարին անցաւ Աւգուլ Բաղրն էրեկ բերդիս հէսաբ, բերդի մարդն զՂաթիւ բէկն հանէց գնդանէ, վէր եկին զԱւղլու Բաղրն բռնեցին դրին բերդումն. Ղաթիւ բէկն գնաց զԻպայ սոլթանն սպանէց, էր աղատանն, զԱլւանդին էառ ու իբեր ի թախթն։[20]

ՌԴԺՂԹ (1499) Ջահանշա իմիրզին աղէն Գանջայ իրեաց, հեծէլ ժսղովէց, ՌՇ (1500) թվին նա ի Գանջոյ իրեկ, Ալւանդին Թարվիզոյ. Ղօչ դաշ[տ]ումն ճակատեցան, Ջահանշին տղէն եթող փախեաւ։[21]

ՌՇ (1500) թվին Սովին Շամախի էառ, զՇրվանշէն սպանէց։[22] Աշունքն երեկ Շարուր,[23] զԱլւանդն փախուց զհեծելն կոտորեաց, ձմեռն գնաց ի Թարվէզ, գարունքն ‖ գնաց Ալւանդին 318ա վերայ, Ալւանդին խոյս իրեգ, իրեկ Թարվէզ.[24] շահն էլ յետ դարձաւ ի Թաւէզ, Ալւանդին էլ յետ փախաւ ի Դիարբէկ [իր և] մեռաւ։[25]

Թվին ՌԾՀԵ (1575) շահ Թահմազն գ՚ուր ելաւ, շահ Իսմայիլն Ղահղայ բերդումն բանդի էր,[26] դուս էրեկ, ելաւ ի թաղթն, մէկ տարի թագաւորութիւն արար։ Ջհուր Խուդաբանդայ փաթշահն ելաւ ի թաղթն։[27] Գ (3) տարի սով ընկաւ, Գ (3) տարէն յետն մահ երեկ, մահէն յետն էլ սով եկաւ։ Ապրիլ Ը (8) կար-

---

41 Բերթումն, արեկ փխ. էրեկ։ 42 գհուր ելաւ, Խուդայբանդայ։ 43 սօվ։ 44 արեկ, սօվ ընկաւ Է (7) տարի աշխար[հ]ս հէնց իրերմանի էր փխ. սով եկաւ, ապրիլ։

*միր կիրակին ցուրտ արար, այգին ծառն տունկն զամէն տա՜րաւ։*

*Թվին ՌԾԼԴ (1585) Ամիր Համզէն Թախտ ելաւ Գ (3) տարի փաթշահութիւն արէց։*[28]

*Թվին ՌՈԻԷ (1627) Մաթէոս եպիսկոպոսն Միրանշեցի վաղ-ջանեցաւ յուլիս ԺԳ (13)։*

*Թվին ՌՈԻԹ (1629) և օգոստոս ամսի Ը (8) տէր Օգոստինոս, ազգէն Բաջեցի, Գուտաղի որդի, ընտրեալ արքեպիսկոպոս Նախչուանա երկրին, գնաց մեծն ի Հռոմ օրհնեցաւ Ուրբանոս հայրապետէ Ը (8) երրորդ, դարձաւ ի վիճակս Նախչւանայ,*[29]

*Թվին ՌՈԼԱ (1631) ապրիլ ամսի Ա (1) մտաւ յերկիրս։ Ապրիլ ամսի Թ (9) ցուրտ արաւ, ծառու մատն ցուրտ տարաւ, ոչ ինչ եմիշ չՑեաց։*

*Թվին ՌՈԼԱ (1631) եւ՝ տէր [Յ]ակոբ Յիսուսի,*[30] *որդի Նար Ազիզի, ազգաւ Դարբնեցի, ի գեղէն Կէծկո.*[31] *առաքեցայ ի Հնդկաց աշխարհն. վասն ողորմութեան.*[32] *Շրջեցա ի քաղաքն գլխաւոր՝ Գուա,*[33] *Մանիլա,*[34] *Ջինքօչի,*[35] *դարձայ աստուծոյ ողորմութեամբն ի գաւառս Երընջակ, բազում ապրանք՝ ԲՃ (200) Թուման, շուռջառվա, ճիթէ, փողէ բերի, էր Թիվ ՌՈԼԶ (1636) դեկտեմբ[երի] ԻԵ (25) մտա տուն։*

*Այս ամի խոնդքարն էրեկ Երևան էառ։*[36] *Մուռթուզայ փաշէն եթող բերդումն || ինքն գնաց Թարվէզ, անդի դարձաւ իւր աշխարհն։*[37] 318բ

*Այս ամի Լէհաց Թագաւորն գէսպան առաքեաց մօտ շահ Սաֆին. շահ Սաֆին պարոն տէր Օգոստինոս արքեպիսկոպոսն*[38] *առաքեաց Լէհաց աշխարհն, մօտ Թագաւորին՝ Լսաանիսլաւ. դիս՝ Յակոբս Յիսուսի ընթրեաց վերայխնամօղ կարգիս միաբանողաց և աջորդ ժողովրդեանն։ Այս ամի Մուրթուզայ փաշէն գերացուց գաւառս ԳՃԻ (320) գերի, Ապարաններս գնաց ե [դ]ամենայն ապանածն, տարածն, օլքէս դուս ելաւ ՌԾՃ (1500) ջան։ Դարձեալ այս ամի շահ Սաֆին էրեկ դընաց բերդին վերայ Գ (3) ամիս նստաւ, մարտի ԺԵ (15) օրն երիշ ելաւ բերդին վերայ, Սիրհաճին առին, մարտի ԻԲ (22) բերդն առին, Մուրթուզա փաշէն մեռաւ։ Շխիջան փաշէն, Իբրահիմ փաշէն, Մէիմուն փաշէն և այլ բազում փաշունէք և զէնՑի բռնէց, ողորկէց Ղահղահ ղալէն.*[39] *Մուրատ բէկն, Թահմազ ղուլի խանն, որ բերդն տւէլին, զօնմիշ ելած հետ խօնդքարին գնացին. շահն երբ յետ դարձաւ, օլքէս գնաց գանգատ Մախսուտ սուլթանէն, մինչև Արտաւէլ, այն տեղն սուլթանութիւնն կտրեցին, սուլթանութիւն տվին իւր տղին Իմամ-Ղուլի բէկին։*[40]

*1—2 այգին, ծառն, տու[ն]կն զամէն, զամէն տարաւ, չինք գիտիլ թէ մեր ճարս ինչ կնէր, սերմն գձեցինք ցուրտ ձմեռն կարէց, խիստ դժար ժամանակ էր, մեք տեսանք, մորեխ տրեկ հասուլն զամէն կերաւ. փխ. տյդին ձառն տունկն զամէն տարաւ։ 4 փաշահութիւն։ 6 յունիս ամսի փխ. յուլիս։ 7 ամսի Ը աւուրն շաբաթ փխ. ամսի Ը, ֆրա փխ. տէր։ 8 Գտաղի, արքեպիսկօպոս։ 9 Նախջվանայ։ 10 ութերրորդ փխ. Ը, Նախիջևան։ 11 ի յերկիրս։ 13 յեմիշ չի Ցաց։ 14 ֆրա փխ. տէր, Յակոբս։ 15 Յեսար, Դարբինեցի։ 15 առաքեցաւ։ 17 Մանիլիա, դարձա։ 18 Երինջակ, շատ բազում։ 19 շուռջաւէ, ճոթէ։ 20 դէցեմբերի։ 21 Մուրդուզա։ 22 յինքն, Թաւրէզ։ 25 Սաֆինի, Օգօստինոս արքեպիսուկոպօսն։*

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Տես և հմմտ. № 2037, էջ 187ա։

2. Տես և հմմտ. № 2037, էջ 187ա։

3. Տես վերևում էջ 175, ծանոթ. 14։

4. Տես վերևում էջ 175, ծանոթ. 15, 143։

5. Սույն վկայությունը հաստատում են նաև IX ժամանակագրությունը (տես ներքևում էջ 143) և 1476 թ. ընդօրինակած Հայսմավուրի հիշատակարանը (Ձեռ. № 4515, էջ 216—217), իսկ մի ավետարանի («Հանդէս Ամսօրեայ» 1948 թ., էջ 295) հիշատակարանի համաձայն՝ 1477 թ.։

Լենինգրադի Արևելագիտության ինստիտուտի հայկական ձեռագրերի ֆոնդի B—120 ձեռագրում (վերջինս Փիրղալեմյանի հավաքած հիշատակարանների ժողովածուի երկու մամուլն է) պահված մի հիշատակարանում Ուզուն Հասանի Վրաստան արշավելը նշված է 1478 թ. ներքո (էջ 19), որն անշուշտ սխալ է, որովհետև Ուզուն Հասանը մահացել է 1478 թ. հայտնության երեկոյին՝ հունվարի 5-ին ըստ Բարբարոյի և Անջիոլելլայի (տես էջ 176, ծանոթ. 23)։

Վրացական աղբյուրները սույն արշավանքի մասին հիշում են երեք անգամ, ընդ որում երկու անգամ հիշում են ընդհանուր ձևով՝ «Բագարատ թագավորի օրոք դաեն Ուզուն-[Հ]ասանն իր զորքն ուղարկեց» (պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկ, «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», հ. Բ, էջ 143, 144), միայն առաջին վկայության մեջ հիշվում է վերոհիշյալ արշավանքի տարեթիվը, «Քրոնիկոնի 164-ին դաեն Ուզուն Հասանը զորք ժողովեց և եկավ Սոմխիթ՝ մոտենալով Բարաթյանների և Որբեթի ստորոտին...» (Նույն տեղ, էջ 135)։

Քրոնիկոնի 164-ը հավասար է մեր թվականության 1476 թվին (164+1312)։ Ինչպես տեսնում ենք սույն վկայությունը ևս հաստատում է ժամանակագրության տեղեկությունը։

Պետրուշևսկու կարծիքով Ուզուն Հասանը երեք անգամ արշավել է Վրաստան այն նվաճելու նպատակով, սակայն առաջին արշավանքը նշելով 1466—67 թ., մյուս արշավանքների տարեթվերը նա չի նշում (տես „Сборник статей... „вынуск I, стр. 175):

6. Տես էջ 176, ծանոթ. 23։

7. Ուզուն Հասանն ուներ 6 որդիներ՝ Խալիլ, Ուղուրլու Մահմեդ, Յաղուբ, Մեսիխ, Յուսուֆ և Մախսուտ։ Ուզուն Հասանի մահից հետո, հաջորդեց անդրանիկ որդին միրզա Խալիլը, որն ընդամենն իշխել է կես տարի։ Մյուս եղբայր Յաղուբն ապստամբեց Խալիլի դեմ։ Երկու բանակների ճակատամարտը, որը տեղի ունեցավ Խոյի մոտ 1478 թ. հուլիսի 15-ին, վերջացավ Խալիլի պարտությամբ և սպանությամբ։ Յաղուբը գրավեց Թավրիզը և իրեն հռչակեց Ակ-Կոյունլուների թագավոր, իշխելով 1478—1490 թ. թ.։ Հմմտ. Ջ. Բարբարո և Ջ. Անջիոլելլո («Ուղեգրություններ», հ. Ա, էջ 208, 268)։

8. Յաղուբի թագավորության տարեթիվը սխալ է, տես վերևում ծանոթ. 7։

9. Յաղուբին թունավորել է հարազատ մայրը։ Յաղուբի մահից հետո Ակ-Կոյունլուների պետության մեջ սկսվեց գահակալական կռիվներ, որը և հասցրեց պետության կործանմանը։

10. Սուֆի Խալիլն Մովսիլ ցեղի էմիրն էր, որի օժանդակությամբ Յաղուբի մահից հետո թագավորական գահին բարձրացավ վերջինիս որդի Բայսանղուրը։ Գահի համար կային այլ հավակնորդներ՝ Իրակում, Բայնդուր բեկը Ուզուն Հասանի որդիներից մեկին հռչակեց փադիշահ. Շահալին՝ Համադանում, թագավոր հռչակեց Ուզուն Հասանի թոռան Մահմուդին (Ուղուրլու Մահմեդի որդին)։ Մի ուրիշն էլ առաջ էր քաշել Ուզուն Հասանի մի ուրիշ թոռան՝ միրզա Ռուստամի թեկնածությունը։ Սուֆի Խալիլին հաջողվում է գահի վերոհիշյալ հավակնորդներին սպանել, իսկ Ռուստամ բեկին գերում է և ձերբակալում Երնջակ բերդում (Տես Петрушевский „Гос-а Азербайджана в XV в. „Сборник ствтей", выпуск I, стр. 176):

11. Բնագրում մի բառ բաց է թողնված։

12. Բնագրի «Փոսակը» թուրքմեն «Գորնակ» կամ «Գյուրնակ» ցեղի անվան աղավաղումն է։ Այգ ցեղի էմիր Շահալին առաջ քաշեց Ուզուրլու Մուհամմեդի որդու Մահմուդի թեկնածությունը (տես ծանոթ. 10)։

13. Բայսանղուրի վրա մեծ էր նրա խնամակալի՝ Սուֆի խալիլի ազդեցությունը, այդ բանի հետ չէր հաշտվում Ուզուն Հասանի զորավարներից՝ Սուլեյման Բիժան օղլին։ Երկու բանակները 1491 թ. հանդիպում են Վանի մոտ։ Տեղի ունեցած կռվում սպանվում է Սուֆի խալիլը։ Դրանից հետո Սուլեյմանը պետության մեջ գերագույն իշխանությունը վերցնելով իր ձեռքը, իրեն հռչակում է էմիրների էմիր (էմիր-ալ-ումար)։ Վերջինս Բայսանղուրին ձեռք չտվեց և շարունակեց կառավարել երկիրը նրա անունից մինչև 1492 թ. (Տես Петрушевский. նույն տեղ, էջ 176)։

14. Իբրահիմ իմիրզեն կոչվում էր նաև Այբա սուլթան, որը Ակ-Կոյունլուների առաջին փադիշահ Ղարա Յուլուկ Օսմանի (1378—1406 թ. թ.) թոռներից մեկն էր և Դանա խալիլի որդին։ Ժամանակագրության սույն վկայությունը հմմտ. Петрушевский „Гос-а Азербайджана XV в., նույն տեղ, էջ 176—177։

15. Նուրալի բեկն Այբա սուլթանի եղբայրն էր, Դիարբեքիրի էմիրը։ Հմմտ. Петрушевский, նույն տեղ, էջ 177։

Լենինգրադի Արևելագիտական ինստիտուտի հայկական ձեռագրերի ֆոնդի B—120 ձեռագրում կարդում ենք. «Այսօր փախեաւ Սուլիման բէկն ի Թավրիզու, թվին ՋԽԱ (=1492) արեգի Գ (=3), յաւուր ամառնամտին երեսաց Ըռստամ Ամիրղի» (էջ 24)։ Այսինքն՝ 1492 թ. հունիսի 18։

16. Պետրուշևսկու կարծիքով, Բայսանղուրի և Ռուստամ բեկի կռիվների մասին մեզ հասած տեղեկությունները հակասական են։ Նրա մոտ վերոհիշյալ կռիվներին վերաբերող պատմության շարադրանքը բավական շեղվում է առաջարկվող ժամանակագրության վկայությունից։ Պետրուշևսկին այն կարծիքին է, որ իր շարադրանքը հնարավոր փոփոխության կարող է ենթարկվել, նոր նյութերի հայտնաբերման շնորհիվ (տես և հմմտ. նույն տեղ, էջ 100)։

17. Ահմեդի և Ռուստամ բեկի կռիվը տեղի է ունեցել 1497 թ. մայիսի սկզբին։ Այդ կռվում վերջինիս զորքերը շախշախվեցին և ինքն էլ սպանվեց։ Ահմեդին միացան իշխանների մի մասը Այբա սուլթանի գլխավորությամբ։ Այսպիսով Ահմատը Թավրիզում հռչակվեց թագավոր 1497 թ. մայիսի 3-ից և իշխեց ընդամենը 7 ամիս մի քանի օր։

18. 1497 թ. վերջերին Ահմեդի դեմ խռովություն բարձրացավ Այբա սուլթանի և Ֆարսի փոխարքա Կասիմ բեկի գլխավորությամբ։ Թշնամի բանակները հանդիպեցին Սպահանի մոտ, ճակատամարտը տեղի ունեցավ 1497 թ. դեկտեմբերի 13-ին։ Ահմեդը պարտվեց և սպանվեց։ (Տես Петрушевский „Гос-а Азербайджана в XV в." նույն տեղ, էջ 179)։

19. Սույն վկայության հակառակ Պետրուշևսկին Ալվանդին համարում է Ուզուն Հասանի Յուսուֆ որդու տղան։ (Տես նույն տեղ, էջ 179)։

20. Սույն կռիվները դարձյալ շեղվում են Պետրուշևսկու շարադրանքից։ Տես և հմմտ. Петрушевский, նույն տեղ, էջ 179)։

21. Կարծում ենք խոսքը վերաբերում է սուլթան Հուսեյինին, որն այս շրջանում իշխում էր Սևանա լճի շրջակայքում և որը ոչ թե Ջհանշահի որդին էր, այլ նրա ժառանգներից։ Ղոշ դաշտը գտնվում է Գարդմանում, Գանձակից հարավ արևմուտք, իսկ Մածնաբերդից և խաչակապից հարավ, Գանձակ գետի ձախ ափի վերին հոսանքում։

22. Խոսքը վերաբերում է շահ Իսմայիլի կողմից Շամախիի գրավմանը։ Ճակատամարտը տեղի է ունեցել 1500 թ. աշնանը Ջարանիի մոտ (Գյուլիստանի մոտերքում)։ Այս կռիվների մասին հիշում է նաև Ջիովան Մարիա Անջիոլելլոն (տես «Ուղեգրություններ», հ. Ա, էջ 274—275։ Հմմտ. նույն տեղ, էջ 328, Петрушевский „Гос-а Азербайд. в XV в." նույն տեղ, էջ 230—231)։

23. Պետրուշևսկին շահ Իսմայիլի և Ալվենդի միջև տեղի ունեցած ճակատամարտը դնում է 1501 թ. ներքո (նույն տեղ, էջ 233)։ Հմմտ. նաև Բարսեղ Արճիշեցու վկայության հետ (տես վերևում, էջ 126)։ Պատմական Շարուրը տարածված է Արփա գետի (Արևելյան Արփաչայի) ստորին հոսանքում։

24. Այս դեպքերը Պետրուշևսկու հաշվումներով տեղի են ունեցել 1502 թ. (տես նույն տեղ, էջ 233)։

25. Ալվանդի մահվան հանգամանքների մասին վկայում է նաև Ջիովան Մարիա Անջիոլելլոն (Տես և հմմտ. «Ուղեգրություններ», հ. Ա, էջ 280—281)։

26. Խոսքը վերաբերում է շահ Թահմազի երկրորդ որդուն՝ Իսմայիլ II-ին, որը համաձայն Լեն-Պուլի իշխել է 1576—1578 թ. թ.։ Վինչենցո դ՚ Ալեսանդրին բավական մանրամասն է խոսում Իսմայիլի բանտարկության հանգամանքների մասին։ (Տես «Ուղեգրություններ», հ. Ա, էջ 335—336)։ Իսմայիլ II-ը թագավորել է մեկ տարուց մի քիչ ավելի։ Բնագրի Ղահղահ բերդը պատմական Անհուշ բերդն է (Պարսկաստանում)։

27. Մուհամմեդ Խուդաբենդեն՝ Սեֆյան դինաստիայի անճարակ շահերից մեկը, իշխել է 1578—1587 թ. թ.։

28. Ըստ երևույթին խոսքը վերաբերում է Մ. Խուդաբենդեի ավագ որդուն։

29. Օղոսախանոս Բաչեցու ճանապարհորդական նոթերը, տես «Նշխարք մատենագրութեան Հայոց» Ք. Պ[ատկանյան], Ս. Պետերբուրգ, 1884, էջ 5—23։

30. Խոսքը վերաբերում է եզվիտական օրդենին (հիմնադրվել է 1537—38 թվերին Իգնատիոս Լոյոլայի կողմից)։ Օղոսախանոս Բաչեցու մահից հետո Հակոբը ընտրվում է նրա տեղը, ինչպես վկայում է Անտոնիո Նազարոսը (տես «Նշխարք մատենագրութեան Հայոց», էջ 24)։

31. Արդյո՞ք Մակուի հյուսիսում գտնվող Կեծուկ գյուղը չէ։

32. Հակոբը Անտոնիո Նազարոսի հետ 1643 թ. նույնպես ուղևորվում է Ամերիկա նյութական միջոցներ հավաքելու նպատակով (տես Ա. Հովհաննիսյան «Նոր նյութեր հայ-ունիթորական պատմագրությունից», «Արարատ», 1914, էջ 1110)։

33. Քաղաք Հնդկաստանի արևմտյան ծովափին, Բոմբեյ նահանգում։

34. Ֆիլիպյան կղզիների մայրաքաղաքը, գտնվում է Լուսոն կղզու արևմտյան ծովափին։

35. Արդյո՞ք Քոչին քաղաքը չէ, Հնդկաստանի արևմտյան ծովափի հարավային մասում։

36. Մուրադ IV-ի կողմից Երևանի գրավումն այստեղ նշված է իրականից մեկ տարի ուշ։ Զարմանալին այն է, որ սույն վկայությունը հաստատում է դեպքերին ժամանակակից անձնավորություն։ Լենինգրադի Արևելագիտական ինստիտուտի հայկական ձեռագրերի ֆոնդի C—52 ձեռագրում (որն ընդօրինակված է 1665 թ.) գրիչ Աթանասը դրում է. «...Քանզի թվին ՌՁԵ (=1636) եկն սուլթան Մուրատն և էառ զԵրևան և մեք գեղովք մերովք և ազգականօք վտարանդեալ գնացաք ի սահմանս Կիլիկեցոց բաղում վշտիւք... Եւ այժմ եկեալ յարեցեալ ի Կարս քաղաքի մեք և ստացօղ սորա քեռին իմ Միքայել դպիրն»։ (Հմմտ. Ձեռ. № 8509, էջ 128բ)։ Համաձայն Ա. Դավրիժեցու օսմանյան բանակը Երևանը պաշարեց 1635 թ. հուլիսի վերջին և 9 օր պաշարելուց հետո (էջ 316) օգոստոսի 8-ին գրավեց այն («Հանդէս Ամսօրեայ», 1934 թ., էջ 331) և ապա արշավեց Թավրիզի վրա և այն գրավեց սեպտեմբերի 12-ին («Ազգապատում», էջ 2433)։ Ֆրանսիական ճանապարհորդ Շարդենը սույն դեպքը դնում է 1635 թվի ներքո („Путешествие Шардена по Закавказью в 1672—1673 г.г." Тифлись. 1902, стр. 245):

Մատենադարանի № 713 ձեռագրի հիշատակարանում կարդում ենք. «Թվին Հայոց ՌՁԴ (—1635)-ին իրեկ խոնդքարն Ը (=8) օրումն Արևանայ բերթն առաւ յետ դարձաւ...» էջ 58ա (հմմտ. նույն տեղ, էջ 15բ, այսինքն 1635 թ. օգոստոսի 8-ին)։ Տես նաև ներքևում XVI ժամանակագրություն, ծանոթ. 17։

37. Մուրթուզա փաշան Մուրադ IV-ի զորավարներից էր։ Ա. Դավրիժեցին այդ մասին հետևյալն է գրում. «... և ի նախարարաց իւրոց զոմն բարեբարոյ և խելացի իշխան՝ որում անունն էր Մուրթուղայ փաշայ, հաստատեաց իշխան ի մէջ բերդին տասն և հինգ հազար սպառազէն և ընտրեալ հեծելօք. և ինքն անցեալ գնաց ի Թարվեզ քաղաք, և անտի դարձաւ ի վերայ Վանայ և գնաց ի տեղի իւր» (Նույն տեղ, էջ 315—317, հմմտ. նույն տեղ, էջ 642)։

38. Հակոբ Հիսուսիի ինքնագիրն այստեղ ընդհատվում է։

39. Ա. Դավրիժեցին շահ Սեֆիի կողմից Երևանի պաշարման տևողությունը նշում է «յաւուրս իննսուն և երեք» (Նույն տեղ, էջ 317)։ Օրմանյանի հաշվումներով պարսիկները Երևանը գրավել են սեպտեմբերին («Ազգապատում», էջ 2434), մինչդեռ առաջարկվող ժամանակագրության համաձայն Երևանը 3 ամիս պաշարելուց հետո 1636 թ. մարտի 15-ին դիմելով գրոհի, այն գրավում են մարտի 22-ին, իսկ ըստ Ակինյանի՝ ապրիլի 1-ին («Հ. Ամսօրեայ», 1934 թ., էջ 332)։ Երևանի գրավման մարտերի ժամանակ սպանվում է բերդապահ Մուրթուզա փաշան, իսկ կենդանի մնացած մի քանի թուրք զորավարներ գերվում են և բանտարկվում (հմմտ. Ա. Դավրիժեցի, էջ 642)։

40. Բնագիրն այստեղ վերջանում է, սակայն ժամանակագրության վերջում գտնում ենք հետևյալ հիշատակությունը, որ թողել են Կեծկո վանքի վանականները.

*«Տէր Պօղոս (կարմիր թանաքով)։*

*Թվին ՌՁՁԶ (1637) մարտ ամսոյ առաջին օրն, սկիզբն արինք վանաց որբատան, յետքի դարն կտրեցինք, ընձան շինեցինք, բազում աշխատեցանք ի վերայ հէսարին և ընձանին։ Նախ ես՝ տէր Յակոբս Յիսուսի վերախնամող կարգիս, ես՝ տէր Մաթէոսս, ես՝ տէր Ջվանս Շահբու-նեցի, ես՝ տէր Մաթէոս աւագ սարկաւագ, ես՝ տէր Մաթէոս կիսասարկաւագ, ես՝ տէր Դրի-գորս՝ ես՝ տէր Թումէս, ես՝ ֆ[րա] կօնֆէրս խաչատուրս, և վանքի միաբանս բազում յիշեալ ցաք ձեռօք մերօք, ով որ տեսնու կամ կարդայ մի հայր մեղայիւ զմեզ յիշէ. և ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ։ Սաֆարն, որ Բաղվան էր մօզին (?) նա եղ խառատն, տէր Յակոբ էր և ա-միրն...» (բնագիրն այստեղ ընդհատվում է)։*

## XIV

# ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ (XVII Դ.)

*Մատենադարանի № 3527 ձեռագիրը քարոզների, դավանաբանական և այլ նյութերի ժողովածու է, որի 1ա էջի առաջին կեսում, երեք անկանոն սյունակներում գտնվում է մանր նոտրգրով գրված սույն ժամանակագրությունը,[1] որը ժողովածուի մեջ ընդօրինակել են հետագայում՝ 1749 թ.։ Այդ երևում է ժողովածուի 2ա էջում միևնույն ձեռացագրով գրված հետևյալ հիշատակագրությունից. «... Ի յետին ժամանակի գրեցի այս գիրս երեքշաբթի, թվայկանիս մեր Հայկազնի ՌՃՂԸ (=1749) և ամսեանն օգոստոսի ԺԵ (15)-ին»։*

*Ժամանակագրությունն սկսվում է 721 թվականից և վերջանում է 1652-ին, Փիլիպոս կաթողիկոսի Կ. Պոլիս գնալու վկայությամբ։ Սակայն ժամանակագրության վկայությունները ժամանակագրական հաջորդականությամբ չեն դասավորված. նույնիսկ սկզբի՝ 721 թ. և վերջի՝ 1652 թ. վկայությունները ժամանակագրության ոչ սկզբի և ոչ էլ վերջին եղրեբն են։ Մինչդեռ սկզբնական եզրը վերաբերում է 611 թ. Մահմետի հանդես գալուն, իսկ վերջին եզրը՝ 1655 թ. Փիլիպոս կաթողիկոսի մահվանը։ Այսպիսով, ընդգրկված է հազար տարուց ավելի մի ժամանակաշրջան։ Սակայն, չնայած այս մեծ սահմանների ընդգրկմանը, ժամանակագրությունը բովանդակում է ոչ թե կարևոր դեպքերի սիստեմատիկ և հաջորդական մի շարադրություն, այլ առանձին դեպքերի, ժամանակագրության հաջորդականությունից դուրս, մի շարադրություն։*

*Եթե չհաշվենք Փիլիպոս կաթողիկոսին վերաբերող երկու և Սսի կաթողիկոս Ներսեսին վերաբերող մեկ վկայությունները, որոնք կարող էին մուծվել ժամանկագրությունը կազմվելուց տարիներ հետո, ապա ժամանակի տեսակետից վերջին եզրը կդառնա 1585 թվականը, իսկ այս տարեթվի տակ կարդում ենք. «ՌԼԴ (1585) Օսման փաշան իյաւ Թաւրէզ և մեղ զտակ գրին»։*

*Ինչպես դժվար չէ եզրակացնել, սույն հատվածի հեղինակը եղել է վերո-*

[1] *Ժողովածուի 118ա—119ա էջերում գտնվում է «Դարագլուխք որ եղեն ի վերայ աշխարհի» ժամանակագրությունը։ Իսկ 125բ—129բ էջերում գտնվում է մի այլ ժամանակագրություն։ Վերջինս սկսվում է աշխարհի ստեղծագործությունից, թվում է նահապետներին, մինչև Քրիստոսի ծնունդը։ Այնուհետև նշում է տիեզերական ժողովները և հայ կաթողիկոսների հաջորդական ցանկը, թե ով քանի տարի է կաթողիկոսական իշխանություն վարել։ Սույն ցանկը սկսվում է Գր. Լուսավորիչով և վերջանում Հովհան Օձնեցիով։ Ժամանակագրության վերջին վկայությունը վերաբերում է XIII դարին՝ «Եւ Ձ[illegible] թվին Հայոց մոլորութիւ յունաց ի զատկէն...» և այլն։ Վերոհիշյալ երկու բնագրերը պատմական առանձին արժեք չեն ներկայացնում. այդ պատճառով էլ հրատարակությունից դուրս հանեցինք։*

հիշյալ դեպքերին ժամանակակից անձնավորություն և եթե վերջինիս էլ վերագրենք ժամանակագրությունը, կնշանակի ժամանակագրությունը կազմվել է XVI դարի վերջին տասնամյակներում։ Սակայն հնարավոր է, որ սույն ժամանակագրությունը կազմվել է XVII դարի երկրորդ կեսում, իսկ 1585 թ. ժամանակակից վկայությունը ժամանակագրության հեղինակը վերցրել է մի որևէ տեղից և նույնությամբ մուծել իր կազմած ժամանակագրության մեջ։

Ինչպիսին էլ լինի ժամանակագրության հեղինակի հարցը, այնուամենայնիվ, եղած վկայությունները մեծ մասամբ վերաբերում են արդեն հայտնի եղելություններին, որոնք վերցված են ոչ անհայտ հեղինակներից։ Սակայն կան առանձին վկայություններ, որոնք որոշ շեղումներ են տալիս մեզ արդեն հայտնի դեպքերից, օրինակ. Պետրոս Գետադարձի մահը համաձայն Մ. Ուռհայեցու, տեղի է ունեցել 1056 թ.,[1] իսկ Օրմանյանը գրում է «1058-ին ատեններըն»։[2] Մինչդեռ ներկա ժամանակագրության համաձայն Պետրոս Գետադարձը մահացել է 1057 թվականին։ Հովհ. Սարկավագի մահն ընդունված է համարել 1129 թվականը,[3] սակայն մեր ժամանակագրությունն այդ դեպքը նշանակում է 1130 թվականի տակ և այլն։

[1] Մ. Ուռհայեցի, «Ժամանակագրութիւն», Վաղպատ, 1898 թ., էջ 127։ Հմմտ. Սմբատ, «Տարեգիրք», Փարիզ, 1859, էջ 71։

[2] «Ազգապատում», էջ 1251։ Պետրոս Ա. Գետադարձի մասին կենսագրական ուսումնասիրութիւն ունի Կոստանյանը «Տէր Պետրոս Ա Գետադարձ» (Վաղարշապատ, 1897) խորագրով, որի համաձայն Պետրոս Գետադարձին 1051 թ. հունվարի 6-ին Արծն ավանում ձերբակալում են և բանտարկում Առիճ բերդում, այնուհետև զանազան տոներին այստեղից տեղափոխում Կ. Պոլիս։ Պետրոսը այստեղ մնում է չորս տարի (ըստ Ա. Լաստիվերտցու «ամս երեք», գլ. ԺԳ, իսկ Սմբատի՝ «ամիսս չորս», էջ 67), որից հետո Ատոմ Արծրունու երաշխավորությամբ տեղափոխվում Սեբաստիա Ս. Նշանի վանքը, երկու տարի էլ այստեղ է ապրում և մահանում 1059 թ. (էջ 38—42)։ Կոստանյանը, բյուզանդացիների կողմից Անիի գրավումը նշանակելով 1045 թվականին, գրում է. «Անուոյ մատնութիւնից տասն և չորս տարի յետոյ կնքեց տէր Պետրոս իւր մահկանացուն» (էջ 42)։ Տես և հմմտ. «Ազգ. Հանդէս» 1917 թ., գիրք XXI, էջ 62։

[3] Հմմ.՝ վերևում էջ 25, Յ. Ոսկեան «Յովհաննէս Սարկաւագի կեանքը» («Հանդէս Ամսօրեայ» 1925 թ-ին, էջ 28), Գ. Զարբհանալեան «Հայկական հին դպրութեան պատմութիւն» (Դ—ԺԳ դար), Վենետիկ, 1888, էջ 588, Ալիշան «Յուշիկք հայրենեաց հայոց», Վենետիկ, 1921, հատոր երկրորդ, էջ 272։ Սակայն «Բազմավեպի» (1847 թ. էջ 214) հոդվածներից մեկում Հ. Սարկավագի մահը նշանակված է 1130 թ.։

# XIV

Թաթեոս Առաքելուն և Սանդրղասայ կուսին մարմինն ի Հա- 1ա
յոց Թվականին ՃՀ (721)-ին գտվելի հրաշօք և զարմանալի բանիւք։

Թվականին ՋՃԺԱ (1162) «Արդ պաղատիմք» ասաց հրեշտակաց վերայ։

Թվականին ՌՃԴ (1655) Փիլիպոս կաթողիկոսն վաղճանեցաւ. աստուած ողորմի հոգու[ն]։ Ան տարին Ներսէս կաթողիկոսըն ալ Աէսայ վաղչանեցաւ.[1] աստուած ողորմի հոգուն. ամեն։

Թվականին ՆԾԲ (1003) վաղճտնեցաւ Գրիգոր Նարեկացին։

Թվականին ՇՀԹ (1130) Սարգաւաք վարդապետն վաղճանեցաւ։[2]

Թվականին ՈԽԲ (1193) վաղճանեցաւ Նէրսէս[3] Կլայեցին։

Թվականին ՈԽԷ (1198) Ներսէ[ս] Լամ[բ]րոնաց[ի]ն։[4]

Թվականին ՇԶ (1057) վազճանեցաւ Պետրոս Գետայդարձըն։

ՇԽԷ (1098) առին զԵրուսաղէմ։[5]

ՆՂԴ (1045) առին ըզՄիս։

ՋԲ (1453) առին զՍտըմբօլ։

ՋԻԲ (1473) առի[ն] ըզԿաֆան։[6]

ՆԿԷ (1018) Սէնեքէրեմ էլաւ ի Վանայ և եկաւ ի Սէփաստիեայ։[7]

Թվականին Կ (611) էլաւ չարն Մահմետ։

ՌԻ (1571) էլաւ Խպզռէզ։[8]

ՊԼ (1381) էլաւ Լէկթէմուրէ։[9]

ՌԼԴ (1585) Օսման փաշան իյառ Թարվէզ և մեղ գտակ գրին։[10]

Թվականին ՊԼԷ (1388) Թօղտամիշ անուն խան եկել է ի Խրիմ։

Թվականին ՌՃԱ (1652) էր, Պիլիպոս կաթողիկոսն ի սուրբ Էջմիածնայ ի Ստ[ա]մբա[ւ]լ էկաւ՝ ԻԴ (24) վարդայպետով, Ե (5) եպիսկոպոսովք։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Ներսես Սեբաստացի, Սսի կաթողիկոս 1648—1654 թ. թ.։ Մահվան տարեթիվը նշված է 1652 թ.։ («Հանդէս Ամսօրեայ», 1922 թ., էջ 464)։ Օրմանյանը նշում է, թե 1653 թ. Ներսեսին հաջորդել է Թորոսը («Ազգապատում», էջ 2516), սակայն Հալեպի ձեռագրերի ցուցակում (Հ. Ա, էջ 128) Ներսեսը 1654 թ. կենդանի է հիշվում։ Հետևապես ժամանակագրության այն վկայությունը, թե Ներսեսը մահացել է 1655 թ., պետք է որ ստույգ լինի։

2. Հով. Սարկավագի մահվան տարեթիվը ընդունված է 1129 թ.։ Տես և հմմտ. I ժամանակագրություն, էջ 25, 28, ծանոթ. 13։

3. Բնագրում «Նէրսէս» ձևով։ Ներսես Կլայեցին մահացել է 1173 թ. օգոստոսի 16-ին, հինգշաբթի։ Տես էջ 76, 92, ծանոթ. 24։ Բնագրի «ՈԽԲ» տարեթիվն ըստ երևույթին գրչագրական սխալ է և պետք է լինի «ՈԻԲ»։

4. Համաձայն Ալիշանի Ներսես Լամբրոնացին մահացել է 1198 թ. հուլիսի 14-ին («Սիսուան», էջ 552)։

5. Հեղինակը նկատի ունի խաչակրաց առաջին արշավանքի ժամանակ Երուսաղեմի գրավումը, սակայն այն տեղի է ունեցել 1099 թ. հուլիսի 15-ին։ Տես վերևում, էջ 90, ծանոթ. 7։

6. Օսմանական թուրքերի կողմից Կաֆայի, ինչպես նաև Ղրիմի նվաճումը տեղի է ունեցել 1475 թվին։ Տես XXIII ժամանակագրություն, ծանոթ. 5։

7. Տես և հմմտ. XIX ժամանակագրություն։

8. Բնագրում սույն բառը գրված է հապավված՝ «խպզըէս» ձևով, այդպես էլ թողեցինք, բացատրել չկարողանալու պատճառով։

9. Սույն վկայությունը ստույգ չէ. տես և հմմտ. էջ 118, 122, ծանոթ. 20, 21։

10. Խոսքը վերաբերում է թուրք-պարսկական (1578—1590 թ. թ.) հերթական պատերազմի ժամանակ, Օսման Ցուզդեմիր փաշայի կողմից Թավրիզի գրավմանը։

## XV

## ԽԱՉԱՏՈՒՐ ԿԱՖԱՅԵՑՈՒ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVII դ.)

*Այս տարեգրությունը գտնվում է Մատենադարանի № 7709 ժողովածուի 220ա—244բ էջերում, իսկ մի փոքրիկ հատվածը՝ 148բ, 149ա, բ և 150 ա էջերում և վերջիններիս լուսանցքներում։ Խաչատուր Կաֆայեցու տարեգրությունը լույս է տեսնում առաջին անգամ, սակայն նրա մասին «Էջմիածին» ամսագրում առանձին հոդված ունի պրոֆ. Ա. Աբրահամյանը (1944 թ., № 1, էջ 39—51)։*[1]

*Ժողովածուն Խաչատուր Կաֆայեցու (նույն ինքը Խաչգռուզ) ինքնագիր օրինակն է, որ ընդօրինակել է Կաֆայում, սկսելով 1620 թվականից (էջ 66ա)։*

*Տարեգրության մեջ ինչպես և ժողովածուի մի քանի մեծ ու փոքր հիշատակարաններում գտնում ենք հեղինակին վերաբերող մի շարք տեղեկություններ։ Այսպես, 1656 թ. գրած հիշատակարանից իմանում ենք, որ նա այդ ժամանակ եղել է 64 տարեկան, հետևապես Խաչատուր երեցը ծնվել է 1592 թ. (1656—64)։ Նրա աշխարհական անունը եղել է Խաչգռուզ (էջ 66ա, 138բ, տես նաև տարեգրության մեջ)։ Նա ամուսնացել է 25 տարեկան հասակում՝ 1617 թ.։ Այնուհետև 1624 թ. ձեռնադրվել է քահանա և կոչվել Խաչատուր։*

*Խաչատուր Կաֆայեցին իր տարեգրության ընդգրկած ժամանակագրական սահմանների մասին հիշատակարանում հետևյալն է գրում. «... մի մեղադրիր լինիք գիրեր է գրաց անպիտանի, որմն առաջին ումն յետի, տաղեր և հայրեններ... թվականներ անթիւելի, ՌԾԷ (1608) եղեալ է յաշխարհիս բաներ զարմանալի, ումն պիտանի և ումն անպիտանի, ումեմըն ցանկալի և այլ ումեմըն ախորժելի, իմաստուն հետևի, կարդայ և առնայի, թէ այսպէս բաներ է եղեալ յերկրի . . . որ հետևեցայ հետ թըւականին մինչ ի ՌՃԵ (1656) թվականին, եթէ հասանիմ այլ կու գրեմ, թէ չի հասանիմ դուք հասանիք ձեր փափաքանացն» (էջ 38ա)։*

---

[1] *Հոդվածագիրը գնահատելի աշխատանք է կատարել, սակայն բնագրի և հոդվածում կատարված մեջբերումների համեմատությունը ցույց տվեց, որ այդ գործը չի կատարված պատշաճ բարեխղճությամբ, նկատելի են բնագրի խմբագրման հետքեր, հեղինակի ծածկագիրը բերված է թերի և այլն։ Օրինակ՝ պրոֆ. Աբրահամյանը Խաչատուր Կաֆայեցու ծննդյան տարեթիվը որոշելու համար, վերջինիս չափածո հիշատակարանից մի փոքրիկ հատված է մեջ բերում, բայց հետևյալ ձևով.*

*«ՀԴ (64) հասեալ առ. ափն գերեզմանի...*

*Հետևեցայ մինչ ի ՌՀԵ (1105) թվականի»... Մինչդեռ այս երկու տողը բնագրում այսպես է.*

*«Եղեալ եմ ԿԴ (64) ամի*
*և (բնագրում՝ ի) հասեալ եմ առ. ափըն գերեզմանի։*
*. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .*
*որ հետևեցայ հետ թըւականին մինչ ի ՌՃԵ (1656) թվականն...» (էջ 37բ, 38ա)։*

Այստեղից ինչպես դժվար չէ եզրակացնել, նախ՝ Խաչատուր Կաֆայեցին վերոբերյալ հիշատակարանը ամբողջությամբ ժողովածուի մեջ շարադրել է տարեգրությունը մինչև 1656 թվականը հասցնելուց հետո, երկրորդ՝ նա տարեգրությունը հիմնականում սկսել է 1608 թվականին վերաբերող տեղեկություններով և վերջացրել է 1656 թվականի դեպքերի հիշատակությամբ, միաժամանակ զգուշացնելով, որ 1656 թվականից հետո «եթէ հասնիմ, այլ կու գրեմ»։

Եվ իսկապես, եթե բացառենք բուն տարեգրության սկզբի խիստ համառոտ երկու տեղեկությունները, որոնք վերաբերում են 1583 և 1584 թվականներին, ապա տարեգրության սկզբնական եզրը կլինի 1608 թվականին վերաբերող վկայությունը։ Վերջին և ուրիշ մի քանի տեղեկությունները գտնվում են բուն տարեգրությունից առանձին ժողովածուի 148բ էջի և 149ա, բ և 150ա էջերի ներքևի լուսանցքներում։[1]

Տարեգրության ժամանակագրական վերջին սահմանը կարող է մի փոքր կասկածանքների տեղիք տալ, ժողովածուի վերջից կորած թերթեր լինելու պատճառով։ Ինչպես երևում է մեզ արդեն հայտնի հիշատակարանից, Խաչատուր Կաֆայեցին տարեգրությունն ավարտել է 1656 թվականին վերաբերող տեղեկություններով՝ շարունակելու պայմանով, եթե դրանից հետո էլ կենդանի մնա։ Տարեգրության քայքայված վերջին թերթերը վերաբերում են 1656 թվականից մինչև 1658 թվականը տեղի ունեցած անցուդարձին և վերջանում 1658 թվականին ոմն Գրիգորի մահվան առթիվ գրված բանաստեղծությամբ։ Այստեղից ենթադրում ենք, նախ՝ 1656—1658 թ. թ. տեղի ունեցած եղելությունները Խաչատուր Կաֆայեցին արձանագրել է համաձայն իր այն խոստման, թե «եթէ հասնիմ, այլ կու գրեմ», երկրորդ՝ 1658 թ. Գրիգորի մահվան առթիվ գրած բանաստեղծությունը տարեգրության վերջաբանը կարելի է համարել, երրորդ՝ տարեգրության վերջին սահմանը 1658 թվականից այս կողմ չի անցնում, չորրորդ՝ հեղինակը մահացել է 1658 թվականի վերջերին (գուցե և 1659 թ. սկզբներին)։ Խաչատուր Կաֆայեցին իր տարեգրությունը գրի է առել ոչ թե մեկ անգամից, իր կյանքի վերջին տարիներին, վերհիշելով իր ժամանակակից կարևոր դեպքերը, այլ տարիների ընթացքում, եղելությունների թարմ ազդեցության ներքո, այսպես, 1621 թ. տեղի ունեցած մի շարք դեպքեր մանրամասն կերպով հիշատակելու ց հետո գրում է. «Եւ դարձեալ նոր ըսքանչելիք այնաւր տարիքի Թ (9), օրն երկուշաբթի, ձիւն եկաւ... կամ «Ջի տէր Խաչատուր վարդապետ այսաւր փոխեցաւ յաշխարհէս ի յերկինս....», կամ «Թվական ՌՁ (=1631) այսաւր շաբաթ օր է, ապրիլի Լ (30) է. այս (Խաչատուր նվիրակը— Վ. Հ.) եկաւ ան սահաթին մտաւ նաւ և գնաց...»։

Այս և նման ուրիշ օրինակներ նկատի ունենալով առաջարկվող տարեգրությունը որոշ առումով կարող ենք Խաչատուր Կաֆայեցու օրագրություն համարել։ Տարեգրության վերջին տեղեկությունները ժամանակագրական հաջորդականությամբ չեն նշված, այս հանգամանքը մեզ ենթադրել է տալիս, որ տարեգրության որոշ տեղեկություններ ամենայն հավանականությամբ արձանագրվել են հետագայում, վերհիշման միջոցով։

Առաջարկվող ժամանակագրությունը ժամանակակցի և ականատեսի ար-

---

[1] Ժողովածուի 222բ, 232բ, 233ա էջերի լուսանցքներում (տարեգրության աղբյուր) մի քանի փոքրիկ տեղեկություններ դարձյալ արձանագրված են իրեն՝ հեղինակի կողմից։

[2] № 7709 ժողովածուն, հատկապես նրա վերջին մասը նշանակալի չափով վնասված է։

ժանահավատ և արժեքավոր տեղեկություններ են, որոնք վերաբերում են Ղրիմի պատմությանը և այլն։ Բավական հետաքրքիր և մանրամասն կերպով տրված է Ղրիմի խաների գահակալական պայքարը, մի շարք խաների ժամանակագրական ստույգ հաջորդականությունը, Ղրիմի խաների վարած պատերազմները, այդ պատերազմներում հայերի խաղացած դերը։ Տարեգրության մեջ տեղ են գտել նաև փնական զանազան պատահարների, Ղրիմի ներքին՝ տնտեսական և քաղաքական պատմության վերաբերյալ մանրամասն տեղեկություններ։

Տարեգրությունը հետաքրքիր է նաև բարբառների պատմության ուսումնասիրության կապակցությամբ, օրինակ «Խոտ չի քարամ ընձէ», «եկան գեղբանքն ընկան...», «Հուրթումայ եղաւ ան գեղերն, չախչըներ կոտրտեցաւ, պարիսպէն կրտորմն տեղ բլաւ...», «... քովի տրներն որըն փլաւ, որըն չէն մնաց, որին պատն բըլաւ, որին առիքն չոքեցաւ...», արխերն ափեցւ...». «... փազում տներ ափրեց և գեղրանք կոխեց, ոչխարն ու տաւարն, պախր ու եզն ու կոմէշն քիշեց իրեր տիրվտիքն ամէնն լալակին հետն եկան, տմանք գտան կէսվի կէս, ոմանք իսկի չի գտան», «[ինքն շըր] ջոմալիք մարդ էր՝ կաՀ ասաց Կաֆան [կո]ւ երթամ, [կ]աՀ ասաց կերթամ մեր Թօփրախալան.... կաՀ ասաց գու գամ, կաՀ ասաց չեմ ի գալ...» և այլն և այլն։

Խաչատուր երեցի բառապաշարից բազմաթիվ բառեր՝ գեղրանք, չախչներ, կառրմ, քով, Հոս, Հոդ, առիք, չոքեցաւ, արխ, տիրվտիք և այլն, գտնում ենք Շիրակի, այժմյան Ղուկասյանի շրջանի գյուղերի փնակչության բարբառի մեջ։

Այն վերսիան, որ Ղրիմի հայերը գաղթել են Անիից, հարկադրում է վերջինիս բարբառը ուսումնասիրելու տեսակետից ևս, սույն տարեգրությունն առանձին հետաքրքրության առարկա դարձնել, եթե, իհարկե, Խաչատուր Կաֆայեցին ինքը XVI-ի վերջերի և XVII դարի սկզբներին բուն Հայաստանում ուժեղացած գաղթականական հոսանքներից մեկի պատճառով չի ընկել Ղրիմ։

## XV

***ՌԼԲ (1583) թվականին Օսման փաշան եկել է բաղում աւերք*** 220ա
***արարել է։***

***ՌԼԳ (1584) Աստուածածին առնըրեալ ի Կոլին և սուրբ Ուր-***
***բոթ քակվեր է։[1]***

***Թվին ՌԿԴ (1615) տանուտէր եկաւորն, եաւթներրեակնն*** 220բ
***Է (7), գիրն Ճ (100), վերադիրն ԻԱ (21), լուսնագիրն Բ (2). այս***
***ամի ամսեան մայիսին ԻԶ (26), աւրն ո[ւ]րբաթին շարժեցաւ***
***քաղաքըն Կաֆա. քակտեցաւ պարիսպն, շարժեցաւ երկիր, քակ-***
***տեցան աներ, սասանեցաւ երկիր, հիացան արարածք, ողբային***
***կանայք, լային տղայք, բարձրանայր ծուխ, երբերայր և եառ դառ-***
***նայր, փառք սքանչելեացն արարչին։***

***Թվին ՌԿԵ (1616) ամռեան յուլիսի Ի (20), աւրն շաբաթ,***
***գիշեր կիրակիլուս, ազգն յուռուս կոխեց Կաֆան և աւիրեց բա-***
***ղում տեղի[2] քաղաքս այս կըրկին նորոգեսցի։***

***Թվին ՌԿԶ (1617) յուլիսի ԺԷ (17), քաղաքս անձրև եկաւ,***
***գետոց արուցումք եղաւ. Ժ—Ի (10—20) կարմունճ տարաւ, Ի—Լ***
***(20—30) տուն բլաւ, Ե—Զ (5—6) հոգի խեղխեցաւ և շատ քանչե-***
***լիք ցուցաւ, վասն մեղաց մերոց, օրն չորեքշաբթի։***

***Ամսեանն աւգոստոսի աւուր ԻԴ (24), կիրակին սուրբ Ան-*** 221ա
***նաի, մեղաւորս աշխարհս մտի և հարսանիս արարի։***

***Ծնաւ որդին իմ Խութլուպէյ թվին ՌԿԷ (1618) յունիսի Զ***
***(6), աւրն շաբաթ։ Ծնաւ դուս[տ]ր իմ Էտըրմէլիք թվին ՌԿԹ***
***(1620) սեկտեմբերի Է (7), օրն հինգշաբթի։***

***ՌՀԲ (1623) թվականին Աննա խաթունս ծնամ, սեկտեմ-***
***բերի[3] Թ (9) փոխեցաւ առ աստուած։***

***Թվին ՌԿԶ (1617) էր, Ժ (10) խատըրղա յուռուսին վրա***
***գնաց Մէմի փաշան, Կաֆայիս փաշայ էր, բարիտես և բարի***
***մարդ էր, և աշխարհի բարեկամ էր։ Ուռուսն ըսպան ը[ն]ա և Գ***
***(3) խատըրղան իառ, և շատ մարդիք գերի տարաւ, և այլ ոմանք***
***ի սուր մաշեցան, և այլ ոմանք փախըստական։ Ամսեան ոգոս-***
***տոսի մեծ տրտմութիւն եղաւ Կաֆա քաղաքին և սասանութի***
***ամենեցուն։***

***ՌԿԷ (1618) թվականին սուլթան Ահմատն փոխեցաւ առ***
***աստուած գնաց, սուլթան Մուստաֆան նստաւ տեղն[4] || Գ (3)*** 221բ
***ամիս թագաւորութիւն արաւ։ Վասն բարկութեան ժամանակիս***
***փոխեցին զնա և սուլթան Աւսմանն տեգն դըրին[5] և շատ բար-***

կութիւն եղաւ Ըստամպօլ քաղաքին։ Եւ ետ այնորիկ քաղաքն կրակ անկաւ և այրեցաւ բազում տեղիս և եղև մահ տարաժամ մեծ, սաստիկ անձրևք, և գետոց արուցումք։ Շարժ եղաւ յուլիսի Բ (2), օրն հինգշաբթի, Կաֆան։ Դարձեալ Ա (1) կինարմատին Դ (4) յայր զաւակ ընծայեցաւ, ամենեքեան զարմացաք և հիացաք և փառս տուաք արարչին աստծուոյ։ Եւ դարձեալ այն օրն կիրակի Ա (1) կինարմատին զինքն զինքն յայրեց, վասն փորձանաց սատանայի, փուռն վառեց, գազաթն աւիրեց, մէջն մտաւ, իւր ազգականքն և իւր որդիքն տունն չէին։ Երբ որ եկան նա ինքն յայրել էր և տունն բռնել էր։ Լային ամենեքեան ի վերա նորա։ Եւ կողակիցն հաւս չէր, Բ (2) աւուրն եառոյ եկաւ[6] և իւր կինն ոչ գտաւ։ Խիստ քանչելիք եղաւ ամսհանս օգոստոսի Բ (2)։ ‖ ԺԳ (13) դարձեալ շարժ եղաւ։ Սեկտեն- 222ա
բերի ամսոյն, լուսնի Բ (2) շարժ եղաւ։ Եւ ետ այնորիկ ագեոր աստղն ծնաւ։ Հոգտենբերի թուր ծնաւ։ Դեկտենբերի դարձեալ ագեոր աստղըն ծնաւ։

Կարմիր գլխոյն սև խապար եկաւ, թէ բազում աւքէր ջարդեցաւ և շատ պարոնայք մեռան, խանըն ճորով խալըսեցաւ։[7]

Ապրիլի ԺԵ (15) Ճանպէքէրէ խանն Խըըլպաշէն եկաւ. Իէ (27) տաւնանմա եղաւ Կաֆան։ Ապրիլի ԻԱ (21) Յովաննէս քահանիփոխ ելաւ առ աստուած։

Աւգաւստոսի ԻԶ (26) բարկութեամբ անձրև եկաւ ի վերա Կաֆա քաղաքիս։ Գարիստն Գ (3) մասն բլաւ՝ Բ (2) Թարսանան, Ա (1) ալ Խըլար խուլանին. Եւ ետ յայնորիկ եղև մահ տարաժամ մեծ, որ տուն չի թող չի լացուցած։ Սեկտենբերի Ժ (10) գիշերն շարժ եղաւ, հանց որոտաց, որ ոմանք ասին, թէ թօփ քաշվեցաւ։ Զայս քանչելիքն աստուծոյ, վասն մեղաց մերոց է։

Թվին ՌԿԹ (1620) Ճանպէքէրէ խան[8] ըստակ կըտրեց, Գ (3) 222բ
ամիս քաղաքն փակվեցաւ, առ ու ծախ ոչ եղաւ, մինչև յուլիսի ու աւգաւստոսի, հապա հաւասար հանդարտեցաւ։ Գիտացիք եղբայրք, գի Ժ (10) տարի է քանի խան է, ասով Դ (4) հեղ կլաւ, որ ը(ս)տակ կը կըտրէ։

Սուրբ Թորոս եկեղեցուն ձեռք դրաք, աստուած աւրհնէ ժողովուրդն, քիրաճեցին սեկտենբերի ԻԳ (23) և գրեցին պատկեր ատենին տիրամօր Աստուածածնին և սուրբ Լուսաւորչին և սուրբ Սարգիս զաւրավարին և որդոյ նորա Մարտիրոսին և Մինասա քանչելագործին։ Եւ միւս պատկեր սուրբ խորանին տիրամօր Աստուածածնին և միածին Յիսուս գրդին։ Աւծում էր շաբաթ ի սուրբ Յակոբա և Մծբնա[9] հայրապետի, արքեպիսկոպոսութեան և տէր Խաչատուր վարդապետին և տէր Թորոս հայրապէտին, որք առաջնորդ են Կաֆային։ Նոյեմբերի Լ (30) և լուսնի ԺԵ (15) խաւարեց չորեքշաբթի գիշեր Դ (4) ժամին մինչև[10] ‖ ի Ե (5) 223ա
ժամն առաւօտն։ Հինգշաբթիլուս որոտաց և երեկ անձրև։

Ի թվին ՌՀ (1621) տանուտէրն կարիճն, դեկտենբերի ԺԸ (18) ձըմըռնամուտին, ձմեռն երկար բռնեց և դիժար, ով կարէ պատմել բարկութիւն, որ եղև վասն մեղաց մերոց, որ այսպիսի



504—14

զարմացում Ճ (100) ամեա ալևոր մարդիք այլ ոչ տեսեալ էին։ Կաֆայ քաղաքիս ծովս պազեցաւ Գ (3) մղոն, այնպէս սառեցաւ, որ ջուրն ոչ երևէր և մարդիք ի վրան ի շուրջ գուգային։ Եւ մէկ մի Ռ և Շ (1500) տապան[11] չափելով գնաց և հետն այլ ոչ երևէր բաղում ժամանակ։ Եւ աղբիւրք ցամաքեցան և հաց ոչ գտանէաք և փայտ վառելոյ, բազում աղքատք ի ցրտոյ մեռան և բազմաց ոտն և ձեռք թափեցան և սապղար եղան։ Տաւլվէթքէրէ սուլթանն ի Գոռէլ սէֆէր էր,[12] նոցա դայպուրն աւերել էր, բազում քաղաք տապալել էր, բազում մարդիք՝ ‖ այրք և կանայք 223բ մանտր տղայք գերի արել էր և բազում գիրգ նոցա գերի վարել էր և Ծ (50) հոգի մեր ազգէն Լուսաւորչի, և նոցա ազգէն անթիւ և անհամար գերիք գուգային, ճանփան բռնեց ձիւն և ցուրտն և սառնամանիքն, բազում գերիք և ասքէրք մեռան ի ճանապարհին, ցրտոյ և սառնամանեաց, բազում կառք և երիվարք մնաց ի ճանապարհին, բազում ընկերք իւրեանց թողին, բազումք ծառայք իւրեանց թողին, բազումք ապրանք իւրեանց թողին, մալ և խազինայք ի ճանապարհին։

Վասն սաստիկ ցրտութեան Գ (3) ամիս գիշեր ցորեկ մէկ աւրմն աման չէր եռ[14] մինչև ի մարտի ԺԵ (15), ապա արև և արեգակ տեսաք։ Դարձեալ ասացի[ն] թէ Ըստամբոլա պաղողն սառեցաւ ԺԸ (18) մղոն տեղ, որ ոմանք ասացին թէ Կոստանդիանոս թագաւորին ժամանակն եղել է ի ՈԽԷ (647) թվակ[ան]ին. փառք արարչին աստուածութեան։

Եւ դարձեալ նոր ըսքանչելիք այսաւր ապրիլի Թ (9), օրն 224ա երկուշաբթի ձիւն եկաւ։ Եւ մայիսի Է (7) ձիւն եկաւ, ցուրտ և հողմ սաստիկ, օրն երկուշաբթի Սուլխաղա[16] դաշտերն ու սարերն ի սպիտակացուց թզաւ, կանկնեցաւ բուքն։

Թագաւորն Հագարացոց սուլթան Օսմանն և թագաւորն մոգոց Ճանպէքէրէ խանն հեծել գնացին ի վերա Գոռելին,[17] ամսեան յուլիսի, բազում ասքէրօք և ամօթալից դարձան ի նոցանէ, զի ոչ կարացին պատերազմել ընդ նոսա։ Եւ մոզա մի Նոգայ ազգէն Դամուրխան անուն, յուժ աղթող եղև և զաւրաւոր, քան զՀագարացիք և բազում տեղ աւիրեաց և այրեաց բազում գերիք վերուց և խրկեց Հագաբացոց թագաւորին։ Եւ նա յոյժ սիրեաց զնա և բազում հարկիք արաւ նմա և մեծաբեաց զն[ա], պարոն և պէկլէրպէկի կացուց զնա ի վերա Յուռումելցոցն և Սիլիսրա[18] քաղաքին։

‖ Եւ թագաւորն[19] դարձաւ ի տեղ իւր, զի առաջի թագաւո- 224բ րութիւն էր, ընտէր պիտեր նմա երթալ ի պատերազմ, զի տղահասակի էր և չունէր խելօք մարդ իմաստուն ի քովն։ Եւ ետ այնորիկ եղև սով երկիրիս մերում, մահ և տրտմութիւն մեծ ի վերա բազում քաղաքաց։

Եւ դարձեալ ՌՀԱ (1622) թվակ[ան]ին անիծեալ եղին Հագարացինքն և պատժեալ ի աստուծոյ։ Անաւրինեցան իշխանք թագաւորի և մեծամեծք և ոչ հնազանդեցան հրամանի թագաւորին և աստուածային օրինացն ելին։ Զի թագաւորն իւրեանց

քարկոծ արարին և ըսպանեցին սուլթան Օսմանն և պատերազմեցան ընդ միմեանս և մեծամե[ծ]ք անկան ի սուր սուսերի, քաղաքացիք խառնակեցան և մարդիք նենգաւորեցան ընդ միմեանս։[20] Եւ բազում չարիք տիրեց ի վերա երկրի և սուք մեծ Ստամպաւլ քաղաքին։ Ողբային այսաւր ազգ և ազինք, զի ոչ տեսեալ էին և ոչ լըսեալ, որ ծառայք և իշխանք || ենկիչերիք և 225ա ըսպահիք միաբան լինին և թագաւորն սպանեն։ Ողորմելի եղև և. ափսոսալի սուլթան Օսմանն, զի տղայ հասակի էր և նորահաս մանուկ, զի ոչ վայելեաց զթագաւորութիւն, Դ (4) ամ թագաւոր և ոչ այլ։ Պատժին նոքա որ պատժեցան, սուրք իւրեանց զիւրեանք սպան։ Թագաւոր կացուցին սուլթան Մուստաֆան.[21] ծաղր և խայտառակ եղան ամենայն ազգաց։ Յունիսի Ժ (10) գիշերն երկուշաբթիլուս ազգն յուռուս եկաւ մտաւ ի լիման Կաֆային, ԼԳ (33) խայըխ և ոչ կարացին վնաս առնել և ամօթալից դարձան և գնացին, Ե (5) օր Խուզբին լիմանն[22] պառկեցան և շատ աւերք արարին՝ Ե (5) նաւ առին, Տաթին տանն[23] պաղչաներն աւիրեցին և քակեցին։

ՌՀԲ (1623) թվականին Ճանպէքէրէ խանն ըստակ կըարեց. քաղաքս աւիրել էր վասն մահու և սովուն։ Զի սաստիկ մահ էր և սով, հացին քիլան ՋՃ (600) ստակ էր, տեսաք աչօք մերօք։ Բազում մարդիք Դաման[24] գնացին և ապրանք ճարեցին իւրեանց, աստուած ոչ բարկացաւ սաստիկ, թէ մեղաց մերոց բարկաց[աւ], այլ գթացաւ Դաման քաղաքին, || երետ աստուած և մեզ 225բ լիացուց. դեկտեմբերին որ ըսկսակ[25] և եղև լիութիւն։ Ամսեանըն մայիսի Թ (9), օրն ուրբաթ, Մէհէմէտքէրայըն խան եղաւ, եկաւ Կաֆան։[26] Ճանպէքէրաըն փախըստական եղաւ, Տօլվէթքէրայ սուլթան և Ճանպէքէրէ խանն ողորմելի եղեն և ափսոսալի։ Զի կենդանութեան իւրեանց խափանեաց թագաւորութիւն և քիչ մի ապրանք ճարեցին և դերգեա գնացին Ըստամպօլ։[27] Եւ գնաց Մէհէմմէտքէրէ խան նստաւ ի թախթ թագաւորութեան Գ (3) ամիս։[28] Եւ ժողովեաց իւր մեծամեծք և գնաց, թէ Ախքէրման սէֆէր ունիմ ի վերա Դամուրխանին։

Սեկտենբեր ամսուն ազգն յուռուս Աւրինըբերանն[29] կոխեց, այրեց և աւիրեց և քրիստոնեայքն ի սուր մաշեց. ԼՌ (30000) ձիաւոր և կէսն հետեւակ և շատ թաթրի էլ կոխեցին և գերի վերուց. բազում մարդիք տապալեցան և աղքատացան։

Հոկտենբերի[ն] խանն եկաւ Դամուրխանոֆն և Նողայ աղգոֆն։

Փոփոխումն թագաւորաց՝ սուլթան Մուս[տ]աֆան փոխեցին և սուլթան Մուրատն տեղն դըրին։[30]

Զրոց պակասութիւն եղև, որ ոչ գտանէաք ըմպելոյ ջուր 226ա վաղուց ժամանակաց, ջրհորներն զամէնն բացին անկից կուխմէին, լեղին ով կու հարցընէ կամ քաղցր։ Տօլապին ջուրն ցամաքեցաւ և այլ բազո[ւ]մ հորեր և աղբիւրքն ամենևին։

Աւետիք քահանան փոխեցաւ առ աստուած սեկտենբերի ԺԷ (17)։

Թվին ՌՀԳ (1624) ամի ամսեանն մարտի ԺԵ (15), աղուհացից Զ (6)-ում, կիրակին Լուսաւորչի, և զիս անարժանս հող և մոխիրս, յուլ և ծուլս, կխաաարկաւարք Խաչղուզ մեղաւորս, ձեռնադրեցին զիս քահանայ, որ չէի յարժան կարքի և աստիճանի. աստուած լուսաւորէ հոգին Ցաւետիքին և աշխատաւորին իմոյ՝ տէր Խաչատուր քահանային, որ շատ դատեցաւ վասն իմ, որ է ինձ փեսա և հայր։ Առաջնորդութեան տէր Խաչատուր վարդապետի և տէր Թորոս հայրապէտի և խրըմցի տէր Մովսէսի աւրհնութեան արժանացաք աջով նոցին, յաւուրք իմ հինգշաբթի, Խ (40), յապրիլի ԻԹ (20) անմահն պատարագեցի,[31] և արժանաւորեցա սուրբ խորհրդոյն անարատ մար[մ]նոյն և պատուական յարիւնոյն տեառն մերոյ Ցիսուսի Քրիստոսի աւրհնելոյն յաւիտեան։

Ապրիլի ԺԱ (11), կիրակին Քաշոտի[32] յուռուսն կոխեց Երիմին վերի մահալտն և քրիստոնեայքն գերեցոյց և պարծանքնըն 226բ քրիստոնէից սուրբ Նշանն դերի վերուց և խաւարեցոյց վանքն տէր Մովսէսի։

Մայիսի Գ (3), օրն երկուշաբթի Շահինքէրէյ սուլթան եկաւ հարմիր ղլխսյն,[33] և երկի[ր] տային աւետիս միմիանց ի դալըստ[ե]ան նորա, թէ յատիլ թագաւոր է և խաղաղութիւն արասցէ մեզ։

Դարձեալ նոր սքանչելիք և ղարմացումն ամենեցոյն, որ եկաւ Ճանպէքէրա խանն և Տօլվէթքէրէ սուլթանն մայիսի ԻԴ (24), օրն երկուշաբթի։ Եւ եղև սասանումն ամենեցուն և բարկութիւն մեծ քաղաքիս մերում, և ոչ գտանէին կերակուր ամենեքեան մարդիք և անասունք. զի փակեալ եղեն ամենայն ղըռունք և ամենայն մըքածաղք, մսածաղք և հացածաղք, վասն բազմանալոյ անօրինաց ի վերա քաղաքիս։ ՀԵ (75) օր պաոկեցան Խ (40) խատըրղայ։ Եւ անաւրէն Ճանպէքէրէ խան և Տօլվէթքէրէ սուլթան և այլ պաղի անօրէնք պատեցին զմեզ. և ամէն օր պատերազմէին ընդ իրար, ի վերա Շահինքէրային և Մէհէմէտքէրաին, և ոչ կարէին աղթել և ամաւթալից դառնային. ոմանք մե‖ռանէին, ոմանք կիսամահ գային, ոմանն զնկերս և 227ա եղբայրս լային և զերիվայրս ողբային։ Խոտք չորացան, աղբիւրք ցամաքեցան, կառք պտկասեցան, աղաղակէին անասունք և խոտ ոչ գըտանէին՝ հողըն լզէին, մարդիք ողբային, կանայք կոծէին, տղայք լային և հայրք մխիթարէին, թէ այսաւր և վաղն մեզ խաղաղութիւն կու լինի, և փակեալ դըռունք կու բացի և մեզ ուրախութիւն կու լինի։ Այսաւր և վաղն ասել և զմիմիանս մխիթարելով մինչև եղև զրաւ մարտի. և կատարումն աւր առաջի աւգաւստոսի և կիրակի բարիլուս տռաւօտո[ւ]նն փախըստական եղև Ճան[պ]էքէրան և սուլթանն պայրախն առնի և հազիւ ի խատըրղան ընկան. և զօրքն կոտորեցան, մեռնողն մեռան, ողջք փախան, այլք ծոխ լցվան և այլք լերինս և ի մահալան ընկան և հազի[ւ] զերծեցան։ Ե[ւ] Շ—Ո (500—600) յէրկան գտակ գերի

վարեցաւ, Ջ.—Ձ (900—700) ի սուր սուսեր մաշեցան, բազում լաշ
գլիզեցան ի ծովեզերն, Բ (2) վազիր սատակեցաւ և մէկ մեծ վա-
զիր եարտըլը յեզաւ, մտան խատըրխան և գնացին։ ‖ Եւ Շահին- 227բ
քէրայըն յուն[36] էր բազում ասքէրմոք․ Նողայ և ուռուս պատե-
ցին բոլոր պարիսպն ի մահալան և բազում տնել տապալեցին,
և մեղ կողոպտեցին, չախչըներ քակեցին, և վանորայքն յաւի-
րեցին, և բազում չարիք տիրեցին ի վերա մեր․
Փառք աստուծոյ արարչին, աստուած ոչ սաստիկ բարկա-
ցաւ, այլ ղթտցաւ մեզ․ որ անաւրէն Հագարացիք ամաւթալիցք
եղեն և ոչ կարացին զօրանալ ի վերա մեր։ Թագաւորաց Թա-
գաւորն՝ աստուած գոհանամք զնորա բարէգթութիւն, որ զօրա-
ցոյց Շահինքէրտյ սուլթան և Մէհէմմէտքէրէ խան․ շնահաւոր
խան, շնահաւոր սուլթան, որ տիրեց Սուլխաթ[37] գաւառին[38] և
Կաֆա քաղաքին, եղև բարութիւն և խաղաղութիւն, սէր և հաշ-
տութիւն, աաւնանմա սեկտեմբերի ԺԵ (15), բազում ուրախու-
թիւն։ Եւ ետ այնորիկ Շահինքէրայ ելա[ւ] գնաց, թէ սէֆէր
կերթամ, գնաց և բազում Նողայ գիշեց[39] ի ներս իբեր․ և այտ է։
Դեկտեմբեր ամսուն ԺԶ (16), հինգշաբթի գիշեր Ա (1) յու-
ժով քամի ելաւ, բազում աւերք արաւ, պատեր և տնել բլոյց,
և Բ (2) մինարա քպրուքանտ արաւ և Խրմին ծառերն Թուփոﬓ
և ասկոﬓ ի հան։[40]
Թվին ՌՀԵ (1626) ամին քանչելիքմ եղաւ․ ամսեանն մա- 228ա
յիսին գետին պաարովեցաւ, լեռներ ու սարերն յիրար դիպան
աղթարուտաւնտէր[41] եղան և ի վայր խաղացին։
ՌՀԵ (1626) Թվականին, ապրիլ ամսուն Նոր ըսաակ կըտրեց։
Թվականին ՌՀԶ (1627) ամին բարկութիւն շատ եղև և ծան-
տըը խարճ [վ]երցուցուցին քրիստոնէից։ Խան ելաւ սէֆէր գնաց
ի վերա Չէրքէսին․ Ա (1) մեծ խարճﬓ ձգեց ի վերա քաղաքին․
ոմանք Ե (5) ոսկի տըւին, ոմանք Դ (4) ոսկի արւին․ ոմանք
Գ (3) ոսկի տըւին, այլ ոմանք Բ (2) ոսկի տըւին։
Վախիր ֆուխարայ Դամուրխան փաշան չարկամ եղաւ, Շա-
հինքէրայ սուլթանն գիշերով կոխեց և զինքն փախուց, կինն ու
տղաքն, մալն ու խազնան ի հօս ﬓաց։ Մահմուտ աղան հեծել
քաշեց և վրան գնաց և նա հեծելն չարղեց, Մահմուտ աղան ճո-
րով ազատեցաւ, մերկիկ և անաւթի ազատեցաւ և Ախքէրման[42]
ընկաւ։
Եւ ետ այնորիկ Թագաւորէն էմր եղաւ թէ՝ Օւզուն[43] բերթ 228բ
պիտի խորդ[ակ]ըւի, մեզի մարդ պիտի, աըապսի ըսաակ պիտի,
ժողովեցաւ ըսաակ, ոսկի, խռուշ, հայէ և տաճկէ, տուաք մարգիք
բազում քրիստոնէայք, ոմանք վարպետայք, ոմայք արապաճիք,
ոմանք լըղատք։ Խան ու սուլթանն բազում ասքէրով գնացին։
Եւ ետ այնորիկ ԲԺ (12) ղատըըզայ եկաւ թէ՝ Աւզուն կերթամ,
ինձ Ռ (1000) և Շ (500) խանթար պիտի պաքսիմատ, որ եփե-
ցաք, որ գնեցաք, տըւաք որ գնաց։
Կարապետ վարդապետ եկաւ քարոզեց և Զ (6) քահանայ ար-

գիլեց, և եառոյ արձակեց, չհասքն բաժանեց, Երուսաղէմա գանձանակ հաստատեց[44] ամէն եկեղեցի և ետոյ ղնաց յԵրուսաղէմ․ կատարեալ և հաստատ վարդավետ էր, Բ (2) աշակերտօքն։

Ժողովուրդն սուրբ Թորոսու Վարդէվանն գլուխն, եօթ աղբերաց աղբիւրն վերըստին նորոգեաց և զարգարեաց։ Աստուած լուսաւորէ հողին առաջին շինողացն և վերըստին ղարդարողացն ամէն։

Թվին ՌՀԷ (1628) թվականին զարձեալ Շահինքէրայ սո[ւ]լթանն 229ա հեծել վերուց ու ելաւ գնաց ի վերա Խանդամուրին։ Թունան[45] անցաւ Շահինքէրայն բազում ասքէրով, և ետ այնորիկ մեծ բարկութիւն եղև՝ Խանդամուրն Ջթախին հետ մէկ եղաւ ու սուլթանն կոտըրւեցաւ ու ասքէրն ամէնն չարդըւեցաւ, պարոնայք մեռան, մողաներ մեռան, սուլթանն ճորով խալըսեցաւ Թունայէն անցաւ, թախթն եկաւ։ Եւ ետ այնորիկ Խանդամուրն ետևանցն եկաւ ի Պաղչա-Սարայն, Դ (4) քովըն պտըտեց ու մէջ իստ, ամիսՊ լման հանց ղապուն արաւ․ որ փախչելու կամ կըռվելու ճար չունէին, որ մէկ տաս օրմ ալ երթար, նա վէր կանէին․ իւրեանց կերակուր չիքար, ձիանուն խոտ չիքար։ Անիծած Նողայն ‖ Դ (4) քովՊ աւիրեց, որ թալլեց տըներ ու տեղրանք քակեց, 229բ ոչխար ու տաւարն քիշեց ու ձիանն ամէնն ասքէրին կերցուց, չարութիւն շատ արաւ, որն ասենք կամ զորն պատմեմ։[46] Եւ այնորիկ աստուած լուս արաւ, ՅԺՌ (12000)-ան հայ եկաւ Գոռէլ[ու],[47] խան ու ասքէրն խապար չունէին, մին սուլթանն գիտակ էր, ձեռաց տակէ մարդ խրկել էր։ Երբ որ եկան զարկին թուրն Նողային, խանն, սուլթանն քիչՊ հաստատեցան ու կռիւ կանկնեցան, բազում ասքէր մեռան։ Խանդամուրն փախաւ եկաւ[48] Կաֆան մտաւ իր ՆողայովՊ և ու իր խալխովՊ՝ Ռ (1000) կամ Շ (500) աւտով ով, ըլտըղայովՊ, ձիով ու ուխտովՊ, եղնով ու ոչխարովՊ, կնկնովՊ ու տղովՊ, ճորտովՊ ու ծառայովՊ, եկան լցվան Կաֆան, տներն, բերթին տակերն, աւեր տեղրանք, Հեսարփ ‖ էչյան խանտակն ամէնն լցվան,մայիսի ԻԲ (22), աւրն հինգշաբթի Համբարձըմաննն։[49] Եւ ետ այնորիկ Թօփրախալացին հայ ու տաճիկ ամէնն [բ]երթն մտան մարդ չի Պաց զուսն, թէ այսօր զուգա կու կոխէ, անզիտութիւն արաւ չեկաւ, իրենց պայրաՊ ալ վրայ էր, արաւ, հապա եկաւ, ինչ որ եկաւ նա, զայ 230ա բազում տներ աւիրեց և գեղրանք կոխեց, ոչխարն ու տաւարն, պախր ու եզն ու կոմէշն քիշեց իրեր․ տիրվաիքն ամէնն լալակին հետն եկան, ոմանք գտան կէսվի կէս, ոմանք իսկի չի գըտան ու լալագին ի ետ դարձան։ Անուննն անիծած ու զինքն Մէհէմէտ փաշան, որ քաղքին տէրն էր և այլ պաղի մեծունայքն ամէնն մէկ եղան ու շատ չարիք գործեցին՝ խան ‖ տակ փորել 230բ տըւին Ժ (10) օրն մէՊ, խան կու բերէին ԺԵ (15) օրն մէնն, անչափ սուտ կու ասէին, ոմանք ցամքով կու բերէին, ոմանք ծովով, սուտ վկայներն կու գային, թօփեր կու քաշէին, պայրախ կու տնկէին, դէլլալք կու կանչէին, թէ խանն եկաւ․ ամէնն սուտ ու ճար քիչայ։ Խանն ու սուլտան պատեցին բազում ասքէրով,

ԲԺՌ (12000) ուռուսով բոլոր քաղաքն, ու կու կռվէին, թէ գուռ ելէք ու ձեր խանն բերէք, որ ղիրար տեսնունք, ղոքա պարիսպն կո[ւ] փակէին ու դուրս չէին ելել ու Թօփն ո[ւ] Թուվաքն կու քաշէին և նոքա կու քաշին. ոչխարն ու տաւարն քիշեցին, քաղքին տնևրն աւիրեցին, Թօփրախալին, որտեղ որ բարի[ք] գտան առին, պատեր քակեցին, գետինն փորեցին, Գ (3) եկեղեցին բացին, քակեցին ու աւ || իրեցին, ճառերն ու բուրվառներ առին, 231ա երկաթն ու վարագուրերն առին, գիրք և աւետարանք գերի տարին, ինչ որ գտան առին, ինչ որ չի գտան, քակեցին ու աւերեցին, թարճաներուն երկաթն առին, ժամերուն ու տներուն։ Եւ ետ այնորիկ վանքերն ամենուն մտին, դովին կոտըրտեցին սուրբ սեղաննին քակեցին, չախչնին մտին, չարխերն ու երկըթնին առին ու. շատ չարիք տիրեցին ի վերա երկրի, վասն մեղաց մերոց։ Ամիս, ամիս ու կէս քաղաքն փակվեցաւ՝ առուծախն կտրեցաւ, հացն ու թացանն հատաւ, խոտն ու ջուրն կարեցաւ. անասունքն աղաղակէին, մարդիք հառաչէին, կանայք լային, տղայքն ողբային։ Բ (2) ոսկի նաւէն ցորեն կառնուէին։ Ով որ ունէր կուտէր, ով որ չունէր աղաղակէր և աստուած ապաւինէր։ Գիշեր ու ցորեկ հայ ու տաճիկ, մանտր ու մեծ, ամէնն բերթին վերայ էին || ու կու սպէին, թէ աս գիշեր կու կոխէ կամ վաղ գիշեր, 231բ կու կանչէին ու կու աղաղակին, մինչև եղև զրաւ մարտին։ Եկաւ խանն ո[ւ] սուլթան ԽԳ (43) խատըրղայով։ Երբ որ դայ եկաւ, նա աւիրեցաւ և փախաւ գնաց Արապաթին[60] բերթն մտաւ ԲԺՌ (12000) հայով։ Դայ գնաց Թախթն նստաւ աւգոստոսի ԺԲ (12)։ Անիծած Նողայն խօսքն տեղն եղաւ, Խանտաստուրետ Ազամաթ պարոնն սպանսեցին։ Հազիւ հօս եկին Խանդամուրն ու Շահաուվարն Ա (1)ք քանի մարդովք, աւգոստոսի ԻԴ (24), կիրակին սուրբ Աննաի, Մուստաֆա մազանին գլուխն կտրեցին քովի մէկ նոկէրովք. մազային գլուխն տարին, մարմինըն հոս թաղեցին։ Խտըրին տնէն փախուցին, Պուջանաին տունն գտան չիրախվառուն, Դ (4) հոգի էին, Բ (2) փախան, մազան ու նոկարըն ան հատաղան սպաննեցին։

Եւ ետ այնորիկ Շահինքէրէն ու խան[ն] տարիմըն կեցան 232ա Գոռելին մէջն, Խաննողային մէջն. տարէպըտուտն ելան ի վերա Խըրիմին եկան ԽՌ (40.000) հայով և նաւղայով, մայլըպաշով և թապուռով և ամաւթալից դարձան։ Զի հրամանքն աստուծոյ եղաւ, իրենց միջէն աւիրեցաւ թապուրն և ռոք[ա]լ ալ հառան, չարդեցին ԺՌ (10.000) հոգի, կամ ալ պակաս, ալ պագիքն[51] դարձան գնացին։

ՌՀԸ (1629) Թըւականին աղգն ուռուս եկաւ Բ (2) աւուր ճանփայ ու կոխե[ց] Խարա-Սուն,[52] Զարսու-Գա[ղա]րն,[53] տըն[ե]րն էրեց և աւիրեց, ոմա[նք գե]րեց[ո]ւց, [ոմ]անքն ի սուր քաշե[ց, ե]տ այնորիք Մանկուպ[54] կո[խեց, մէ]ջն մտաւ, մալն ու խաղնան [առաւ], [ետ]ոյ Սուղտան[55] կոխեց, Տաթին [տունն բա]զում աւերք արարին, որն ա[սեմք ա] զորն չասեմք[56]. դիժար ժամա[ն·ակ]։ || Եւ դարձեալ յուլիսի Գ (3) օրն, Աւթուղին[57] կոխեց ու 232բ

մարդիք դերի առրաւ՝ այր և կին։ Մուսլի պարոնին հարսն ընկաւ. Ռ (1000) ոսկի գին կըտրեց, Թող դալ պաղիքըն որ ընկան և մնացին գերի, ոմանք ազատեցան, ոմանք ոչ։

Եւ եա այնորիկ Ծ (50) շայխայ[58] Ջէնէոլըռէն[59] եկան, Սանտրխտով[60] ու Կեղլով[61] կոխեցին ու զարկին կրակ։ Զարսու-Գաղարն այրեցին և աւիրեցին, բազում տեղիս գերեցին ու կողոպտեցին ու ելան դընացին։ Դարձեալ Ախքէրման քաղաքն կոխեցին և աւերեցին, պուԹուն ամառն բազում աւերք արարին։ Առաջն [Կ]աղանտիպն[62] կոխեցին, Ը (8) կըտոր գեղ այրեց[ին ու ա]ւերեցին։ Եւ ետոյ ռուլԹա[նն] բազում [աոքէր]օվ ելաւ, սէֆէր գընաց [ի] վերա .Գոռ[ելու և ա]մօԹալից դարձան։ Բա[զու]մ մարդ [սպանեցին], բազումք դերի [ա]նկտն. ԷՌ (7000) յիլ || ւղու ինքըն արն (?) բերին։ ԱնԹիւ և անհամար որ մնաց, [ով կար]է պատ[մ]ել, Տէօլվէտքէրէ ռու[լտանն] խալըսեցաւ, Խանդամուրն || 233ա այլ չեկաւ։ Սալմայշան աս[63] եկաւ Խրրիմ և ետոյ գընաց, Նողայն ալ հետ գոչեցին աս յեւրդէն։ Կիւլումպիրն եկա։ Խանդամուրին տեղն նըստաւ։

[Դարձե]այլ ՌՀԸ (1629) Թվակ[ան]ին, դեկտեմբերի ամսուն ջեր[մ] ա[ն]ցաւ,[64] բուսքն Թընտաց, յունվար ամսուն ||.[կ]ապեց և բացվեցաւ, բըղըւան ալ բացվաւ. հրամանքն աստուծոյ է, ով կարէ իմանալ։[65]

ՌՀԹ (1630) Թվականին Կաֆային խարաճն Հասան աղայ անիծածն էառ և շատ չարչարեց ժողովուրդն և զքահանայքն, Թէ գրեցէք ժողովուր[դ]նն՝ զԿաֆացին և զեկամուտն, զԽըրըմցին և զգեզացին, զամէնըն տէֆտէր արաւ։ ՏաԹին տունն գընաց շատ աղմունք արաւ, Դ (4) տարոյ Ե (5) տարոյ տղաքն խարաճ գրեց, ուրացողացն խարաճ իառ։

Կաֆային փաշան, Հոռմին եպիսկոպոսն մի աւր մեռան. եպիսկոպոսն Թաղեցին, փաշային մարմինն Ըստամպաւլ տարին, ամսեանն աւղաւստաւսի, պահոցն Աստուածածնի։[66]

Սեկտեմբերի[ն] փաշայ եկաւ, բարի մարդ էր, քաղքին բարեկամ էր, Ե (5) ամիս նստաւ, մանզուլ արին յունվարի ԻԹ (29). ելաւ խանին գնաց. ասաւր շաբաԹ օր Հասան աղան քարի բռնեցին,[67] փախաւ ճորով խալսեցաւ, աստուած վրէժ արաւ Գ Դ (3—4) տարու տղայոցն ա՞ն չի Թող։

ՌՁ (1631) Թվականն որ մըտաք այլ բան դարմանալի ԼԳ (33) հոգի մանզուլ փաշային ծառաներուն[68] հաւիսէն ելան ցորեկով, բարով մտան նաւըն, ելան գընացին, քաղքին մարդիք ապուշ մնացին. Բ (2) նաւ ետևանցն գնաց, Թէ կառնում և ամաւԹալից դարձաւ, կըռիւ արին, ոմանք մեռան, ոմանք եարալըլ դարձան. ետոյ փաշան գընաց խատըրղայով չի հասաւ, դարձաւ եկաւ քաղաքիս ըսպէնճն իյառ. քաղաքացինք արզ արին, խանն արզ արաւ Թէ՝ քաղ[ք]նին տէր Թըլլայ չեղաւ։ Աւանս, հազար բերան, որ քաղքին մէջն աղէկ մարդն չապրին, եԹող դընաց. մէկ անիծած փաշա մի եկաւ տեղն, չար և անօրէն, պարտատէր,[70] վասն մեղաց մերոց է։ Ոչ քահանայ կու հանդչի և ոչ աշխարհական, նոր-նորու խարճ կուզէ, համ փաշայ է, համ ամիլ-

տար է, նաղրը է, ով կու ղուրուցէ, ղինչ որ անէ, ձեռն է, մի թէ աստուած վէրէժն անէ։

Թվին ՌՀԷ (1628) ապրիլի Ի (20), աւրն կիրակի, Քաշաւալի 233բ ուռուսն Կաֆան կոխեց՝ մահալան Համբարձման։ Անիծածն,[71] որ է որդի Թուման պէին, եկաւ գերեցուց, ոմանս թալլեց, ոմանս ի սուր մաշեց և այլ շատ չարիք գործեց։ Ելէմշահպէկին կինն տարին, Խուպաթն տարին և այլ մէկ քանիքն։ Գին կըարեցին Շ (500) ոսկի, ինչ որ ոսկին ղնացնայ, ըսպաննեցին ղամէնըն։ Ելէմշահպէկին կընոջն լաշն բերին, Ա (1) քանի հոգոյմ ալ՝ ք[ր]իստոնաց մարմինն ի հաւն մնաց։ Խուպաթն ճորով ազատեցաւ. մեծ արրտմութիւն եղաւ քաղաքին, երբ որ լաշերն, որ բերին, Կուճի խապախին տոջև հայ ու տաճիկ ամենեքեան լային և ողբային։ Յուռուսն ինչ որ Թէքեայն[72] եկել էր, փառք աստուծոյ, աստուած պահեց մեր մահալան։ Ջէքէրեային չարաալէն Բ (2) թըւաք քաշվեցաւ, ան տեսաւ, դարձաւ ղընաց, ապա մենք աղատեցաք։[73]

ՌՁ (1631) թվականին Ըստամպուլա պատուիրաքն մեղի եպիսկոպոս խըրկեց ժողովարար և վասն հասքի և չի հասքի։ Սուրբ Յակոբայ կիրակին[74], սուրբ Սարգիս պատաբաղմատոյց տէր Անդրէասն պարոնտէրն և Գալուստ սարկաւարքըն նամակ կարդացին, ամենեքեան քահանայք հաւանէաք մեղ ծանուցում արարին։ Խաւճա Սսիրին հետ եկան, առաջ նորա ժամն իջան, որ է սուրբ Յովաննէս Մըկըրաիչ, քահան[այ] տէր Գրբիդոր, որ մականուն Խոմայճի։

Խաչատուր պարոնտէրն վանքէն մեղադրանք և բանադրանք խըրկեց խաւճա Մըսըրին։ Յունվարի Ե (5), ճրագալուցին բերին բանադրանքն։ Յունվարի ԺԶ (16)-ըն, աւրն երկուշաբթի, սուրբ Հրրեշտակապետ ժողովք եղաւ՝ քահանայից և ժողովըրդոց և քըննութիւն արաւ Անդրէաս պարոնտէրն։ Տէր Մաղաքէին փիլոնն առին, վասն ան պատճառին, որ իր գլխոյն բան էր արեր՝ քահան[այ] տարաւ Խարա-Սուն աւրհնել երետ, հօս բերին, դուս հանին, անոր համար եղաւ աղմուք, Նորընծային փիլոնն ալ առին։ Ներսէս հաբեղին փիլոնն առին։ Խաւճայ Մարգարէն, Խաւճայ Լաջինն, Լուսպարոնն, տէր Մինասն գնացին պարոնտէրն բերին հաշտութիւն արին։

Թվին ՌՀԸ (1629) Վարագայ խաչին ուրբաթն[75] տէր Թորոս || 234ա պարոնտէրն փոխեցաւ առ աստուած գընաց. ԺԵ (15) աւուրն ետև տէր Մարգարէ քահանան փոխեցաւ աստուած, մուսաֆիր քահանայ էր, գարիպ և անտէր. եպիսկոպոս չիքար, ոչ վարդապետ, թաղումն քահանայք կատարեցին։ Մովսէս պարոնտէրն Ըստամպօլ վաղջանեցաւ։[76] Խաչատուր վարդապետն եկաւ Էջմիածնայ լուսափուխ մեռոնաւ, որ էր նուիրակ Նորընծա տէր Մովսէս կաթուղիկոսին.[77] Բ (2) աշակերտ ունէր, մինն ճգնաւոր մինն կիսասարկաւաք։

ՌՀԹ (1630) թվականին ամսեան յունիսի մեր տէր Խաչատուր վարդապետն եկաւ Լէհաց տընէն. ան շտբթոյն Բ (2) վար-

դապետ մեկտեղ եղան և ուրախացան քահանայք և ժողովուրդք. Նուիրակն քաղաքն իջաւ, մեր վարդապետն իր վանքրն Նըստաւ, որ է Զարխափան Աստուածածին, որ կոչին որ Երեշխաւոր, այլ ոմանք Պէստէկիրման ասեն։

Նուիրակ վարդապետն դատապարտեց ըղքահանայքն, Դ—Ե (4—5) քահանայ արգիլեց,. սաւքանք խառ, ոսկի, գիրք, խաչ, ըսկի, սըրն կամաւ, որն ակամայ, ժողովուրդ ալ ըանադըրեց՝ Վարդանն, Ցարութիւնն և այլ մէկ քանիքն։ Քաղքիս ժամերն ամէնն ժուռ եկաւ, ինչ որ տըւին էառ՝ դաւադան արւին, ամաւուրք տըւին։

Տէր Խաչատուր Նորընծա պարոնտէրն եկաւ Էջմիածնայ յուլիս ամսու, Բ (2) վարդապետ, Ա (1) հայրապետ մէկտեղ եկան ի սուրբ Լուսաւորիչ. երեքն ալ տէր Խաչատուր, Նուիրակն հարկիք արաւ, պարոնտէրին ոտն լըւաց և մեծարեց։[8] Նուիրակ կացուց պարոնտէ[ր]ն և տէր Մըկըրտիչն ուղարկեց Կէղըով, Պաղ[չ]ա—Սարայն, Խարա-Սուն, գեղըանքն ընթանուր [Խըր]մին երկիրն, գընացին, նուիրակեցին ու բերին։ [Ինքն? շըր]ջամոլիք մարդ էր՝ կաՀ ասաց Կաֆան կո[ւ երթամ, կ]աՀ ասաց կերթամ մեր Թօփրախալան, այ ||| մըս, կաՀ ասաց գուղամ, կաՀ ասաց չեմ ի գալ, ինձի ըստակ բերէք։ Կոպեցաք մնացաք, ըստակ ժողովելոյ ճար չիքայ։ Եւ դարձեալ ինքն ելաւ գընաց, մէմ ալ ինքն նուիրկեց, եառ յեկաւ Նըստաւ։ Խարա-Սուն, խապար խըրկեց կաֆոցոց, դիս եկէք առէք, կամ մեռոնըս ուղարկեցէք։

Մենք մեռոնն ուղարկեցաք,[19] ետոյ բարկացաւ մեզ կաֆացուցս։ 234բ Եղան [դ]աւլվաթորայք և քահանայք հաւասար գնացաք, ապա ուրախացաւ, Գ (3) ժամէս Ճ (100) խոռուչ ուզաց, Բ (2) ժամէն Լ (30) խոռուչ էառ, մեր ժամէն՝ սուրբ Թորոսու Լ (30) էառ, ետոյ մեռոնն թափեց Խարա-Սուն։ Աղուհացից Բ (2)-ում[80] հինգշաբթի ելաւ գնաց Պալըխլուն,[81] թէ նաւ կը մտանեմ, չեդաւ, եկաւ Կեղըով, հօն ալ չեղաւ, դարձաւ եկաւ Կաֆան, խօճա Մսըրն նաւ իդիր. աստուած աւրհնէ զինքն, տարիմըն կեցաւ՝ պահեց Կաֆան, Կէղըով,[82] Խարա-Սուն և այլ պաղի տեղըանք, աւլի մեր քաղաքն եկաւ։

Թվականն ՌՁ (1631) այսաւր շաբաթ օր է, ապրիլի Լ (30) է, այս եկաւ ան սահաթին մտաւ նաւ և գընաց, աստուած բարի ճանապարհ տայ։

Ներսէս քահանան փոխեցաւ առ աստուած ապրիլի Ժ (10), սուրբ Զատկին կիրակին, շիջաւ ջահն սուրբ Գէորքայ, տերըամեցոյց ըղմեզ, ընկերակից էր, մեզ հոգևոր եղբայր էր, աստուած լուսաւորէ զիր հոգին և ԻԴ (24) քահանայից դասուն դասակից[83] և պսակակից արասցէ. ամէն։

Եւ դարձեալ այսօր մեծ սուգ պատահեցաւ մեզ՝ քահանայից և ժողովըրտոց, զի ջահն աշխարհիս շիջաւ, պարծանքըն քրիստոնէից խափանեցաւ, ակն Կաֆա քաղաքիս խաւարեցաւ. զի հովիվըն[84] մեր բաժանեցաւ, առ հովապետն մեր վերացաւ։ Զի տէր Խաչատուր վարդապետ այսաւր փոխեցաւ յաշխարհէս,

ի յերկինս վերացաւ, մայիսին առաջի աւրն, կիրակի։ Վասն երաշտութեան համար չաւք արաք.[85] ՌԱ (21) քահանայէայ, Բ (2)-ըն մուսաֆիր էր՝ Ա (1)-ըն կեղլովցի, մէկն բաբերդցի, մէկմ ալ հաբեղայ, մէկ ալ այս լուսաւոր հոգի վարդապետն. [Թ]ափուր[86] ելաք մէմըն ման եկաւ վարդապետն, երկուս ու ‖ ճաթ չեղաւ, ղընաց պառկեցաւ, լեզուն կապեցաւ ‖ ժամն ասաք, հոգին առ աստուած աւանդեաց։ Խաչ[ատուր պարո]նտէրն Խըրմէն եկաւ, հասաւ այսաւր ի Թաղ[ման հովվա]պետին։ Ասէք աստուած լուսաւոր[է] զիր հոգին. ԻԴ (24) [վա]րդ[ա]պետաց և քահանայից դասուն դասակից և պըսակակից արասցէ. ամմէն։ Քահան[այ]ք և ժողովուրդք աւախ ասէք հազար բերան, բարի մարդ էր և կատարեալ վարդապետ, խալատն այն էր, որ գինէսէր և խմա[ւ]ղ էր, վասն այն պատճառին համար ժողովուրդքըն կատէին և հարկիք չէին անեբ։

Յուլիսի Ե (5) աւր կիրակիլուս, Խարա-Սու քաղաքին աս- 230ա տուած բարկացաւ, վասն մեղաց մերոց. անձրև եկաւ, որոտում եղև, կածկըտուն, հեղեղն եկաւ և պատեց բոլոր քաղաքն, քակեց տըները և խանըթներն, կարմընճներն և պազչաներն, սարայներն և չարաախներն, ծառերն ու ճըղերն, տապախ խանաներն և պաւեայ խանաներն, աշճիներն ու բաչճիներն, պէզազներն ու խաղաղներն, հացածախներն և խասապներն. պաւզաճիք և մէյխանաճիքն, ամէնըն քակեց ու աւիրեց հեղեղն ու սէլն, հազար կամ հինկ հարուր կամ թէ այլ աւելի հոգիք ղըխտեցան հայ ու տաճիկ, կաֆացիք և խարասուցիք, պաղըրկաներն և մուսաֆիրներ, խարիպներն ու անտէըներն, ոմանց կինըն տարաւ այրըն մնաց, ոմանց այրըն աարաւ կինըն մնաց, ոմանց տուն ու տեղն, այր ու կին, տղայքն ու ապրանքն զամէն էառ ու տարաւ, ոմանց այըն տարաւ Բ (2) տըղոմն, ոմանց կինըն տարաւ Գ (3) ու Դ (4) տըղոմն. Նոյա ջըըհեղեղըն նմանեցաւ։ Մինաս վարդապետին ու Սուլթանին մեծ կարմունճըն տարաւ, հանց տարաւ քարն ու փատն, զամն [ո]ւ. երկաթն, որ տեղն ալ չերևիլ, քաղքին Գ (3) փային Ա (1) փայըն տարաւ։ Զաթան պարիսպն աւիրեցաւ, Բ (2) բաղնիքըն քակտեցաւ, ճամէքաներն աւիրեցաւ, Բ (2) մզկիթ ու մէճիթ աւիրեցաւ ու մէտըըսէ բըլաւ որ սոխտայներըն խըխտեցան։ Եւ այլ շատ բազում[87] քանչելիք եղաւ. մեր Հայոց սուրբ Աւգսէնտ անուանեալ եկեղեցինն աղատեցաւ, քովի տըներն ոըըն բըլաւ, ոըըն չէն մնաց, ոըին պատըն բըլաւ, որին առիքն չոքեցաւ, որին կէսըն տարաւ, կէսըն մընաց, աըխերն աւիրեցաւ, չախչըներն։ Քանչելիք շատ եղաւ. ամսեան յուլիսի բազում անձրև եկաւ. Կաֆա քաղաքիս ջուրըն նըւազեցաւ պիտ տառապանք կու. քաշեմք։

Ասքէըն ելաւ գընաց թաթարն ու թուըքն ի Խըզըլպաշ, դեկտենբեըի ամսուն ելան եկան ըսպահիքն, թաթարն մնաց։ ‖ Տաւլվաթքէրէյ սուլթանըն՝ փոխեցաւ առ աստուած, Եղբաբ խա- 230բ նին և Խազըչխան[88] Նըրատին սուլթանըն տեղըն նըստաւ, Սա-

լամաթքէրէ խանին որդին։[89] Խանին որդին Սուլթանն սէֆէր գընաց ի վերա Գոռելին ամսեան յունվարի։

Թվականն ՌՁԱ (1632) ձմեռնն ծանոր եղաւ։ Եւթ եղաւ քաղքին ստակն, աւիրեցաւ, առ ու ծախըն կըտըե[ց]աւ. խանըն հայսաղ·արաւ, արապաք չեկաւ, մարդիքն ապուշ մնացին։ Աս տարիս նտհանդ էր, ամէն[90] իրաց պակասութիւն եղաւ։ Խոտ չիքարամ ըռնէ. ձըմեռն ալ այսպէս եղաւ, անասու[նքն] դապունութիւն քաշեցին, թըռչունքն ամենայն, առւվատախն ձըռաւք կու ըռնէին, եկան դեղըանքն ընկան ու քաղաքն։ Սըֆէըլըն կոտըըված եկաւ երկու փային մէկն, ճորո[վ] եկաւ։

Փեաըըվարի ԺԵ (15) Կաֆան կըըակ ընկաւ Դ—Ե (4—5) խանութ երեցաւ, հաղիւ հասան անցուցին։ Հինգշաբթիլուս Ապազային Բ (2) նաւն եկաւ։ Ալի փաշային որդին մեռած բերին, լացով հառաչով նաւէն հանին, քաղաքըն մտուցին եռևանցն։ Գիտես թէ աստուած բարկացաւ քամի եղաւ, հուըթունայ եղաւ ան գիշերն, չախչըներ կոտըըտեցաւ, պարիսպէն կըառըմ տեղ ըլաւ Գ (3) տան վերայ և շատ քանչելիք եղաւ։ Ահմատ սօֆի կասէին, տընով տեղով, որդով և դըս[տ]երով սըըբաչանչ եղաւ։

Փետըըվարի ԺԷ (17), օրն ուըբաթ, աշխարհս ժողովք եղաւ, մարդիք հօն ժողովեցան քարերն պեղեցին, Զ (6) լաշ հանեցին՝ Բ (2) յայր և կին, Բ (2) ալ տըղայ մեռան քաբախեղդ և փտտահեղդ եղան. և շատ մարդոյ դեն եղաւ։ Զի Ահմատ Սօֆի ասաց մարդն, վաշխաժողով մարդ էր և ձիոյ չախչիպան էր, տունն քակտեցաւ չաղաչն աւերեցաւ, ով որ դըաւկան ունէր տակըն մնաց, ոմանք դըաան և առին, ոմանք ոչ գտան և շըւաըեալ մնացին։

Ըստամպա[ւ]լ շատ վիճմունք եղաւ, մեծ ահագին Խաւսըաւֆ փաշան սպաննեցին, որ ոմանք ահէն քան ղուռ կու դողային։ Եղբայրք[91] եւր ժամանակին հասաք, աստուած փըըկէ զմեզ ի փորձանաց.[92] ‖ և այլ շատ մեծունաք սպաննեցին, ըսպահիք 236ա ջարդեցին, ղոմանս թըով, սըով սպաննեցին, զոմանս[93] դեղդեցին, ղոմանս ծովըն ձգեցին և այլ ոմանք փախըստական եղեալ, Ե (5) մէն տեղ, Ժ (10) մէկ տէղ գըտան սպաննեցին ցոըեկով, գիշերով տան մէջ գըտան։ Ծ (50) Ճ (100) տանըն կըըակ դաըկին. շատ կին այըի թողին, շատ որդի անհայր թողին։ Մէկ ժամանակ մի Ապաղա փաշան ենկիչէըիք սպաննեց, հիմա սուլթան Մուրատն ըսպահիքն սպաննեց։

Ճանպէքէրէյ խանն էմը արաւ յունիս ամսու ոչխարաղէն[94] պայըամ արին։

Եկաւ Խաղըլղայ սուլթանըն, խանին կորմիշ արաւ, եւոյ ելան պահմ քաշեցին, գընացին Անապիին[95] մտան։ Խան ելաւ գնաց սուլթան նըստել էր, օրն ուըբաթ էր, սէյմէններն եկան լըցվան թէ՝ շէնլիք կանենք, թվաք կու քաշենք, մէկ անիծածն ի զարկ սուլթանին կոյշտն թըւաքով, արունն ի գոգըն լըցվան, ի հօն հոգին առ աստուած աւանդեց։ Ատիլ սուլթան էր և բարի տես, ա[ւ]աղ և ափսոս արևուն, զի Ե (5) ամիս էր քանի Խա-

ղըլղայ էր. Բ (2) եղբայր ունէր, նոքա փախան ղընացին, Մէհէմէթքէրէ սուլթան անդըն ղըրին։ Յուլիս ամսու Աղախէն[96] նաւեր եկան, Շահինքէրային էլչին մէջն էր, Բ (2) հոգի՝ Ա (1)-ըն կաֆացի, մէկն մըրզայ և այլ բազում խազնայ, թագաւորին կուսանէին։ Մեր կաֆացի ըսպահիք ժողովեցաք Բ (2) էլչին ըմպըռնեցին, խուլան հափս արին, ելան ղընացին թէ՝ նաւըն կուկոխեմք, խազնան կառնումք։ Նոքա ամենեքեան ենկիչերիք[97] էին, դէմ դըրին խովեցուն. չի կարացին նաւն երթալու և ամաւթալից դարձան, ենկիչարիք ժողովեցան, ըսպահիք ժողովեցան կըռիւ արին, բերդին դռվին փակեցին։ Բ (2) օր յետոյ խաւսք ենկիչարոցն եղաւ, էլչին հանին խուլայէն նաւըն գըրին, իրենց խազնայովն խըրկեցին։

Եւ ես այնորիկ կաֆացուս խարաճն եկաւ, հասըլ[98] հարճ 236բ կասեն, անունն անիծած ու զինքն, մարդոյ գլուխ Գ—Գ (3—3) ոսկի։ Քրիստոնէայք լացին, ողբացին թէ ճար չունինք տալոյ, էմըըն Բ (2) ոսկի է, Բ (2) առ, թէ չէ նաւըն կու մտնումք կերթամք թագաւորին, մեզի արդ[99] տուր։ Մէկ դատաւոր մի կայր Խէվ Հոդապարխսդէն,[100] որ անունն ասեն Մուսաօղլի կամ թէ Սութճիօղլի, ան անիծածն էր դատաւոր, էմր չարաւ Բ (2), այլ Գ (3), վասն այն պատճառին համար, որ ըռըշվաթ կերել էր, քիրիստոնեայք շըվար[101] մնացին։ Տեսան որ չեղաւ, մարդ խըրկեցին Պոլոն. ինչ որ մեր մարդն գընաց, անկից մէկ բարէպաշտ քրիս[տ]ոնեա[illegible] էմր էառ եկաւ[102] թէ՝ Բ (2) ոսկի թող առնուն։ Ալ վայ չի բռնեցին, բազում քրիստոնեայք ոտից վերա ելան, քաղքիս փաշան մանազուլ էր, նոր փաշային ղէհեան եկել էր, նայ մեր զիհաց էր, անիծած խատին էմր չարաւ և դարձեալ[103] մարդ ուղարկեցաք ոչ գիտեմք թէ որպէս կու լինայ։ Եւ դարձեալ զարմանալի բան մի՝ ԺԶ (16) խատըրղայ եկաւ Կաֆան և ասին,[104] թէ Է (7) խայըխ կայ Կէրչին[105] զին. ան Է (7) խայըղըն բազում աւերք արարեր էին, հիմա ԺԶ (16) խատըրղայ ելան վըրան ղընացին և այր բազում, սանտալ[106] խայըխ չի կարցան առնուլ, զիրենք զիրենք ըսպանեցին, ամենեքեան ծովըն թափեցան։ Ծովըն սաղըլխ տեղ կայր, ամենեքեա[ն] մէջն մնացին. Լ (30) հոգուն Ժ (10)-ըն չեկաւ, Ի (20) հոգուն Ե (5)-ըն չեկաւ, ալ պաղիքն ամօթալից և սևերես դարձան, Բ (2) օրմն կեցան, ելան ղընացին վըտարեցան։ Շահ ինչ, զէնէն բաշխայ, ետոյ Է (7) արապայ մարդ եկաւ մերկիկ, բոբիք, սաղէն ազատել էին, անչաք չէին, որ նոցա նայէին, նոքա գնացին, ն[ս]քա եկան։[107]

[Ռ]ՁԶ (1637) թվականին Ցինայէթքէրէին[108] Բ (2) եղ- 237ա բայրն սպանեցին, Նողայն, որ էր [Խ]անդէմիրն, տարեմն եկած էր Իպրաին փաշան, որ է Պիչխիճին, սուլթան ս[պա]ննեց, աարէպառւտն իրենք մեռան [Ցինայ]էթքէր ողորմելի մնաց. ելաւ գնաց թ[ագա]ւորին. թագաւոր Պատէրքէրյին խըրկեց,[109] [նորա]ն ըսպանեց։[110]

Աստուածային հրամանաւն Ըռըստաքէսն տուն առի էտըը-

մէլիքս[111] ալուի, հարսանիք արաք, պըսակեցաք հոկտեմբերի առաջի աւրն, Վարագայ խաչին երկուշաբթին։

ՌՂԴ (1645) թվականին Պաղչա-Սարայն գընացի Ե (5) [ա]միս քահանայագործութիւն արի. [տ]արէգիրն Հօյ (70) էր, զատիկ ապրիլի Զ (6) էր։

[Ռ]ՂԸ (1649)-ին Ըստամպօլ գընացի աւգ[ոս]տոսի[ն], նոյեմբերի[ն] եկի, զատիկ ապրի[լի] ԻԵ (25) էր։[112]

Եւ գարձեալ Ինայէթքէրէյ խանին հայիւն[113] որ եկաւ, աշ- 238ա
խարհս էրերաց և երկիր տաքնապեցաւ. և ոզրս աւրինէին, որ այնպիսի բարի թագաւորէն ղրկըւեցան և ատիլ սուլթանէ, որպէս գարնան ծաղիկ երևեցան և աչաց մարդկան անայտ եղան։

ՌՁԶ (1637) թվականին ամսեանն մայիսի մեծ սուք պատահեցաւ ի վերա յերկրի։ Այսօր Պաթըրքէրէյ խանն զարդեաւ ի քնոյ, խընդրեաց արեան վրէժ ի նոցանէ, սպաննեց Սալմաշան և այլ պաղի մողաներն հաւասար, մանտր ու մեծ մինչև օրորոցն.[114] Մանսուր աւղլին հուտն հատուց։ Անօրէն Օրախախ մոզան արեան տէր էր, որ ոմանք կասեն, թէ ԺԸ (18) թագաւորի որդոյ և զարմի գլուխ առել է, այոօր՟զրաւն եղև, չարն չարութեամբ կորեաւ.[115]

ՌՁԸ (1639) թվականին, ամսեանն մայիսի Գ (3), ազգ նողայ, չըղաթայ, թաթար ելան, Խրիմէն գնացին. Գ (3)-ըն մէկ տեղ եկաք[116] գէնգէշարին՝ մէկն Հաճի Թարխան[117] գնաց, մէկն Զարքէս մըտաւ և մէկն դարձաւ Խրիմ եկաւ։

ՌՁԹ (1640) մտաք թվական սուլթան Մուրատն փոխեցաւ առ աստուած, զի ատիլ թագաւոր էր և հզ[որ] ի պատերազմի, զի մեծ սուք պատահե[ց]աւ ամենայն երկի[ր]. թագաւոր կացուցին եղբայրն սուլթան Իպրահիմ.[118] և այդ է։

Մարտի Թ (9) տնտեսին կիրակին երկուշաբթիլուս շարժ եղաւ ո[ր] աշխարհս երերաց և սասանեցան ամենեքեան։

Այս է փակագիր իմաստունն իմանայ և անիմաստն զար- 238բ
մանայ. որ եղբայր և զիս յիշեայ զբազմամեղս՝

ղԻԻ Ա ԷԾ Ա ՍՍ ՑՑ ՎԾ ՎԾ ՍԾ ՍԾ Է ՍԾ ՍԾ Է ՎՎ,
ՍՍ Է ԵՌ ԹՌ ԺԺ ԺԵԺԵ ԺԺ ՆՆ ՑՑ ՌՌ կաթողիկոս,
ԼԼ ԺԺ ԵՌ Ա ԼԼ ՑՑ ՌՌ,
ԾԾ Ա ԵՌ ԴՌ ԺԺ ԵՌ ՑՑ ՌՌ,
ՌՇ ՌՇ Ա ԵՌ ԲԲ Ա ՄՄ, ՄՄ ԺԺ ԼԼ ՑՑ ԽԵԽԵ ՑՑ ՌՌ,
ՌՌ ԺԺ ԾԾ Է ՑՑ ՄՄ.[119]

Թվական [Ռ]ՁԹ (1640) էր, բազում ասքէ[ր] եկաւ Կաֆան, նաւով, ծովով, խատըրզայով, նաւով, խայըխով, Խասսամոնու[120] սանճախէն Ջ (900) թիմարի սպահիք. Ծ—Կ (50—60) չատըր զարկին, եկան Թօփրախալան խուլային առջև նստան, և ետոյ ձի աւին, արապայ աւին, ելան գնացին Ազախ, ամսեան յունիսի։ Խանն, փաշան թող այլ պաղի պէկլէրպէկիներ, ծանտր փաշաներ, ծանտր պարոնայք, Ուռումելի[121] ասքէր, Պօղտնէն[122] ասքէր, թաթար, նողայ, չըղաթայ. չէրքէս, ոչ կարեմ գրով պատմ[ել] կամ լեզ[վ]ով. Բ (2) թագաւորի ասքէր ՀԲ (72) միլլա[թ]էն

կային։ Գնացին Ազախ կոտորեցան և շատ ղատեցան դարտակ ելան, Ազախ չի կարացան առնելու և ամօթալից դարձան. ԽՌ (40000) գլխաւոր մեռաւ և այլ պաղիքն. ո՞վ կարէ պատմել զաղէտն, որ եղև ի վերայ Ազախ քաղաքին, շատ չարիք տիրեաց։

Հայն ըերթէն ի դուս լաղըմ արաւ, որտեղ որ Օսմանլըին ասքէրն կար ցիր ու ցան արաւ սօխախ սօխա[խ] իրաց, ամէն լաղըմ թափելուն Ռ (1000) հոգի երկինքն ի վեր կու ելանէ և դարձեալ ի վայր կու իջանէր լէշն, [ո]մանք գլխի վար և ոտն[123]

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Է (7) ամիս պատերազմեցան Կրէտէս կըղզին ճորով առին, 239ա
ղայն ալ թէ ըղորդ կամ սուտ։[124]

Շիրին պարոն և մաղանին նոքա [ա]։ եղեն տարտարոսի, թուր քաշեցին ի վերայ խանին, ամօթալից եղեալ երկրի Ե (5) ամիս ի տարտարոսի, ետոյ եղև հաշտութիւն։

Եկաւ քաղաքս Գ (3) վարդապետ՝ Սարգիս, Թորոս, Առաքել Նըւիրակ՝ արեղայ, քահանայ ժողովարար։ Երկիրն մեր սղութիւն է, առուտուր չիքայ, խանորայք, պարոնայք տարտարոսի և ժողովուրդն երերմի, ահայ հասաք վերջ ժամանակի։

ՌՂԵ (1646) թվականին, մարտի ԻԹ (29) մեր Հայոց զատիկ էր. ղիժար սղութիւն եղև, չարեկն Բ (2) խռուշ ելաւ, հաց ո՞վ կու տեսանէ, փախչը փուխարայ շուար մնացել էին։ Մեծատունք ղոնէղուռ անկան՝ դատի, նայիպ, որտեղ ցորեն իմանային, կու թալլէին. Դ (4) չարեկ ցորեն լինար, մինն տէր կուտային, [մնացածն] կու բաշխէին։ Նաւըն կէտրեցաւ, յարապայ չեկաւ, քաղա[ք] փակվեցաւ մինչև միչնաց կէսն։[125] ԻԲ (22) մարտի բաղում արապայ եկաւ, որ քաղաքն լցուաւ, աստուած առաքեաց և պատրաստեաց ժողով[ու]րդ՝ անկերակուր, անգուման, որ ակն ու գուման չունէաք։ ԻԳ (23), այսօր կիրակի է,[126] Բ (2) արապայ ալ հաց ալ եկաւ Խարա-Սուէն, որ յաշխարհս լիացաւ։ Տարիս Այծեղջւրն է, վերադիր ԻԲ (22) է, լուսնագիրն ԺԳ (13) է, եօթներրեակն[127] Դ (4) է, գիրն Ը (8)-ն է։ Մալթային գնացած վէզիրն հայն սպաններ է ի կըռւին։[128]

Դարձեալ գամք մեր երկիրն, որ ասեմք Կաֆայ քաղաք 239բ
հիւսիւսական կողմն և Հոնաց երկիր, որ բըղխէ զկաթն և զմեղրն։ Ապայ Է (7) տարի է, որ թանկութիւն է, հիմի աստուած երետ անչափ, որ յառաջի աժնութեան խարարն կու գտանեմք. փառք աստուծոյ։ Ապայ ինչ անեմք Ազախն եղև մեզ պատուհաս, Կաֆայիս բարութիւնն ի հաւն կու կըրի. Ե (5) նաւ, Ե (5) թօփաղ, զախիրայ և այլ բազում բարութիւն առին գնացին Ազախ։ Եւ ետ այնորիկ Զ (6) նաւ ենկիչերի եկաւ, ոմանք ասին Շ (500) է։ Է (7) նաւ ըսպահի քաղաքս դառ[ն]ացուցին։ Ս (2000) չուալ ուղացին և չաթան, հայէ և տաճկէ խարած Զ Զ (6 6) խռուշ. ուարի զփատ ու ծեզ[129] Գ—Դ (3—4) ուուրն մէջ կատարեցաւ։ Դ (4) խատըրղայ, ԺԳ (13) նաւ ելան գնացին ետոյ, Շ (500) չուալ այլ ետոյ։ Աւգոստոսի ԺԶ (16), Աստուածածնին կիրակին, Ե—Զ

5—6)նաւով եկաւ Տրապիզու[ն]ի փաշան բազում ասքէրով, ամէնն ըսպահիք եղան ի խուլայէն ի դուս, չաարր զարկին անհամար։

Թվին ՌՂԶ (1647)-ին Ֆռանկաց առնն, որ Մալթայ անւանէին Գ (3) աարի է, որ կոխ ունին, ազգն Հազարացոց, հիմայ Սութայ քաղաքն առել են։[130]

Թաղաւորին որդի եղել է և դուսար կարդել է սուլթան Իպրահիմ, վասն այն պ[ա]տճառին համար ամէք քաղաք աօնանմայ եղել է յունվարի ԺԲ (12). հօն ալ արին։

Դարձեալ անիծած մուֆտին չար խորհեցաւ սուրբ Նշանին, գնաց Ըսլամ խանն[131] խափեց և ասաց թէ. «Թագաւոր, ինձ մէկ տեղմն առւր, որ քո Խրիմ քաղաքըղ նսախիմ»։ Նորա սիրան ա ‖ ղաաաղայ էր, առեր էր. «Թող լինայ, որտեղ որ կուդես հաւանածդ» [240ա]։ Անօրէն ասեր է թէ. «Մէկ վանք մի կայ անընակ, մէջն մարդ չիքայ»։ Նա այլ ասեր է թէ «Քեզ աըւի, գնայ վահելէ»։

Վայրն դէշ վերայ դըլ[խ]ուն, ով անաւըէն և անիրաւ, չար և չարադլուխ սաաանայի, դու թագաւոր կու խափես թէ անաէր է, հոտ, քրիստոնէեայք խապար չունին։ Կաֆայէն նլաւ գնաց, թէ կերթամ վանքն, մըզկիթ կանեմ, մինարայ կու շինեմ. Խաչատուր պարոնտէրն և Գրիգոր եպիսկոպոսն շուար մնացին, որ ոչ գիտեն գինչ առնեն։ Հաւատացեալք ժողովեցան՝ ղըըմցիք, զեղացիք, այրք և կանայք, վանուց դուռն հասին, դուռն փակեցին, ներս մտին։ Անօրէնն երբ եկաւ մուտ չդտաւ, ամօթալից և սև երես դարձաւ։ Կաֆացիք և խարասուցիք խանին գնացին, մեզ երեսո, բազում դանձ գընաց։ Աստուած վէրէժ անէ նոցին։

Թվին ՌՂԸ (1649) Արխտաքէս վարգա[պետ]ն Կաֆան եկաւ եառյ Խաքա-Սու գն[ացին] Գրիգոր պարոնտէրին հեա, հօն ձեռն[ա]դրութիւն արին մէկ քահանայ, Բ (2) աւաք սարկաւարք։ Ծնընդեանն աւրհնեցին մինչև ի յաղուհաց հօն կեցան։[132] Պիտի Կեզլով պիտի երթար, Պաղչայ-Սարայն երթար քարոզէր և վարդապետէր։

[Ե]ւ խա[պ]տր եկաւ Կեզլովէն, թէ եկեղեցի[ն] առին այլադիքն, Ըսլաւքէրէյ խանին հ[րա]մանաւն։ Եկին անօրէնք քակեցին և ա[ւ]իրեցին, քրիստոնէայք շուար մնացին, մարտի ԺԶ (16), օրն ուրբաթ, շաբաթն չարչարանաց Լուսաւորչին մուտն ի Վիրապին։

Զատիկ մարտի ԻԵ (25) էր, քրիստոնէայք առանց օրինաց [240բ] մնացին, քահանայք լալադին, մեծ սուդ պատահեցաւ։ Ա՜ւախ մեր Հայոց ազդին և Կեզլով քաղաքին։ Եւ ետ այնորիկ, մէկ զարմանալի բանմ ալ եղաւ մեր Կաֆայ քաղաքին. Վէզիրն փաշայ էր, Աղախին ենկիչէրիքն չարացան, խիստ վընաս կու անէին ի մէջ քաղաքին։ Փաշային Բ—Գ (2—3) մարդըն սպանեցին, զոմն ծեծեցին, զոմն դանկով զարկին։ Վասն այն պատճառին համար տիւան արին ի մէջ պաղատին։ Պալըրան չոքեցաւ և կոտորեցաւ գերանն, որ բազում մարդիք ի յվար անցան և մեռան, ՄՃ (200) աւելի կամ պակաս մարդիք սապխալը եղան՝ ոմանց

ստրն, ոմանց ձեռք[ն], ոմանց գլուխն և այլ ոմանց սիրտն, օրն ուրբաթ՝ խաչելութեան և մատնութեան, այնպէս հրաշ գործեցաւ։ Անօրէնք դեռևս չեն ըսգաստանալ. էմրերըս չի բռնեց, Ըսպէնճն լման խառ։

Եւ եկ[ա այ]նորիկ ապրիլի ԺԵ (15), օրն կիրակիին ան‖ում շարաթ ձեռնադրութիւն արաւ մեր Գրի[գո]ր պարոնտէրն, ուրհնից տէր Սիմէոն ի վերայ Փաշստին և տէր Զաքարիայն՝ Աշխարհի կամ թէ Կեղլովի, Գ (3) դըպիր, Յովաննէս իմ աշա[կեր]տ, սպասաւոր սուրբ Գէորքայ։ Երկուշաբթի պարխսն‖ ւղրայ գնացաք, որ ոմանք եւ Ճիացին ծե[ծ] կերան, տուքանք տուին։

Եւ եւ այն[որի]կ Ըսլամքէրէյ խանն բազում զօրօք գընաց [ի]վերայ Գոռելին և բազում յաշխարհ տապալեցաւ Հայոց և մտաւ ի Պար քաղաքն։[133] Փաղքին տէրն Բոթոսկին իւր ‖ որդովն 241ա
և իւր վաղիրովն, իւր իշխանօքն ըսպռեցաւ և բերին գերի ի Խրրիմ և ածին բանդ և երկաթի կապանօք կապեցին և կըտրեցին գին բազում դահեկան, ի քաղաքըն Ղալայ[134] ի զերթն հրէից։ Եւ եւսոյ այլ ասքէր խրկեց խանն քան ղառաջինն, որ բազում աւերք արարին, տապալեցին բազում գիւղ և քաղաք և գերեցին ղամեննսեան առհասարակ, ով կարէ պատմել զաղէտն, որ եղաւ, Գոռելաց տուն աւիրեցաւ։

Թվականն ՌՂԹ (1650) մտաք, Խրիմքէրէյ սուլթանըն[135] եկաւ հեծել ի վերայ Մոսկովին,[136] Պօղտան կոխեց անցաւ գնաց և նոքայ միամտեցան, թէ մեք ասի չեմք, մենք Օսմանլըի ծառայ եմք և ոչ հնազանդիմք ձեզ։ Դարձաւ սուլթան իւր զօրօքն և թուր քաշեց, այնպէս պատերազմե[ց]ա[ւ] յերկիր սասանեցաւ, որ ըընա[ւ այսպ]էս եղած չէր։ Բազում գերի վերուց [և բազ]ում քաղաք աւիրեց, Պողանին պար[ոնն] ‖ իով խայըսեցաւ փախաւ գնաց ու [Իլով?] քաղաքբերթն մտաւ։ Երկիրն աշարմաշար արաւ [թ]աթարն ու Խըմելն[137] մինչև ի Լեհաց երկիր գնաց։ Լեհաց տունն մտաւ, դնրեցու[ց ա]նթ[իւ] ծառայ. Գճ (300) հոգի մեր աղ[գէն Լու]ս[ա]ւորչի։ Ամենեքեան գերի յանկան ի [ձեռն անօրին]աց և անհաւատից։ Եւ դ[արձե]ալ պատճառն ինչ է, որ անհաւատն, հաւատացեալ քրիստոնէայք գերի կան[է մէկ] չէ, երկուս չէ, ամառ ու ձմէռ. ինձ այսպ[էս կ]ու թվի, որ ամէն տարի պատկերք կու փոխեն, նոր աստուած կանվանեն, ‖ իւրեանց 241բ
տունն պատկերաց երկիրպագանեն, խունկ ածեն և մոմ վառեն, ծունր կրկնեն, աստուծոյ երկիր ոչ պագանեն, այլ ձեռայգործաց վաս[ն].ան պատճառին համար, որ նոքայ տարտարոս մաշին ի ձեռն թաթարին և Նեսողաց ազգին։ Եկան գերի անկան երկիր մեր, Խրիմ և ի Կաֆայ, ի Խարա-Սու և ի Պաղչայ-Սարայ, Կէզլով և Օրինբերան, որտեղ մեր քրիստոնէեայք հաւաքեալ են, գնեցին և ազատեցին և այլ պաղիքն, ով կարէ պատմել,[138] զի անթիւ են և բազում երամ, թէ որպէս եղան և որպէս չեղան։

Յովաննէս վարդապետն եկաւ Լեհաց տնէն, մէկ աբեղայ ունէր՝ տէր Յուսկան, փոխեցաւ առ աստուած Օրինբերանն, բե-

րին Պըղտի Ղալա-Սուն թաղեցին։ Զմեռն սուրբ Սարգիս ձմեռնեց՝ վարդապետն Նուիրակ եկա[ւ] Գ[ա]բրիէլ վարդապետն էջմիածնայ, լուսաբուղխ մեռոնաւն, սուրբ Սարգիս, հովե[պետ Հրե]շտակապետն. ետոյ գնաց Ղար[ա-Սու]. Պաղչայ-Սարայ, ի Կեզլով, Հրիմ[ի] գեղօրիքն։ Ետոյ եկաւ քաղաքն աղու[ն]ացից,[139] զամենեսեան նուիրկեց։ Սուրբ զատիկն իմ ժամ արաւ, ի սուրբ Թորոս. աէր Ս[ար]գ[իս] աբեղայն և Բ (2) սարկաւագըն [ձե]ռն[ադրեց]։ Ետոյ եկաւ Յակոբ վարդապետն ||| ցի[ն]. [ա]նառակ և շատակեր Չրախուժն [և ն]ռայյն. տափըռատառաշակեր,[140] [Նակու կա]նկնէր ի դիմացն և ասէր [ո]տա[նաւոր] խնթումենթ, որ ինքն ասէր և գրեր, մեղք ի սպիտակ թղթին, որ սևացու[ց]անէր քան զերեսսն։

242ա Նոր ցորեն եկաւ Ճժ (110) ստակ ծախուեցաւ, փառք աստուծոյ մարդասիրին, երբ որ առայ աստուած առատ, կու տայ. ով կարէ ճառել աստուծոյ բանն. ժամն չանցաւ Կ (60) սաակ տուին, պահմ ալ անձաց Խ (40) տուին, մէկալումն աւրն կապիճն Ա (1) ոսկի։ Եւ այլ թէ խոնարհն բարձրանայ և բարձրն ցածանայ, ծառայ տէր լինայ, տէրն խոնարհանայ։ Նոյն աւրինակ տէրվիշ Մէհէմմէտ փաշան, որ վէզիր եղաւ, չէխ[լ]ի]ն ծառայն էր. կաֆացիք լսնցին, ել[ան] գնացին, ոմանց պարգև ետուր, իր չելո[ւ]պուն՝ տղայութիւն, թէ զկարճաբան ե[ո]աւ. փոխեցաւ առ աստուած, ոմանք ա[ս]ին ||| աղէկ մարդ էր, Կաֆային շատ կու հասնէր թէ ապրէր։ Եւ դա[րձե]ալ [ա]նօրէն Իպշիրն. որ շատ անօրէ[նութիւն և] չարիք արել էր, և ճելալութ[իւն՝ պէկլէր]պէկիք սպաննել էր, մալ և դա ||| քա[կ]ել էր և ասքէրի տիրել էր ||| զէր թագաւորին բազում ժաման[ակ] ||| տուած էր, առածն առած էր ||| զրաւ մարտին, որ իր ոտքն ե[կաւ] ||| հեցաւ տըղայ սուլթան Մէ[հմէտ] եղաւ վէզիր, արաւ աս[ներուն բար]ութիւն, Գ (3) ամիս կամ ||| էղաւ, սպաննեցին չ ||| եաւ Մուրատ փաշան ն[ստաւ]։ Եւ ետ այնորիկ գնայ վար ||| այլ երկիր և ետ նորա այլ դագի ||| այլ և այլ եղև յերկիր և երե |||

242բ Յամսեան յուլիսի հայրն զօրացաւ, եկաւ Դաման քաղաքն իյառ, ԼԴ (34) շայղայ, ծանար դին կրտրեց, որ ոմանք ադատեցան, ոմանք մնացին դերի և անճարակ։ Ետոյ եղև մահ սարաժամ, որ տուն չի մնաց չի լացաց։ Սեղտեմբերի ամսուն Քէրթաղաչ փաշան եկաւ Կաֆայ քաղաքիս պէկլէպէտի և նաղըր։

Յաթոռ Լուսաւորչին էջմիածնի աէր Փիլիպոսն փոխեցաւ առ աստուած։ Տէր Յա[կոբ]ն նստաւ յաթոռ տէրութեան իւր թէմ[ին], ափրէ յարևէլից արևմուտ, ի հիւս[ի]ւս[ա]կտն կողմն, որ է մայրաքաղաք Կաֆայ և Խրրիմ, որ է Հոնաց երկիր։ Տա[րի]ն զմեզ նեղացուցել է. քաղաքն են[ան] մէկ հայրապետ և Ե (5) վարդապետ, փ[րկա]րար աստուած փրկէ և ազատէ։

[Թվակա]նն ՌՃԵ (1656) մտաք տանուտէրն կ[արիճ] է, յերկիրս ամէն բարեաւք իլի է, [ամենայն բե]րքն աստուծոյ է, որ նաւավարն կու կրէ [բազում] և [ա]նհամար. աւրն Ճ (100) արաբայ [Մ (200)], Յ (300), Ն (400), Շ (500). ոմանք ասին թէ

այսօր ||| [արա]պայ ցորեն նաւն մաաւ, գընաց ||| երկիր լիա-
ցաւ. Ըսաամպօլ ան ||| ն յերկիրըն անթիւ է, բայց մեր ||| է
փառք տրւողին և պար[գևողին աստուծոյ] մերոյ, ով կարէ պատ-
մել և ճառ[ել, ողորմածու]թիւն աստուծոյ առատ և ան[համա]ր։
||| շարժ եղաւ, օրն երեքշաբթի։ ||| վերայ հայն եկաւ և ոչ կա-
ր[աց առնուլ], ծեծվեցան հիտ թուրքին և [ետ դ]արձան։ Ետոյ
գնաց Տէլիպալթն [տ]իրեց, դիւրեանք չարդեց և գեր[ե]վարեց։
Դաւիթ վարդապետն նըւիրակ եկաւ մեզի Էջմիածնէն, նոր- 143ա
ընծայ տէր Յակոբ կաթողիկոսէն, լուսաբուղ մեռոնաւն, մէկ յա-
բեզայ սարկաւագով, հոկտեմբերի ամսուն։ Ձըմեռըն գիժար եղաւ
և ձընամեծ, մահ անասնոց և խաշանց։ Գ (3) յամիս Նողային
ձին ու տաւարն և ոչխարն չարգեցան, իրենք սո[վ]այլից մեռան,
ապրածն ալ ապր[ուստ] չունի։ Եւ ետ այնորիկ Բ (2) էլ ն ||| եկաւ.
Յուռուսն կոխեց ամե[նեքե]ան ի սուր մաշեց խեղճ ու ող[որմելի]։
Թվականըն ՌՃ և Զ (1657)-ըն մարտի ԻԹ (29) զա-
տիկ արտք. [յայս ա]արիս այլ չար երևի և անհա ||| զէրայ Օս-
մանլըին թագաւորն հե ||| ելանէ, Ե (5) խալեան կուզէ ||| պիտի
ըրղատ, պիտի պալը ||| [պի]աի երկաթ բանող, պիտի ք ||| ա-
մէն էսնէֆէ մընացեալ, Ժ (10) [աւր] ||| ուշ տըւին։ Եւ ետ այ-
նորիկ ա[յլ] ||| ձըգեցին յաշխարհի, Հայի, [Թաթարի], Հոոմի,
Հրէի, այլազգն աս[ին] չենք ի տալ. մեր հայքն շուտ [տւին],
քաղքին թաթար փաշան [տսաց դ]ուք տուէք, ինչ տանք |||
մենք ասաք՝ խանին կ ||| [հրամ]այեց թէ՝ ելէք գնացէ[ք] |||
Մարտի ԻԱ (21) օրն Ծաղ[կ]ազ[արդի] տօլվատորայք ֆախիր
ֆո[ւխարայ] ազդ կուտեցան սուրբ Թորոս [և ասացին], թէ կեր-
թամք, հրամ[ան]քն աստուծոյ. ճա[մփուն] անձրև եկաւ, բուք 143բ
պօրան եղաւ, ելած մարգիքն, որ ոմանք ճանփան մնացին, ետոյ
դարձան եկան սուրբ Թորոս, ամէն մար[դ] իւր տուն գընաց,
եկեղեցիք փակվեցան, Ծաղկայզարդին[141] օրն, գիշերն զըռբացօք
չեղաւ. երկուշաբթին, երեքշաբթին, չորեքշաբթի[ն], հինգշաբ-
թ[ին] ելան տօլվատորայք մոմով, շաքարով, պէշքէշ[ո]վ, մնացած
ժողովուրդք և մար[գ]ք զատիկ արաք ահիւ և դողու, [ոմանք] ոչ
հագուստ հագան, ոչ հաւ[կիթ ն]երկեցին, ով որ իմաստունք
են ||| գացողք, վասն յաշխարհի և թագաւորաց ||| [խաղ]աղու-
թեանց կամեցողք, այնոք[իկ անգ]էտք և տըղմար[դ]ք ոչ խար-
ճէն ||| յար ունի ոչ խարաճէն, ինձ[պէս] մարդիք զատիկ արին
հաւկ[իթ ներ]կեցին, հագան և կապեցին, [կեռան և] խըմեցին և
դարձեալ լե[զուն] երկան է հուքմո հրաման ||| չեն հաւանիր
գընտցողացն ||| ալ երես չերեփ, Բ—Գ (2—3) աւր ||| կեցան,
զուռն չի կտրաց[ին] ||| ստան առնէ, Բ (2) հոգի այլ [գնացին]
Գալըխլըն արմէնալ[142] ր ||| ար չելաւ։ Քաղաքն ալ ||| մարգիքն
ալ կիսով ||| կաֆացին, դրիմցի ||| [Կա]ֆայի խարաճ կու ա[ան]
||| [քա]ղ[աք]ի հիմայ բաժանեցան ||| և հակառակ դարձան մի-
մի[անց] Ռ (1000) Շ (500) ղուուշ կայ այլ աւե[լ]ի Կաֆ[ան տւ]եց՝
Յունի[սի] ԺԶ (16) գիշերն խաւարեցաւ լուսինն։ Մէկալուն 244ա
գիշերն անձրև եկաւ, գետոց արուցմուք եղաւ, որ շատ տուն բը-

լաւ, շատ կարմունճ [ա]արաւ, մէկ կինճ տարաւ Բ (2) աղոճն,
այրն ճաղ բարբարական, մէկ իմամի տարաւ, կին ու տղայնն
ճացին բարբարական։ Հրաշ զարմանալիք, որ խանն հեծել է
բաղում աւքէրով ||| սէ, որ խապար չիքայ անդաւ [ման խոպ]ար
ելաւ, թէ խանն Կ (60) զապուր ||| Մաճառին լի և ուրախ սըր-
տիւ. ||| մեր քաղաքացիք ուրախացա[ն, տօն]անմայ արին ան
պատճառով ||| ան դեռ չէ եկել քաղաքս խան ||| լըլի։ Օոմանըլը
կա ||| ու կապ ճա[ց, բո]դաղն փակէ, երթողն այլ ոչ դա[ռնա] |||
միթէ աստուած արձակէ, այն ժամա[նակ տաւնան]մայ օգոստոսի
Զ (6) էր, Դ (3) օր։ Դարձեալ տաւնանմայ խաչվե[րաց][143] |||
գիշերն. Դ (3) օր Գ (3) գիշեր պ[ատերազմեցին մ]ինչ Ֆռանկն
դարձաւ, ճ[անապարհն] բացուաւ, և այս է։ Դ[արձեալ քաղ]աքս
կայ Դ (3) վարգապե[տ] ||| արծաթն բարիտեռ և ||| հեղահոգի
և տեսն փ ||| որ ասի ճըպղայ ||| պի փարդապետու[թիւն] |||
կերպարան և տեսն ||| տէր Մարաիրոսն է գո ||| և թագն յաշ-
խարհի և Նրւիրակ Ցերուսաղէմի։ Սա աշակերտ Աստուածատուր || 244բ
վարդապետի, և յաջորդակալ[144] Եղիազար վարդապետի։ Սայ է Հո-
նաց յաշխարհի. ի դրան է սուրբ Նշանի, պարծանքն Խըրիմի
և վարդապետն կաֆացի, աղդայ գոլով մ[ա]նուկ բարի, արժա[ն]
լինի խորին ծերի ||. [Եղբա]յրք հացն այլ բարձացաւ ||| ն
ԲՃ (200) կու ասեն աստուած փրկէ ||| է ձմեռս։ Ամառն ասա-
ւած տայ և ||| զարարածս։ Ամէն իրք սուղ է ||| սակ բանիըն
նոյն աւրինակ։

[Թըւակ]անիս Ռ ամի Ճ ու Է (1658) էր [ատ.եկի[ և ամիսն
էր ապրիլի, որ լսեցաք ||| ոեցի ողորմելի և կոծելի, մահ[ն
որ]տ[ում] դառն ու լեղի, դի փոխե[ցաւ պար]ոնտէրն մեր, տէր
Դոլիգոր ի ճա[նապարհի]ն Ցերուսաղէմի։ Զի ոչ ժամանեալ. |||
[շ]ինութեան տեսոն տեղի և լուսա ||| ման։ Սուք պատահե[ց] ||| քա-
ղաքի իր վանքն վայե[լուչ] ||| Զարխափան[145] Աստուածածին։ [Դար]-
ձեալ Խըրիմ Հօնաց ||| [լուսա]պայծառ սուրբ Նշան ||| [դարձ]եալ
բոլոր երկրի Խր[իմ]ա ||| քաղքի և ընթան[ուր] ||| [առաջ]նորդ էր դայ
մեզի ||| տայ աստուած երեւ նոր[ի]ց ||| երէա լի[ա]ցոյց Կ—Ծ (60—
50) տ ||| ?ի յաւրն։[146]

* * *

Խաղիքէրէ խանն մեռաւ Խաղիքէրման[ի]ն մէջն. Թվին 144բ
ՌԾԷ (1608) յունվարի ամսում մէջն։[147] Ջատիկն մարտի ԻԷ (27)
եղաւ. այս է։

Սալամաթքէրէյ[148] խանն եկաւ Ստամպալայ մայիսի Բ (2)
ի Կաֆան, աւրն երկուշաբթի. երկու տարի թագաւորեաց և եստ
Ճանպէքէրէյ խան եկաւ, նրստաւ ի տեղն։

ՌԿԹ (1620) թվականին Ճանպէյքէրէ խան եկաւ։[149]

ՌՀԲ (1623)-ին Մէհէմմէտքէրայ խանն եկաւ, մայիսի Թ
(9), օրն ուրբաթ. ՌՀԳ (1624)-ին Շահինքէրէն եկաւ մայիսի
Գ (3), օրն երկուշաբթի։ Դարձեալ Ճանպէքէրէյն եկաւ մայիսի
ԻԴ (24), օրն երկուշաբթի։ Բաղում չարիք տիրեաց յե[ր]կրի և

դարձաւ ամօթալից. նաայ ՌՀԸ (1629) թվականին եկաւ Ճան-պէքէի։

ՌՁԴ (1635)-ին Ինայէթքըէն նկաւ։[150] Ճանպէքըան գնաց Ըսաամպօլ։[151]

ՌՁԶ (1637)-ին Պաթըրքէրայն եկաւ[152] Գ· (3) եղբայր· 149ա
ՌՁԹ (1640)-ին Մէհէմմէաքէրայն խան եղաւ։[153]

ՌՂԳ (1644) թվականին յուլիսի ԻԸ (28), օրն երկուշաբթի 149բ
Վարդավառին, Ըսլամքըէյն խան եկաւ[154] Թ (9) խատըրղայով. 150ա
Խըրմքէրէյ սուլթանովն ՌՃԳ (1654)-ին փոխեցաւ առ աստուած յուլիսի յառաջի օրն։

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Կաֆայում գտնվող եկեղեցիներ։ Մատենադարանի № 2939 ձեռագրում պահպանվել է հետևյալ վկայությունը՝ 1331 թ. երբ թուրքերը գրավում են Կաֆան, 45 եկեղեցիներից մի մասը դարձնում են մզկիթներ, հայերի ձեռքին մնում է 29 եկեղեցի, այդ թվում «սուրբ Ուրբաթ, սուրբ Աստուածածին Կօլինը»։ Իսկ երբ հեղինակը թվում է, թե որ եկեղեցին ինչքան հարկ է տալիս թուրքերին, ի միջի այլոց իմանում ենք. «սուրբ Ուրբաթ 4 ֆլորի, Կօլի Աստուածածին 6 ֆլորի» (էջ 471ա)։

2. Մի ուրիշ ժամանակակից, այդ դեպքերի մասին, հետևյալն է գրում. «Թվին ՌԿԵ (=1616) յուլիսի ԻԱ (21) օրն եկին ուռուսին ղազախներն, աւերեցին և երեցին քաղուս. կիրակի Գ (3) ժամ էր անցեր գիշերն և զԿաֆա կոխեցին, թալնեցին և տներ և խանութներ» (Ձեռ. № 7707, էջ 71ր)։

Բնագրի «ուռուս» անվան տակ պետք է նկատի ունենալ Դոնի և Զապորոժյեի կազակներին։

3. Բնագրում «սեկտեմբերի» ձևով։

4. Բնագրում «տեղն նստաւ տեղն» ձևով, այնուհետև հեղինակն առաջին «տեղն» ջնջել է։

5. Սույն վկայությունը մի փոքր շեղվում է Լեն-Պուլի հաշվումներից, ըստ որի Ահմեդ I-ը մահանում է 1617 թ., հաջորդ Մուստաֆա I-ը իշխում է 1617—1618 թ. թ., Օսման II-ը՝ 1618—1622 թ. թ., Մուստաֆա I-ը երկրորդ անգամ՝ 1622—1623 թ. թ. („Мусульм. династий" стр. 166)։ Ցամբաուրի մոտ բացակայում է Մուստաֆա I-ի երկրորդ անգամ թագավորելը (տես և համմտ. E. de Zambaur "Manuel de généalogie et de chronologie pour l'Histoire de Islam", Hanover, 1927, Ottomans սխեման։ Մուստաֆա I-ի համար Սմիրնովն այլ թվեր է տալիս՝ 1618—1622 թ. թ. և 1622—1623 թ. թ. (տես „Крымское ханство" СПБ, 1887, стр. 475)։

6. Բնագրում «եկաւ» բառի վերջին տառը, հեղինակն սկզբում գրել է «ն», ապա կիսատ թողել և մոտն ավելացրել «ւ»։

7. Պարսկա-օսմանական 1616 թ. կռիվներում, թուրքերին որպես դաշնակից, մասնակցել է նաև Ղրիմի խան Ջանիբեկ Գիրեյ II-ը 30 000 զորքով, իսկ սրանց դեմ, պարսիկների կողմից, կռվում էր Մուհամմեդ III-ի (իշխել է 1622—1627 թ. թ.) եղբայր Շահին Գիրեյը։ Այս մասին խիստ համառոտ հիշում է Սմիրնովը („Крымское ханство" стр. 479—480)։

8. Ջանիբեկ-Գիրեյ II-րդ, Ղրիմի խան, համաձայն Լեն-Պուլի իշխել է 1610—1622 թ. թ. և 1627—1635 թ. թ. (նույն տեղ, էջ 196)։ Սակայն Սմիրնովը նրա խանության համար այլ թվեր է նշում՝ 1610—1623 թ. թ. և 1627—1629 թ. թ. (նույն տեղ, էջ 473), իսկ վերջին թիվը նաև 1627—1635 (ն. տ., էջ 496)։

9. Բնագրում «մցմնա» ձևով։ Մծբինի հայրապետ սուրբ Հակոբի տոնը 1620 թ. կընկնի դեկտեմբերի 16-ին։

10. Բնագրում 222բ և 223ա էջերի ներքևի լուսանցքում հեղինակը 1621 թ. ներքո հետագայում ավելացրել է «Ապրիլի ԺԳ (13), օրն աւագ հինգշաբթի, տէր Խաչատուրն ձեռնադրեցին քահանայ և լուսարար, սուրբ Հրեշտակապետին։ Թվին ՌՀԷ (=1628) ապրիլի Զ (=6), օրն Ծաղկազարդի, Խաչատուր քահանայ փոխեցաւ առ աստված» տեղեկությունը։

11. «Տարան» թրք. „daban" նշանակում է «ներբան»։ Այստեղ գործ է ածված հավանաբար «քայլ»-ի իմաստով։

12. Դեվլետ Գիրեյը Ջանիբեկ-Գիրեյ II-ի եղբայրն էր։ Գոռեյը, որի մասին մի քանի անգամ հիշում է հեղինակը, մեզ համար անծանոթ վայր է։ Եթե նկատի ունենանք հեղինակի այն վկայությունը, թե 1649 թ. Իսլամ Գիրեյ արշավեց Գոռեյի վրա, ապա մտավ Բար քաղաքը, կարելի է ենթադրել, որ Գոռեյը գտնվում է հարավ-արևմտյան Ուկրաինայում Կամենեց-Պոդոլսկի, Բերդիչևի, Ժիտոմիրի կողմերում։